

# ՀՈՄԵՐՈՍԻ
## ՈԴԻՍԱԿԱՆ
### հ. ա.



բ. 162



Վենետիկ
ի Սուրբն Ղազար
1848.

# ՀՈՄԵՐՈՍԻ

# ՈԴԻՍԱԿԱՆ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ Ի ՀԵԼԼԵՆԱԿԱՆԷ

Հ. ԵՂԻԱ Վ. ԹՈՄԱՃԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ՀԱՏՈՐ Ա.



Ի ՎԷՆԷՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՌՄՂԶ

ԱՌ

ՄԵԾԱՓԱՌ ԱՄԻՐԱՅ

# ՅՈՎՀԱՆՆԷՍ

# ՏԱՏԵԱՆ

ԱՐՔՈՒՆԻ ՎԱՌՕԴԱԳԵՏ

## ՈՒՂԵՐՁ

*Ի խրախոյս մշտաբարբառ բա-*
*նասէր Հայորերոյն,*
*Որոյ տիպար առաքինի հնչես-*
*ցէ ձվլ Ամիրայ,*
*ՅՈղւմպեայ որ 'ի Մասիս քեր-*
*թողացն ըզվեհագոյն*
*ՅՈղխեանն ըզգաստ մըրմունջ*
*հայախօս եղեալ ահա ։*

Սիրայնոյ Հարազատիդ Հօրա-
մոյն Սիմէոնի

Յիշատակ դարուց անեղծ կանգ-
նեցեր , ոչ սիւն արձան ։

Սա կըրկին 'ի տիպ չըքնաղ
հանճարեղ սիրոյդ ձօնի ,

Ուարոյեցդ իմաստասէր Համազ-
գեաց կացցէ մատեան ։

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԶՀՐԱՇԱԳԻՒՏ Քերթուածոյ Ոդիսականին մեծին Հոմերի չունիմք ինչ երկայն կանխաբանել, շատ համարեալ զոր ինչ միանգամ ասացաք 'ի Յառաջաբանի առաջին մասանն նորա յԻլիականն։

Յուշ միայն առնեմք ընթերցանելեացն, եթէ որպէս Իլիականն Հոմերի հրահանգիչ գտաւ 'ի բարոյական քաղաքականին, առաւելապէս 'ի Զինուորական մասին, նոյնպէս և Ոդիսականն նորա 'ի բարոյականն մարդկան է առաւելապէս 'ի Տնտեսական մասին։ Եւ որպէս առաջնոյն Դիւցազն եկաց Աքիլլէս քաջն, նոյնպէս և երկրորդին Դիւցազն՝ է Ոդիսևս խորագէտն։

մատդեմ օրինակըզն : Քանզի և մի մի 'ի Հագներգութեանց Ոդիսականիս պատրա-բերիչ է ուշիմ ընթերցողին 'ի հրահանգս բարոյականին :

Որպէս յորժամ 'ի ԺԱ Հագներգու-թեանն 'ի դժոխս իջեալ Ոդիսեւս, անդ տայ բարբառել իւրաքանչիւր հոգւոցն. և որպէս զպատուհաս յանցաւորացն 'ի դէմս ածէ, նոյնպէս և զհատուցումն բարի զառաքինագործ մարդկանն՝ 'ի խը-րատ լսելեացն :

Որպէս յորժամ և յայլում Հագներ-գութեան, 'ի Տնտեսականին կրթէ զայս, եթէ չէ պարտ առն՝ զամենայն զիւր զմիտ-սըն 'ի վեր հանել կնոջ իւրում, այլ կէս մի ասել նմա, և զկէս մի պահել վասն ան-ձին : Եւ թէ արանց չէք բաղորոմլին վստահ լինել 'ի կանայս. և թէ կանանց պարտ է միշտ այրասէրս լինել և ողջախոհ :

Ըստ որում և 'ի Ի Հագներգութեանն իմաստութեամբ ազդ առնէ տանու-տեարցն, զիա՞րդ նոցա պարտ է միշտ ար-

Թուն լինել 'ի տեսչութեան տանն . յոր֊
ժամ 'ի քուն կեղծէ Հոմերոս լինել զԱ֊
ղխսէս , և այնպէս 'ի քունելն ղխտել մի֊
անգամայն ծածկաբար զերղեալսն 'ի տան ։

Նոյնպէս և 'ի ԺԲ Հագներգութեանն
քաջայայտ է խորատաբանութիւնն Հոմերի
առ ամենայն մարդ , եթէ զիմարդ ժուժ֊
կալել կամ ընաւ խսկ փախչել պարտ է 'ի
հեշտալեացն հրապուրից . յորժամ զՍի֊
րենայսն՝ զորս Ծովայինս կոչեմք և Ցուշ֊
կապարիկս՝ յանդիման երևեցուցանէ , և
դքաղցրանուագ և զհեշտալուր ձայնս նո֊
ցա տայ լսել 'ի հրապոյրս լսելեացն ։ Զոր
'ի խորատ 'ի ներքս բերեն և մատեանք
մեր ։

Սմպէս և 'ի ԺԴ. Հագներգութեանն ,
և յայլս ևս , և գոգցես յամենայն առիթս
յոյժ սքանչելի է և պատուական բարոյա֊
կանն Հոմերի յաղքատսիրութեան հրա֊
հանգն . զի զաղքատս և զպանդուխտս և
զհիւրս կոչէ Որէար ապարածոյ , և ատապէալս
յապարածոյ առ Բէղ , ասէ զնոսա . ուստի և

զանց չէ պարտ, ասէ, երբէք առնել զնո-
քաց, այլ բարեգործել միշտ:

Եւ այսպէս առայս մի բան միոջէ ծաղ-
կաւէտ է Ոսկեդարեանն Հոմերի ՚ի վերայս
Ընձեռական և Ցնծութեան առաքինու-
թեանց:

Զորամ և զարդիս փափաքելով սիրով,
անուանել և ՚ի մեզ զայս Մատեան աշխար-
հաբարոզ՝ Հայերէնախօս չափաբանու-
թեամբ, Ազգասէր և Խմբատասեր բա-
րեպաշտարար ՅՈՎՀԱՆՆԷՍ Ամիրայ Տատ-
եան, հոգացաւ ՚ի յիշատակ անմոռաց
մեծարգոյ Հարազատին իւրոյ Սիմեոնի
Ամիրայի Տատեան Աղքատի Վարժա-
պետի, ՚ի լոյս ընծայել զսա ՚ի վայելս
Հասարակաց:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Կոչումն քերթողական, և առաջարկութիւն ողջոյն քերթուածոյն 'ի բազմամեայ թափառագնացութիւն Ոդիսեայ: Ատեան աստուածոց, յորում հաստատեն զդարձն բազմաչարչարն Ոդիսեայ 'ի հայրենիս իւր յԻթակէ, 'ի միջնորդութենէն Աթենասայ: Աթենաս իջանէ յԻթակէ կերպարանափոխ, և քաջալերէ զՏելեմաք գնալ 'ի Պիւղոս և 'ի Սպարտա, հետախոյզ գիտել ինչ զհօրէն իւրմէ զՈդիսեայ: Խրախճան հոմանեացն, որ 'ի բացակայութեանն Ոդիսեայ խնդրէին իւրաքանչիւր ածել 'ի հարսն զՊենելոպէ զամուսին նորա: Փեմիոս երգակ երգէ 'ի խրախճանին զցաւալի դարձ Յունացն 'ի Տրոյէ. Պենելոպէ խռովի 'ի լուր երգոյն, յուշ ածեալ զթափառական զայր իւր: Տելեմաք ազդ առնէ հոմանեացն ժողովել 'ի վաղուեան օր, և մեկնի 'ի ննջել:



# ՈԴԻՍԱԿԱ՛Ն



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ա.

ԻՆՉ զայրն ասա՛, դու ո՛վ Մուսա, զայր
խորագէտ բազմահնար,
Որ զԻղիոնն ըզսուրբ քանդեալ Թափա֊
ռեցաւ ընդ երկար 1.
Քաղաքս ետես բազմաժողովս, այր խե֊
լամուտ հրաշացաւ,
Եւ յերաշխեպ բազմարկածեան նա 'ի
ծովու տանջեցաւ:
Անձին հոգ ած և ընկերացն, այլ ո՛չ
դարձոյց ողջանդամ,
Թէպէտ անձկայր. զի 'ի կորուստ անմը֊
տութեամբ վարեցան:

Ա՛յ խօլամիտք, որ ընդպաճարս զԱրփւոյն
կերան ընդվեհին,
Սրտմտեցաւ և ընդնոցայն անհետացոյց
զօր դարձին 2 ։
Րոգ, դիցուհի, դուստրըն մազդեզին սաս
խոտն մի նաև մեզ.
Ջի՞ է զի այլք յօրահասէն ճողոպրեցան
քաջապէս.
Ողջք 'ի մարտէն և 'ի ծովէն 'ի տուն
դարձան բնակասուն,
Իսկ սա միայն բազմաթափառ անձկայր
դարձին ամուսնոյն ։
Արգելական յաւերժհարսնէն 'ի դիցու-
հւոյն Կալիփսեայ
Կայր հիքացեալն 'ի խոր անձաւս, իբրու
առնուլ իւր փեսայ.
Բայց և տարեացն 'ի բոլորել բազմահո-
լով շրջանին,
Յորում 'ի տուն իւր յԻթակէ ընդդարձն
աստուածք կընքեցին,
Ո՛չ և յայնժամ առ տոհմայինս նա զերծ
գըտաւ 'ի վշտաց.
Թէպէտ և այլքն ողորմէին, կայր Պոսի-
դոն դիմադարձ ։
Սա ընդ դիւցազն ըն Ոդիւսէս անդուլ
խեթայր ցասմամբ լի,
Մինչև նորա էր ողջանդամ յերկիրն հա-
սեալ հայրենի ։

Բայց Պոսիդոն չոգաւ 'ի տար Եթովպա-
ցւոց յայց ազգին,
(Եթովպացիք կրկնասահմանք բնակեն
'ի ծագ 'ի վերջին,
Կէսք 'ի նոցունց ընդ արևմուտս, կէսք
յարևելս առին վայր.)
Զի կայր նորա ցլուց, գառանց հարիւր-
եզնեան զոհ պայծառ:
Անդ Պոսիդոն ըմբոշխնելով վայելս առ-
նոյր 'ի խրախճան,
Երբ անմահից պալքն յՈղիմպեան տա-
ճար Դիայ խմբեցան:
Ամպրոպայինն յուշ ած զեղեռն յոր
մոլեցաւ Եգիսթէս,
Զոր հոյակապն Ագամեմնոնեանն 'ի մահ
վարեաց Որեստէս 3.
Զայն յուշ ածեալ ձայն ետ յանմահս
հայրն Աստուծոց և մարդկան,
"Բա՛բէ, առ ի՞նչ կանացածինք կան զԱս-
տուածոց ամբաստան.
Ըզմեզ պատճառս ասեն չարեաց, ինք-
եանք տանջին հէքապէս,
Եւ խօլանեան, որպէս և արդ անմըտացաւ
Եգիսթէս:
ՅԱգամեմնոնեայն կին շամբշեցաւ, և զայրն
ըսպան 'ի դարձին,
Թէպէտ գիտակ էր աղէտիցն, զի ազդե-
ցաք մեք նմին:

Զարթուն հերմէսն արձակեցաք մերոյն
բանբեր պատգամի,
Մի՛ զայրն 'ի մահ վարեալ, 'ի կինն յայ-
րատասեալ մի՛ լիցի.
Ա՛ռ՝ եթէ ոչ, քաջն Ովրեստէս անձուկ
բերեալ խրում տան,
Յարդունս հասեալ յառաջ կայցէ հօր
իւր արեան քինահան:
Ազդեաց հերմէս. այլ Եգիսթէս քաջ
խորհրդոյն ոչ անսաց.
Անմըռնացաւ. և արդ ելոյծ ողջոյն ըղ-
վրէժ յանցանաց":
"Լո՛ւ կարծ քաջ, վեհ Զրուանեանդ,
կրկնեաց խաժակն Աթենաս,
Մեռցի՛ շամբուշն, և Նըմանիքն ըղնոյն
առցեն պատուհաս:
Բայց ես 'ի սիրտ և 'ի յոգի վասն Ոդիւ-
սեայ հարեալ եմ,
Վա՜հ, հեծացեալն յերկար տանջի 'ի սփ-
ռելեաց տարադէմ.
Անդ 'ի կղզին կայ ջրապարփակ 'ի ծովա-
մէջն յայն անհուն,
Կղզի է նա անտառախիտ, անդ է կայան
Դիցուհւոյն.
Սա այս դուստր է բազմանհերհուն հըս-
կայազօրն Ատլասայ,
Որ գխորութիւն գիտէ ծովուն, և սիւնս
բարձեալ կրէ նա,

Սիւնք յաղթք, երկայնք, որ և զերկեր
նոյն և զերկրին բակ առնուն,
Սա այս է դուստրն, որ յարգելոց ունի
զուշիմն ողբարկուն,
Շաղաւաշութըն գըգուանօք, զի մռուա-
ցի զԻթակէ.
Բայց նա երկրին և յելեալ ծուխն ան-
ձուկ բերեալ, մահ խնդրէ 4:
Ցե՞րբ, Ողիւմպեանդ, ոչ գորովիս. ո՞չ
Ոդիւսեան յԵղին
Առ նաւս Յունաց ձօնիւք յաշտիւք պա-
տուասիրէր 'ի պաշտօն.
Ըզմե՞ այդչափ ցասումն 'ի նա յուզեալ
է քո, ո՞վ հայր մեր ».
« Զի՞նչ են, ո՞վ դուստր, Ամպրոպայինն
ձայն յԱթենաս արձակէր.
Ո՛ր ինչ բանք քո այդ, որ ափ յափոյ 'ի
քոց թըռեան 'ի շըթանց.
Զի՞արդ երբէք զայն բարեփառն ես զՈ-
դիւսէս մոռացայց.
Դա հանճարով վեհ մահացուաց, զա-
առատ է և 'ի ձօն
Դից անմահից երկնաբնակաց. այլ ընդ-
դէմ կայ Պոսիդոն.
Ցանգ սրտմտեալ վասն Կիկղոպայն Պո-
ղիւփեմին 'ի յարկած,
Զոր կուրացոյց, որ նա ուժով վեհ է
բնաւից Կիկղոպեանց:

Զոր յաւերժհարսն առ Պոսիդոն մնեալ
ծընաւ յանձաւին
Փորկիւնոսի դուստրն Թոովսա անբոյս ծո֊
վուն իշխանին.
Բայց Պոսիդոն երկրասասանն 'ի մահ
զՈդիւսս ոչ վարեաց,
Սակայն Թափառ տանի բերէ ըզնա 'ի
տար հայրենեաց:
Այլ աղէ մեք միամըտեալք խորհուրդ
առցուք ըզդարձին,
Եւ Պոսիդոն ըզհուր ցասմանըն շիջուսցէ
'ի յոգին.
Զի և երբէք ոչ ժըռտեսցի ընաւից կըրել
հակառակ,
Եւ անմահից դասուցն ընդդէմ 'ի մէջ
խմղալ միայնակ ":
"Այո՛, հայր մեր, կրկնեաց Պալլաս,
այո՛ ով վեհդ արքայից.
Այդ է անշուշտ ձիր հեշտընկալ սրտի
դասուցն անմահից.
Դարձցի 'ի տուն իւր ողջանդամ քաջ֊
մահանձարն Ոդիւսես.
Բայց ա՛ղէ մեք ըզնուիրակն ուղղոյ տա֊
ցուք ըզՀերմէս.
Առ վարսագեղն յաւերժահարսն յՈվ֊
գիւգ գնասցէ 'ի կղզին,
Ըզ մեծանձինըն զՈդիւսեայ պատգամ
տարցի ըզդարձին:

Բայց ես յԻթակ ուղղոյ եղէց, որդւոյն
նորա տալ յորդոր,
Կորով 'ի սիրտ հեղգոց նորա խմբել ըզ-
Ցոյնս գլխաւոր.
Սանձել և սաստ տալ հրամանի մարմնա-
պարարն հոմանեաց,
Որ միշտ ոգիս շատ փողոտէն և Թամթա-
հերձըս յանդեայց 5:
Ի Սպարտիա յըղեմ զորդին և յաւա-
զուան 'ի Պիւղէ,
Լուր ինչ դարձի առնուլ ըզհօրն, եթէ
ուստէք լըւիցէ.
Եւ զի նա ինքն առցէ անձին շուք մեծա-
փառ 'ի մարդիկ ».
Ասաց Պալլաս, կապեաց 'ի յոտսն ըզզե-
ղեցիկըն կօշիկ,
Զանմահ, զոսկին, որ զնա բարձեալ
ընդ ծով բերին ալէկոծ,
Եւ ընդ ցամաքն ընդ անսահման 'ի շունչ
Թեւոցըն հողմոց.
Տէգ ծանր և յաղԹ առ հաստաբեստ
պըղընձասայր աննըկուն,
Որով ճնշէ զխումբ դիւցազանց սրտնեալ
այս դուստր հօրամոյն:
Արագաւ ծայրիցն յՈղիմպոսին 'ի ժողո-
վուրդն Իթակայ,
Եկաց տիգաւն 'ի նախագրունս սեմոց
դաւԹին Ոդիւսեայ.

Յարմարեցաւ նա իբրեւ հիւր զերթ պետ
Տափեանցն ըզՄենատէ,
Եւ անդ գտանող հացկատակաց զխումբ
հոմանեաց գըտանէ.
Նոքա առ դուրս խնդամանեալք բազմոց
ոսկէն մորթ զեղանց,
Ջորս յագեցին, և շուրջ նոցա կան քա-
րոզք ժիրք պաշտօնեայց.
Կէսք ջուր, գինի, խառնեն 'ի սկահս, և
կէսք 'ի սպունգս ծակոտկէն
Սրբեն սեղանս և՛ սպաս հարուն և միս
բազում բաժանեն։
Նախ Տէլեմաք ետես զդիւցազն 'ի մէջ
բազմեալ հոմանեաց.
Նստէր թախծեալ և զքաջահայրն իւր
յուշ ածէր անձկայրեաց.
Ո՜վ թէ եկեալ նա ըզշամբուշողն դիր և
տար ցրուեսցէ,
Եւ ինքն անձին կալցի ըզշուքն և իւր գոյ-
ից տէր կայցէ.
Թախծեալ այնպէս նստէր խորհէր. տես
զԱթենաս, եւ արտաքս,
Զըհանդուրժեաց եթէ առ դուրս հիւ-
րըն կացցէ ընդ ձիգ ժամս.
Մ՚ատեաւ առ նա կալաւ զաջոյն, առ
ըզնիզակն 'ի ձեռաց,
Եւ հիւրասէր արագաթեւ բարբառ առ
նա զայս կարդաց.

"Ո՛ղջ եկիր, հիւրդ, և մեծարանս գըտ-
ցես 'ի մէնջ դու զամէն,
Ա՛ռ նախ զընթրիսդ, ապա խօսեաց, զինչ
քեզ իրաց պէտք իցեն":
Ասաց, 'ի նոյն և յառաջեաց. ընդհետ
Պալլաս ընթանայր,
Մինչև եկին մըտին նոցա 'ի բարձրայարկն
'ի տաճար.
Առ սեան մեծի յեցոյց ըզտէգն 'ի գե-
ղեցիկ դարանին,
Ուր և կային նիզակք բազումք անդ Ոդիւ-
սեայ դիւցազին.
Առեալ ըզնա նստոյց յաթոռ, գորգք 'ի
'ի ներքոյ պարզեցան
Գորգք գեղեցիկք արուեստագործք, եդ
ընդ ոտիւք պատուանդան.
Մերձ եդ և իւր բազմոց ճամուկ 'ի հո-
մանեաց մեկուսի,
Զի մի շըշուկ հացկատակացն հիւրոյն
տաղտուկ լինիցի.
Եւ զի հարցմամբ ըզբացական հօրէն լիցի
իրազգած,
Մինչ բեր նաժիշտն յօսկի աման 'ի կոնք
արծաթ ջուր ձեռաց.
Եգաւ սեղանն. կինըն տնօրէն բեր զա-
ռաջեաւ եդ ըզհաց,
Եւ ժիրաժիր մատուցանէր յառձեռն ա-
ռատ 'ի խորտկաց.

Անդուստ և մեւս բազմահանդերձ տայր
խախամղքն 'ի պճնակ,
Եւ առաջին գլնէր նոցա և զոսկեղէնն ըզ
բաժակ:
Պերճուոյն Քարոզն էր մատրուուակ. մըտին
դոռողքն հոմանիք,
Առին բազմոցս, առին աթոռս, 'ի կարգ
անցին գեղեցիկ.
Ջուր տան 'ի ձեռս, և յազախնեայց
հացիւ լընուն սակառիք,
Նոքա 'ի խահս աջ կարկառեն, մատրու-
ուակեն պատանիք.
Ցարբուքն 'ի կեր լեալք կշտացինդք,
անձուկ բերեն յայլ ինչ իրս.
Ի շէր ասեմ և 'ի կաքաւ. զի այս են զարդք
խնջոյից.
Քարոզն առեալ կիթառ չքնաղ, փեմիու-
սին ետ ձեռաց.
Նա ընկալեալ և բռնադատ երգէր 'ի մէջ
հոմանեաց.
Մինչ նա զգործին ներդաշնակէր, շէր
նըւագել կարդ 'ի կարգ,
Կըքեալ ըզգլուխն, անլուր յայլոց հարց
ըզՊալլաս Տելեմաք.
«Օտանուս ընդ բանս, ո՛վ հիւրըրդ քաջ.
երգք են և քնարք գործք սոցին.
Եւ կարի՛ քաջ. զի անպատիժք խորտիկ
ծախեն զօտարին.

Որոյ սպիտակ ոսկերքն ուրեք, ո՛հ, փը-
տեալ կան յանձրևաց
Ցերկիր տապաստ, կամ թէ ՚ի ծով յու-
զեալք ծըփան ՚ի յալեաց.
Թէ նա յանկարծ դառնայր յԻթակ,
դըքա ողջոյն ցանկային
Արագոտինք յաւէտ լինել քան պերճք
՚ի ձորձ և յոսկին.
Ո՛հ, կորեաւ նա չար օրհասիւ, և յոյս-
ըն մեր հատեալ է.
Նա ոչ դարձցի, թէպէտ և մեզ ոք յերկ-
րածնաց աւետէ։
Բայց դու ասա՛, ո՞ ես, ուստի՞, և ո՞ր ծնեա
քո, ո՞ր քաղաք,
Ցո՞ր նաւ եկիր, զիա՞րդ նաւաստք ածին ըզ-
քեզ աստ յԻթակ.
Ո՞յք են նոքա. զի և անշուշտ դու ոչ հա-
սեր աստ հետի.
Ասա՛ և զայն, ա՞յն ի՞նչ եկիր. կամ հի՞ւր
իցես հայրենի.
Զի նա զմարդիկ յանկուցանէր, և շատք
գային ՚ի յարկ յայս ",
Լըւաւ ողջոյն և անդրադարձ կրկնեաց
խաժակն Աթենաս.
"Ճշգրիտ ասեմ, ես ինք Մենտէս քաջին
Անքղոսին որդի եմ.
Այլ ծովային Տափիացւոց նաւասիրացն
իշխան եմ.

Ես ընկերօք եկի աստէն հատեալ ըղծով յաղգ օտար ,
Եւ 'ի Տեմէս ալըղինձ բերեմ, երկաթ առնում 'ի վաճառ .
Նաւս 'ի բացէ կայ խարըսխեալ 'ի քաղաքէն մեկուսի ,
Ի նաւակայան 'ի Հըքէթըոսեան յանտառախիտ Նէյէսի .
Հիւր հայրենի եմ 'ի վաղուց , հօրդ ծերունւոյդ Լայերտեայ 6 ,
Զորմէ ասեն՝ թէ նա ոչ ևս 'ի քաղաքի օթանայ .
Կայ նա յանդի անդ վշտահար ընդ աղախնոյն աւսարդի ,
Որ սպաս հարեալ արբուցմն և կեր դընէ նորա առաջի ,
Յորժամ հաշեալ նա անդամօք դառնայ յիւրոց վաստակոց ,
Զոր վաստակէ յանդ արգաւանդ 'ի յայգեստանըս որթոց :
Արդ ես եկի լըւեալ ըղհօրդ ըղդարձն յերկիր հայրենի .
Այլ խոչ կան դիք . բայց դու քա՛ջ լեր , դեռ կայ Ոդիս կենդանի .
Ի ծով անդորր արգելական կայ 'ի կըղզին Ջրապարփակ ,
Եւ արք վայրագք ունին ըզնա իբր յարգելոց դժկամակ .

Թէպէտ չեմ ես այր ոք գուշակ և ոչ քա-
ջիկ հաւահարց,
Գուշակեցից ազդեալ 'ի դից, և բանս
առցէ կատարած.
Ոչ շատ կացցէ նա տարադէմ. Թէպէտ
կապեալ նա յերկաթ,
Ցանգ նիւթեսցէ ըղձարձն 'ի տուն, զի է
հնարիւք այր առատ:
Բայց ա՛ղէ դու ասա՛ զիրամն, քաջորդի՞ն
ես Ոդիսեայ.
Զի աչաղեղ, նման 'ի գլուխ յոյժ հա-
մանման ես նորա.
Մեք կենակից էաք միմեանց մինչչև լեալ
էր նաւագնաց
Ի Տրոյիա, ուր և այլք ճոխք չոքան հա-
րուստք Հելլենաց.
Այլ յայնմ օրէ ոչ ես զՈդիսս տեսի եր-
բէք, ոչ նա զիս »:
Բարբառ ուշիմն ետ Տելեմաք. « Ես քեզ
զիրամն ասացից.
Մայրն իմ ասէ, եթէ այն այր, ես ոչ
գիտեմ, զիս ծնաւ.
Զի ո՞ ոք է 'ի մարդկանէ, որ ինքն ըղ-
ծնողն իւր ծանեաւ.
Այլ եցի՜ւ թէ առն երջանկի ծնունդ
ինքնին իմ լեալ էր,
Որ յիւրում տան կենօք անդորր 'ի յա-
լևոյթ հասանէր.

Բայց արդ որ յոյժ վատաբաստիկ է 'ի
յազգի մահացուաց,
Զիս 'ի նմանէն ասեն ծընեալ, որպէս
հարցեր, հի՛ւրըդ քաջ»:
«Ո՛ւ ոչ անկած, կրկնեաց խաժակն,
ազգ դիք ետուն քեզ յապայն,
Ցաւուր յորում Պենելոպէ ըզքեզ եած
յերկան:
Բայց ա՛ղէ դու, զի՞նչ պէտք են քո, զի՞նչ
այս խուռնել, զի՞նչ խրախճան.
Կոչնականք իցեն, թէ հարսանիք. այս պար-
կեշտից չէ սեղան.
Խեռացելոց շռայլացելոց թուի ինձ այս
հացկերոյթ,
Արտամրտեսցի, զայս խեռութիւնս տե-
սեալ ոք այր խելամուտ».
«Գիտեա՛ց, ո՛վ հիւրդ, որ հարցանես,
ես Տելեմաք պատասխան.
Այս տուն երբեմն էր ճոխ ւամբիծ, ցոր-
չափ այրն այն էր 'ի տան.
Այլ արդ աստուածք յայլ միտս եղեալ
արկած նըմա կընքեցին,
Եւ 'ի մարդիկ անփառունակ ըղնա յա-
չաց ծածկեցին.
Ողբ չէր այնչափ, թէ ընդ համհարզս էր
նա մեռեալ յԵղիոն,
Կամ թէ 'ի ձեռս բարեկամաց մարտին
տարեալ ըղպաշտօն.

Զի Յոյնք շիրիմ տային Նըման, և ինքն իւր
շուք զաւակին ,
Շուք մեծ յապայս . բայց արդ Արոպեանք
ըղձա անշուք կապտեցին .
Աւա՜ղ կորեաւ անտես, անլուր . ինձ Թող
լալիս և կսկիծ .
Եւ այս չէ շատ . աստուածքն անգուստ
ինձ նիւթեցին այլ Թախիծ .
Զի որք կղզեաց տեարք են աւագք , Դու-
լիքոսին և Սամեայ ,
Նոյն անտառուտ Զակինթոսին և առա-
պարն Իթակայ ,
Մօրն իմ տարփան , ըզտունս քանդեն ,
և հարստանիս զայն գժնին
Նա ո՛չ մերժէ ո՛չ յանձն առնու . նոքա
ծախեն ըզտունն իմ .
Նոքա և զիս փոյթ ծախեսցեն ” . ըլսաւ
Պալլաս աղեկէզ .
“ Բա՜րէ , աւէր , քաջն Ոդիւսեայ քեզ
արդ պէտք են մեծապէս .
Նա զըլրացեալսդ 'ի քուռն արկեալ կաց-
ցէ 'ի սեամս իւր յարկին
Սաղաւարտին և ասպարաւն և աէգ կըռ-
կին 'ի բըռւին ,
Որպէս եւ նախ տեսի ըղձա 'ի խրախճա-
նի 'ի մեր տան ,
Երբ յԵփիւրեայ նա դարձ առար 'ի յԻ-
ղիոս Մերմերեան .

Քանզի յԷփիւր երթեալ Ոգիս արա-
գապէս նաւագնաց,
Թոյն մահացու խնդրէր անդուստ մխել
ըղձայրըս փրքնաց.
Սակայն Խղճս ոչ ետ նըմա դիցն ակն ա-
ծեալ յաւերժից.
Այլ զի հայրն իմ սիրէր զՈգիս, ետ նը-
մա զայն ըստ ըղձիցն։
Արդ եթէ սատ գայր նա այնպէս 'ի զէն
վառեալ գեղեցիկ,
Արագամահ առնէր զսոսա, յողբ դառ-
նային հարսանիք։
Բայց թէ 'ի տուն դառնայց, թէ ոչ, թո՛ղ
զայն աստուածք կնքեսցեն.
Դու այժմ ուշիմ լե՛ր 'ի վանել ըղձոմա-
նիսդ 'ի տանէն։
Լո՛ւր զոր ասեմ. վաղիւ յատեան խմբեա՛
զաւագս Աքայեանց.
Խօսեա՛ց, վըկայք լիցին Աստուածք, ձա՛յն
տուր ցըրուել հոմանեաց։
Իսկ թէ ճշգրիտ մայրն հարսանեաց ան-
ձուկ բերէ 'ի յոգին,
Թո՛ղ նա դարձցի առ հայրն 'ի տուն ճոխ
և աւագ ծընողին.
Տացեն նըմա ըղհարսանիսն, տացեն օժիտ
առ 'ի նոյն,
Օժիտ շըքեղ, որչափ 'ի ճահ իցէ դստեր
սիրայնոյն։

Բայց դու հնազանդ, լուր խորհրդոյս,
ա՛ռ Թիավարս քաջ քըսան,
Լե՛ր նաւազնաց, յածեա՛ց խնդրել լուր
ինչ ըզհօրդ բացական.
Տացէ Թերևս մարդ ոք, կամ Զևս գաղտ-
նեաց մարդկան մակացուն
Այլ նախ 'ի Պիւղ երթ առ Նեստոր,
հա՛րց դիւցազնին ծերունւոյն:
Անդուստ խարտեաշն առ Մենելաւ երթ
'ի Սպարտա տարադէմ,
Այն որ վերջին դարձաւ 'ի տուն յԱ-
քայեցւոց 'ի մարտէն:
Թէ կեանս և դարձ լըսես ըզհօրդ, ցա-
ւով ժուժեա՛ տարի մի,
Այլ' եթէ զմահ լըսես նորա, դարձի՛ր
յերկիրդ հայրենի.
Շիրիմ դամբան կանգնեա՛ նըմա, և դիւ-
հանս գեղեցիկ
Տացես նըմա ըստ արժանւոյն, և մօր
քում տո՛ւր հարսանիք.
Զայս արարեալ խորհեա՛ց ապա և ուշի՛մ
լեր 'ի յոգի,
Զիա՛րդ 'ի տանդ, մահ հոմանեաց տա-
ցես դաւով կամ յայտնի.
Ըզհետ մնոտեաց մի կրթեսցիս, տիօք
արդ դու չես տղայ.
Ըզչուք փառացն որ յընդհանուրս ո՞չ
լըւար դու զՈրեստեայ.

Որ զշուառաճանըն զընդխնթոս տապաստ
էարկ անվեհեր

Ջարեանապըրուն հօր իւր քաջի . արդոյդ
յաւէտ դու քա՛ջ լեր .

Զի փառս յապայս տայցեն եւ քեզ . բայց
ես 'ի նաւս արդ փութամ,

Գըրկից զընկերս որ անդ թերևս գժկա_
մակեալք ինձ մընան .

Այլ դու զիմ բանս յուշի կապեա՛լ »:
Լըւաւ ուշիմն եւ բարբառ .

« Քա՛ջ խօսիս, հիւրդ, ճշմարիտ որպէս
ընդ իւր զաւակ խօսի հայր .

Ո՛չ մոռացայց . այլ կա՛ց վայր մի, թէ_
պէտ փութաս, ջուր տաց քեզ .

Լուացիս զըւարթ և խրախացեալ ձօն
մի 'ի նաւըդ տարցես .

Զձօն պատուական և հոյակապ քեզ առ_
յինէն յիշատակ,

Որպէս հիւրոյթ հիւրըքըն հիւրոց պատ_
ուասիրեն փոխանակ »:

«Մ՛ի, որ փութամս, կըկնեաց Պալլաս,
մի՛ արգելցես 'ի յուղւոյն .

Զձօն, զոր կամիս, 'ի դարձն այսրէն տո՛ւր
ինձ տանել 'ի յիմ տուն .

Թէպէտ և ձօն տաս հոյակապ, ես տաց
արժան փոխադարձ »:

Ասաց խաժակն և սրաթևեալ իբրև զար_
ծուի անց գընաց :

Տեղեմնաբերայ այգեաց ՚ի սերս կորամեալ աւշ-
խոյժ գերուննակ.

Եւ զերկրոյ հօրն, քան զոր յառաջն, յոր-
դեաց նըման յիշատակ:

Ի մեռս եկեալ յապաւշ հարաւ, խիթայր
եթէ Աստուած է.

Յարեաւ արագ վեհ պատանին առ հօ-
մաննիս մերանէ:

Երգեր երգիչն ըզ դարձն Յունաց, Նոքա
ըռուիկ ըռուէին,

Դարձ զըժնդակ ՚ի Տրոյիոյ, զոր Աթե-
նուան եռ նոցին:

Ի վերնատան յիւր սենեկին երգ զիւ-
ցազնեան կիթառին

Յունիկըն հարաւ Պենելոպեայ ուշիմ դըս-
տերն Իկարիին.

Սանդուղան ընդ բարձր էջ, չէր միայն,
կրկին կայէին աղախնեայք,

Մինչև եհաս առ հոմանիս անկեաց ան-
կեն գերայարգ.

Արձանացաւ եկաց առ սեամս ՚ի գեղա-
չէն տաճարին,

Նաեւ զերկին զայտայն քօղէր ՚ի գլխա-
շուքն ՚ի շարէն.

Նաժիշտըքն անդէն պարկեշտացեալք կա-
յին յաջմէ յահեկէ,

Իմքն արտասուալք առ վեհ երգիչն այս-
պէս բարբառ արձակէ.

« Շատ այլ նուագ գիտես, փեմէ, երգ
հեշտաընկալ լսելեաց,
Մրցանք մարդկան և Աստուածոց նիւթք
պանծալիք քնարաց.
Դու զմի նոցուն ա՛ռ 'ի նուագ, դոքա
բաժակ առցեն լուռ.
Վայր մի Թող զերգդ, երգ սրտատանջ
է դա ունկանս դառնալուր.
Դու զիս անչափ գրաւես ցաւով, ան-
ձուկ բերեմ ես քաջին,
Զայրն յուշ ածեալ համբաւատենչ բո-
լոր Յունաց աշխարհին »:
Մա՛յր իմ, առ ի՞նչ, ձայն Տելեմաքն ու-
չիմ կարդաց քաղցրապէս.
Դու հրաշացեալ երգէ զուարթ, դու աշ-
խուժից սա՞նձ զինես.
Բա՛ սկզբնաւորութք չեն ինչ Երգիչք, Դիոս
ինքնին է պատճառ,
Որ ճարտարաց, որպէս կամի, իւրաքան-
չիւր տայ հանճար.
Դմա չէք մեղ, որ զչարաբաղդն երգէ
ըզ դէպս Աքայեանց.
Գովեն մարդիկ զնուագ երգոյն նորոգա-
լուր լսելեաց.
Լե՛ր դու 'ի լուրդ համբերատար. Ոդիւս
միայն չէ անդարձ.
Ի Տրոյիա բազումք և այլք տապաստ ան-
կան դիւցազանց.

Դարձի՛ր 'ի տուն, դա՛րձ դու 'ի սպաս 'ի
 յաղէկատ և յոստայն,
Ժրացո՛ ըզգաման և զաղախնեայց. Թո՛ղ
 մեզ արանցս ասել բան.
Թո՛ղ ինձ յաւէտ որ տէր եմ տանս ". Լը-
 ւաւ զայն մայրն, հիանայր.
Դարձաւ 'ի տուն և զհանճարեղ բան զա-
 ւակին որոճայր.
Ի վերնատունն եւ ընդ կանանց, լայր
 զի՛ւր Ոդիսեան անձնըման,
Մինչև Պալլաս յարտևանունս քուն մի
 եհեղ քաղցրութեան:
Իսկ հոմանիք ընդ մութ յարկին խըռով
 հարեալք հասարակ,
Անձուկ բերին 'ի յանկողին, մինչև ձայն
 ետ Տելեմաք.
" Վէպք տարփածուք դուք մօրն իմոյ,
 լուռ խրախասցուք 'ի կոչնոց,
Լուռ ո՛ւնկն հարցուք քաջ հագներգուին.
 աւաչն է ձայն Աստուծոց:
Վաղիւ ընդ այգն յատեան խմբեալք ձեզ
 բան ազդոյ խօսեցայց,
Թողէք զիմ տուն, կերայք ըզձերն, հաց
 խնդրեցէք ըզմիմեանց:
Ա՜հ եթէ ձեզ լաւ այն թուի զպարէնս
 ծախել ըզմիոյն,
Եկա՛յք վատնել. այլ ես բողոք դիցն յա-
 ւերժից տամ պարուն.

Վեհն Արամազդ տացէ անշուշտ ընդդէմ
ձերոց խեռութեանց,
Եւ դուք անվրէժք տապաստ արկջիք 'ի
մէջ յարկին պատուարաց »:
Յապուշ հարան ամ 'ի բերան հիա֊
ցեալք ընդ բան սաստկութեան,
Մինչեւ անդուստ ձայն արձակեաց Անուշ
Նուաս Եւպիթեան.
« Անշուշտ ըզքեզ, ո՜ Ցեւլեմաք, արդ հրա֊
շացոյց վեհն Աստուած,
Եւ եզ ըզքեզ բարձրաբարբառ իբրեւ աչ֊
խոյժ բեմբասաց.
Գուցէ կողւոյն մեր Իթակայ քեզ Արա֊
մազդ Զրոսանեան
Թագ կապեսցէ, իբրու ձեռիւ ժառանգ
ես դու հայրական ».
Կրկնեաց ուշիմն. « Ո՞ Անտինէ, թէ և
սրտնիս, ասասցից.
Քաջ իսկ և զայդ, թէ Արամազդ տացէ
յիմ ձեռս, յանձն առից.
Կարծես անարգ զայդ 'ի մարդիկ. բա՛ն չէ
յոռի թագ կապել.
Ընչիւք զեղուն է յարկն նորա, և շուք առ֊
նու անարգել.
Բայց են և շատք աւագք Յունաց, ծերք,
պատանիք յԻթակէ,
Թո՛ղ մին նոցուն թագ կապեսցէ, զի Ո֊
դիւսէս մեռեալ է.

Այլ ես, զոր ինձ հայրն իմ եթող, և
ծառայից և մեր տան

կարգից իշխան »: Լըւաւ կրկնեաց Եւրի-
մաքոս Պողիւբեան.

“Թագն Իթակայ, ո՛ Տելեմաք, ՚ի կամս
յանձին է աստուածեան.

Բայց դու ընչքոյդ կա՛լ առանձին և ՚ի
տան քում կա՛ց իշխան.

Այր քեզ ո՛չ ոք բռնան արասցէ ցորչափ
բնակիս յԻթակէ.

Բայց կամիմ հարցումն առնել ես ընդհիւ-
րոյն զայնմանէ.

Ուստի՞ է այրն, յո՞րմէ երկրէ, ո՞ւր նորա
ազգն և աշխարհ.

Լուր ընդհօրէդ եբե՞ր կամ աստ պատճառ պա-
հանջել դարձ տրար.

Զիա՞րդ յանկարծ անյայտացաւ, զան-
խուլ եկաց հիւրն աւաղ,

Բա՛ց կերպարան ազնիւ էր նորա »: Լըւաւ
կրկնեաց Տելեմաք.

« Լուր ընդհօրէս, ո՛ Եւրիմաք, չառնից ան-
շուշտ, անդարձ է.

Գուշակութեան արդ չեն ինչ պէտք, իմ
մայրս ՚ի տուն ոչ կոչէ.

Իսկ հիւրն է հօրս հիւր ՚ի Տափեայ Մեն-
տէս որդի Անքեալայ,

Եւ ինքն այժմիկ Տափիացւոց նաւասի-
րացն իշխան կայ »:

Ասաց այսպէս, բայց նա գիտէր գալուստ զանմահ դիցուհւոյն.
Նոքա 'ի պար և յերգ անոյշ հրճուեալք միայն ցերեկոյն:
[illegible]աս մութ խաւարն, այր այր 'ի նինջ չոքան 'ի տուն յանկողին,
Եւ Տելեմաք 'ի բարձրայարկ պերճ յառագաստն 'ի գաւթին.
Վայր յերեւան. անդ եւ նինջեւ. շատ ինչ լինէր մտախորհ.
Էր ընդ նմա Եւրիակլէս ծերագ բարձեալ ջահաւոր.
Պիսենորեան սա Ոպեայ դուստր ընդծն պարկեշտ 'ի կանանց,
Զոր Լայերտէս գնեաց առոյգ, գինըն քսանից էր եզանց.
Շուք ըզպարկեշտ զեւր ամուսնոյն տայր և նմա հաւասար,
Բայց և երբէք չեմուտ առ նա, զի լըծակցին պատկառ կայր.
Սա ծրագ 'ի ձեռն էր ընդ նմա, զի քան ամէն աղախնեայք
Գորգայր ըզնա, և ինք սընոյց մինչ մանուկ էր Տելեմաք.
Սա յառաջեալ եբաց ըզդուրս առագաստին գեղաշուք,
Նա 'ի մահճին նստեալ հանէր ըզ պատմուճան զեւր փափուկ.

Ետ զայն 'ի ձեռս ժիր աւսարդին, նա
զայն յարեաց և ծալեաց,
կախեաց ընդ սեպն առ պերճ մահճին,
յառագաստէն ել գընաց.
Առարկանէր ձըգեալ ըզդուրս 'ի յար-
ծաթին 'ի մանեակ,
Եւ խընամով ըզգուշացեալ պնդեաց փո-
կով փականակ:
Զողջոյն գիշերն անդ նա ծածկեալ 'ի
դիրգ ասուին ծաղկազգեաց,
կայր մըտախորհ յաղագս ուղւոյն, զոր
Աթենաս պատուիրեաց:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ատեան ժողովոյ յԻթակէ։ Տելեմաք բողոք հարկանէ զհոմանեաց մօր իւրոյ առ ժողովուրդն։ Անտինոոս պարագլուխն հոմանեաց, զանգատէ զնենգութէ̃ մօրն. և տայ ստիպել մօրն 'ի հարսնանալ. Տելեմաք ընդդէմ կքրի բանին։ Արամազդ արծուիս երկուս առաքէ յԻթակէ. Ալիթերսիոս ծերունին գուշակէ զմօտալուտ դարձ Ոդիսեայ 'ի տուն։ Տելեմաք պատրաստի 'ի նաւագնացութիւն 'ի Պիւղոս առ Նեստոր ծերունին, և 'ի Սպարտա առ Մենելաոս արքայ։ Մենտոր գրգռէ զժողովուրդն ընդդէմ հոմանեացն Պենելոպեայ։ Նաւակից Տելեմաքեայ լինի Աթենաս ընդ կերպարանաւ Մենտորի։ Տելեմաք պարենաւորի 'ի դայեկէն իւրմէ յԵւրիկլեայ. նաւէ ընդ Մենտորի, յոր կերպարանեալ է Աթենաս։



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Բ.

*Ընդ վարդամատն առաւօտուն գայր 'ի*
*յաշխարհն յերեւան ,*
*Եւ յանկողնոյն մեծն Ոդիւսեայ յառնէր*
*որդին անընման .*
*Արկաւ հանդերձ և ըզսուսերն յուսոյն*
*իւրմէ առ կախեաց ,*
*Եւ ըզկօշիկսըն գեղեցիկ 'ի գիրգ 'ի յոտ-*
*սըն կապեաց .*
*Յառագաստէն ել գիւցաբար արագ ա-*
*րագ տայր հրաման*
*Քաջաձայնիցըն Քարոզից խմբել ըզ Յոյնս*
*'ի յատեան :*

Սոքա հայնեն, նոքա խմբեալք 'ի մի եկին հաւասարակ,
Եւ Տելեմաք 'ի ձեռն աշտէն խաղայր և չէր միայնակ.
Բարակք երկուք ըղձեա դայլին. և շուք 'ի նա դիւցազնեան
Հեղ Աթենաս, և ընդ քայլելն ողջոյն յակձիւս կայր խուժան։
Յաթոռ նստաւ 'ի հայրենին, տեղի ետուն ծերունիք,
Յարեաւ դիւցազն Եգիպտացին, բան խօսեցաւ գեղեցիկ.
Սա ծերութեամբ քամակաբեկ, և էր նա յոյժ բազմագէտ.
Ընդ Ոդիւսեայ նորա որդին երթ յԻղիոն ձիաւէտ.
Էր Անտիփոսն արի մարտիկ զոր կեր Կիկղոպըն վերադ,
Գոհեալ 'ի խոր քարանձաւին վերջին ընթրեաց իւր ճաշակ։
Երեք և այլք. մին Եւրինոմ էր համանեացն յերախան,
Իսկ միւս որդիք խնամակալուք կային գոյիցն հայրական։
Այլ զԱնտիփոսն ոչ մոռացաւ լայր հանապազ սգազգեաց.
Այս ծերունի ձայն ետ յայնժամ աչքըն թացեալ յարտասուաց։

“ Ինձ ունկըն դիք Իթակացիք, երբեք
մեք ոչ խմբեցաք
Յորմէ հետէ նաւազնացիկ եղև Ոդիւսն
այն աւագ.
Ո՞ արդ խմբեաց, և զի՞նչ էր հարկ, թէ
պատանի թէ ծեր այր.
Արդեօք նա գո՞յժ լուաւ զօրաց գրոհեալ
'ի մեզ հինաբար.
Զոր մեզ յառեանս 'ի վեր բերցէ ինքըն
լուեալ առաջին.
Կամ թէ ինչ մի հասարակաց յօգուտ յայտ-
նել քաղաքին.
Որ զի՞նչ և է, այր մարդասէր առաքինի
թուի դա,
Եւ միտք դորա յի՞նչ և խոկան, բարիս
գտցէ 'ի Դիւայ ”։
Օ՛ այս ծերունին. և ցնծացաւ Ոդիսեւ-
սին պերճ որդի.
Ո՛չ այլ ժուժեաց. խրախոյս առեալ
կաց նա 'ի մէջ ատենի.
Ի ձեռս նորա եդ գաւազան Պիսենոր քա-
րոզն այն ուշիմ.
Իսկ Տելեմաք նախաձայնէր ուղղեալ առ
այն ծերունին.
« Չէ հեռի այրն, ո՛վ ծերունիդ, որ
զայս ատեանըս խմբեաց,
Քեզ 'ի մօտ կայ. այլ անսահման արդ
ըղձա ցաւ պարանեաց

Հրոսակ զօրու ոչ գուժեաց մեզ, զի յայտ-
նեցից առաւօտին,
Ոչ և ինչ մի հասարակաց ոճիմ ասել ա-
տենին.
Այլ զիմ կրկին աղէտըն լամ, որ գու-
ժեցաւ յիմ տաճար.
Նախ պերճ ըզ հայրն իմ կորուսի զար-
քայն ձեր հեզ իբրու հայր.
Իսկ և երկրորդն յոյժ դառնագոյն, զի
իմ մարդակքս արդ քանդին,
Արագ արագ և գոյք, պարէնքս ողջոյն 'ի
՚չէք լուծանին.
Մօրս դժկամակ կան տարփածուք որդւեք
կղզւոյս աւագաց.
Խուսեն երթալ տուն յիւկայրեն, տալ
ձիր դստերն հարսանեաց.
Օժտել ըզնա և տալ ըզդուստրն ում և
հաճի միանգամ
Վասն այն յիմ տուն այս տարփածուք
խնծղիւք պարեալ թափեցան.
Անդեայս, օդիս, և յոյրս այծեաց զօր
ամենայն փողոտեն,
Խրախճան կազմեն, շատ ինչ վատնեալ
'ի գինեըբուս շուայտեն.
Չէք ատ Ոդիւս սանձող ժանտեցդ, և
ես անկած 'ի յուժի
Չեմ արութեանց փորձ 'ի բազուկ, որ 'ի
յարկէս վարէի։

Ո՛վ թէ մարթ էր. մեծ են աղուհք. զի տուհն իմ կայ 'ի կործան.

Ցիս, տէարք իմ, յիս. դուք ա՛կն ածէք այս որերոյս, որ շուրջ կան.

Դիցըն ցասման պատկառ կացէք, մի՛ զխեռութեան վրէժ առցէն.

Մաղթեմ 'ի Զևս, և 'ի Թեմիս, 8 որ զմեզ խմբեն և քակեն:

Թո՛յլ, բարեկամք, տուք ինձ ցաւել յազէտ հօրն իմ միայնակ.

Եւ թէ թերևս հայրն իմ Ոդիւս գործեաց Յունաց դժկամակ,

Եւ արդ 'ի վրէժ դրդեալ զդոսա, զիս ինքն աստէն չարչարէք,

Այլ լաւ է ինձ, դուք զկարասին դուք ըզհասն իմ ծախեցէք.

Թէ դուք ուտէք, բա՛ հատուսջէք յորժամ 'ի ձէնջ ժըտեցից,

Ցանդ դեգերեալ առ դուրըս ձեր մինչև ողջոյն գարձուցից.

Բայց արդ զոգին իմ հարկանէք յանբուժելին 'ի վերայ ».

Ասաց ցասմամբ, արկ զդաւաղան, վըտակս հոսէր արտասուաց:

Ի գութ հարան անդ ժողովուրդք. այլքն հասարակ լռեցին,

Ժըտեաց ո՛չ ոք 'ի Տելեմաք պարսել բանիւք յատենին:

Անմխիթարս ձայն ետ միայն. « Բարձրս
    բարբառեաց Ցեղեմաք,
Անամնձգ 'ի Թափ, զի՞նչ խօսեցար, ե-
    դիր ըզմեզ նըշաւակ.
Կամիս բարուր մեզ կըցկըցել. չեք մեզ
    Յունացս հոմանեաց.
Մայր քո սիրոյն դա է պատճառք, կին
    խորագէտ հնարիմաց.
Երրորդ ամ է և հաս չորրորդն, ըզՅոյնս
    դաւէ վայր 'ի վեր,
Յոյս տայ բնաւից, յայր այր բան տայ
    յղեալ նոցա ըզբանբեր:
Բայց ի՞նչ յայլ միտս նենգ նոր նիւ-
    թեալ, ոստայն նիւտայ գէրգ և լայն,
Նստեալ 'ի տան յայն վաստակէ և բար-
    բառի մեզ զայս բան.
« Օ՜ն, պատանիք իմ տարփածուք, մե-
    ռաւ Ոդիւսն իմ այր.
Ա՛ղէ ժամ տուք իմ հարսանեաց, մինչև
    ոստայնն կատարի.
Մի՛ թելքս 'ի զուր ինձ վատնեսցին, ես
    Լայերտեայ ձորձ նիւտամ,
Պատան ծերոյն, երբ մահ նմջէ զերկայ-
    նաքունն 'ի տապան,
Այնպէս դիւցազն ըն հանգիցէ. մի ինձ
    յոյն կին դիցէ մեզ,
Թէ ահա զուրկ 'ի պատանէ անկեալ կայ
    ծերն այն ընչեղ:

Ասաց, խաբեաց. և ինքն ըղձոյս նստեալ
 նիստայր զմեծ ոստայնն,
Իսկ ըղձփիշերին անդրէն քակէր, ըղձքմանցն
 առեալ օգնական 9 :
Այսպէս զերեամ նենգեաց Յունաց,
 մինչ ժամքն հասին չորրորդին,
Եւ մեզ յայտնեաց ոմն 'ի կանանց, որ
 քաջ գիտակ էր դաւին:
Գտաք ըզնա, քակէր զոստայն զայն
 հոյակապն և արձակ,
Եւ հարկեցաւ 'ի գլուխ տանել թէպէտ
 ինքն էր դժկամակ.
Զայս դու գիտեա 'ի հոմանեաց և Յոյնք
 գիտունք լինիցին.
Հան դու ըզմայրդ. տուր հարսնանալ
 ըստ հօր կամաց և անձին:
Իսկ թէ տանջէ դեռ շատ ըզՅոյնս 'ի միտս
 եղեալ խորագգած
Որչափ Պալլաս ուշ, գաւմս, հանճար ետ
 նըմա գործս ճարտարաց,
(Որք և նըման և ոչ առ հինս յոյն գեղա-
 վարս բամբըշաց,
Ոչ վեհ Տիւրոյն, ոչ պերճ Միւկենէն և
 ոչ դարձեալ Աղկմենաս,
Որ շաք սոցաւն 'ի գիտ հնարից Պենելո-
 պայն գայր կըշիռ),
Նա զայս նըւաղ ոչ լաւացաւ, մինչե-
 նայեաց 'ի նամիր:

Զի դուք, պարէնքն քո արդ ծախին, ցոր-
չափ դա նոյն կայ մնայ
Ի նոյն խորհուրդ, զոր այժմ աստուածք
արկին 'ի սիրտ 'ի նորա ։
Անշուշտ շուք մեծ սագրէ անձին, այլ
զքեզ թողու նա անքատ.
Եւ մեք 'ի գործ չերթամք այլուր, կամք
'ի խորհուրդ մեր հաստատ.
Մինչև փեսայ առցէ զընտրեալն ». ըւ-
ւաւ կրկնեաց Տելեմաք.
« Չէք, Անտինե, քա՛ւ չեք ըզմայր վարել
տանէն դժկամակ.
Նա զիս ծընաւ, նա զիս սընոյց. և հայրն
իմ կեա՜յ, ոչ գիտեմ.
Եւ դառն է ինձ թէ զօժտադանձ մայրն
իմ առ հայրն արձակեմ.
Անշուշտ զանէծս առից ըզհօրս. անշուշտ
ցասնու և աստուած,
Զի մայրս վարեալ ինձ գուժեսցէ խու-
ժան զահեղ Ճիւաղաց 10.
Նաև մարդիկ զիս զզուեսցեն. քա՛ւ ինձ
բանդ այդ, քա՛ւ լինէն.
Իսկ թէ ընդ բանս իմ սրտմըտիք, օ՞ն դուք
ելէք 'ի տանէն ։
Ո՞վ դառնութեանս. ձեզ միասանդամ
ձեզ բան աղդոյ խօսեցայց.
Գըտէք այլ հաց. կերա՛յք ըզձերն, և
դուք միմեանց ելէք յայց.

Ապ՛ եթէ ձեզ այն լաւ թուի, զպարէն
ծախել ըղձիոյն,
Բա՛ ծախեցէք. այլ ես բողոք դիցն յա-
ւերժից տամ պարուն.
Վեհն Արամազդ անշուշտ ըղվրէժն առ-
ցէ զձերոց խեռութեանց,
Եւ դուք 'ի վրէժ անկջիք տապաստ 'ի
մէջ յարկիս պատուարաց »:
Նոյն ինչ ասաց, Ամպրոպայինն յար-
տևանէն 'ի լերին
Արծուիս կրկին յղեաց Նըմա. թևապար-
եալք ճախրէին.
Մօտ առ միմեանս հոլաթևեանք 'ի թևս
հողմոց սաւառնէին,
Մինչև եկեալ 'ի յոգնախումբ մէջ ա-
տենին ժամանեն.
Անդ ճախր առեալք թօթափեցին զվա-
րազաթեան ամեհի,
Խեթիւ յայր այր ըզմահ գուժեալ՝ ակ-
նարկէին կշռակի.
Մագլջք ապա զայտսն ցետեալ և պա-
րանոցս ըղձիմեանց,
Թըռեան յաջմէ 'ի քաղաքին 'ի բարձրա-
յարկս տաճարաց:
Յապուշ հարեալք ընդ խէթ տեսլեան
խոճոճէին ըզնշան,
Մինչև դիւցազն յարեաւ ձայն ետ ծերն
Ալիթերս Մաստորեան.

Սա գոյժ կարդաց, 'ի հառաչանաց համատարոց վեհագոյն,

Ուշիմն էր ձայն. և Լուսաբանք, ասէր, Իթակացիք իմն ողջոյն.

Ի հոմանիսն յանկեղն հրճուքս, նոցա աղէտ մեծ գուժայ,

Եւ չէ Ողբս երկայն տաղերք 'ի պերճլեաց քաղաքաց.

Սառեք յանկարծ նա երեկեալ բնաւից օրհասս առթեսցէ,

Նաեւ շատից որ աստ բնակեալք լուսաւորհմանն յԻթակէ.

Ջառաջս առացուք սահմանել դգլուխ, ըղձօնասցին և ինքնին.

Լաւ է նոցա. չեմ ղուր գուշակ, ներհուն հմայից եմ յազգին.

Ահա ըղձաւ առ այրն ողջոյն գուշակութեանց իմ հանդէս,

Երբ յԻլիոն ընդ Արգոսեանց ել և ուշիմն Ոդիւսէս,

Թէ վշտասցի և անծանօթ զուրկ յընկերացն առանձին

Քսանամեայ դարձցի 'ի տուն. բանքս իմ ահա կատարին »:

« Լռէ, դու ծեր, ձայն Պողիւբեան Եւրիմաքոսն արձակեաց.

Երթ լեր գուշակ դու որդւոց տանդ, մի ինչ կրեսցեն չար յապայս.

Ի յայս հրճուանս ես քան զքեզ յոյժ գե-
րազանց եմ գուշակ ,
Շառաչք ընդ արփիւով չողան թռչունք , այլ
չեն ամէնք չարահմայք ։
Կորեաւ Որդիս տարաշխարհիկ , յան-
կարծ և դու ընդ նմա ,
Զի ոչ այժմիկ այդչափ հրճուանս բարբառե-
չէիր , ով ռաւկայ .
Եւ ոչ ցասմամբ մեզ դրդէիր ըզ Տելե-
մայք պատուանին ,
Թերևս ձրիից դու 'ի նմանէն ապաստեալ 'ի
քում 'ի յարկին .
Այլ քեզ ասեմ որ և լեցի , թէ դու զերթ
ծեր բազմադէտ
Խաբեալ ըղձս բորբեալ ցասմամբ ձրդես
ընդ մեզ առ 'ի խէթ ,
Զեան առաջին գործես նմա , յայլ էինչ
չիցես բաւական ,
Եւ մեք , ով ծեր , քեզ խիտ առ խիտ այժ
բարդեսցուք անսահման .
Զոր վըճարեալ դըժուարեցիս ցաւովք
տանջեալ 'ի յոգի .
Այլ պատահեալդ ես տաց յըղել ըզմայրն
'ի տուն հայրենի .
Տացեն նըմա ըզհարսանիս , տացեն օժիտ
առ 'ի նորա ,
Օժիտ շըքեղ որչափ 'ի Ճահ իցէ դստեր
սիրայնոյն .

Քա՛ւ եթէ Ցոյնք գլխացին երբէք յայս
հարսանեաց դըժնդակ,
Զի մեզ ահ ոք ո՛չ արկանէ, և ոչ բազմա-
բանն Տելեմաք.
Գուշակութեանդ մեք ունչս առնեմք,
զոր ծերդ ընդ օդ բարբառիս.
Դու ատեցիս, և պատասխանւոյդ շատ վատ-
նեսցին կարասի.
Ցորչափ ժամ տայ կինն հարսանեաց,
մեք ցանդ մրցնամք պայքարել
Վասն լաւին. չըղձնամք առ այլս՝ զոր մեզ
'ի ձահ է ածել":
"Լուր, Եւրիմաք, և դուք սեզեխք,
կրկնեաց ուշիմն, արդ շատ է.
Քաջ խսկ արդէն գիտեն զայս դիքն և
յոյն ամէն քաջ գիտէ:
Գէթ նաւ տուք ինձ և ծովագէտ քսան
թուով թիավար,
Ի Սպարտիա և յաւազուտն 'ի Պիւղ առ-
նել ճանապարհ.
Հարցից գիտել ընտարագէմ հօրն իմ
ըղձարձ և զողջոյն,
Թերևս պատմէ մարդ ոք կամ Զևս գաղտ-
նեաց մարդկան մակացուն.
Թէ զկեանս և դարձ լսեմ ըզհօրս, ժու-
ժամ ցաւով տարի մի.
Ապ' եթէ զմահ լսեմ նորա, դառնամ
յերկիրս հայրենի.

Շիրիմ դամբան կանգնեմ նըմա, և դիւ-
հանս գեղեցիկ
Տաց ես նըմա ըստ արժանւոյն, և մօրն
իմ տաց հարսանիքս ":

Ասաց, նստաւ. յարեաւ Մենտոր ու-
շիմն ընկեր Ոդիւսեայ,
Որ 'ի չուելն ողջոյն ըզտունն 'ի ձեռս
յանձնեալ էր սորա,
Անսալ ծերոյն և պահապան ամենայնին
գոլ անքուն.
Արդ սա ձայն ետ. " Լուարո՛ւք, ասէ
Իթակացիք ինձ ողջոյն.
Ձէք ոք, չէք այլ, չէք հեզ արքայ և բա-
րերար մարդասէր,
Այլ ցանգ դժնի և դըժնդակ իցէ՞ ար-
գեամբք փառաւորեր.
Բայց ա՛ղէ դուք, զի՞ յիշատակ չառնէ ոք
քաջին Ոդիւսեայ
Որ իբրև հայր առ հասարակ նա հրաշա-
ցաւ հեզ արքայ.
Արդ բուռն ըզկիրս ես աւադիկ լռեալ
զժանտից տարփածուաց,
Որք մահու չափ տուն զՈդիւսեայ առնեն
աւեր և այրեաց,
Իբրու ըզնա անդարձ ասեն. ես ժողո-
վո՛ւրդք ձեզ ցասեայց,
Ձի՞ ողջ լռեալ կայք, զի՞ սանձ բազումքդ
ոչ տայք նուազունց հոմանեաց ":

"Պա՛յ ժամու խելար, զի՞նչ խօսեցար,
Ձայնեաց Լուկրիա Եւմորեան.
Ծրագի՞ս, Մենտոր, մեզ ամենահարկու դրդել
ընդդէմ ըզխուժան.
Դժնդակ է, թէպէտ բազումք ամքրս
կոչնոց ընդդէմ մեզ
Ի վէգ ելցեն, թէպէտ և ինքն Իթակա-
ցին Ոդիսեւս.
Թէ նա ըզվէասս ղայս կոչնականս վարել
տանէն ժըտեացի,
Կինն անձկայրեաց զայլոյն նորա ոչ խըն-
դացէ 'ի յոգի.
Զի ընդ բազումս կըռուեալ անկցի. ուս-
տի դու զուր խօսեցար:
Հապա արդ, դուք ժողովուրդք, գնա-
ցէք 'ի գործ, 'ի վաճառ:
Թո՛ղ աստ Մենտոր և Ալիթերս իւր բա-
րեկամքն հայրենիք
Ուղղոյ դիցեն ըզ Տելեմաք 'ի ճանապարհ
տարաձիգ.
Այլ ես կարծեմ, սա յԻթակէ նստեալ
անդորր յիւրում տան,
Առցէ ըզլուրն և վայրապար լիցի նորայն
արշաւան":
Ասաց, անդէն ելոյծ զատեանն 'ի տուն
չոքան առանձինն.
Սեղեխք գընան յարկն Ոդիսեւսայ, բայց
էջ 'ի ծով պատանին.

Լուացեալ ըզձեռս առ ծովափամբ ձայն
յԱթենաս արձակէր.
« Լո՛ւր ինձ խաժակն, որ դու երեկ եկիր, աստուած, ՚ի տուն մեր.
Հրաման ետուր գիտել զհօրէս ընդ ծով
նաւեալ կապուտակ,
Արդ Ցոյնք բանիրդ, յաւէտ սեղեխք վէսքըն լինին խոչընդակ »:
Այն ինչ մաղթեաց, մատեաւ Պալլաս
ըզտիպն առեալ Մենտորի,
Ցիրանն, ՚ի ձայնն համանմանեալ ձայն
արձակեաց խրախուսի.
« Մի՛ վատ, մի՛ յոյլ լիցիս երբէք. զոգին զգեցի՛ր հայրական,
Լե՛ր Տելեմաք իբրու զՈդիւս ՚ի գործ
մարթուն և ՚ի բան.
Ի զուր չելցէ քոյդ արշաւան. իսկ թէ
նորա չես զաւակ,
Եւ չէ մայր քո Պենելոպէ, խիթամ զո՛ւր
է քո վաստակ:
Նուազունք յորդւոց են հօր նըմանք, և
բազումք են ըստորինք.
Իսկ քան ըզհայրըն գերազանցեալք դարձեալ նուազունք ՚ի մարդիկ.
Այլ զի դու չես վատ սրտաբեկ, և զերթ
Ոդիւս ուշիմ ես,
Քաջալերեա՛ց զի զայդ մըցանս ՚ի գլուխ
հանցես քաջապէս.

Ըզհոմանեացն յընչաց քերեա՛մ զնիւ-
թեալ խորհուրդն անհանձար .
Բա՛ն չե՛ն նոքա ո՛չ մըտացիք , և ո՛չ մար-
դիկ են արդար .
Ոչ մահ գիտեն , ո՛չ դառն օրհաս որ կայ
նոցա մօտալուտ .
Ողջ կորիցեն յաւուր միում . դու ան-
դանդաղ լե՛ր ուղղոյդ .
Ես հայրենի եմ քեզ համհարզ , քեզ նաւ
կահեմ ձեռընթաց .
Գամ ուղեկից , բայց դու 'ի տուն երթ
երևեա՛ց հոմանեաց .
Թոշակ կազմեա՛ և ամանեա՛ հե՛ղ 'ի սա-
փորս ըզգինի ,
Ա՛ռ և ալիւր , կեանք է մարդոյ , կոխեա՛
'ի տիկս Թաւարծի .
Ես ժիր ընկերս խմբեմ աստի . և նաւք
շատք են յԻթակէ ,
Նաւք նորք և հինք , 'ի նոցանէն ընտրեմ
քեզ զայն որ լաւն է .
Մեք զայն կահեալք արագապէս 'ի ծով
արկցուք ծիրանին ” .
Ըզձայն լուաւ ըզգիցուհւոյն , ոչ ևս յա-
մեաց պատանին :
Դ՚եպեաց 'ի տուն , Թախծեալ յոգի
գիտ ըզսեղեխսն 'ի յարկի ,
Այծըս մորթեն և խորովըս խոզից կազ-
մեն 'ի գաւթի :

Եւ Անտինոս ծիծաղ 'ի դէմս Ցելեմաքեայ ընդ առաջ.
« Բարձրաբարբառըդ Ցելեմաք, ետ ձեռն 'ի ձեռն, և ասաց.
Անսանձդ 'ի Թափ, հան 'ի սրտէդ հոգ դառնութեան զամենայն,
Քա՛ջ լեր, ժրացի՛ր, բազմեա՛ց, կե՛ր, ա՛րբ որպէս յառաջ միանգամ.
Քեզ Թիավարս ընտիրս և Նաւ քեզ Ցոյնք ողջոյն հոգասցին,
Հասցես արագ 'ի մեծըն Պիւղ հօրդ 'ի համբաւ դիւցազին »:
« Լո՛ւր, Անտինէ, կրկնեաց ուշիմն, ինձ ընդ գոռոզս չէք բաժին,
Ընդ ձեզ յանդորր ոչ խրախանամ, ըղհաց չառնում ըզբռնին.
Չէ՞ շատ, զի իմ որդայ գոլով զիմ շատ և լաւ կարասի
Դուք հոմանիք դուք ծախեցէք. արդ յարբունս եմ հասակի.
Խրատեալ յայլոց, ժրացեալ ոգւով մահ նիւթեցից ձեզ զարդիս,
Եթէ 'ի Պիւղ 'ի չու անկեալ եթէ յայս իմ հայրենիս.
Բայց զուր չելցէ իմ արշաւանս, ահա ետու վարձ Նաւի.
Չի՛ք իմ ո՛չ Նաւ ո՛չ Թիավար. այս ձեզ անձահ ո՞չ Թուի »:

Ըսաց, անդէն 'ի ձեռանէն եհան ըղձեռն իւր յուշիկ,
Մինչդեռ անդուստ խնձոյս կազմեալ շուայտէին հոմանիք.
Ոմն 'ի գոռոզ 'ի պատանեաց « Անշուշտ, ասէր, Տելեմաք
Մեզ մահ նիւթէ. գնացեալ 'ի Պիւղ անդուստ ածէ օժանդակ.
Կամ 'ի Սպարտա վառեալ չուէ կամ յարդաւանդն յԵփիւրէ,
Ածել ըզթոյն բաժակ խառնել, և մեզ ըզմահ արբուցէ »:
Անդուստ և ձայն այլ ոք կարդաց շըփացելոց պատանեաց,
« Այլ ո՞ գիտէ, թէ ծով հատեալ և Տելեմաք նաւազնաց,
Ի տար աշխարհ անկեալ մուցի թափառ իբրև Ոդիւսէս,
Եւ մեզ յայնժամ հոգ և վաստակ յաւելուցու մեծապէս.
Բաշխել ըզգոյս, տալ մօրն ըզտունն և իւր ածեալ փեսային »:
Զայս զրուցէին. էջ Տելեմաք 'ի շտեմարան հայրենին,
Յարկ լայն և բարձր ուր գանձէին մըթերք ոսկւոյ, պղնձոյ,
Զորձք, պատմուճանք կուտեալք յարկեղս, վայր խընկենեաց և իւղոյ.

Անդ հին և անոյշ գինւոյն Թակոյկք, ումպ
 անուշակ դիւցազնեայ,
Ցորենըն կարգեալք սպասեն դարձին չար-
 չարազգեացն Ոդիւսեայ.
Դրանդեաց դըրանց աղխք քաջակուռք
 կրկնափականք զգուշացան.
Եւ կին տնօրէն ըզցայգ ցերեկ կայր ա-
 չալուրջ պահապան.
Սա Պիսնորեան էր դուստր Ոպեայ այն
 ժըրագլուխն Եւրիկլէ,
Ի վեր ըղբանն հան Տելեմաք ձայն ետ
 սըմա 'ի տանէ:
“Արի, դայեակ, ինձ 'ի սափորս հեղ-
 ցես զանոյշ ըզգինին,
Ոչ զառաջինն. զայն դու 'ի դարձ հօրն
 իմ պահեա՛ դիւցազին.
Ո՛վ թէ դառնայր զերծ յօրհասէն մեր
 հիքացեալն Ոդիւսէս.
Բայց դու սափորս լից երկոտասան և խու-
 փըս դիր անդապէս.
Նաև ալիւր կոխեա 'ի տիկըս քաջամուրս
 'ի կարան,
Եւ աղօնին պատրաստելոյ լիցի ճշգրիտ
 չափ քըսան.
Դու միայն գիտեա՛. կա՛լ կազմ ողջոյն.
 առնում ես զայն գիշերի,
Երբ մայրս ելցէ 'ի վերնատունն հանգիստ
 առնուլ 'ի մահճի.

Ի Պիւղ գընամ և 'ի Սպարտա լուր ինչ
առնուլ ըղձօրէ »:

Լըսաւ, յարտօսր հարաւ անդէն փայեաց
դայեակն Եւրիկլէ.

« Քեզ այդ խորհուրդ, որդեակ սիրուն,
ուստի՞ անկաւ 'ի սրտի.

Ո՞ւր դու ելցես տարագնացիկ, դու միա-
ծին, անձկալի.

Ոդիւս կորեաւ տարաշխարհիկ. և քեզ
դըղքա մահ նիւթեն.

Ողջոյն ըզգոյսդ ասար հարցեն. եկ դու,
որդեակ, կա՛ց աստէն.

Կա՛ց, և ըզմեզ և ըզքոյ տան պահպանեսցես
զաղխամախ.

Զի՞ քեզ թափառ գոլ վշտատես, ծով
հատանել մարդածախ ».

« Բա՛ջ լեր, դայեակ, կրկնեաց ուշիմն,
աստուած խորհուրդ զայս ազդեաց,

Այլ դու երդուի՛ր մի՛ ինչ կանուխ առ-
նել զիմ մայրն իրազգած,

Մինչ մետասան յօր երկոտասան. կամ
երբ հարցցէ քեզ ինքնին

Եւ գիտասցէ. զի մի՛ լալեօք եղծցէ զա-
ռոյգ զիւր մարմին »:

Զերդումն անխաբ երդուեալ աւսարդն,
հեղ 'ի սափորս ըզգինին,

Կոխեաց զալիւրն 'ի տիկըս նորս, կազ-
մեաց պաշար 'ի յուղին:

Բայց Տելեմաք դարձաւ կրկին առ հոմանիս մուտ 'ի տուն,
Մինչդեռ անդուստ մեծն Աթենաս այլ ինչ հնարեաց 'ի ժամուն.
Ըզ տիպն առեալ զՏելեմաքեայ շուրջ ընդ քաղաքն ընթացաւ,
Հրաւէր և ձայն տայր որերոյն խմբիլ յերեկս անդ 'ի նաւ.
Նա 'ի Փրոնեան Նոեմոնէն խնդրէր ըզնաւ զիւր զարագ.
Եւ մըտադրէր. եմուտ արեգն և մըթացան պողոտայք.
Յայնժամ ըզնաւն արկ նա 'ի ծով, եդ և կազմած զամենայն,
Զարդ կուռ նաւուց, և առ կացոյց նաւակայեցն 'ի բերան.
Խմբին ընկերք քաջք խուռնըընթաց, հորդան կարդայր դիցուհին.
Որ և այլ ինչ նիւթել ձեպեաց տուն յՈդիւսեայ դիւցազին.
Անդ հոմանեաց քուն քաղցր հեղեալ, ըզգինարբուս խաթարեաց,
Զականս եկեալ գինւոյն, բաժակք անկանէին 'ի ձեռաց.
Ըրհանդուրժեալք այր այր 'ի տուն հանգիստ առնուլ փութացան,
Քունըն ծանրեաց զարտեւանուանն, թողին անդէն բազմական.

Բայց 'ի տանէն ըզ Տելեմաք կոչեաց ար-
տաքս Աթենաս,
Եւ զինքն 'ի ձայն 'ի Մենտորին և 'ի պատ-
կեր ճշգրտեաց:
«Տելեմաքէ, քաջաւնք 'ի ձեռս ընկերք
մընան գալըյն քոյ.
Արի՛ գնասցուք մեք անդանդաղ». ասաց
գընայր յառաջոյ.
Եւ Տելեմաք ըզհետ նորա մինչև 'ի ծովն
և 'ի նաւ,
Գըտեալ առ ափն ըզքաջ որեարն ան-
դէն բան զայս խօսեցաւ:
«Օ՜ն բարեկամք, ածցուք պաշարս.
կազմ և պատրաստ կան 'ի տան.
Ո՛չ մայր գիտէ ոչ աղախնեայք. լըւաւ
ըզբանն մին միայն».
Ասաց, յարեաւ, խաղան ըզհետ, առին
անդուստ զամենայն,
Ածին 'ի նաւն 'ի քաջանիստ, որպէս հրա-
ման ընկալան:
Եւ նա 'ի նաւն, յառաջ Պալլաս նստաւ
'ի խելս նաւուն.
Մատեաւ անդէն և Տելեմաք նստաւ ըն-
թեր դիցուհւոյն.
Անդ ժիրաժիր լուծին նաւազք ըզպա-
րաւանդըս լաստին,
Ելին 'ի վեր և 'ի նստոցս իւրաքանչիւր
կարգ առին:

Անդէն ապա մեծն Աթենաս հողմ ա֊
ռաքէր յաջողակ,
Շնչեաց զեփիւռ, ընդ մրկանուտն հըն֊
չէր 'ի ծով կապուտակ.
Զայն Տելեմաք տայր որերոյն, հա՛պա
կազմածք 'ի ձեռին.
Ժրացան, և 'ի գոգն 'ի խարըսխին ըզ
կայմն ածեն զեղևին,
Առեալ կանգնեն ուղղորդ կըշիռ ամրա֊
պնդեալ պարանօք,
Եւ զառագաստըն զըսպիտակ 'ի վեր
քարշեն կուռ փոկովք.
Հողմն ուռուցիկ ելից ըզմէջն, ալեքն հըն֊
չեն ծիրանիք
Հարեալք ընդ գոգն, և ալեբախ նաւըն
սուրայր գեղեցիկ.
Առին զքաշոխս կապեալք ընդ նաւ, լը֊
ցին գինեաւ ըզբաժակ,
Եւ անմահից դիցն յաւերժից ձօն նըւի֊
րեն անապակ.
Յաւէտ 'ի ձօն դստեր մազգեղն Աթե֊
նասայ տան նուէր,
Եւ կատարեն մինչ ցարշալոյս զուղին ող֊
ջոյն ըզգիշեր:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Հասանէ Տելեմաք 'ի Պիւղ, հիւրընկալի 'ի Նեստորէ ծերունւոյն, որ 'ի ժամուն զոհ զոհէր Պոսիդոնի ։ Ծանօթս զանձնէն տայ Տելեմաք, և հարցանէ վասն հօրն Ոդիսեայ լուր 'ի Նեստորէ ։ Սա զդարձ զայլոցն պատմեալ նմա, և ճոխագոյնս զԱգամեմնոնեայ, ոչինչ գիտել, ասէ, զՈդիսեայ. և խորհուրդ տայ Տելեմաքեայ երթալ 'ի Սպարտա առ Մենելաւոս և իմանալ ինչ զհօրէն ։ Աթենաս կերպարանեալն 'ի Մենտոր, աներևութանայ ։ Նեստոր ծանուցեալ զԱթենաս, զոհ մատուցանէ նմա. և հրամայէ Պիսիստրատեայ որդւոյ իւրում ուղեկից լինել Տելեմաքեայ 'ի Սպարտա ։



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Գ.

ՈՐՓՈՒՆ ծաղկեաց յերկին հարուստ,
Թողեալ ըզլիճ գեղեցիկ,
Տիւ անմահից և մահացուաց ածեալ յեր-
կիր բացածիգ.
Հասին 'ի Պիւղ 'ի շէն Նեղեայ. յաշտ
Պիւղացիք յաղէին
Ցուլս արշնաթոյր Պոսիդոնի ծիրանա-
վարս արքային.
Ինն երախանք, յխուռնք 'ի մին, նստին
յաղէն ինն եզինս,
Զօն աստուծոյն ըզլթամբս այրեն, ճաշա-
կելով զախոնդիս:

Զավրըն կալան 'ի Նաւակայս և զառագաստս ամփոփեն,

Ելին 'ի դուրս, Պալլաս յառաջ, եւ Տելեմաք 'ի Նաւէն:

“Տելեմաքէ, ասէր խաժակն, ողջոյն զամօթ բա՛րձ 'ի քէն.

Ո՞չ դու վասն այն ըզծով հատեր լուր մի առնուլ ըզհօրէն,

Ո՞ւր էցէ նա, զի՞նչ բախտ նորա. երթ առ Նեստոր ուղղակի.

Տեսցուք զի՞նչ բան և զի՞նչ խորհուրդ նորա կայցէ 'ի սրտի.

Լուր Ճշմարիտ հա՛րց 'ի Նմանէ աղերսելով զծերունին.

Նա ո՛չ խօսի ըզսըտութիւն, քանզի այր է քաջուշիմ”:

“Մենտոր, զիա՞րդ, կրկնեաց ուշիմն, առ Նա մօտեալ տաց ողջոյն.

Կենակցութեան ընդ աւագաց չեմ տակաւին ես ներհուն.

Ընդ այր աւագ հարցումն առնել զմա՛րդ կրսերս յառաջեմ”:

Կրկնեաց Պալլաս և խրախուսէր. “Լո՛ւր, Տելեմաք, զոր ասեմ.

Դու զա՛յլ խորհիս, և զա՛յլ դարձեալ տացէ Աստուած 'ի բերան,

Զի ո՛չ առանց դու Աստուծոյ ծընար սընար 'ի քում տան 11”:

Ըսպաց Գալլաս և յառաջէր, ըղձեռ զը-
նայր պատանին .

Մինչև եկին առ Գիւղացիս 'ի զոհ նոցայն
ակըմբին .

Անդ ընդ որդւոց նստէր Նեստոր , և զո-
հակիցքն 'ի շուրջ կան ,

Միս խորովեն հարեալք շամփուրս և
պատրաստեն ըզսեղան :

Տեսեալք ըղհիւրսն յարեան անդէն և
ըղձեռացն առնուին .

Բազմոց հրամէն , էր Նեստորեան Գիսխա-
տրատոսն առաջին .

Կալեալ զձեռացն , և ընդ աւազն ըզմորթ
փափուկ տարածէր

Եւ տայր բազմոց , Թրասխմեդեայ և հօր
իւրում առընթեր .

Բաշխ զընդերաց մասոյց նոցա , յոսկի
բաժակ արկ գինի ,

Ձայն մատըռուակն ետ Գալլասայ դստեր
վեհին Դիոսի .

« Աղերս արկ , հիւրդ , Պոսիդոնի յորոյ
խնճոյսն աստ հասեր ,

Զօրհնաւոր զաղօթսն արա , տուր ար-
քային ըզնուէր .

Զանոյշ բաժակդ տուր և դըմա , ձօն
ձօնեսցէ գեղեցիկ .

Կարծեմ և դա է աղօթկեր , զի դից կա-
րօտ են մարդիկ .

Կրսեր է դա զոյգ հաւասար իմոց տեսոց
հասակի,
Եւ քեզ վասն այն վերընծայեմ նախ ըզ-
բաժակ զայս ոսկի 12 »:
Ասաց, և եդ 'ի ձեռս նորա բաժակ զա-
նոյշ զգինւոյ,
Եւ ցնծացաւ մեծն Աթենաս ընդ հան-
ճար առն արդարոյ.
Զի քաղցուշիմն յառաջ նըմա ետ ըզբա-
ժակ զայն ոսկին,
Անդէն և ինքն յաղօթս եկաց Պոսիդոնի
արքային.
“Լուր, Պոսիդոն, լից զուխտըն մեր.
տուր Նեստորի և որդւոց
Տուր շուք և փառս. տացես տրիտուր և
զարժանին Պիւղացւոց.
Դոքա զոհ պերճ քեզ յաղեցին. և պա-
տանւոյս և ինձ տուր
Դարձ երջանիկ, որ վասն եկաք, մի ար-
շաւանս ելցէ զուր ”:
Ինքն աղօթեաց և ինքն ելից. ետ ըզբա-
ժակն պատանւոյն.
Ըզնոյն աղօթս և Ոդիւսեայ արար զա-
ւակն հօրամոյն:
Նոքա 'ի ճահ միս խորովեալք և 'ի շամ-
փրոցըն զերծին,
Բաժինս հանին յումպ և 'ի կեր, մինչ
դահամանց զխղձն հարին:

Հաւեաց խօսել Նեստոր ասպետն,
   « Արդ հարցանել մեզ հիւրոց
Գեղեցիկ է, յորժամ նոքա վայելս առին
   կերակրոց.
Ո՞յք էք ո՛ հիւրք, ուստի՞ նաւէք. Թերևս
   'ի պէ՞տս վաճառաց.
Կամ լոյծ յուղին դուք թափառիք իբ֊
   րու ըզհէնս ծովագնաց,
Հէնք, որ զոգիս 'ի բուռն կալեալ այլոց
   ածեն օրահաս ».
Լուաւ ուշիմըն Տելեմաք և խրախուսեալ
   ձայն կրկնեաց.
Խրախոյս յոգին արկ Աթենաս, զի լուր
   հարցցէ ըզհօրէ,
Եւ զի անձին շուք մեծաշուք տարցի յամ֊
   բաւ մարդկանէ.
« Ուստի՞ եկեալք, մեզ հարցանես, Նես֊
   տոր, փառք մեծ Ելլադայ.
Ես քեզ պատմեմ. գամք յԻթակայ, որ
   'ի ստորոտըն Նէյեայ.
Գործս առ տընէին է զոր ասեմս. խնդրեմ
   զհօրէս ես զարդիս,
Լուր ինչ առնուլ զհամբաւատենչ զիմ
   Ոդիւսեայ դիւցազինս.
Ասեն ըզնա քեզ մարտակից քանդել
   Տրոյեանց զշահաստան,
Նաև լուաք զայլոց քաջաց որ յԵղլոն
   կըռուեցան.

Դառն օրհասիւ անձնիւր նոքա աստ անդ-
անկան գխտապաստ,
Այլ զօրահաս զնմին Ոդիւսեայ զանխուլ
եթող Արամազդ.
Զնք որ պատմէ, 'ի Թշնամեաց կորեաւ
յերկիր 'ի ցամաք,
Կամ թէ արգեօք նա ծովակուր եղև յան-
դունդս անյատակ.
Հասեալ կամ արդ առ ոտըս քո լըսել
ըզ գոյժ օրհասին,
Եթէ գիտես ականատես կամ համբաւոյ
յօտարին.
Աւաղ, զիմ հայրն յոյժ վշտատես Թա-
փառական ծընաւ մայր.
Մի՛ պատ 'ի պատ ինձ խօսեսցիս, մի՛ ակն
ածեր, մի՛ գըլթար.
Մեկին պատմեա զոր ինչ տեսեր, թէ
քեզ հայրն իմ Ոդիւսէս
Սատար գըտաւ յեր և 'ի բան, զխոստումն
ելից մեծապէս.
Քեզ աջակից էր յԵղիոն, ուր շատ կրե-
ցէք ո՞ Հելլենք.
Արդ, հայր, 'ի յուշ ած զայնոսիկ, և
պատմեսցես ինձ աննենգ ”:
“Յուշ ինձ ածես, կրկնեաց Նեստոր,
լո՛ւր ինձ արդ ո՞ բարեկամ,
Յուշ ինձ զաղէտս, զոր անդ կրեցաք մեք
քաջազունքս Աքայեան.

Թէ՛ նաւագնացք ընդ դաշտ կապոյտ ո՛ւր և ածէր Աքիլլէս
Յառ և յապուռ, թէ՛ յԵղիոն ուր կըռուեցաք քաջապէս.
Անդ մեր աւագքն անկան տապաստ անդ Աքիլլէս, անդ Այաս,
Անդ Պատրոկղէս աստուածանմանն, անդ և որդիս դիւցազգեաց
Իմն Անտիղոք սիրունն և քաջն արագավազն և մարտիկ.
Առ այսոսիկ նաև այլ շատ մըթերեցան մեզ չարիք 13.
Մա՛րդ զամենայն ո՞ պատմեսցէ, թէպէտ հինգ ամ կամ վեցեակ
Դու աստ կացեալ հարցցես յինէն, զոր Յոյնք կրեցին դըժնդակ.
Մինչչև լուեալ դու տաղտկասցիս դարձցիս յերկիրդ 'ի յԻթակ.
Զի ինն ամեայ բազմաճարտար նոցա պաղէտ նիւթեցաք.
Հազիւ ուրեմն ըզմարտըն մեր մեզ պըսակեաց Զրուանեանն,
Այլ 'ի հանճարն հօրդ հաւասար չեկաց ոք յայն արշաւան.
Վեհ էր բնաւից դիւցազն Ոդիւս ամենարուեստ 'ի գիւտի.
Աննշուշտ նորա զաւակն ես դու, զիս հիացուցին արդ ունի.

Հայիմ 'ի քեզ և հանդուցեալ կշռեմ ըզբան քոյն լեզուի ․
Գտցի՞ երբէք նըմանախօս այր որ այդչափ պատանի ։
Ես և Ոդիսս զնոյն խօսէաք 'ի հրապարակ և յատեան,
Ցանդ համամիտք խորհուրդ ըզնոյն տայաք Յունաց մեք զարժանն ։
Զոստան վանեալ ըզ Պրիամոսն չոքաք նաւացն 'ի հանդէս,
Ցըրուեաց Աստուած զԱքայեցիս, Դիոս նիւթէր դառնապէս ․
Չէին ամէնքն ուշիմք ւարդարք ․ դարձ մի նիւթեաց դառնութեան,
Եւ շատք Յունաց չար օրհասիւ Թակարդեցան 'ի մահուան ։
Ցասումն յուզեաց մահահամբոյր մեծն Աթենաս հօրամոյն,
Եւ վէգ և կագ զարթոյց 'ի մէջ Ատրէոսեանցն երկոցուն 14 ։
Խմբեն ըզ Յոյնս զխարդուպէտ ընդմուտս արփւոյն լուսափայլ,
Եկին լըսել ․ սակայն գինին զակամբ նոցա էր եկեալ ․
Խօսին Ատրիդք որ վասն յատեան զազգխմբեցին Հելլենաց ․
Մենելաւոս հրամէր դառնալ վերայ ծովուն յաղթ ողանց ․

Իսկ տարփողէր Ագամեմնոն, կամէր մը-
նալ խուժանին
Եւ հաշտ գործել զՊալլաս սրտնեալն
հարիւրեզնեան 'ի զոհին.
Ոչ գիտաց խօլն թէ զԱթենաս չէր ամո-
քել 'ի զոհից.
Զի ոչ վաղվաղ շրջին փոխին միտք աս-
տուածոցն յաւերժից 15։
Արքայքն ամոլք դառըն բանիւք պայ-
քարէին 'ի կռուին.
Յարեան վառեալք Յոյնք բարձրագոչք,
խորհուրդ հերձան 'ի կրկին.
Ի քուն մրտաք խռովեալք 'ի սիրտ, Դիոս
աղէտ հանդերձէր.
Վաղ քաջ ընդ այգն առեալք ըզնաւս 'ի
ծովն արկաք ալեբեր.
Զկահ կարասին եդաք ըզ մեր և զգօտէ-
ալինդ կանանի,
Կէսքըն մնացին 'ի ցամաքի ընդ ատրեւ-
եան արքայի.
Կէսքն ամբարձեալք 'ի լաստափայտս Թիա-
վարեալք խնդաղին,
Նաւեն արագ. քանզի Աստուած ըզծովն
հորդեաց ահագին։
Ի Տենեդոս դից ձօն յաղեմք, 'ի տուն
փութամք հայրենեաց.
Զեան ոխերիմ էր խոչընդոտան, երկրորդ
անգամ վէգ յուզեաց.

Կեպք Թխկնադարձք շրջեն ըղնաւս, որք
 ընդ ուշիմն Ոդիւսի
Կայծն խմբեալք, հարկանելով շուք Ա-
 տրեւսեան արքայի:
Այլ ես փախեայ ընդ նաւախումբն, տե-
 սեալ զի Զևս չար նիւթէր.
Փախեաւ և քաջըն Դոմեդէս տուեալ իւ-
 րոց քաջալէր.
Անագաննեաց Մենեղաւոս, եհաս առ
 մեզ 'ի Լեսբէ,
Մինչդեռ խորհուրդ մեք յուզէաք զնա-
 ւարկութեանս հանդիսէ.
Արդեօք նաւե՞լ մեզ 'ի վերոյ ապառա-
 ժուտ ըն Քիոյ,
Ընդ ընդ կղզին ընդ Փսիւրիա Թողեալ
 ըզնա 'ի ձախոյ,
Թէ նաւարկե՞լ մեզ ընդ Քիով, ընդ հող-
 մավար Միմասայն.
Վասն այն մաղթեմք մեք առ Աստուած,
 զի նա ցուցցէ մեզ նըշան:
Ցոյց. և ընդ մէջ ծով հատանել ընդ
 Եւբէա պատուիրեաց.
Զի մեք այնպէս արագ արագ յանդորր
 ելցուք 'ի վշտաց:
Հողմըն զարթեաւ ուժգնահընչակ, որա-
 նամք յուղին ձկնաւէտ,
Գիշերացաւ մեզ 'ի Գերեստ, հատեալք
 զալիս վէտ 'ի վէտ.

Պոսիդոնի Թամբրս ցըլուց յաղեմք, հաւ-
տեալք մեծ զուղին․
Ի յօր չորրորդ հասին յԱրգոս նաւք
Դոմեդեայ քաջաղին․
Իսկ ինձ 'ի Պիւղ ցանդ հողմ հընչեաց
աստուածատուր յաջողակ․
Հասի այսպէս, որդեակ սիրուն, զայլ
ինչ նրաց չեմ տեղեակ,
Ո՞յք փրկեցան և ո՞յք կորեան ինչ մի բնաւ-
ւին ոչ գիտեմ․
Այլ զոր լըւայ նստեալ 'ի տան, ես զայն
'ի քէն ո՛չ ծածկեմ։
Ըզքաջ Միւրմիդս ողջամբ դարձոյց մեծն
Աքիլլեայ քաջորդին․
Եւ Պէանեան քաջ Փիլոկտետն ողջ եկն
յերկիր հայրենին․
Իդոմենեւս ած 'ի Կրետէ ողջոյն զընկերսն
անձնապուր,
Որք միանգամ զերծան մարտէն և ոք չե-
ղեւ ծովակուր։
Բայց զԱտրիդեայ լուայք ինքնին, թէ-
պէտ և լեալ բացական,
Զիա՞րդ եհաս և Եգիսթէս զի՞նչ մահ
նիւթեաց դառնութեան․
Սակայն և քաջ ելոյծ ըզվրէժ․ գեղեցիկ
է մեռելոյն
Թողուլ զորդի, զի զհօր քաջի ըզվրէժ
առցէ ըզմահուն։

Նենգօղն Եգիսթ տապաստ անկաւ 16 .
և դու ինքնին , բարեկամ,
Քա՛ջ լեր ժրացի՛ր , զի և յապայց ոք քեզ
լիցի բարեբան .
Ես առողջանձն 'ի գեղն 'ի չափ ընդ քեզ
դիտեմ հասակին ».
« Ո՜վ Նեստորէ , ձայն Տելեմաք կրկնեաց
ուշիմ պատանին ,
Ո՜վ Նեստորէ , փառք Աքայեանց , նա
վրէժ էառ գեղեցիկ ,
Նորմա շուք մեծ Յոյնք ձօնեսցեն և յերգ
առցեն մեր յետինք .
Ո՜վ , ինձ զայն ույժ տային Աստուածք 'ի
վրէժ գոռոզ հոմանեաց ,
Որք խեռացեալք Թշնամանօք ինձ չար
նիւթեն օրահաս .
Բայց ինձ և հօրս չետուն աստուածք
բախտ նոյնպիսի բարեբեր ,
Եւ արդ համբերում ժուժալ պիտի ». ըն-
ւաւ Նեստոր և կրկնէր :
« Լուայ 'ի տանդ ընդհոմանեաց զոր յուշ
ածեր , բարեկամ,
Որ սակրս մօրդ , քեզ յակամայս չարեաց
լինելին դաւաճան .
Ա՛ղէ ասա՛ . դու քո՞ կամաւդ ընթա-
դրեցար 'ի ներքոյ ,
Եթէ քաղաքդ առեալ ընդ քեզ պատգամ
ըսեալ զԱստուծոյ .

Ո՞ղիտէ, թէ զուժկան նոցա այր վրէժառուն բռնութեան
Դարձցի օր մի կա՛մ համախումբ ընդ Աքայեանց, կամ միայն,
Թէ զքեզ Պալլաս նոյն սիրեսցէ, որպէս զՈդիւս գրգալիր
Սիրեաց երբեմն 'ի Տրովադա, ուր մեք գտաք վշտակիր.
(Բա՛ց ոչ այնչափ ես զաստուածոց սիրոյն տեսի ըղձհանդէս,
Որպէս նըմա մեծն Աթենաս հովանանայր յայտնապէս).
Թէ զքեզ այնպէս նա սիրեսցէ և հոգկալցի գեղեցիկ,
Անշուշտ յայնժամ այդ հոմանեացդ անյուշ լիցին հարսանիք »։
Արկնեաց ուշիմն. « Ո՞վ ծերունիդ, վա՜շ միթէ քո բան լցցի՞.
Դու մեծապէս բարբառեցար, և ապշութիւն զիս ունի.
Բա՛ց ես վրիպեալ կամ 'ի յուսոյս թէ և Աստուածք կամեսցին ».
« Տելեմաքէ, ձայն ետ Պալլաս, զի՞նչ բան սրացաւ 'ի լեզուէն.
Զայր, թէ կամի հեշտեաւ Աստուած պահէ և տար յաշխարհի.
Ես ընտրեմ ես շատ վշտակրեալ 'ի տուն դառնալ հայրենի,

Քան թէ դառնալ և մահ առնուլ 'ի սեպ-
հական տան իմում,
Իբրու սպանեալն Ագամեմնոն յԵգիսթո-
սէ և յամուսնոյն.
Այլ զանհրաժեշտն և ոչ դիք ուժին
սանձել ըզմահ սիրելեաց,
Երբ սահմանեալն երկայնաքուն մահուն
հասցէ օրահաս »:
« Մի այլ Մենտոր, մի զայս խօսել թէ-
պէտ եմք իսկ ցաւագին.
Ո՛չ դարձցի հայրս. ըզնա անմահքն 'ի
մուլթն յօրհամ կարթեցին:
Բայց ես խնդրեմ 'ի Նեստորէն, որ է
բնաւից քաջուշիմ,
Զոր և ասեն քաջ ծերունույն կալեալ
երրորդ թագ ազգին.
Դա զանմահից բերէ պատկեր: « Ասա
Նեստոր, այր ստուգ,
Զիա՞րդ մեռաւ Ագամեմնոն. զայս ինչ
խնդրէր Տելեմաք.
Ո՞ւր արդեօք էր Մենելաւոս, զո՞ր Ե-
գիսթոս մահ նիւթեաց.
Ա՛յ կռուազան. զիա՞րդ յոգի հար նա
զարքայն քաջ տորանց.
Թերևս յԱրգոս չէր Աքայեան տարաշ-
խարհիկ Մենելաւ
Ասա անդ թափառ, և անօրէնն 'ի յայն
աղումք ժըռեցաւ ».

"Գայր, ողջոյն, կրկնեաց Նեստոր, ես
քեզ պատմեմ, ով որդեակ,
Եւ դու լուեալ յապուշ հարցիս, զինչ
դէպք եսուն ձախողակ.
Թէ Մենելաւ եկեալ յԱրգոս գտանէր
զԵգիսթոս կենդանի,
Յա՛ ոչ բրածոյ հող դուզնաքեայ ծած-
կէր զմարմին զԱդրիոտի.
Շանց և թռչնոց դէշ նա տապաստ ան-
կեալ 'ի դաշտ 'ի վայրին,
Եւ ոչ կին մի ողբայց ըզնա. ո՛վ, էր ոճիրն
ահագին:
Մեք յԻլիոն ընդ ապաժոյժ արեանց
եկեալ նստէաք,
Եգիսթոս անգործ փորձէր յԱրգոս զԱ-
գամեմնեայ կինն աւադ.
Զար հրապուրիչն յառաջ չանսայր
Կլիւտեմնեստրէն դիւցազնեան.
Էր ողջախոհ, և առընթեր զքերթողն ու-
նէր պահապան.
Ագամեմնոն 'ի չուել խրատ ըզկինն
յանձնեաց քերթողին,
Մինչև եհաս օրն յաստուածուստ կար-
թեալ զԵգիսթ յորհասին.
Յայնժամ զքերթողն 'ի կղզի մի անմար-
դաբնակ առ ձգեաց,
Անդ կերակուր եղև ըզնա լինել թռչնոց,
գազանաց:

Առեալ ըզկինն յօժարակամն ած 'ի
　　տուն իւր խնդագին
Եւ Թամբըլս գեց պայրէր բազում 'ի նըւի-
　　րեալն 'ի բագին.
Շատ և նըզոյս կախեաց անմիտն ան-
　　կուածս ոսկի 'ի նըւէր,
Գործ վըճարեալ մեծամեծար որում և
　　ակն ոչ ունէր:
Մեք համամիտք, ես Մենելաւ լեալք
　　նաւագնացք 'ի Տրոյեայ,
Մինչև հասաք 'ի մեծըն Սուն 'ի սարա-
　　ւանդն Աթենայ.
Անդ Ապողոն զՄենելաւեայ ըզնաւա-
　　վարն հար յոգին
Հեշտի փըքնօք, մինչ նաւ սուրայր և էր
　　քեղին 'ի ձեռին.
Էր սա Փրոնտոն Ոնետորեան քաջահըմ-
　　մուտ նաւագնաց,
Վարել ըզնաւ վէհ էր բնաւից ընդ յաղթ-
　　ալիս մըրկաց.
Անդ ըզկայ առ Մենելաւոս Թէպէտ ձե-
　　պէր 'ի յուղին,
Մինչև Թաղումն ետ արժանի և զխա-
　　հանս ընկերին:
Իսկ երբ և նա արագ արագ ըզծով հա-
　　տեալ ալեսաստ,
Ի բարձըր լեառն եհաս Մաղեանց, խոչ-
　　ընդոտնեաց Արամազդ.

Ուժգին հողմովք լեռնակարկառ գլխոցն
    ալեք բարձրացան ,
Անդ գիր և տար Նաւք 'ի միմեանց , կէսք
    'ի Կրետէ վարեցան .
Ուր Կիդոնեանք են բնակաւորք առ գե-
    տափամբն Յարդանեան ,
Եւ կայ յանդունդս ժայռ բարձր և ողորկ
    կապոյտ ծովուն Գորտինեան .
Անդ յաղթ զալիսն վարէ հարաւ յա-
    հեակ 'ի սարն 'ի փեստէ ,
Եւ վէմ փոքրիկ զայն ահագին ալիսն ա-
    ռեալ խորտակէ .
Աստ ալէկոծք Նաւքն ընդ հարան մարգիկ
    զերծան մազապուր .
Այլ լաստափայտք խորտակեցան յան-
    տես ժայռիցն` որ 'ի ջուր .
Հինգ Նաւք կապոյտք 'ի յԵգիպտոս վա-
    րին հողմոյն և յալեաց ,
Եւ Մենելաւ անդ գեգերեալ, պարէն ,
    ոսկի շատ կուտեաց .
Շրջէր Թափառ Նաւագնացիկ այլալե-
    զուացն ընդ մարդկան ,
Մինչդեռ Եգիսթ պարապ գլտեալ նիւ-
    թեաց չարիս շատ 'ի տան .
Ըսպան զԱգրիտ Նուաճեաց զամբոխն ,
    եօթն ամ Միւկեանց Թագ կապեաց ,
Յութերորդումն 'ի յԱթենայ եկն Ով-
    րեստէս գլխցազցեաց .

Գուժեաց ըզմահ հար զհայրապանն,
Նաև ընթրիս ըզթաղման
Եւ Աքայեանց ըզդժնի մօրն և զապա-
ւումն Եգիսթեայն :
Ի նոյն աւուր հաս Մենեղաւ, նաւք իւր
զանձուք ակաղձուն :
Բայց դու 'նդ երկար զտուն մի՛ ըղքցես
ով իմ որդեակ բարեբուն.
Մի՛ տարագէմ թողուր ըզգոյսդ, վարեա՛
զգուշող զայդ որեար.
Նոքա ըզգոյսդ ողջ ծախեսցեն, և ուղէդ
լիցի վայրապար :
Այլ զի գնասցես առ Մենեղաւ տամ
քեզ յորդոր բարեզգեաց,
Զի նա այն ինչ բազմաթափառ եհաս 'ի
տար աշխարհաց.
Ո՞ դարձ յուսայր 'ի մրրկաց վարեալ
յայն ծով ամեհի,
Տար է աշխարհն ուստի և ոչ թռչունք
գայցեն տարի մի :
Գնասցես նաւուք ընդ ընկերաց. կամ
թէ կամիս ե՛րթ հետի,
Գոն կառք և ձիք. որդիքս լիցին քեզ ա-
ռաջնորդք 'ի յուղի.
Տարցին 'ի մեծ Լակեդեմոն ուր Մենե-
ղաւ կայ խարտեաշ.
Տայ լուր ճշգրիտ, զի ուշիմ է և սրտաւ-
թեանց է անքած ":

Ըսաց. 'ի նոյն ժամու արևն և 'ի վերայ
մութն եհաս,
“ Ո՛վ ծերունիդ արդար խօսիս, ասէր
խաժակն Աթենաս,
Այլ ա՛ղէ դուք, հատէք լեզուս, և խառ-
նեցէք ըմպելիքն,
Պոսիդոնի և անմահից ձօնեալ դնասցուք
յանկողին.
Ժամ է մահճին. անցի եա լոյսն և յըն-
Թրիս դից չէ արժան
Յերկար նստել և դեգերել ”. ասաց
Պալլաս և լըւան:
Քարոզքն ըղջուր արկին ձեռաց. և պա-
տանիքն 'ի գինի
Պըսակեցին ըղխառնարանս, մատըռուա-
կեն ակըմբի.
Հմայեալք բաժակս, զլեզուսն 'ի հուր
արկեալ ձօնեն 'ի կանդուն,
Ձօն նուիրեն և ըստ ըղձին այր այր առ-
նոյր անդ արբումն.
Յայնժամ Պալլաս և պատանին հրաժեշ-
տային առ 'ի նաւ.
Անդուստ Նեստոր ընդդէմ եկաց, բան
շնորհալից խօսեցաւ:
“ Ո՛չ 'ի Դիայ, քա՛ւ յանմահից, եթէ
մեկնեալ դուք յինէն
Գնասջիք 'ի նաւ իբրև յանյարկ և յան-
հանդերձ աղքատէն,

Որոյ հիւրոցն և իւր անձին դորդ և խըղ-
ճայ չիք 'ի տան
Հանգչել 'ի քուն. Նա են առիս գորգք
և խըլայք պատուական.
Քաւ, թէ գիւցազըն Ոգիւսեայ այդ քաջ-
որդիդ անձկալի
Անդ 'ի Նաւուն տախտակամածս ընկող-
մնեսցի գիշերի,
Ցորչափ ես կեամ և հիւրընկալ որդիս
Թողից ես 'ի տան,
Որ շուք հարցեն որ միանգամ 'ի յիմն
հասցէ յօթեվան »:
« Քաջ խօսեցար, կրկնեաց Պալլաս,
ով ծերունիդ բարեմոյն,
Անշուշտ արժան և յոյժ լաւ է քեզ
հնազանդել պատանւոյն:
Արդ դա այժմիկ հըպատակեալ աստ
հանգիցէ 'ի քում տան,
Ես գնամ 'ի Նաւ և անդ խրախոյս տամ
և պատմեմ զամենայն.
Հինաւուրց եմ 'ի Նաւաստիս, են մեր
ընկերք պատանիք,
Այլք բարեկամք յարեան ընդ հետ Տելե-
մաքեայ համատիք.
Ես անդ ննջեալ գընամ ընդ այգն առ-
նուլ ընդպարտս Կաւկոնեանց,
Պարտք վաղեմիք, և դուզնաքեայ չէ ինչ
կըշիռն այն պարտեաց.

Այլ դու ընդհիւրդ առեալ յղեա՛ կառօք,
որդւովդ, և տուր ձի,
Ձիք կորովիք արագավազք»․ ասաց սրա-
ցաւ զերթ արծուի․
Յանկարծուս կացին առ հասարակ, և ծերն
ինքնին ափշեցաւ,
Կալաւ զաջոյն Տելեմաքեայ և հիացմամբ
խօսեցաւ:
«Ո՛ւր, բարեկամ, չէ՛ք քո երբէք լինել
անկած ւ ապիկար․
Քանզի այժմէն քեզ պատանւոյդ ան-
մահք հորդեն ճանապարհ․
Բա՛ չէ այլ ոք այդ երկնաճեմդ, դուս-
տըր է մազդեղն Աթենաս,
Որ և ՚ի Տրոյս յաւէտ հօր քում շուք
հարկանէր և ըսպաս:
Ցի՛ս, ո՛վ դշխոյդ աշխոյժուհի, յաւէ՛լ
ինձ փառս գերաբուն,
Ինձ և իմոցըս զաւակաց և իմ պարկեշտ
ամուսնոյն․
Երինջ յազեմ տոմնուղ կըռմուղ, լայնա-
ճակատ, տարեւոր,
Ցազեմ քեզ զայն, նաև զեղջիւրսն յոս-
կի պճնեմ գեղաւոր»:
Ո՛երն աղօթեաց, Պալլաս լուաւ, յա-
րեաւ Նեստոր նախընթաց,
Ընդ փեսայիցն և ընդ որդւոցն յիւր գե-
ղեցիկ յապարանս․

Ի յարքունիսն հասեալք առին աթոռ,
բազմոց ըստ կարգի,
Անդ ծերունին, խառնեաց բաժակ 'ի հին
յանոյշ 'ի գինի,
Եբարձ ըզխուփն եբաց զայն կինն, և մե-
տասան էր ամաց.
Խառնեաց զայն ծերն և նուիրեալ շատ
պաղատէր առ Պալլաս.
Զօնեալք նուէրս, արբեալք ըստ կամս,
'ի տունս չոքան կէսք 'ի քուն.
Նեստոր յինքն առ ըզՏելեմաք զՈդիւ-
սեային սիրասուն.
Զձախարակեայն նըմա մահիճ ետ 'ի հըն-
չողն 'ի սրահին,
ԸզՊիսիստրատ ըզզօրավարն անդ առըն-
թեր եդ նըմին.
Էր նա յորդւոն իւր ամուրի. մուտ ինքն
'ի ներքս 'ի յիւր տուն,
Եւ անդ մահիճ տիկին նորա եդ 'ի հան-
գիստ ծերունւոյն:
Ոյգ վարդամատըն ծագեցաւ. յարեաւ
Նեստոր 'ի մահճաց.
Քայլեաց արտաքս և եկն արքայն նըստաւ
վերայ մարմարեայց.
Վէմք սըբատաշք կան առ դրանդիս
սպիտակք, օծեալք, և փայլուն.
Եւ անդ երբեմն արքայն Նեղևս այրըն
նստէր դիւցաբուն:

Նա էջ 'ի դժոխս . նստէր յայնժամ
Նեստոր Յունաց պահապան ,
Ունէր 'ի ձեռն ըզ գաւազանն , մինչև որ
դիք խմբեցան .
Յառագաստից գայր Եքեփրոն Պերսէս,
Արետ , և Իստրատ ,
Թրասիւմեդէս այր դիցանմանն և վեցեր-
րորդ Պիսիստրատ .
Ածին զառոյգն ըզ Տելեմաք մերձ ար-
քային նստուցին .
Բարբառեցաւ և հրամանաւ ձայն տայր
որդւոց ծերունին .
« Հապա , որդիք , դուք ձեռն 'ի գործ ,
ես ձօնեցից փոյթ ընդ փոյթ
Նախ Պալլասայ որ եկն առ իս 'ի նուի-
րեալն հացկերոյթ .
Մի ոմն 'ի ձէնջ գնասցէ 'ի դաշտ . զե-
րինջն ածցէ եզնավար .
Այլ ոմն 'ի նաւ Տելեմաքեայ , ածցէ առ
մեզ ողջ զորեար ,
Թողցէ զերկուս . այլ ոմն հրաման տա-
ցէ Լարկեայ ոսկերչի ,
Զի աստ եկեալ և զերնջոյն զեղջիւրսն
օծցէ 'ի յոսկի .
Այլ աստ մնասցեն հրամեալ 'ի տան , ճաշ
կահեսցեն աղախնեայք ,
Ածցեն նստոցս , փայտ կուտեսցեն և ջուր
բերցեն մեզ յստակ » :

Ասաց, նոքա ժրացան 'ի գործ, և եկն
երինջն 'ի դաշտէն.

Ամոլէն և անդ և պատանւոյն ընկերքն հա-
սին 'ի նաւէն.

Եկն և Ճարտարն զէնքն 'ի ձեռին դարբ-
նել գործեօք արուեստին,

Ըզսալն, և զուռն, ըզկուռ զաքցանն, ու-
նէր կլռել անդ զոսկին.

Եկն և Պալլաս մերձ կալ զոհին և ծերու-
նին տայր ոսկի.

Կռեաց Ճարտարն և օծ զեղջիւրսն զի
գիցուհին հրճուեսցի.

Առեալ Իստրատ և Եքեփրոն զերինջն ա-
ծին զեղջերէն,

Եւ ջուր 'ի կոնք ծաղկաքանդակ ածէր
Արետ 'ի տանէն.

Նաև ձաւարս ածէր ոլթով. իսկ Թրա-
սիւմեդ սուր տապար

Կալեալ 'ի ձեռն այն կոտովլին զերինջն
հարուլ պատրաստ կայր.

Պերսէս զամանն ունէր 'ի ձեռն առնուլ
զարիւն նուիրաց.

Լուաց ըզձեռըն ծերունին և ըզ ձաւարն
առ ցանեաց.

Ջերեխայրիսըն կատարեալ շատ առ
Պալլաս պաղատէր,

Եւ 'ի գլխոյն փունջ մի մազից առեալ 'ի
հուր արկանէր.

Աղօթեցին, արկին ձաւարս, քաջ. Թրասիւմեդն հար 'ի նոյն,
Ըղձեարդ ուլոյն կտրեաց տապարն ելոյծ զոգիս զերինջոյն.
Ձայնիւ մաղթեն դստերք և նուն և կին պարկեշտ Նեստորին
Եւրիւդիկէ անուն նորա դուստր անդրանիկ Կլիւմենին.
Բարձր 'ի յերկրէ կալան զերինջն և Պիսիստրատ փողոտեաց,
Սեաւ յորդաբուխ հոսէր արիւնն, ոգին թողու յոսկերաց.
Յօշեալք զերինջն ըստ օրինաց կտրեն ըզթամբս ըզ նորա,
Պատեն 'ի ճարպ կրկնապատկեալ, դընեն ըզհումսն 'ի վերայ.
Ծերն 'ի վերայ այրէր շերտից ցօղէր հրաշէկ ըզգինին,
Եւ պատանիք առ ծերունւոյն կան հընգարձէնք 'ի ձեռին.
Ըզ թամբսն այրեալք մանրեն և զայլն և յընդերաց ճաշակեն,
Զմանրակոտորսն 'ի սուր շամփուրս հարեալք խորոտիկ խորովեն։
Ըզ Տելեմաք Պողիւկաստէ դուստրըն կրսեր Նեստորեան
Լուաց և օծ 'ի յիւղ պարարտ և արկ նըմա պատմուճան.

Ի բազմանեաց եւ նա պայծառ տիպ յան֊
մահիցն էր մարմին ,
Այնպէս զլօգիկն առեալ չքնաղ մերձ
բազմեցաւ Նեստորին .
Ըզխորովլոյսն ածեալք յառաջ ճաշեն
բազմեալք ըստ կարգի ,
Ձիր պատանիք յոսկի բաժակ մատռուա֊
կեն ըզգինի .
Արբեալք ըստ կամս եւ կերակրեալք ,
ձայն ծերունին արձակեաց .
« Հապա , որդիք առ Տելեմաք ածէք ըզ֊
ձիս գեղավարս .
Լծէք ’ի կառս , ուղւոյ լիցի »։ Լուան
ըզձայնն վաղեցին ,
Առեալ զամոլսըն նըժուգաց եւ ընդ լծով
ձգէին .
Խորտիկս ազնիւս եւ հաց , գինի , կինըն
տնօրէն եդ ’ի կառս ,
Եւ Տելեմաք եւ Պիսիստրատ ելին յայն
կառս գեղապանծ ։
Ու ղերասանըն Նեստորեանն , մտրակ ’ի
կուշտ ձիքն արագք
Սրացան ’ի դաշտ , թողին զՊիւղեայ ըզ֊
բարձրանիստն ըզքաղաք .
Ըզտիւն ողջոյն թռուցեալք սարսեն ըզ֊
լուծն աստի եւ անտի .
Արեգն եմուտ , մթնին ուղիք , հասին նո֊
քա ’ի Փերի .

Ի տուն Տոկղեայ իջին որդւոյն Որսիղո-
քեայ Ալփէեան,
Անդ յերեկօթս առ 'ի նմանէն սիրով
հիւրոյթս ընկալան.
Այգ ծագեցաւ ընդ արշալոյս ծայրա-
կարմիր իբրև վարդ,
Ջարագ ըղձիան արկին 'ի լուծ, ելին 'ի
կառս երփնազարդ.
Վարեն 'ի դուրս 'ի Նախադրանց 'ի ձայ-
նատուն 'ի գաւթէն,
Մտրակ 'ի կուշտ ձիք խնդամիտք արագ-
ղուղին հատանեն
Մինչև 'ի դաշտ ցորենաբեր, և անդ հան-
գեան ձիքն արագք.
Դարձաւ 'ի մայրն եմուտ արփին և մը-
թացան պողոտայք:



## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

*Տելեմաք և Պիսիստրատոս հասանեն 'ի Սպարտա առ Մենելաւ արքայ, որ 'ի ժամուն պարապեալ էր 'ի հարսանիս որդւոյ իւրոյ և դստերն: Մենելաւոս և Հեղինէ ճանաչեն զՏելեմաք՝ որդի լինել Ոդիսեայ, և ներբողեն նոքա այնչափ զՈդիսեւս, մինչև յարտասուս հարկանել զորդին: Հեղինէ հնարս հնարի զըւարթացուցանել զՏելեմաք: Ընդ առաւօտն լուեալ Մենելաւ զխեռութիւն հոմանեացն 'ի Տելեմաքեայ, սրտմտի: Պատմէ զուղևորութիւն իւր յԵգիպտոս. և զՊրոթէոսին բանսն վասն Ագամեմնեայ և այլոց դիւցազանց և զՈդիսեայ: Բայց յԻթակէ հոմանեացն ջոկք դարանակալ նստէին սպանանել զՏելեմաք 'ի դարձին: Խռովի յոյժ ընդ այն Պենելոպէ, բայց հանդարտի յԱթենասայ երազովք 'ի գիշերի:*



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Դ.

Հասին յոստան մեծն 'ի Սպարտա լեռ-
նահոլով աշխարհին,
Եւ դէմ եդեալ գնային 'ի տուն Մենե-
ղաւեայ քաջազգին.
Ճաշէր 'ի տան ընդ կոչնականս ճաշ հար-
սանեաց իւր որդւոյն
Եւ պերճ դստերն, զոր Աքիլլեայ յղէր
յորդւոյն հօրամոյն.
(Էր իսկ անդուստ 'ի Տրոյիա կուեալ
խոստումն հարսանեաց.
Զայն օր Աստուածք վայելչապէս ե-
տուն բանին կատարած.

Կառօք ձիովք առ Միւրմիդեանս յղէր
յոստան Պիւռոսին) .
Որդւոյն ըզ դուստր Ալէկտորին 'ի Սպար-
տիոյ ածէր կին .
Եր քաջորդիս այս Մեգապէնթ, զոր վերջ-
նածին ծընաւ նա
Ի նաժշտէն . զի այլ զաւակ չետուն Աս-
տուածք Հեղինեայ .
Յորմէ հետէ այն վարսադեղն՝ ծընաւ ըզ-
դուստրն աննըման
Զհերմիոնէն ըզ հրաշատիպն ոսկեղինիկ
Աստղկան :
Մինչդեռ այսպէս խրախուճս կարդեալ
'ի բարձրայարկ տաճարին
Մենեղաւեայ սերտ բարեկամքն և մեր-
ձաւորք խնդային ,
Դիւցազներգակ կիթառահար անդ շէր
հանէր ակմբի ,
Պարողք կրկին 'ի կայթս տուից ներգաշ-
նակէն 'ի միջի :
Յայնժամ կառօք 'ի նախադրունս Պի-
սիստրատոս , Տելեմաք
Ըզկայ առին . Ետես անդուստ Ետէով-
նեան այրն աւագ .
Ժիր այս ծառայ Մենեղաւեայ մատեաւ
ազդէր յունկանէն .
« Այր հիւրք երկուք , մազդեղն արքայ ,
առ դուրըս մեր հասեալ են ,

Արք դիւցազունք․ մ՛ղէ ասա լուծցո՞ւք
Նոցուն զերիվարս ,
Թէ առ այլ ոք յուղարկեսցուք , գոյցէն
Իւրեանց իշխանս » ։
Յասեաւ խարտեաշն․ « Ո՜վ Ետէոն ,
Երբեք չեղեր անհանճար ․
Չէ՞ր է զի արդ Բէթեան զաւակդ ինձ բան
Զրուցես մանկաբար ․
Ո՞չ խոկ և մեք հիւրընկալեալք կերաք
Ըզհաց շատ մարդկան ,
Մինչև ուրեմն աստ Արամազդ-էած ըզ-
մեզ ողջանդամ․
Ե՛րթ լո՛յծ ըզձիսդ , և մոյծ ըզհիւրսդ
Աստ յիմ կոչունս » ․ զայս ասաց ,
Վազեաց ծառայն նաև այլոց ժիր ծա-
ռայից ձայն կարդաց ։
Լուծին ըզձիսըն քրտնահարս և կապե-
ցին 'ի մըսուրս ,
Եւ առաջի արկին փարսակ խառն ըսպի-
տակ ընդ գարի ․
Ըզ կառսն եդուն սպիտակ որմոյն , զնո-
սա մուծին 'ի տաճար ․
Մտեալք տեսին , զքանչանային ընդ ար-
քունեացն յարկ պայծառ ․
Իբրև արփի իբրև լուսին շողայր տաճարն
արքունեան ,
Մինչև զննեալ առ հասարակ ականողքն
յագեցան ․

Իջեալք ապա սուրբ յաւազանս լուացան
օծան յաղախնեայց ,
Գիրգ պատմուճանս խլայս քնքուշ զան-
ձամբ արկին զարդ փառաց .
Բազմոց առին մերձ արքային . յոսկի
չքնաղ յամանոյն
Ի կոնք արծաթ ջուր տայր Նաժիշտն ,
հուպ բազմեցոյց սեղանոյն .
Եդ կինն հաց սուրբ և խաչ բազում դը-
նէր յառաջեւն 'ի խորտկաց ,
Եւ խախամաքն միս համահամ պնակօք
դընէր վերամբարձ .
Ոսկի բաժակ եդ առաջի . ապա արքայն
ձայն կարդաց ,
Կալեալ զաջոյն Նոցա ասէր , « Խնդա-
ցէք , քաջք , կերայք հաց .
Հարցցուք յետոյ ըզձեր ծնողաց , ոյց և
ձեռին չէք կորուստ ,
Զի դուք զարմ էք ձեռք գիւցազանց , որ
թագ կապեն յաստուածուստ .
Վատք այդպիսիս ոչ ծընանին » . ասաց ,
ըզւյոյր զողն եղին
Ըզխորովածն տայր ինքն հիւրոց զ'ի շուք
եդեալն զիւր բաժին .
Ձեռս կարկառեալք 'ի խաչ , 'ի սկահ
մինչ կշտացինդք յագեցան .
Եւ Տելեմաք առ Պիսիստրատ 'ի յուն-
կանեէն խօսէր բան .

Հըծծէր. անլուր լինել յայլոց. « Տէս, Նեստորեանդ սիրաբուն,

Զիա՞րդ ընդ տունդ շողան պղընձք, շողան մըթերք և ոսկւոյն,

Ահա փղոսկր, ահա և սաթ, ահա արծաթ փայլակն,

Անշուշտ յՈղիմպ են այսպիսի Դիոյն ներքինք տաճարին.

Ո՞վ այս հրաշիցըս անբաւից, ոյց 'ի զըննին հիանամ ».

Լըւաւ Խարտեաշըն Մենեղաւ, զայս առ նոսա կարդաց ձայն։

« Որդեակք սիրունք, 'ի մահացուաց ո՞ մրցեսցի ընդ Դիայ,

Անմահք, անեղծք, են տունք նորա, յաւերժական ինչք նորա.

Ընդ իս գուցէ մրցի կամ ոչ Թերևս այր ոք յերկրածնաց,

Որ շատ կրեալ և շատ Թափառ ածի նաւուք այսչափ գանձ.

Ընդ Փիւնիկէ Թափառեցայ, յԵգիպտացիս, 'ի Կիպրոս,

ՅԵթովպացիս, և 'ի Սիդոն, ընդ ազգն որ է յԵրեմբոս,

Ի Լիբիա, ուր և վաղվաղ եղջիւրս բերեն գիրգ գառինք,

Եւ 'ի շրջան ողջոյն տարւոյն ծնանին երիցս անդ օդիք.

Չէ ինչ կարօտ տէրն և հովիւն անդ ոչ մըսոյ, ոչ պանրոյն,
Եւ ոչ անոյշ կաթին արբման. կաթըն կըթեն զամն ողջոյն։
Այլ մինչ թափառ զանձ կուտէի, աստ զեղբայրն իմ մարդ ըսպան,
Գաղտ և յանկարծ մենքենայեալ 'ի նենգ կընոջ դաւաճան։
Արդ ես 'ի գանձս իմ ո՛չ խընդամ. լըւեալ էք զայս 'ի ձեր հարց
Ո՛ ոք երբէք էցեն նոցա. բայց ես կեցի յոյժ ցաւած.
Տուն կորուսի բազմահարուստ անդոր-րաւէտ բնակութեան.
Ո՛վ թէ զերիր մասնըն կալեալ, կայի աստ յիմն օթեվան։
Ո՛վ թէ և քաջքն ողջ մընային որք անդ տապաստ յորհասէն
Անկան 'ի մեծն 'ի Տրոյիա տար ձիաւէտ յԱրգոսէն.
Ողբ ես 'ի տանս կարդամ նոցա, մերթ կոծն ըզսիրտն ըսփոփէ,
Մերթ և դըլամ, զի արագ է յագուրդ կոծոյն որ տանջէ։
Լամ ես զամէնն, այլ ոչ այնչափ որչափ ցաւեալ լամ ըզմին.
Զայն երբ յիշեմ, իմ կերակուրս ինձ դառնանայ, և քունն իմ.

Յոյն ոք չարար, որչափ գործեաց որչափ
կրեաց Ոդիւսեւս,
Աւա՜ղ, ցաւք վիշտք գլխին ընդնա և զիս
Թախիծ մեծապէս.
Չէ 'ի միջի. և ո՛չ գիտեմք, մեռեա՞լ է
նա եթէ կեայ,
Եւ ծեր Լայերտն և Պենելոպն ուշիմըն
լայ և ողբայ.
Լայ Տելեմաք, զոր հայրն 'ի տան եթող
յայնժամ նորածին »։
Ըզհայրն յիշեաց, մորմոքեցոյց. յար-
տոսր հարաւ պատանին.
Յարտևանանց Տելեմաքեայ կայլակք ան-
կան արտասուաց,
Ըզ ծիրանին առեալ խըլայն հանդէպ ա-
չաց քօղ ձգեաց.
Միտ եդ խարտեաշն, յուզէր 'ի միտս
արդեօք թողցէ պատանւոյն
Ասել ըզհայրն, թէ նախ հարցցէ և պատ-
մեսցէ ինքն ողջոյն։
Մինչ այս մինչ այն, եւ հեղինէ յառա-
գաստէն 'ի բուրեան,
Նազէր և գայր, ոսկեփքնոյն Արտեմի-
սեայ էր նըման.
Եդ Ադրաստէ աթոռ չքնաղ, գորգ
գիրգ ածէր Ալկիբբէ,
Եւ Փիւղոնէ ածէր սակառ, զոր ետ նը-
մա Ալկանդրէ

Կին Պողիւբին, որ յԵգիպտեանն կայր 'ի
Թեբէն բազմադանձ,
Որ և 'ի ձօն Մենելաւեայ ետ կոնքս կըր-
կին արծաթեայս.
Ետ և զոյգ մի եռոտանեայց, տաղանդ-
տասանեակ և ոսկւոյ,
Եւ կին նորա ետ Հեղինեայ ձիրըս չըք-
նաղս և արգոյ.
Աղեկատ մի ետ ոսկեղէն, բոլորածիր և
սակառ,
Էր արծաթի և ըզշըրթամբք նորա ոսկին
'ի ման գայր.
Զայն ծայրալիր լցեալ թելիւք եդ Փիլո-
նէ առաջի,
Կայր աղեկատն այն 'ի վերայ յասուի
պատեալ ծիրանի։
Նստաւ յաթոռըն Հեղինէ. և ընդ ո-
տիւք պատուանդան,
Հարցաքննէր մանրախուզիւ, « Ո՞վ Մե-
նելաւ դիւցազնեան,
Գիտիցե՞մք արդ, ո՞վ են այդ հիւրքդ 'ի
մերս իջեալք օթեվան.
Սրտե՞մ արդեօք թէ ճշգրտեմ, սակայն
լռել ո՛չ ժուժամ.
Ո՛չ այր ո՛չ կին չև եմ տեսեալ, (հիա-
ցեալ կամ 'ի զըննին)
Համանմանեալս, որպէս ըզդա նըման որ-
դւոյ Ոդիւսին,

Տելեմաքեայ ասեմ մատաղ զօր Նորածին Թող 'ի տան,
Երբ Ցոյնքդ վասն իմ անամօթիս 'ի մարտ չոգայք տրոյական »։
Արկնեաց խարտեաշն. « Անշուշտ ով կին, և ես ըստ քոյդ եմ կարծեաց,
Նորա են ոտք, նորա են ձեռք, գլուխն և վարսք, ձիգքն աչաց.
Եւ այժմ յիշեալ ես զՈդիւսեայ ըզ չարչարելըն վասն իմ,
Դա արտասուեալ հեղոյր յաչաց դառըն կայլակս 'ի գետին.
Նաև 'ի քօղ հանդէպ աչաց զլօդիկ ձգէր ծիրանին ».
Ոչ հանդուրժեաց Պիսիստրատոս և մերկանայր յատենին։
« Լուր արդ, արքայդ Մենելաւէ, լո՛ւր դու ով քաջ մաղդեղանց,
Դա է Ճշգրիտ Նորա որդին. այլ է ուշիմ ամօթխած.
Ծանր է նըմա այն ինչ եկեալ քո բառբառել առաջի
Քոյ արքայիդ, որ ձայնն է մեզ իբր Աստուծոյ բերկրալի.
Ձիս ուղեկից եդ ընդ սըմա հայրն իմ Նեստոր Գերենեան,
Ըղձեղ անձկայր սա տեսանել օգնիլ 'ի գործ կամ 'ի բան։

Հայր 'ի բացեայ, որդի անդէն յո՛ր աղետից ո՛չ տանջի,
Որպէս այժմիկ այս Տելեմաք, զի չէ Ոդիւս 'ի միջի.
Զմեզ և 'ի տան զիւրքէչ ցաւոց ": Լուսախաւարեալն, յօդուց հան.
" Բամբէ, որդին իմ սիրայնոյս աւուխս ումնի իջավան.
Նա շատ կրեաց. իղձ լինէր խնամով զբրգել ըղնա աստ,
Թէ մեզ ողջ իկ դարձ ծովագնաց տայր Ոլիւմպեանն Արամազդ,
Քաղաք յԱրգոս շնորհել նմա և տունս պայծառս անդ կանգնել,
Զինքն յԻթակայ գոյիւք, որդւովք աստ խուժանիւ փոխադրել.
Քաղաք ազատ յիւրոց բնակաց, յնմոց աստի սեպհական
Մեզ մօտաւոր, կենցաղակից լինել միմեանց շատ անգամ.
Զի զմեզ այլ ինչ մի մեկնեսցէ զ'ի սէր բերկրեալքս 'ի միմեանց,
Մինչև անլոյս խաւար պատեալ ըզմեզ մահուն սրգապգեաց.
Այլ մեզ զայս շնորհ խանտաց աստուած, և զնա միայն ետ անդարձ.
Աւա՛ղ բախտին ": լռեաց արքայն և ըզբընաւան յողք շարժեաց:

Լայր Հեղինէն մաղդեղուհի, վարսագե-
ղին այս Թանայր.
Յօղէր արտօսր և Տելեմաք, լայր Մենե-
ղաւ գերափառ.
Նմ և ոչ աչք Պրիստրատեայ էր անար-
տօսր և ցամաք,
Ըզնա քաջին Անտիղոքեայ աղէկիզէր յի-
շատակ,
Զոր Այգածինն այն հոյակապ անդ դի-
տապաստ արկ 'ի մարտ.
Ըզնա յիշեալ, " Ո՜վ Մենեղաւ, ասէր
յայնժամ Պրիստրատ,
Ըզքեզ Նեստոր իմ ծերունին ասէր ընա-
ւից ուշմագոյն,
Քանիցս ըզքեն դէպ տայր զրուցաց կե-
նակցութեամբ 'ի մեր տուն.
Եւ արդ յիս, տէր. ծանր է ինձ լալ 'ի
հացկերոյթ կենակից,
Երբ առաւօտ գայ այգածինն յայնժամ
մտադիւր ես լացից.
Լացից զմեռեալս, զի և այսպէս մեք շուք
ձօնեմք մահացուաց,
Նաև 'ի սուգ կտրեմք ըզվարսս և զայս
Թանամք յարտասուաց.
Զի և եղբայրս անկաւ տապաստ, չէր նա
'ի Յոյնս վատ արանց.
Ես կենակից չեղէ նըմա, դու ինքն ըզնա
գիտես քաջ։

Վեհ զԱնտիղոք սուեն մարտիկ և ժիրա֊
ժիր և արագ »։

Աղերսեաց խարտեաշն, « Ո՞վ բարեկամ,
խօսիս իբրու այր աւագ։

Ո՛չ զայլ խօսէր ո՛չ զայլ գործէր և այր
աւագ հասակաւ,

Զի ծընունդ ես հօր իմաստնոյ և խօսե֊
ցար քաջալաւ.

Զի և հեշտեաւ գայ յերևան ծընունդ
մարդոյն բարեբաստ,

Զորոյ ըղկեանս և զհարսանիսն երջան֊
կացոյց Արամազդ.

Որպէս և այժմ ետ Նեստորի զկիրգ ծե֊
րութեամբ ’ի յարկին

Յաւերժանալ ’ի յալևայթ, և քաջ որդիս
և ուշիմ.

Հապա ’ի բաց կացցեն լալիք, դարձցուք
ընթրել միաբանգամ.

Ջուր մեզ արկցեն, և խօսեսցուք առ Տե֊
լեմաք ’ի վաղուեան »։

Ասաց արքայն. ժիր պաշտօնեայն ետ
Ասփաղոն ջուր ձեռաց,

Նոքա անդրէն ձեռս կարկառեալք ճաշա֊
կերին ’ի խորտկաց։

Այլ ինչ յայնժամ վեհն Հեղինէ հնա֊
րեաց նորա ’ի յարկին,

Դեղ իմն անդէն արկ ’ի գինին ուստի նո֊
քա ըմպէին.

Դեղ նորագիւտ, տխրահալած, մաղձա֊
 փարատ էր համբուն,
Եւ մոռացօնս ողջոյն հոգոց ածէր մշտաց
 նա մարդոյն ։
Որ զայն ըմպէ խառնեալ բաժակ, այտքն
 յարտասուաց ո՛չ թանան
Ընդ օրն ողջոյն, թէպէտ և հօր թէպէտ
 և մօրն 'ի մահուան.
Թէպէտ զեղբայրն և զկորդ զորդին իւր
 սրախողխող նա տեսցէ,
Ո՛չ արտասուէ. դեղ նորահրաշ զայս ժա֊
 ռանգէր Հեղինէ ։
Զայս նըմա ետ Պողիւդամնէ կին ժըրա֊
 գլուխ Թոոնի
Եգիպտուհին. ուր շատ ինչ դեղ հողն
 արգաւանդ ծընանի.
Շատ ինչ կենաց մարդոյ օգտան, շատ ինչ
 դարձեալ մահաբեր,
Եւ ուր այր այր է աննըման բըժիշկ ներ֊
 հուն անվեհեր 17.
Զի են նոքա ծնեա Պէեոնին. բայց Հեղի֊
 նէն ըզգինին
Խառնեալ այնպէս հրաման կարդայր մա֊
 տըռուակել ակըմբին.
Խօսէր ապա. “Լ՛ուր վեհդ Ատրիդ. և
 դուք որդիք քաջազանց.
Զար և բարի տայ մերթ ընդ մերթ ամե֊
 նաբաւն Զեւս աստուած.

Զարդիս զուք սատ զուարթաբանեալք
 առէք խրախուճս զայս ընթրեաց,
Ես ձեզ ոճով՝ի ճահ ժամուս ինչ մի պատ-
 մեմ հրաշալեաց.
Զողջոյն մրցանս չէք ինձ պատմել զերկայ-
 նամիտն Ոդիւսեայ,
Ցիշեմ զոր ինչ՝ի Տրոյիա, ուր Յոյնք կրե-
 ցին, գործեաց նա.
Ինք չարաչար զինքն հարուածեալ էառ
 զլուրև գրգլեակ,
Այնպէս գըձուձ իբրև ծառայ մուտ թըշ-
 նամեաց՝ի քաղաք.
Պերճն այն առ՝Յոյնս իբրև մուրիկ այր
 թաքթաքուր գանալից
Եկն և եմուտ՝ի յԵղիոն, էր անծանօթ
 բոլորից.
Անդ ես միայն ծանեայ ըզնա յայն կեր-
 պարան վշտըմբեր,
Մատչիմ առ նա հարցումն առնեմ, այլ
 նա յինէն խուսափէր.
Առի ըզնա լուացի օծի, նաև հանդերձ
 արկանեմ,
Երդուայ անսուտ թէ Տրոյացւոց ես զՈ-
 դիւսէս ոչ մատնեմ
Մինչև անկեալ նա՝ի բանակն Աքայե-
 ցւոց ողջանգամ.
Եւ ապա ինքն ըզմիտս Յունաց ինձ մեր-
 կացաւ զամենայն.

Շատ զոք ասա 'ի Տրոյացւոց 'ի սուր հարեալ սուսերի,
Էանց առ Յոյնս և իբրև այր բազմախորհուրդ համբաւի։
Ճըչեալ լային անդ Տրոյուհիք, ես խընդայի 'ի ծածուկ,
Քանզի 'ի տուն անդրէն դառնալ ունէր յայնժամ զիս անձուկ.
Լայի ըղձիւասն յԱստըղկանէն, որ ած զիս անդ 'ի տանէս
Զուրկ դստերէն, յառագաստէն, զուրկ և 'ի պերճ փեսայէս,
Փեսայս այս պերճ. որում ոչ միտք ոչ շուք դիմաց պակասին ,,.
Կարծեաց խարտեաշն, « Անշուշտ քաջիկ բարբառեցար դու, ով կին.
Շատ դիւցազանց ծանեայ ըզխելս և շրջեցայ շատ աշխարհ,
Այլ զՈդիւսեայն հանդուգնատիպ դեռ չեմ տեսեալ ըզհանձար.
Յիշեմ զոր քաջն այն մրցեցաւ յարուեստակեալն յերիվար,
Ուր քաջքս Յունաց գարանէաք Տրովեանց ածել օրհաս չար 18.
Անդ ած ըզքեզ անշուշտ դից ոմն 'ի զօրավիգ Տրովացւոց,
Եւ Դեիփոբոս այր դիւցանման գայր ըզքոյին ըզհետոյ.

Դու շուրջ երիցս եկեալ, ըզգոյշ շօշափեցեր ըզգարանն ,
Զանուն տայիր դքաջացն Յունաց , զկանանցն հանեալ ձայն նըման .
Ես և Դիոմեդ և վեհն Ոդիւս 'ի միջակին նստեաք ,
Զձայն քո լուաք , երկուքս 'ի գործ խըռախուսեցաք անդ արագ
Կամ առ արտաքս վազել անդէն կամ քեզ ձայն տալ 'ի փորոյն ,
Բայց Ոդիւսևս ըզմեր խըրախոյսն արգել սանձ եդ երկոցուն .
Լուռ անդ կային այլ քաջքն Յունաց , մին Անտիղքոս հանել ձայն
Խնդրէր , Ոդիւս իւր յաղթ ափով կափոյց նորա ըզըլբերան .
Յանդ ալինդ կալեալ ըզծամելեացն , ըզ Յոյնս փրկեաց նա այնպէս ,
Մինչև անդուստ մեծն Աթենաս տարեալ այլուր ած ըզքեզ » :
Զայն ետ յայնժամ Տելեմաքոս . « Դիւցազն Ատրիդ քաջարանց ,
Աւաղ զիմ հայրն այդչափ մրցանք դառն յօրհասէն ոչ փրկեաց ,
Եւ ոչ փրկէր , թէպէտ նորա երկաթ լեալ էր սիրտն համբուն .
Բայց աղէ արդ տուք մեզ մահիճս և հանգիցուք քաղցր 'ի քուն » :

Զայն Հեղինէ տայր Աղախնեայց ան֊
կողնարկացն 'ի սրահի,
Գորգ գեղեցիկ ածել սփռել և կլոտաւխս
ծիրանի,
Խըլլայս. քնքուշ տալ 'ի վերայ ծածկել նո֊
քջք ըզմարմին,
Վաղէն 'ի գուլրս ժիր աղախնեայք Ճրա֊
գունս կալեալ 'ի ձեռին.
Արկին մահիճ. առեալ Քարոզն ածէր
ըզհիւրսըն աւագ.
Հանգեան անդէն 'ի սրահակին Պիսիս֊
տրատոս, Տելեմաք.
Զոքաւ ննջել և Մենեղաւ բարձուն 'ի
ներքս 'ի յարկին,
Մերձ Հեղինէն տեռազարդեալըն հանգ֊
չէր կանանց դիցուհին։
Րայգ վարդամատն եկն յերևան. յարեաւ
Ատրիդ. քաջ արանց,
Զգեցաւ, և սուր կախեաց յուսոյն, կօ֊
շիկ 'ի յոտսըն կապեաց.
Յառաջատէն գայր դիւցանման, Նստաւ
հիւրոցն առընթեր.
« Ըզքեզ, դիւցազն ո՛վ Տելեմաք, զի՛նչ
պէտք ածին, հարցանէր.
Ասա՛ ճշգրիտ, պէ՛տք հասարակ եթէ ան֊
ձին առանձին
Ածին ըզքեզ աստ 'ի Սպարտա հատեալ
զալիս յաղթ ծովին »։

«Պիւցազն արքայ Մենեղաւէ, բացըղ-
    բերան պատանին,
Լուր ինչ 'ի քէն եկն առ քեզ զիմոյն առ-
    նուլ ծընողին ·
Զտունն իմ ծախեն արք Թշնամիք, գոյքն
    իմ վատնին պատուական,
Լի է յարկն իմ այն որերով, օղիս զենուն
    յարաժամ ·
Զենուն և շատ 'ի Թաւթաւերձ գալար-
    եղջիւր պաճարաց,
Նոքա մօրն իմ են տարփածուք, վէպք և
    գոռոզք 'ի մըտաց ·
Հասեալ կամ արդ առ ոտըս քո 'ի լուր
    հօրն իմ օրհասին,
Թէ գիտես ինչ ականատես կամ համբա-
    ւոյ յօտարին ·
Աւա՜ղ զիմ հայրն յոյժ վշտատես Թափա-
    ռական ծընաւ մայր,
Մի՛ պատ 'ի պատ ինձ խօսեսցիս, մի՛ ակն-
    ածեր մի՛ գըԹար ·
Պատմեա՛ մեկին զոր ինչ տեսեր, Թէ քեզ
    հայրն իմ Ոդիւսէս
Սատար եղև յիր և 'ի բան, զխոստումն
    ելից մեծապէս
Անդ 'ի խուժան Տրովադացւոց ուր շատ
    կրեցէք դուք Հելլենք ·
Արդ, տէր, 'ի յուշ ած զայնոսիկ և պատ-
    մեսցես ինձ աննենգ »:

ԻՍոր 'ի յոգւոց եհան արքայն . « Բամբէ,
 քաջին այն արանց
Զմ՛ է զի այդ վատաց որեար կըցորդ խըն-
 դրեն զոլ մահճաց ։
Որպէս թէ եղն զորթս ըստընդխաց ե-
 դեալ յորջ զոռ առիւծին ,
Ինքն 'ի յարօտ շըջի 'ի սարս և խոտաւէտ
 'ի հովտին ,
Գաղանն ահեղ դարձ արտարեալ գայ մը-
 տանէ յիւր կաղաղ ,
Եւ անդ ըզզաւն ածէ օրհաս մօրն և որ-
 թուցըն մատաղ ,
Այսպէս Ոդիւս ըզխատ որեարդ անշուշտ
 արկցէ դիտապաստ .
Այլ ո՞վ եթէ տա՛յր Աթենաս , տայր Ա-
 պողոն 'ւ Արամազդ ,
Լինել այնպէս որպէս երբեմն 'ի բարե-
 շէնն 'ի Լեսբոն
Փիլոմելեայ նա 'ի կանգուն ետ մըրցացի
 ըզմըղօն .
Բռնամարտեալ տապաստ էարկ , Յոյնք
 խնդացին 'ի ժամուն .
Ո՞վ թէ այնպէս կայցէ Ոդիւս և հոմա-
 նեացն ընդ դասուն .
Լիցին յայնժամ արագամահք , լիցին դա-
 ռինք հարսանիք .
Իսկ քոց հարցմանց տաց բան ճշգրիտ ,
 բան ո՛չ երբէք խաբուսիկ .

Զոր ինձ պատմեաց այն ծովայինակ ճըշ-
մարտախօս ծերունին,
Ես զայն 'ի քէն ոչ ծածկեցից, քեզ բանքն
ողջոյն մերկացցին ։
Ի յԵգիպտոս կալան զիս դիք, զիս անձ-
կացեալս հայրենեաց,
Զի ձեռն նոցա ոչ յաղեցի հարիւրեզինեան
նուիրաց .
Խնդրեն աստուածք մեզ պատկառ կալ
պատուիրանաց անվըրէպ .
Կղզի 'ի ծով կայ յալետանմբն Եգիպտոսին
'ի հանդէպ .
Փարոս կոչեն . այնչափ հեռի, որչափ
նաւ մի 'ի խելաց
Հողմավարեալ օր մի ողջոյն ուղի հատցէ
քաջընթաց 19 .
Է անդ անդոյր ծովագնացից նաւահան-
գիստ քաջյարմար,
Ուստի ըզնաւս վարեն 'ի ծով առեալք
ըզջուր 'ի պաշար .
Անդ օր քըսան կալան զիս դիք, հողմ ոչ
շնչէր յաջողակ,
Ոչ ծով կոծէր, ոչ նաւաց տայր հերձուլ
զալիս կապուտակ .
Եւ սպառէին պարէնք արդեօք նա և ան-
ձինք մեր ողջոյն,
Թէ ոչ մի ոմն 'ի դիցուհեաց գթացեալ
փրկէր 'ի ժամուն,

Իդոթէա Պրոտեայ քաջի դուստրըն ծերոյն ծովային.
Սա աղեկէզ թափառելոյս եկն ընդ առաջ առանձին.
Մինչդեռ ընկերքս յայս կոյս յայն կոյս ձուկն որսային յերկաթ կեռ,
Ցանդ ըղկըղեալ լեալ կարթընկէցք, զի քաղցն ըղփոր տագնապէր.
Սա եկն առիս, Ո՛վ հիւրդ, ասէր, կամ մանուկ ես և յիմար,
Կամ թէ կամաւդ աստ դեդերիս և ըզբօսնուս վշտահար.
Զի՞ թարթափել քեզ 'ի կղզւոջդ, ուր չիք վշտիդ կատարած.
Ո՛չ տեսանես, նկթին ահա անձինք քոյին ընկերաց։
Ասաց, կրկնեմ. լո՛ւր ինձ զիրաւն, ո՞ որք իցես դիցուհի.
Չեն այս իմ կամք. այլ ես թերևս եմ անմահից դժպըհի.
Այլ ասա՛ ինձ, (դիտեն Աստուածք), զիս ո՞ ումի յանմահից,
Որ աստ անդարձ կառեալ կասիմ ծովհատանել ձկնալից։
Կրկնեաց առիս ձայն դիցուհին. ես քեզ ո՛վ հիւր կարգ 'ի կարգ
Պատմեմ ճշգրիտ, է աստ Պրոտեւս ճըշմարտախօս ծովաբնակ.

Ի ծերունիս Եգիպտացի, և յանմահից 'ի
    կարգէ.
Ողջ զանդնդոց գիտէ ըզխորս, Պոսիդո-
    նին հնազանդէ.
Ըզնա ծընող ինձ համբաւեն. Թէ զնա լի-
    ցիս յըմբռնել.
Դարանամուտ, նա ցուցանէ քեզ ճանա-
    պարհ անարգել.
Ցուցցէ քեզ դարձ և չափ զուղւոյդ ծով
    հատանել ձկնալից.
Առ այս դարձեալ քեզ, ո՛վ դիւցազն, ա-
    սասցէ ողջ զո՛ր կամիս,
Քանի՛ չարիք քանի՛ բարիք 'ի քում յարկին
    դէպք ետուն,
Երբ տարադէմ դու տանջէիր յերկայնա-
    ձիգ 'ի յուղւոյն:
Արկնեմ առ նա. Դու ուսո՛ ինձ զարգոյ
    ծերոյդ ըզդարանս,
Զի մի՛ յանկարծ լեալ նախազգած ելցէ
    յինմոց 'ի ձեռաց.
Մարդ մահացու զիա՞րդ երբէք զոք սան-
    ձեսցէ յանմահից.
Լուաւ կրկնեաց վեհ դիցուհին, ես քեզ
    ճշգրիտ պատմեցից.
Յորժամ զերկին վերնաճեմեալ հասա-
    րակէ մեզ արփին,
Յայնժամ ծովէն քստմնածածան 'ի վեր
    գայ վեհ ծերունին.

Հողմըն շնչէ զեփիւռոսին, նա ողողեալ
Թուխ յալեաց,
Ելեալ՚ի դուրս ընկողմանի ՚ի յալս խուրոց
անձաւաց.
Փոկք ըզնովաւ խուռըն ննջեն ձեռ Ալ֊
սիւղնեայ ջքնաղին,
Ելեալք ծովէն հոտ դարշահոտ շնչեն խռ֊
րոց ըզծովին.
Ես անդր ըզքեզ ածեալ ընդ այգն և
կարգեցից քեզ ըզվայր,
Եւ դու ընտրեա ընկերս երիս քեզ ՚ի նա֊
ւացդ քաջորեար.
Ըզքարս ծերոյն զայն խորագէտ պատ֊
մեմ քեզ կարգ ըստ կարգէ.
Նա ելեալ նախ հինգ հինգ Թուով ըզ֊
փոկս ողջոյն ջոկատէ.
Նմջէ ապա ՚ի մէջ նոցա իբրև հովիւ ՚ի
խաշին,
Այն ինչ տեսջիք ըզնա քունեալ, ուժ Թա֊
փեցէք ըզբազկին.
Ըմբռնեցէք, Թէպէտ մըցի Թէպէտ ձգնի
զերծանել,
Եւ զամենայն փորձ նա փորձէ զինքն այ֊
լադէմ փոփոխել.
Փոխ, ՚ի գազան, փոխի ՚ի ջուր, փոխի ՚ի
հուր բոցավառ,
Այլ կալարուք դուք ուժգնապէս, ըզ֊
կայ առէք քաջաբար.

Ի ծերունիս Եգիպտացի, և յանմահից 'ի կարգէ.
Ողջ զանգնդոց գիտէ ըզխորս, Պոսիդոնին հնազանդէ.
Ըզնա ծընող ինձ համբաւեն. Թէ զնա լըցիս յըմբռնել.
Դարանամուտ, նա ցուցանէ քեզ ճանապարհ անարգել.
Ցուցցէ քեզ դարձ և չափ զուղւոյդ ծով հատանել ձկնալից.
Առ այս դարձեալ քեզ, ո՛վ դիւցազն, ասասցէ ողջ զօ՛ր կամիս,
Քանի՛ չարիք, քանի՛ բարիք 'ի քում յարկին դէպք ետուն,
Երբ տարագէմ դու տանջէիր յերկայնաձիգ 'ի յուղւոյն։
Արկնեմ առ նա. Դու ուսո՛ ինձ զարդոյ ծերոյդ ըզդարանս,
Զի մի՛ յանկարծ լեալ նախազգած ելցէ յիմոց 'ի ձեռաց.
Մարդ մահացու զիա՞րդ երբէք զդք սանձեսցէ յանմահից.
Լըւաւ կրկնեաց վեհ դիցուհին, ես քեզ ճշգրիտ պատմեցից.
Յորժամ զերկին վերնաձեմեալ հասարակէ մեզ արփին,
Յայնժամ ծովէն քստմնածածան 'ի վեր գայ վեհ ծերունին.

Հողմըն շնչէ զեփիւռոսին, նա ողողեալ
Թուխ յալեաց,
Ելեալ 'ի դուրս ընկողմանի 'ի յալս իւրոց
անձաւաց.
Փոկք ըզնովաւ խուռըն ննջեն ձեռ Ա-
սիւղնեայ չքնաղին,
Ելեալք ծովէն հոտ գարշահոտ շնչեն խո-
րոց ըզծովլին.
Ես անդր ըզքեզ ածեալ ընդ այգն և
կարգեցից քեզ ըզվայր,
Եւ դու ընտրեա ընկերս երիս քեզ 'ի նա-
ւացդ քաջորեար.
Ըզքարս ծերոյն զայն խորագէտ պատ-
մեմ քեզ կարգ ըստ կարգէ.
Նա ելեալ նախ հինգ հինգ Թուով ըզ-
փոկս ողջոյն ջոկատէ.
Ննջէ ապա 'ի մէջ նոցա իբրև հովիւ 'ի
խաշին,
Այն ինչ տեսջիք ըզնա քունեալ, ուժ Թա-
փեցէք ըզբազկին.
Ըմբռնեցէք, Թէպէտ մրցի Թէպէտ ճգնի
զերծանել,
Եւ զամենայն փորձ նա փորձէ զինքն այ-
լադէմ փոփոխել.
Փոխ, 'ի գազան, փոխի 'ի ջուր, փոխի 'ի
հուր բոցավառ,
Այլ կալարուք դուք ուժգնապէս, ըզ-
կայ առէք քաջաբար.

Իսկ յորժամ նա հարցցէ ըզքեզ, եղեալ
'ի յայն կերպարան

Ցորում յառաջ տեսեր ըզնա, մի բուռն
առներ դու յայնժամ.

Լ՛այծ դու ըզծերն, հա՛րց ո՛ իցէ քեզ ո-
խերիմ յանմահից,

Հա՛րց և զդարձէդ, զխա՛րդ ողջամբ ըզ-
ծովն հատցես ձկնալից։

Իջաց, սուղաւ ծովն յալեկոծ. ես շատ
ծփեալ 'ի խորհուրդ,

Ցարեայ գնայի 'ի խումբ նաւացն որ անդ
կային յաւազուտ.

Հասեալ 'ի ծով ընթրիս առնումք, մեզ
աստուածեան հաս գիշեր.

Մեք 'ի ճողբիւն ջուրցն հանգուցեալ
ննջեմք ծովուն առ եզեր։

Իբրև վարդամատն երևեցաւ, գնայի ծո-
վուն առ ափան,

Ուխտ եդի դից, ընկերս երիս առի 'ի
գործ պիտեան.

Իսկ դիցուհին չորս փոկենի նոր մորթե-
զերծ ըզփոկոց,

Սուզեալ 'ի ծոցն անդնդական վերաբե-
րեաց 'ի խորոց.

Նենգ լարէր հօրն և մեզ մահիճս փոսեաց
յաւազն 'ի ծովէն,

Անդ մընայր մեզ, հասաք առ նա ես մեզ
կարգաւ անկողին։

Միոյ միոյ արկ փոկենի. բայց մեզ դա-
րանքս դառնացան,
Տանջէր ըզմեզ այն ծովասուն փոկոցըն
հոտ գարշութեան.
Ո՛ր մարդ ընդ կէտըս ծովայինս ժուժայ
ունել անկողին,
Բայց մեզ սատար դիւր մեծապէս հնա-
րեաց յայնժամ դիցուհին.
Իւղ կաթեցոյց մերոց ռնգանց, անու-
շահոտ ամբրոսեան,
Նովաւ ընաջինջ նա ըզփոկոցն արար ըզ-
հոտ դառնութեան:
Անդ զայգն ողջոյն սպասեալ մընամք.
ծովէն փոկոց գունդ խուռնէր,
Ի դուրս ելեալ երամ երամ պառակէին
առ եզեր.
Ծեր միջօրեայն ել՚ի ծովէն, եգիտ անդ
փոկս պարարակ,
Յայց ել ողջոյն և ընդ փոկոցն նախ ընդ-
թուով ըզմեզ արկ.
Կասկած ընաւին չունէր դաւոյն, ընկող-
մանեալ և քունեաց,
Մեք ձայն բարձեալ հրոսեմք ՚ի նա փորձ
ցուցանեմք ըզբազկաց.
Ըմբռնեցաք. ծեր խաբուսիկն եցոյց զա-
րուեստն անդանօր,
Ցանկարծակի փոփոխեցաւ յառիւծ ա-
հեղ բաշաւոր.

Դարձաւ վիշապ, դարձաւ յովազ, դարձաւ վարազ յամեհի,
Ի ջուր լուծաւ, ապա 'ի ծառ ամբարձուղէշ դալարի.
Մեք ուժգնապինդ ունիմք ըզնա, նեղեալ ծերոյն խորագէտ,
Հարցումն առնէր. Ո՞յ աստուածոց զայդ քեզ, Ատրիդ, խորհուրդ ետ.
Զիս դարանեալ կալար բռնի. զի՞նչ ինչ իրաց պէտք են քեզ „.
Կրկնեմ առ նա. Գիտես ով ծեր. զի՞ դու 'ի կեղծ հարցանես.
Կամ յարգելոց, ելք աղագս ոչ գըտանեմ յայս կղզի.
Սիրտ իմ հաշի. ասա՛ ո՛ ոք յայս դառադիղ զիս ունի.
Գիտէն աստուածք. ասա՛ ո՞ր դիք ինձ խոչ ընդ ոտն է յաւէտ,
Զի աստ կասեալ չառնեմ ըզդարձն ըզծով հատեալ ձկնաւէտ „:
Կրկնեաց ինձ ծերն. Դիայ և դից պէտք են յազել ողջակէզ,
Զի դու արագ ծով ծիրանի հատեալ 'ի տուն քո հասցես.
Չի՛ք բարեկամս քեզ տեսանել, ոչ տուն և ոչ հայրենիս,
Մինչև 'ի գետն երկնահոսան Եգիպտոսին ոչ դարձցիս.

Անդ անմահիցն երկնաձեմից տուր հա-
րիւրեզն սրբազան.
Նոքա յայնժամ բացցեն զդուռնդ, յոր
իղձք ոգւոյդ վառեցան »:
Լուայ ըղձանն յոյժ սրտառուչ. զի ինձ
հրամէր ծերունին
Ի յԵգիպտոս անդրէն ծովել ուղի եր-
կայն դժուարին.
Համայն այնպէս ես կրկնեցի. Լընում
զծերոյդ պատուիրան.
Այլ ա՛ղէ ինձ ասա՛ ճշգրիտ, Ցոյնք ամե-
նայն ողջ դարձա՞ն,
Մեր նաւակիցք զոր Տրոյիոյ չուեալ թո-
ղաք ես, Նեստոր,
Արդեօք յանկարծ ոք 'ի նոցունց մահու-
ամբ կորեա՛ւ 'ի ծով խոր.
Կամ յետ մարտին մերձ սիրելեաց ե՞լ ոք
անդորր յաշխարհէս.
Գժգմնեցաւ, ասէր ինձ ծերն. Ա-
տրիդ, զի՞ զայդ հարցանես.
Չէ քեզ բարի գիտել զամէնն, և մի այդ-
չափ խուզարկեր.
Լուեալ ողջիկ, անշուշտ ըզքեզ առցեն
լալիք կարեվէր.
Շատք անձնապուր եղեն նոցուն, և շատք
ներկունք օրհասին.
Բայց զօրավարք երկուք միայն կորեան
Ցունաց 'ի դարձին.

Դու մարտակից եղեր նոցա . կայ եր-
րորդ ոք 'ի կարգի ,
Որ չէ մեռեալ՝ կեայ տակաւին բայց ծով
փակեալ յամեհի .
Մերձ իւր նաւաց կորեաւ Այաս , զոր
Պոսիդոն զառաջինն
Փրկեաց ծովէն ապաստանեալ առ վէմս
Գիւրեան ահագին .
Փրկէր անշուշտ 'ի մահուանէ , թէպէտ
խեթայր Աթենաս ,
Թէ մեծապանծ չասէր Այաս 'ի մեծա-
պէս իւր վընաս .
Զանձն իւր թափել յալեաց ծովուն նա
պանծացաւ բարձրայօն ,
Թէպէտ , ասէր , դիք ընդդէմ կան . լը-
ւաւ , յարեաւ Պոսիդոն .
Առեալ անդէն զերեքարձէնն բըռամբն
իւր յաղթ և ազդու ,
Հար ընդ Գիւրեանն ջախեաց ըզվէմն և
փեռեկեաց 'ի յերկու .
Կաց մին հատորն յակաստանի , և միւսն
'ի ծով վայրհոսէր ,
Յորում Այաս նախ հարուածեալ նըս-
տէր ոգւով անվեհեր .
Առեալ ընդ իւր տարաւ զԱյաս յան-
դունդս 'ի խոր ծովակուր ,
Անդ ջրապարպատ կորեաւ Այաս ըմ-
պեալ զաղին ծովաջուր ։

Իսկ քո զեղբայրն յօրահասէն մրկեաց
'ի Նաւս մեծն Հերա,
Մինչև եհաս 'ի սեպածայր սահման վերին
Մաղէեայ․
Յարեաւ մրրիկ ողբայր եղբայրդ, ընդ
ծով մղեաց սաստկապէս
Ի ծայր դաշտին, ուր նախ Թիւէստ, ապա
բնակէր Եգիսթէս․
Սակայն և անդ զերծաւ ողջամբ, դիք
հողմ յաջող շնչեցին,
Ածին 'ի տուն․ նա խնդամիտ եմուտ յեր
կիր հայրենին։
Խոնարհեցաւ և տայր արքայն համբոյր
հողոյն հայրենեաց,
Եւ առ խնդին ջերմ արտասուք անկա֊
նէին 'ի յաչաց․
Ետես ըզնա դիտարանէն դէտ Եգիս֊
թեայն խորամանկ,
Զոր անդ եդեալ՝ վարձ խոստացաւ ոս֊
կւոյ տաղանդըս երկեակ․
Ամ մի ողջոյն սա անդ՝ կացեալ և լրտեսէր
'ի ծածուկ,
Զի մի եկեալ նա յանծանօթս 'ի գործ
առցէ ըզբազուկ․
Դէտըն վազեաց ազդել յարքայն, Եգիսթ
ճեպով նենգ լարեաց,
Քաջըս քըսան եդ 'ի դարան, 'ի նոյն
հրաման տայր ընթրեաց․

Ինքն 'ի հրաւէր Ագամեմնոնեայ ընդառաջ-
եաց արքային,
Հեծեալս և կառս ածեալ ընդ իւր, չա-
րիս նիւթէր 'ի սրտին.
Զայրն անկասկած դաւն յօրհաւէն, ած
'ի խնջոյս փողոտեաց
Որպէս թէ ոք զեզն առ մսրին տապաստ
արկցէ յեղակարծ.
Ո՛չ Ատրիդեայ մնեաց ընկեր և ո՛չ յարանց
Եգիսթին,
Որոց յարեանցն ապաժուժից յարկք ո՛չ
ներկան տաճարին։
Լուայ ըղձոյժն, ես աղեկէզ լայի նըս-
տեալ յաւազի.
Կեանք իմ յայնժամ ինձ դառնացան լոյս
տեսանել զարփենի,
Իբրև շատ ինչ զանձն իմ կոծեալ լայի,
ձայն ետ ծերունին
Ձայն քաջալեր, ասէր, ո՛վ քաջ. լալեօք-
անդուլ մի լիցիս,
Դարման վիրին չէք գտանել. այլ դու
արագ լեր ուղղոյն,
Պնդեա՛ ըղձմէջս, զի դու ողջամբ 'ի տուն-
դ հասցես վաղագոյն.
Կամ կենդանի գտցես զԵգիսթ, կամ թէ
կանխեալ Որեստէս,
Ըզնա յոգի հարեալ իցէ և դու թաղման
մերձ կացցես։

Մնաց, և յիս Թէպէտ Թախծեալ ար֊
ծարծեցաւ իմ ոգին.

Ձայն կրկնեցի. Լուայ զերկուցն, ասա
դու զանցս երրորդին։

Ո՞ է որ կեայ դեռ կենդանի 'ի ծով փա֊
կեալ ամեհի,

Կամ Թէ մեռեալ. լըսել անձկամ Թէպէտ
Թախծեալ 'ի սրտի։

Նա բնակ, ասէր, 'ի յԻԹակայ է Լայեր֊
տեայ քաջորդին,

Տեսի ըզնա զի գերարտօսր հեղոյր յա֊
չացն 'ի կղզին,

Զայրն հիւքացեալ անդ 'ի կղզւոջ Յաւերժ֊
հարսին Կալիփսեայն,

Որ բռնաբար ունի ըզնա իբրու յանել
արգելեալ.

Ոչ ժամանէ դառնալ 'ի տուն, ո՛չ դոն
անդ նաւք քաջատաձիգք,

Ո՛չ ծովայածք ընդ յաղԹ ալիս նըմա ըն֊
կերք զօրավիգք.

Այլ քեզ, ո՛վ քաջ, չէ սահմանեալ
յԱրգոս դրաւիլ յօրհասէն.

Յեղիւսեան դաշտ 'ի ծագս երկրի ըզքեզ
անմահքն յղեսցեն.

(Ուր կայ խարտեաշն ՀռադամանԹոս,
ուր դիւր մարդկան է կենաց,

Չի՛ք ձիւնաբերք, չի՛ք ձմեռունք, ոչ տեղ
տարափ անձրևաց 20.

Զեփիւռն անոյշ ցանող յՈվկեանէն սիւք
զովութեան է մարդկան .)
Քանզի կալեալ դու զՀեղինէն, Արա-
մազդայ ես փեսայն ։

Մնաց, սուզաւ ծովն յալետանջ. ես
ընդ քաղցած ընկերաց
Գնացի 'ի Նաւս, շատ ինչ յուզեալ 'ի
խորհրդոց ծըփանաց ·
Հասաք 'ի Նաւս · ընթրիս առնումք, և
մութ եհաս գիշերին ,
Ննջեմք զափամբ մինչ ծագեցաւ լոյս վար-
դամատն այգածին ·
Ցարեաք անդէն, առեալք ըզնաւս ձըգ-
եմք 'ի ծովն ալետաստ ,
Կանգնեմք ըզկայմն և հանդերձեալ պար-
զեմք նաւուն զառագաստ ·
Մըտին նաւազք առին նստոց կարգաւ
յայսկոյս և յայնկոյս ,
Առեալք զքաշտիս կորովակի բախեն ծո-
վուն ըզփրփուրս ·
Զնաւս առ գետոյն երկնահոսան Եգիպ-
տոսին կացուցի ·
Ցաշտ յաղեցի հարիւրեզնեան , խէթ
զանմահից շիջուցի ·
Ագամեմնեայ 'ի շուք յաւերժ հող կու-
տեցի 'ի դամբան ·
Դիք հողմ յաջող տան ինձ արագ դառնալ
յերկիր հայրենեան ։

Արդ կա՛ց առ իս մինչ մետասան օր երկ-
տասան ծագեսցի,
Ըղձերդ ողջամբ արձակեսցէս, տաց և ընծայս
փարելի.
Նըժոյգս երիս, կառք քաջամուր, տաց
և չքնաղ դաշխուրան,
Նուէր հանցես դից անմահից ինձ յիշա-
տակ յաւերժեան»։
«Մ՛է զիս յերկար, կրկնեաց ուշիմն,
ո՛վ Ատրիդէս, մի՛ կալցես,
Թէպէտ անձկով, նաև ամ՛ մի բնականայի
ես առ քեզ.
Ո՛չ յիշէի ո՛չ տուն, ո՛չ ծնող. այնչափ
քաղցր են ինձ քո բանք,
Այլ անդ ՚ի Պիւղ տաղտկան ընկերքս տե-
սեալ զայնչափ դեգերանք.
Իսկ զոր ընծայդ ինձ պարգևես, է այն
յարգոյ աւանդից.
Բայց ըզնըժոյգս յԻթակ չածեմ, զայն
քեզ ՚ի շուք աստ թողից.
Դաշտաց տէր ես դու անբաւից, ուր և
լոտոս ուռձանայ,
Ուր և կիպեր, ցորեան, հաճար, գարի
սպիտակ սփռեալ կայ։
ՅԻթակ վազից չիք ասպարէզ և ո՛չ գետին
մարգաւէտ.
Այծից արօտ, ո՛վ Թէ երկիրս արօտ ձիոց
էր յաւէտ.

Չիք 'ի կղզիս յաճախութեամբ ոչ դաշտ մարգաց և ոչ անդ ,
Ծովապարփակ են շուրջ 'ի շուրջ և յԻթակէ մանաւանդ ”:

Լռեաւ , ժպտեալ կալաւ զաջոյն և զայս կրկնէր Աթենաս .
“ Արիւն քաջաց ես , ով որդեակ , և 'ի բանից յայտ առնես .
Արդ փոխեցից ես քեզ զընծայսն . տէր եմ գոյից իմ ողջոյն .
Քեզ տանն իմոյ 'ի յաւանդից տաց ըզչքնաղն և զարդոյն .
Տաց հրաշակերտն ըզխառնարան , որ է համակ արծաթի ,
Գործ ճարտարին է Հեփեստեայ , շըրթունքն յոսկի բոլորի .
Զայն ինձ դիւցազըն Փեդիմոս Սիդոնացւոց ետ արքայն ,
Հիւրընկալեալ զիս 'ի դարձիս , և արդ 'ի ձօն տամ քեզ զայն ”:

Զրուցեալք այսպէս , և բազմականք մըտին 'ի յարկ արքային .
Եւ պաշտօնեայք ածեն զօդիս , ածեն զանոյշն ըզգինին .
Անդուստ նոցուն և ամուսինք քօղազարդեալք եդին հաց ,
Այսպէս նոքա 'ի տաճարին վայելս տունումն յայն ընթրեաց :

Բայց Ողխուեալ հանդէպ յարկին անդ-
հոմանեացըն դաստակ
Սահրիճ ձգեալք և արդնըննկէցք զրօս-
նուն 'ի չէնն 'ի յաստակ.
Վայր խեռուըթեան ըստահակացն, ուր
և կրկին այն իշխանք
Բաղմեալ կային, Անտինոոս և դիւցա-
տիպն Եւրիմաք։
Մատեաւ փրոնեանըն Նոեմոն, և ցԱն-
տինոս հարցանէ.
“ Գիտեմք արդեօք երբ 'ի Պիւղեայ Տե-
լեմաքոս դարձ առնէ.
Նա առ զիմ նաւն. արդ պէտք են ինձ
չուել յԵլիդ նաւագնաց,
Ուր իմ ճայիկք անդ երկոտասան, ուներն
ներքոյ 'ի ջորեաց,
Հուժկուք, տոմուղք, յորոց առեալ կա-
միմ 'ի լուծ արկանել ”.
Լուան, ափշին. ոչ կարծէին նմա 'ի Պիւղ-
չու առնել.
Այլ կամ 'ի խաշնն կամ 'ի խոզեանն
գընալ ուրեք յիւր կալուած.
Վասն այն ձայն ճեալ բարձ Անտինոս.
” Ասա զերան, երբ գընաց.
Ո՞յք յԻթակայ չոքան ընդ հետ. արդեօք
վարձուո՞րքն և գերիք.
Զօրեա՞ց այդչափ. եթէ արդեօք մեր այր-
ընտիր պատանիք.

Կամ թէ 'ի քէն, տամ զերան, արդեօք
    բռնի՞ առ ըզնաւ,
Թէ մըտադիւր ետուր նըմա յորժամ ընդ
    քեզ խօսեցաւ »:
« Քաջ, մըտադիւր, կրկնեաց Նեմոն. և
    զի՞նչ առնել էր յայնժամ.
Խնդրեաց այր պերճն և հիքացեալ, ո՞ ոք
    զլանայր նըմա զայն.
Քաջ պատանիք չըքան ըզհետ. տեսի
    զչըւոյն ես զիշխան,
Կամ Մենտորն էր, և կամ աստուած.
    զի էր նըմին համանման.
Բայց հիանամ. ես ըզՄենտորն երեկ
    տեսի վաղ այգուն.
Զիա՞րդ յայնժամ ծովեաց 'ի Պիւղ ». ա-
    սաց և ել հօրն 'ի տուն:
Յոգիս հարան. և հոմանիք Թողին ըզ
    խաղն և եկին,
Առին բազմոց, և Անտինոոս բարբառեցաւ
    յակմբին.
Էր զայրագին, միտք իւր խաւար, և աչք
    հրատիպք բոցավառ.
« Բա՜բէ, գոչեաց, այր պատանիդ գործ
    արդ գործեաց մեծաբար.
Ո՛վ, ուա՜հ գործէ Տելեմաքոս... և ո՞ զմը-
    տաւ զայդ ածէր.
Ի նաւ բռնի ժըտի մանուկն առնուլ ըզ-
    քաջս իւր ընկեր.

Ըմփիղըն երկանց է գործ գորա · այլ ամ-
պրոպեանն Արամազդ
Հարցէ ըզդա մինչև նորա մեզ օր գու-
ժեալ չարաբաստ ։
Բայց դուք ա՛ղէ նաւ մի սրընթաց տու՛ք
ինձ քըսան և որեար ,
Նաւայց գարան 'ի ծոց Սամեայ և Իթա-
կայն առապար ·
Զարաւ անձինն նա ծով հատցէ 'ի խոյզ
իւրոյ ծընողին ,, ։
Լըւան ըզբանն և գովութեամբ խրախոյս
նըմա կարդային ։
Յարեան մըտին տուն յՈդիսեայ և Պե-
նելոպն իրազգած
Եղև կանուխ գաղտնորոգայթ լարեալ
հաղբից հոմանեաց ·
Մեդոն քարոզն էր արտաքոյ և 'ի գաւ-
թէն ականջէր ·
Հաղբ լարէին · նա եկն 'ի տուն Պենելո-
պեայ գուժաբեր ։
Ետես առ սեամս, հարցումն առնէր · «Ըզ-
քեզ սեղեխքն , ո՞վ Մեդոն ,
Հե՞մ յըղեցին · արդեօք խո՞չ կալ իմ նա-
ժըշտացս 'ի պաշտօն ·
Վա՜շ , Ոդիւսեայ ժիր աղախնեայք ըզձե-
ռագո՞րծսըն թողցեն ,
Եւ պորտաբոյծ այդ հոմանեացդ խրա-
խո՞նս ընթրեաց կահեսցեն ·

Ո՞վ թէ չէին իմ տարփածուք, և ո՛չ այ֊
լումցեց յոգին,
Ո՞վ թէ այսօր այդ որկորեայց լինէր ընթ֊
րեքս այս վերջին.
Ո՛վ խեռք կուռեալք, որ զգոյս ծախէք
զուշիմ որդւոյս դուք անյագ.
Դուք գէթ և զայն, տղայ գոլով, 'ի հարց
ձերոց ո՞չ լուայք.
Զիա՞րդ Ոդիւս ընդ հարըս ձեր ոչ զըք
զըկեաց, ո՛չ նենգեաց.
Չարար երբէք որ բոյս բարուց է արքայից
ճոխապանծ.
Զի զոմն առեն 'ի մարդկանէ և զըք գը֊
գուեն աղուաբար.
Այլ նա ըզմարդ չերդիծեցոյց և ո՛չ ումեք
չար արար.
Արդ ա՞յս են ձեր իղձք դըժպըհիք, և ա՞յս
գործք ձեր խաւարին.
Եւ ա՞յս քաջին այն երախտեաց շնորհա֊
կալիք փոխարին »։
« Իցի՜ւ եթէ, լո՛ւր ո՞վ դշխոյ, Մեդոնն
ուշիմ ձայն կրկնեաց.
Իցի՜ւ թէ այդ քոց աղետից էր ծայրագոյնն
'ի չարեաց.
Ոճիր ահա նիւթեն սեղեխք. աջ սանձեա֊
ցէ Դիոսին.
ԸզՏէլեմաք խորհին նոքա 'ի սուր հա֊
րուլ 'ի դարձին.

Նա 'ի Սպարտա չոքաւ, ա՛ի Պիւղ առ-
նուլ ըզհօրն ըզհամբաւ »:
Այն ինչ լըւաւ, ծունգքըն լուծան, սիրտ
նազելւոյն նուաղեցաւ:
Անդ ցըմեծ ժամս Պենելոպեայ ձայն հա-
գագին պակասէր,
Աչքն արտասուօք լըցան նորա և պարզ
խօսել ոչ զօրէր.
Ձայն ետ ապա. « Առի՞նչ, Քարոզ, որ-
դիս եղև տարագնաց.
Զի՞նչ պէտք էին վերելակել նըմա 'ի նաւս
ճեպընթաց.
Նաւքն են 'ի ջուրս նըժոյգք մարդկան
ծով հատանեն ամեհի.
Թերևս խնդրէ՞ նա ծովակուր գոլ անա-
նուն յաշխարհի »:
« Գիտեմ իսկ ոչ. կրկնեաց Մեդոն, թէ
ի՞նքըն զինք թէ աստուած
Դրդեաց 'ի Պիւղ, լըսել ինչ մի կամ հօրն
ըզդարձ կամ զօրհաս »:
Ասաց և ել: Այլ Պենելոպ տապեալ
ցաւոյն 'ի տօչոր,
Ի բազմախուռն 'ի մէջ գահուց ո՛չ բազ-
մեցաւ 'ի յաթոռ.
Ի տրամ գետնի նստաւ առ սեամս առա-
գաստին գեղապանծ,
Ողորմելի ձայն արձակէր, դասք շուրջ
կային նաժըշտաց.

Հեծեծէին որչափ 'ի տան նաժիշտք աւ-
սարդք և առոյգք.

Ողբայր տիկինն. « Լուարո՛ւք ինձ, քորք,
չէք իմ ցաւոյս չէք ինչ զոյգ.

Զիս 'ի կանայս 'ի համատիս յոյժ վշտա-
տես դիքն եդին,

Որ նախ ըղձաջն իմ կորուսի ըղձոյականն
ամուսին.

Էր նա կարգօք առաքինի 'ի մէջ Յունաց
բարգաւաճ,

Ընդ Եղլադա և ընդ Արգոս համբաւն և
շուք գերապանծ.

Արդ և զորդիս առին մրրիկք անխա-
ռունակ 'ի տանէն.

Ա՛յ հիքացեալք. չեղէք գուշակք. չոքաւ
զանխուլ նա յինէն.

Գիտելով չար, յորժամ 'ի նաւ նա ամ-
բարձաւ ծովագնաց,

Դուք յետսամիտք, զի՛ ո՛չ վաղվաղ զիս
զարթուցէք 'ի մահճաց.

Եւ իրազգած ուղւոյն նորա, թէպէտ վա-
ռեալ 'ի գընալ,

Կամ խոչ կայի արշաւանին կամ զիս թո-
ղոյր աստ մեռեալ.

Հա՛պա մի ոմն աստ զիմ գերին, զայն ձայ-
նեսցէ զԴոլոն ծեր,

Զոր ինձ 'ի գալս ետ հայրս, և արդ պահէ
զպարտէզ մրգաբեր.

Նա փութապէս առ Լայերտէս գնացեալ
ողջոյն պատմեսցէ ,
Թերևս ինքնին քաջ ծերունին բան հնար-
իմաց նիւթեսցէ ·
Յառեան ելեալ ժողովրդեան բողոք
բարձցէ դառնապէս ,
Թէ մահ նիւթեն քաջ զաւակին զոր ծնաւ
նըման Ոդիւսէս ”։
Զայն ետ դայեակն Եւրիկլէա · “ Թէ
Թողուս զիս ողջանդամ,
Թէ սպանանես , տիկնաց տիկին , ես մեր-
կացայց զամենայն ·
Ես իրազեկ եղէ նըման հաց և գինի քաղց-
րութեան ·
Երդումն անխաբ ետ ինձ երդնուլ չասել
մինչ յօր երկոտասան ·
Կամ թէ դու ինքն հարցանիցես , և լուր
առցես առանձին ,
Զի մի լալեօք եղծանիցես ըզ քաջառոյգ-
ըզմարմին ։
Արդ դու լուացեալ սրբահանդերձ ել
ընդ նաժիշտսդ յարկ վերին ,
Մաղթեա՛ վեհին Աթենասայ ողջիկ պա-
հել քո զորդին ·
Դու մի՛ ծերոյն գուժաբերիւ ցաւ բար-
դեսցես դառնութեան ·
Անշուշտ անմահքն այնչափ խեթիւ չեն
ընդ զաւակն Արկեսեան ·

Թողցէն նշխար ժառանգական այս բար-
ձրայարկ արքունեաց,
Տէր և անդոց պարարտութեան ». ասաց
դայեակն և լռեաց։
Ցածոյց նա զողքն եհատ զարտօսրն. Պե-
նելոպէ առ զօդին.
Լուացեալ անդէն սրբահանդերձ ել ընդ-
նաժիշտս յարկ վերին.
Զաւարս եդեալ 'ի սակառի, մաղթէր.
» Լո՛ւր ինձ, Աթենաս,
Դուստր անվրկանդ Արամազդայ, թ' եր-
բէք Ոդիւս քեզ յաղեաց
Թամբըս պարարտ ղեզանց, զօդեաց.
քեզ այդոքիկ յուշլեցին.
Փրկեա՛ զորդիս. վէս հոմանիքն յարկէն
իմմէ մերժեսցին »։
Մաղթեաց. կոծ եառ. և դիցուհին պա-
ղատանաց ըն լուաւ,
Մինչդեռ խոնարհ անդ 'ի յարկին գան
հոմանիք զաղմըկաւ։
Ասէր ինծ ղիւք ոք պատանի անդ 'ի խե-
ռացն յերամին.
« Արդ հարսանիս հանդերձեացէ մեզ
տարփացեալ թագուհին.
Վա՛հ, ո՛չ գիտէ զի՛նչ հաղբք մահու իւր
միածնին լարեցան ».
Բայց խօլամիտքն ո՛չ գիտէին, անգուստ
զի՛նչ իրք դիպեցան։

Յարդարեցաւ Անտինոոս. « Այլեւսա միտք, լերք ուշիմ.
Մի՛ ոք գաղտնեաց գուշակ լիցի. չափ՛ եւ կըշիռ դիք լեզուին.
Լուռ մեք ըզբանն 'ի գլուխ հանցուք զոր կնքեցաք միաբան.».
Ասաց, ընտրեաց իւր գործակից 'ի կորովեաց այր քսան:
Երթեալ 'ի նաւ եւ 'ի ծովափին ըզնաւն 'ի ծով արկանեն,
Դընեն ըզկայմն եւ զառագաստ եւ ըզքաշտոնս պատրաստեն.
Փոխեալ փոխթոյթս կապեն 'ի թիս, տարածեն սպիտակ զառագաստ,
Յառնուն բերեն եւ զէն եւ զարդ այն պատանիքըն անսաստ,
Դադար նաւուն եդուն 'ի խորս, մըտեալ ընթրիս առնուին,
Անդ խրախացեալք սպասեալ մընան մինչեւ ցըժամ երեկին:
Բայց վերելեալ 'ի վերնատունն կայր Պենելոպ ծոմաջան,
Զուտէր, չըմպէր, յուզէր խորհուրդ վասըն որդւոյն սիրական,
Արդեօք լիցի՞ Տելեմաքոս յօրահասէն անձնապուր.
Ըստ ինչ խեթայր, մի՛ հոմանեաց ժանեաց լիցի կերակուր:

Որչափ տախտըն անկասկած 'ի շտապ
մըտաց տագնապի,
Երբ դիեցիկ հանգերձ կորեամբք հաղբ
յորսորդաց Թակարթի,
Այնչափ ծըփայր, մինչ ըմբռնեալ յա-
նուշարար 'ի քընոյն
Անկեալ ննջեաց, և ողջ անդամք լու-
ծեալ էին նազելւոյն։
Հնարեաց յայնժամ վեհն Աթենաս, 'ի
գոյ էած ուրուական,
Մարմնով 'ի տիպ համանմանեալ էր Իփ-
Թիմայ Իկարեան.
Ըզսա Եւմեղ բնակիչ Փերեայ 'ի յամու-
սին իւր արար,
Եւ զսա յայնժամ յղեաց Պաղլաս Պենե-
լոպեայ մըխիԹար.
Սա զկոծ բառնալ ջնջել նորա ըզցերար-
տօսըն 'ի յաչաց,
Յարկն Ոդիւսեայ 'ի յառագաստն եմուտ
ընդ փոկ փականաց.
Կաց 'ի սնարից. “Ննջե՞ս, ասէր, Պենե-
լոպէ վշտահար.
Այլ չառնուն յանձն աստուածքն ան-
մահք Թէ կոծ դիցես և աշխար.
Դարձցի որդիդ դարձցի ողջամբ, նա ոչ
յանցեաւ աստուածոց”.
Կրկնեաց տիկինն որ քուն յանոյշ նըննջէր
առ դուրս երազոց.

« Հիմ եկիր, քոյր, որ սոսա առ մեզ չէր
երթևեկ քո յառաջ,
Իբրև ՚ի տուն յոյժ բացական ընակիս ՚ի
մէնջ տարագնաց.
Դիւր տաս ցաւոցս որ բիւրապատկի տան-
ջեն զիմ միտս և զոգին,
Որ նախ ըղձալին իմ կորուսի ըղձոյական
ամուսին.
Էր նա կարգօք առաքինի ՚ի մէջ Յունաց
բարգաւաճ,
Ընդ Ելլադա և ընդ Արգոս համբաւն և
շուք գերապանծ.
Արդ նաւագնաց եղև որդիս, գործառ-
նութեանց չէ ներհուն.
Քան զնա յաւէտ ըզսա ողբամ, և կամ
ես յահ ՚ի դողումն.
Մի՛ ծովակուր նա լինիցի կամ տար յաշ-
խարհ վշտակիր.
Զի մահ նըմա նիւթեն ոսոխք մինչև հա-
սեալ յիւր երկիր »։
« Քաջալերեա՛ց, կրկնեաց առ նա խա-
ւարային ուրուական,
Մի՛ սրտաթափ վասըն որդւոյդ. ընկեր
ունի աննըման.
Մեծ զօրավիգն համբաւատենչ այն է
Պալլասն Աթենաս,
Նա քեզ գութ ած և զիս յղեաց հրեշտա-
կութիւն բերել զայս ».

Կրկնեաց տիկինն. « Թէ աստուած ես,
կամ ձայն լուար զաստուածոյն,
Աղէ ասա, իմ՝ հիքացեալն դժու. տեսա-
նէ՞ լոյս զարփւոյն.
Թերևս ուրեք կեայ՝ յաշխարհի, կամ դը-
ժոխոցն 'ի յարկին ».
« Չե՛ք իմ ասել, ձայն զայս կրկնեաց խօլն
ուրուատիպ խաւարին,
Արդեօք մեռեա՞լ, թէ կենդանի. ընդ օդ
խօսել չէ արժան ».
Ասաց, անդէն դրօք փակելովք 'ի շունչ
լուծաւ հողմական:
Ըմթափեցաւ դուստրն Իկարեան, խըն-
դայր ցնծայր 'ի սրտի,
Քանզի երազ եւ տես անխաբ 'ի հասարակ
գիշերի:
Իսկ հոմանիք նաւագնացիկք հատանէին
լոյծ զուղին,
Գաղտնորոգայթ Տելեմաքեայ հաղբ լա-
րելով զօրհասն.
Անդ ժայռայեց Աստրիս անուն կղզի ծո-
վուն 'ի մէջ կայ,
Եւ չէ ինչ մեծ, ընդ մէջ Սամեայ և ա-
ռապարն Իթակայ.
Նաւահանգիստս ունի ամփոփ ուր նաւք
մտանեն խաղաղիկ
Երկմուտ զդրամբք. անդ նստէին դարա-
նամուտքն Աքեացիք:

# ՈԴԻՍԱԿԱՆ

ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ե.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

*Նոր ատեան խորհրդոյ աստուածոց։ Աթենաս թողոք հարկանէ, զի Ոդիւսեւս արգելեալ կայ 'ի կղզին Կալիփսեայ յաւերժահարսին. և զի՝ մահ նիւթեն հոմանիքն դարանակալք Տելեմաքեայ։ Առաքի Հերմէս առ Կալիփսէ, զի կամայ և ակամայ արձակեսցէ զՈդիս։ Ծովագնացութիւն հրաշապատում Ոդիսեայ 'ի վերայ լաստափայտին։ Մրրիկ սոսկալի յուզեալ 'ի Պոսիդոնէ. կենդանագրութիւն սքանչելի. խորտակի լաստն Ոդիսեայ, և անկանի 'ի լիւղ. օժանդակի 'ի դիցուհւոյն ծովայնոյ. յետ ամբաւ աղէտիցն ուժի Ոդիւսեւս զկղզին Փէակեցւոց։*



# ՈԴԻՍԱԿԱ՛Ն



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ե.

Աեհ Տիթոնեան'ի կողմանէ այգն'ի մահ-
ճէն զայր 'ի վեր,
կանացածնաց և անմահից կանուխ լինել
լուսաբեր.
Ի դիցն յատեան ահեղազօր կայր ամպրո-
պեանն Արամազդ,
Եւ Աթենաս կիրս զՈդիւսեայ մեծ ատե-
նին առնէր ազդ.
Տեսեալ'ի տան Ցաւերժհարսին փակեալ
զՈդիւս վշտատես,
Բողոք բառնայր. “ Հայր Արամազդ, և
դուք աստուածքդ յաւէժ.

Չ՚էք տեսանել այսուհետև մեզ Թագաւոր զոք արդար,
Ո՛չ հեզ, ներող, և մարդասէր, այլ ցանգանգութ չարարար.
Զի մեռացեալ եղև Ոդիւսն այր հեզ խնամողն հայրօրէն,
Նա 'ի կղզւոջըն Կալիփսեայ հեծէ 'ի խոր 'ի սրտէն.
Յաւերժահարսանն ունի ըղնա. չէք դարձ յերկիր հայրենի.
Չ՚էք նաւ, չէք Թի, չէք նաւաստի ածել ընդ ծով ամեհի.
Նա և որդւոյն 'ի դարձն 'ի տուն արք ոխերիմք մահ նիւթեն,
Որ 'ի Սպարտա ւ 'ի Պիւղ չոքաւ լուր ինչ առնուլ ըղհօրէն »:
Պալլադայինն ձայն ետ. « Դուստր իմ, զինչ բանք ըստ ցանգ եղ շրԹանց.
Ո՛չ ցՈդիւսեայ վրէժուն 'ի դարձ դու խորհեցար հնարիմաց.
Տեղեմաքեայ, կարող, հոգ տար. դարձցի 'ի տուն նա ողջիկ,
Իսկ խռովեալքդ այդ նաւաչաք ընդ կրունկ դարձցին հոմանիք »:
Ասաց. ձայն ետ Հերմէս որդւոյն. « Հերմէս մեր, յաւէժ իմ բանբեր.
Ե՛րԹ զանգրաչեր Յաւերժհարսին ազդես զանջուշտ խորհուրդ մեր:

Դարձի Ոդիւս չարչարագնեաց տաղա-
պարեալ 'ի լաստ մի
Բազմահանգոյց. ո՛չ դէք ո՛չ մարդ լեցին
նորա հովանի.
Յօր քսաներորդ հասցի 'ի Սքեր յերկիր
յուռթի 'ի յանդոց
Առ Փեակեանս, որ են նոքա մերձաղաւ-
ակք աստուածոց 21.
Շուք դիւցական հարցեն նոքա, տացեն
նորա նաւ 'ի տուն,
Ցոսկի, պղինձ և 'ի հանդերձ նաւըն լի-
ցի ակաղձուն,
Յաւէտ քան զոր 'ի դարձն ողջամբ 'ի
Տրոյական յաւարէն
Էառ Ոդիւս. զի այդ նորա բախտք բա-
րեբաղդք կնքեալ են:
Տեսցէ զաշխարհն և զմիրելիս, տեսցէ
զիւր տունն բարձրայարկ ".
Ասաց պատգամ. յարեաւ 'ի գործն ար-
գոսասպան նուիրակ:
Կապեաց 'ի յոտս զանմահ, զոսկի, նաւըզ-
կօշիկս աննման.
Նոքօք Թռչէ 'ի Թևս հողմոց ընդ ծով, ցա-
մաք, յանսահման.
Առ զգաւազանն, որով մարդկան նա
քուն ածէ ըստ կամի
Եւ Թօթափէ. այնպէս 'ի բուքն Թռչէր
հրեշտակն այն արի:

Հասեալ 'ի ծայրսըն Պերիայ, 'ի ծով սլա-
ցաւ նա յօդոց,
Հատեալ սուրայր նա ընդ ալիս իբրև ըղ-
հաւըն Լարոս 22.
Որ զխոր ծոցովք անբոյս ծովուն որսայ
զձըկունս իւր 'ի կեր,
Եւ ստէպ ըստէպ ընդ աղէջուր թանայ
ըզթևս, ըզփետուր.
Նըման Հերմէս հատեալ զալիս հաս 'ի
կըղզին բացական,
Եւ կապուտակ նա 'ի ծովէն գընայր ծո-
վուն առ ափան.
Ի մեծ քարայրն եհաս 'ի յարկ Յաւերժ-
հարսին գանգրահեր,
Եգիտ 'ի ներքս. և անդ հուր մեծ 'ի կրա-
կետեղ բորբոքէր.
Մայրք դիւրահերձք և խնկենիք այրեալք
բուրէին ընդ կղզին,
Նա յերգ 'ի քաղցր ոստայն անկեալ կըկոց
շարժէր զիւր ոսկին.
Անտառ բուսեալ ըզքարայրիւն 'ի շուրջ
պատէր դալարի,
Անտառ սօսեաց, և կաղամախ, անուշա-
հոտ և նոճի.
Բոյնս 'ի նոսա լայնաթևեան թռչունք
եդեալ դարէին,
Բուք և բազէք, նաև սակռուք լայնալե-
զուք ծովային,

Զբօսանս ծովուն խայտան սոքա · բայց անդանօր և այգի
Ցորթ նորատունկ ողկուզալից յանձաւն ողջոյն բոլորի ·
Անդ և աղբիւրք բխեալ հոսեն ակածակիտ ջուր յստակ,
Մօտ առ միմեանս բաշխին յառաջս, և են 'ի թիւ 'ի քառեակ ·
Մարդ փափկութեան մանուշակաց, դալարազուարճ և նեխուր ·
Որ և Անմահ ոք անդ հասեալ յակճիռըս կայր և զբօսնոյր ։
Անդ ըղկայ առ մեծ Նըւիրակն և հիանայր 'ի զընին ·
Քայլեաց եմուտ յանդոյր քարայրն, անդէն ծանեաւ Դիցուհին ·
(Անմահք միմեանց չեն անծանօթք թէպէտ իցեն տարաբնակք ·)
Բայց նա զՈդիւս չեգիտ 'ի ներքս · էր նա ուրեք միայնակ ·
Նա միշտ մեկնեալ նստէր ծովափն յոգւոց հանէր տրտմագգեաց,
Հայէր լալեօք ընդ ծովն անբոյս մաշէր զոգին յարտասուաց ։
Վեհ Կալիփսէն պաշտեալ զՀերմէս 'ի գահ փայլուն մեծապէս,
« Առ ի՞նչ, ձայնէր, եկ քո առիս, ոսկեբարսմունքըդ Հերմէս ·

Ձեր այս յառաջ, վեհ եկաւոր. ասա՛ զպատճառ գալըստեան,
Ի գլուխ հանից սիրողաբար որ ինձ մարթ է և արժան.
Մատի՛ր յառաջ, տաց քեզ հիւրոյթ». ասաց, սեղան եդ արագ.
Անմահական լի՛ ճաշակօք, Նեկտար խառնեաց կարմրորակ.
Եկեր և արբ մեծ Նուփրակն և ըմբոշխնեաց լիապէս,
Կրկնեաց յայնժամ. « Աստուածուհիդ, արդ զիս զաստուածս հարցանե՞ս.
Ասեմ ճշգրիտ, քանզի խնդրես. զիս Զևս յղեաց զակամայն,
Զի ո՞ երբէք հատցէ կամաւ զայս աղաջուր անսահման.
Ուր չիք քաղաք դից ձօն հանել, չիք հարիւրեզն առնել յաշտ.
Բայց դից չէ մարթ յընչաց քերել զոր պատուիրէ Արամազդ։
Կայ առ քեզ այր ընաւից Թշուառ, որք յԻղիոն կռուեցան.
Զինն ամ տանջեալք՝ ի տասներորդն այրեալք զոստանն մեկնեցան.
Նոքա յուղւոջ՝ ի յԱթենաս յանցեան, յարոյց նա մրրիկ,
Ընդ լեռնացեալ սուզան ալեօք ընկերք նորա քաջարիք.

Ինքն հողմածուփ և ալէտանջ աստ 'ի կղզի հաս առ քեզ.
Ամպրոպայինն արդ ձայն կարդայ Թողուլ ըզնա փութապէս.
Բաշխ չէր նըմա մահ տարադէմ յերկիր առնուլ օտարին,
Նա 'նդ սիրելեաց տեսցէ ըզտունն, տեսցէ զաշխարհ հայրենին »:

Լուաւ ըզբանն և գայրացաւ, ձայն ետ անդէն Կալիփսէ.
« Ա՜յ դիք անգութք, խէթք դիցուհեաց, ո՞չ բանդ ահա նախանձ է.
Խեռայք ընդ մեզ, երբ մըտանեմք մեք առ պարկեշտ ամուսին.
Որպէս յորժամ Այգ վարդամատն առ զանկողին ըզՀայկին 23,
Յոժ խեռացէք դիքդ հեշտակեացք, մինչ ոսկեգահն Արտեմիս
Ըզնա յՈրտիգն 24 հար ողջախոհն ըսպան գողորիկ յիւր փըքինս:
Եր զի 'նդ Յասոն յանդ եռահերկ Դեմետրըն եմուտ վարսագեղ,
Գիտաց Դիոս և ըզՅասոն եհար 'ի շանթ իւր ահեղ.
Արդ և ընդ իս, զի զայրդ ունիմ, խեռայք աստուածքըդ ողջոյն,
Որ ես հանի զայրդ 'ի ծովէն զապրեալն 'ի գոգն 'ի նաւուն.

Չէր այս յառաջ, վեհ եկաւոր. ասա՛
 զպատճառ գալըստեան,
Ի գըլուխ հանից սիրողաբար որ քեզ մարթ
 է և արժան.
Մտի՛ր յառաջ, տաց քեզ հիւրոյթ ». 
 ասաց, սեղան եդ առաջ
Անմահական լի ճաշակօք, Նեկտար խառ-
 նեաց կարմրորակ.
Եկեր և արբ մեծ Նուիրակն և ըմբոշխ-
 նեաց լիապէս,
Կրկնեաց յայնժամ. « Աստուածուհիդ,
 արդ զիս զաստուածս հարցանես.
Ասեմ ճշգրիտ, քանզի խնդրես. զիս
 Զևս յղեաց զակամայն,
Զի՞ ո՛ երբէք հատցէ կամաւ զայս աղա-
 ջուր անսահման.
Ուր չիք քաղաք դից ձօն հանել, չիք հա-
 րիւրեզն առնել յաշտ.
Բայց դից չէ մարթ յընչաց քերել զոր
 պատուիրէ Արամազդ:
Ասէ առ քեզ այր բնաւից թշուառ, որք
 յԻլիոն կռուեցան.
Զինն ամ տանջեալք ՚ի տասներորդն այ-
 րեալք զոստանն մեկնեցան.
Նոքա յուղւոջ ՚ի յԱթենաս յանցեան,
 յարոյց նա մրրիկ,
Ընդ լեռնացեալ սուզան ալեօք ընկերք
 նորա քաջարիք.

Ինքն հողմածվար և ալէտանջ աստ 'ի կղզի
հաս առ քեզ.
Ամպրոպայինն արդ ձայն կարդայ Թողուլ
ըզնա փութապէս.
Բաշխ չէր նմա մահ տարադէմ յերկիր
առնուլ օտարին,
Նա 'նդ մրրկեալ տեսցէ ըզլուսն, տես-
ցէ զաշխարհ հայրենին »։
Լուաւ ըզբանն և զայրացաւ, ձայն ետ
անդէն Կալիփսէ.
« Ա՜յ դիք անգութք, խէթք դիցուհեաց,
ո՞չ բանդ ահա նախանձ է.
Խեռայք ընդ մեզ, երբ մըտանեմք մեք
առ պարկեշտ ամուսին.
Որպէս յորժամ Այգ վարդամատն առ
զանկողին ըզՀայկին 23,
Յոյժ խեռացէք դիքդ հեշտակեացք,
մինչ ոսկեգահն Արտեմիս
Ըզնա յՈրտիգն 24 հար ողջախոհն ըս-
պան գողորէն յիւր փըքինս։
Էր զի 'նդ Յասոն յանդ եռահերկ Դե-
մետրն եմուտ վարսագեղ,
Գիտաց Դիոս և ըզՅասոն եհար 'ի շանթ
իւր ահեղ.
Արդ և ընդ իս, զի զայրդ ունիմ, խեռայք
աստուածքըդ ողջոյն,
Որ ես հանի զայրդ 'ի ծովէն զապրեալն
'ի գոգն 'ի նաւուն.

Ձեր այս յառաջ, վէհ եկաւոր. սամ զպատճառ գալըստեան,
Ի գլուխ հանից սիրողաբար որ ինձ մարթ է և արժան.
Մատի՛ր յառաջ, տաց քեզ հիւրոյթ ». ասաց, սեղան եռ արագ
Անմահական լի ճաշակօք, Նեկտար խառնեաց կարմրորակ.
Եկեր և արբ մեծ Նուիրակն և ըմբոշխնեաց լիապէս,
Կրկնեաց յայնժամ. « Աստուածուհիդ, արդ զիս զաստուածս հարցանես.
Ասեմ ճշգրիտ, քանզի խնդրես. զիս Զևս յղեաց զակամայն,
Զի ո՞ երբէք հատցէ կամաւ զայս աղաջուր անկսահման.
Ուր չիք քաղաք դից ձօն հանել, չիք հարիւրեզն առնել յաշտ.
Բայց դից չէ մարթ յընչաց քերել զոր պատուիրէ Արամազդ:
Կայ առ քեզ այր ընաւից Թըշուառ, որք յԵղիոն կռուեցան.
Զինն ամ տանջեալք՝ ՚ի տասներորդն այրեալք զոստանն մեկնեցան.
Նոքա յուղւոջ՝ ՚ի յԱթենաս յանցեան, յարոյց նա մրրիկ,
Ընդ լեռնացեալ սուղան ալեօք ընկերք նորա քաջարիք.

Ինքն հողմածվար և ալէտանջ աստ 'ի կղզի
հաս առ քեզ.
Ամպրոպայինն արդ ձայն կարդայ Թողուլ
ըզնա փութապէս.
Բաշխ չէր նըմա մահ տարադէմ յերկիր
առնուլ օտարին,
Նա 'նդ միրելեաց տեսցէ ըզտունն, տես-
ցէ զաշխարհ հայրենին ”։
Լուաւ ըզբանն և զայրացաւ, ձայն ետ
անդէն Կալիփսէ.
«Ա՜յ դիք անգութք, խէթք դիցուհեաց,
ոչ բանդ ահա նախանձ է.
Խեռայք ընդ մեզ, երբ մըտանեմք մեք
առ պարկեշտ ամուսին.
Որպէս յորժամ Այգ վարդամատն առ
զանկողին ըզՀայկին 23,
Յոյժ խեռայցէք դիքդ հեշտակեացք,
մինչ ոսկեգահն Արտեմիս
Ըզնա յՈրտիւգն 24 հար ողջախոհն ըս-
պան դողորիկ յիւր փըքինս։
Եր զի 'նդ Յասոն յանդ եռահերկ Դե-
մետրն եմուտ վարտագեղ,
Գիտաց Դիոս և ըզՅասոն եհար 'ի շանթ
իւր ահեղ.
Արդ և ընդ իս, զի զայրդ ունիմ, խեռայք
աստուածքըդ ողջոյն,
Որ ես հանի զայրդ 'ի ծովէն զապրեալն
'ի գոգն 'ի նաւուն.

Չէր այս յառաջ, վեհ եկաւոր. ասա՛
 զպատճառ գալըստեան,
Ի գլուխ հանից սիրողաբար որ ինձ մարթ
 է և արժան.
Մատի՛ր յառաջ, տաց քեզ հնարոյթ ».
 ասաց, սեղան եդ առաջ
Անմահական լի ճաշակօք, Նեկտար խառ-
 նեաց կարմրորակ.
Եկեր և արբ մեծ Նաւիրակն և ըմբոշխ-
 նեաց լիապէս,
Կրկնեաց յայնժամ. « Աստուածուհիդ,
 արդ զիս զաստուածս հարցանես.
Ասեմ ճշգրիտ, քանզի խնդրես. զիս
 Զևս յղեաց զակամայն,
Զի ո՞ երբէք հատցէ կամաւ զայս աղա-
 ջուր անսահման.
Ու՛ր չիք քաղաք դից ձօն հանել, չիք հա-
 րիւրեզն առնել յաշտ.
Բայց դից չէ մարթ յընչաց քերել զոր
 պատուիրէ Արամազդ:
Կայ առ քեզ այր ընաւից Թշուառ, որք
 յԻլիոն կռուեցան.
Զինն ամ տանջեալք՝ ՚ի տասներորդն այ-
 րեալք զոստանն մեկնեցան.
Նոքա յուղւոջ ՚ի յԱթենաս յանցեան,
 յարոյց նա մրրիկ,
Ընդ լեռնացեալ սուզան ալեօք ընկերք
 նորա քաջարիք.

Ինքն հողմավար և ալէտանջ ասա 'ի կղզի
հաս առ քեզ.
Ամպրոպայինն արդ ձայն կարդայ Թողուլ
ըզնա փութապէս.
Բաշխս չեւ նմա մահ տարադէմ յերկիր
առնուլ օտարին,
Նա 'նդ մրրկելեաց տեսցէ ըզտունն, տե֊
սցէ զաշխարհ հայրենին »։
Լուաւ ըզբանն և զայրացաւ, ձայն ետ
անդէն Կալիփսէ.
« Ա՜յ դիք անգութք, խէթք դիցուհեաց,
ո՞չ բանդ ահա նախանձ է.
Խեռայք ընդ մեզ, երբ մըտանեմք մեք
առ պարկեշտ ամուսին.
Որպէս յորժամ Այգ վարդամատն առ
զանկողին ըզՀայկին 23,
Յուժ խեռացէք դիքդ հեշտակեացք,
մինչ ոսկեգահն Արտեմիս
Ըզնա յՈրտիգն 24 հար ողջախոհն ըս֊
պան գողորիկ յիւր փըքինս։
Էր զի 'նդ Յասոն յանդ եռահերկ Դե֊
մետրն եմուտ վարսագեղ,
Գիտաց Դիոս և ըզՅասոն եհար 'ի շանթ
իւր ահեղ.
Արդ և ընդ իս, զի զայրդ ունիմ, խեռայք
աստուածքըդ ողջոյն,
Որ ես հանի զայրդ 'ի ծովէն զապրեալն
'ի գոգն 'ի նաւուն.

Քանզի հրացան Դիոս շանթեալ՝ քակեաց ըզնաւն ամրակուռ,
Ցնդեաց 'ի ծով և անդ ողջոյն ընկերքն եղեն ծովակուր.
Ես զհողմավարն և զալէտանջն առի մնուցի գրգապէս,
Անմահ գործել ւ անծերական կենաց հաղորդ գոլ յաւէժ.
Այլ զի պարտք են դից պատկառ կալ Արամազդայն հրամանի,
Թո՛ղ ըստ նորա պատուիրանին դա ծով հատցէ ամեհի.
Այլ ես ինքնին ոչ արձակեմ, չիք իմ աստ նաւք, նաւաստիք
Ընդ յաղթ ալիսն ածել ըզնա. սակայն խորհուրդ տաց քաջին.
Դա յաշխարհ իւր դարձցի ողջամբ, սատար եղէց աննախանձ":
Կրկնեաց Հերմէս. "Բայց արձակեա՛, ցասման Դիայ դու ա՛կն ած.
Մի՛ 'նդ քեզ յապայս նա զայրասցի". ասաց և ել քաջն Հերմէս.
Լուաւ ըզբանն Յաւերժահարսնն, յարեաւ խնդրել զՈդիւսէս.
Նստեալ ծովափին եգիտ ըզնա, աչք իւր Թացեալք յարտասուաց.
Հոգայր ըզդարձն և լայր հաշէր ըզքաղցր արևն ըզկենաց:

Զյաւերժհարսամբն անտես առնէր․
հարկեալ միայն գիշերի,
Ո՛չ կամեցողն առ կամեցողն, հանդչէր 'ի
խոր անձաւի ։
Ընդ ոտիւ զափամբք նստեալ 'ի վէմս, զորդին
հիւծէր և հոգայր,
Յողբ 'ի հեծիւն հայէր ընդ ծով, աչք
ցոլէին առուաբար ։
Մօտ դիցուհին եկաց ձայն ետ․ « Ան-
ձրն մաշեալ, զի՞ ողբաս․
Մի՛ այլ ծնդիր․ քեզ արձակուրդ տամ
մրտադիւր, որն եհաս․
Դու ձեռնյերկաթ, հատյաղթ հեծանս,
լաստեալ կապեամ լաստ արձակ,
Տախտակամածս գործեամ բարձունս ընդ
ծով գլնալ կասլուտակ,
Եդից գինի քեզ կարմրորակ 'ի դիւր
քաղցրոյ հաց, ջուր տաց,
Արկից և ձորձս, նաև անոյշ քեզ հողմ
յղեմ 'ի Թիկանց․
Դարձցիս ողջամբ 'ի հայրենիսդ․ միայն
թէ դիքն հաճեսցին
Այն երկնաճեմքն որք ինձ մտօք են գե-
րագոյն 'ի կարդին »։
Լուաւ Ոդիւս, կրկնեաց անդէն, այլ
քրտմընեալ մեծապէս․
« Ո՛վ դիցուհիդ, քան արձակուրդ ան-
շուշտ դու այլ ինչ նիւթես․

Հրամեա լուսնի ինձ հատանել ծով ա֊
    լէտանջ ահագին ,
Ցոր և հաճիւ նաւք քաջակուռք հողմով
    Դիւայ յաղթողին .
Զեղից 'ի լուսոն քեզ յակամայս , թէ ինձ
    չերդնուս դիցուհի
Զերդումն ըղձեծ , թէ ինձ աղէտ զայլ
    ոչ նենգես 'ի սրտի » :
Յաւերժահարսըն ժպտեցաւ , զըրգուեաց
    ձեռամբըն և ասէր .
« Այ խորագէտ , մանրաւակըրտիտ ես և 'ի
    բան անվեհեր .
Զինչ հնարեցար . արդ դիտասցէ եր֊
    կիր , երկին վերնական ,
Գիտասցէ քաջ և ջուր Ստիւգեան յան֊
    դունդս 'ի խոր սահական .
Դիցս երջանկաց այս է երդումն ահե֊
    ղահրաշ սոսկալի .
Քաւ թէ ես քեզ աղէտ ինչ այլ մեքե֊
    նայեմ 'ի սրտի .
Ընդոյն խորհիմ և վասն անձինս , եթէ
    երբէք պէտք իցեն ,
Պարզ են միտք իմ և գըթած եմ , սիրտ
    ոչ ունիմ քարեղէն » :
Ասաց , յարեաւ վեհ դիցուհին . ըզհետ
    գընայր Ոդիւսէս .
Եկին յանձաւն . Ոդիւս նստաւ 'ի գահն ,
    ուր եւ մեծն Հերմէս :

Յաւերժահարսն եդ Ոդիսեայ հաց մա-
հացուաց և բաժակ.
Նստաւ հանդէպ. նաժիշտք նըմա վնեկ-
տար, զանմահն ընճաշակ.
Ձեռս կարկառեալ առնուն խահիցն
մինչ կշտապինդ յագեցան.
Խօսէր յայնժամ վեհ Կալիփսէն. « Ո՛
քաջդ Ոդիսս Լայերտեան.
Ա՛յդպէս ուրեմն, այր բազմահնար, 'ի
տուն փութաս հայրենին.
Գնասցես ողջամբ. այլ ուշ 'ի կուրծս
այժմէն միտ դիր քում անձին.
Վիշտք քանի՜օն կընքեալ են քեզ մինչչև
հասեալ քո 'յաշխարհ,
Թէ գիտէիր, ընդ իս յանձաւս մնայիր ան-
մահ դիւցաբար.
Թէպէտ յանձուկ քոյ ամուսնոյն տապիս
դու ցանգ 'ի յոգի,
Այլ ես յիրանն չեմ ինչ խոնարհ և ոչ 'ի
տիպ պատկերի.
Չի՛ք մահացուաց 'ի մոյն մարմնոյն և կամ
'ի գեղն 'ի դիմաց
Ընդ անմահից կըշիռ գործել »: Լուաւ
Ոդիսս և կրկնեաց.
« Մի՛ ցասնուր, վեհդ, ահա եմ քաջ.
քան Պենելոպն իմ ուշիմ
Խոնարհն 'ի գեղ, խոնարհն յիրան քան
ոչ գայ քեզ 'ի կշիռն.

Դ,ա մահացու, դու յանմահից ես ան֊
տրոխեղծ 'ի կարգէն.
Համայն անձուկ բերեալ դարձին, ա֊
ւուրն այնմիկ փափաքեմ.
Իսկ թէ սատան ինձ դիքն յուզեն կա֊
պոյտ ծովուն ըզկոհակ,
Կրեցից ոգւով համբերատար. սովոր եմ
կրից դըժնդակ.
Շատ ինչ արդէն չարչարեցայ 'ի ծուփս
ծովուն և մարտին.
Կրեցից դարձեալ”: Ասաց և մուտ պա֊
տեաց 'ի մուտս արեգին:
Մըտին յալուց քարանձաւին, հանդեան
միմեանց առընթեր,
Մինչ առաւօտըն ծագեցաւ ծայրակար֊
միրն այգաբեր:
Զխլայն, զբաճկոն արկ Ոդիւսէս. արկ
Դիցուհին պատմուճան
Լայն, ձիւնափայլ, գիրգ, շնորհաշուք.
և ած կամար անընման,
Չքնաղ, ոսկի. և գլխաշուք առ 'ի գը֊
լուխ գեղանին.
Եւ հանդերձէր ճեպ արձակուրդ տալ
Ոդիւսեայ դիւցազին.
Ետ զերկսայրի գործի ձեռին մեծ զեր֊
կաթին զտապար,
Մեղեխ փայտին կուռ ձիթենւոյ էր գե֊
ղեցիկ քաջ յարմար.

Ետ սուր կացին, ւ'ի խորս կղզւոյն ու-
ղւոյն լինէր զօրավիգ,
Ուր յաղթ սօսիք և կաղամախք և երկնա-
բերձ կան մայրեք,
Զորք, բազմօրեայք, քաջ ցամաքեալք,
թեթև նաւել'ի ծովն.
Ցոյց զհաստաբուն ըղվայր ծառոցն, ւ'ի
տուն դարձաւ Դիցուհին:
Հար փայտ Ոդիւս արագ արագ արկ
ծառս քըսան տապալեաց,
Տաշեաց յերկաթ, յղկեաց քաջիկ, և'ի
գործ իւր յարմարեաց:
Ած և գըչիրս վէհ Դիցուհին, նա առ ող-
ջոյն և ծակէր,
Լաստ յերիւրեաց, և բևեռօք և ագու-
ցիւք կուռ պնդէր:
Յօրչափ յատակ հիւսըն Ճարտար ըզնաւ-
գործէ բեռնաբարձ,
Ի նոյն'ի չափ'ի լայնութեան և Ոդիւսէս
լաստ կապեաց.
Տախտակամածըս բարձրացոյց, կուռ գե-
րանօք յարմարէր,
Եւ տարածեալ յերկայնաձիգ'ի մարդա-
կաց կատարէր.
Զառագաստկալըն պատրաստեաց, կայ-
մըն կագնեալ'ի լաստի,
Քեղի ուղղիչ եդ ամրացոյց շուրջ'ի կըր-
կուսս ուռենի.

Նիւթ շատ կուտեաց 'ի նաւախիճ, կը-
ռուել ընդ ծով ալեսաստ,
Կըտաւս առեալ 'ի Կալիփսեայ գործեաց
նոքօք առագաստ.
Կապեաց պարանս, պնդեաց կառանս
յաջ և յահեակ 'ի լաստին,
Եւ լծակօք դըրդուեալ ըզլաստն ձգեաց
'ի ծովն ահագին:
Յաւուրս քառեակ ելից ըզգործն, 'ի
հինգերորդն Կալիփսէ
Եթող զՈդիս. լուացեալ ըզնա հան-
դերձ բուրեան արկանէ,
Եդ տիկ գինւոյ, տիկ մեծ ջըրոյ, եդ 'ի
մախաղն և պաշար,
Եւ հանդերձեաց նըմա բազում և 'ի խա-
հից բերկրարար:
Հողմ 'ի Թիկանց օդ քաղցրասուգ յղեաց,
խնդայր Ոդիւսէս,
Զառագաստին բաց Թուչարան, զքեղին
վարէր քաջապէս:
Նըստեալ այնպէս և նինջ երբէք յար-
թնանոմս չանկանէր,
Ի Բազմաստեղս և յԱրջապանն 'ի յամ-
րամուտն ակնարկէր.
Դէտակն և յԱրջ զոր Սայլ կոչեն, որ
'ի Հայկն է հայեցուած,
Ընդ ման առնու և ինք միայն յՈվկիանէն
է անթաց 25.

Զաջն ընդ ձախոյ կալեալ ընդ կողմն
ազդեաց ծովել Կալիփսէ ,
Այնպէս աւուրս նա եօթնևտասան ծո֊
վայածէր ընդ ձախմէ .
Յութ և տասին երևեցան մութ սարք եր֊
կրին Փէակեան ,
Չէր ինչ բացեալ , և երևէր ընդ ծով կա֊
պոյտ զերթ վահան ։
Դարձ Պոսիդոն յԵթովպացւոց և 'ի լե֊
րանց Սողիմեանց ,
Դիտեաց բացուստ , սրտմտեցաւ տե֊
սեալ զՈդիս ծովայած .
Շարժեաց ըզգլուխն , ասէր ընդ միտս .
“ Բա՛րէ ուրեմն Նոր պատգամ
Ետուն անմահք վասն Ոդիսեայ , լեալ
իմ'ի ծագն Եթովպեան .
Դա փէակեանց մօտ կայ յերկիրն , ուր
վիճակ Նորա սահմանին .
Սակայն անշուշտ դա չարատանջ կոչկո֊
ծեսցի տակաւին ”։
Ասաց , և հար զերկքարձէնն , ամպ գու֊
մարեաց , ծով խռովէր ,
Ըզծով ցամաք ծածկեաց յամպուստ , և
Ջոյց յերկնից ըզգիշեր .
Եւրոս , Նոտոս կից խուժեցին , զեփիւռ
շնչեաց ուժգնակի ,
Ցուրտ պարզ հիւսիսին մոլեգնեցաւ ալիս
ամբարձ ամեհի .

Պակեաւ Ոգխս կթուցեալ ծնգօքն յու-
գուոց եհան քաջարին.

« Եղո՛ւկ եմ ես, տագնապ է ինձ. խրաւ-
գուժեաց Դիցուհին.

Նախաձայներ զիս ծովատանջ մինչև հա-
սեալ 'ի տուն իմ.

Վա՛հ, հեքացեալս զի՞նչ լինեցիմ. արդ-
բանքն ողջոյն կատարին.

Դիոս զերկին պատեաց ամպովք, ըզծով
խռովեաց վէտ 'ի վէտ.

Մրրիկք շնչեն այլահողմունք. ո՛վ օրահաս
դառնադէտ.

Երիցս, քառիցս երջանիկք Յոյնք որք
յԵղիոն 'ի մարտին

Տապաստ անկան առ Ատրիդեաւ. ո՛վ ինձ
դէպ տայր զօրհասին

Յաւուր յորում յիս Տրոյացիք շուրջ ըզ-
մարմնովն Աքիլլեայ 26

Տէգ տեղային պղնձապէն, բախտն իմ լի-
նէր գերակայ.

Զի զխահանս ես առնուի փառօք 'ի
Յոյնս պանծալի.

Այլ արդ, աւա՜ղ անփառունակ ինձ մահ
մնայ ողբալի »:

Րայն ինչ ասաց, դիզան կոհակ Թափ
յահագին 'ի բարձունսն

Բախեաց ըզլաստն, և պըտուտկեալ ոս-
տոյց ըզնա 'ի լաստէն.

Քեղլն զերծաւ նորա ձեռացն, հողմք
խառնաշունչք փոթորկին,
Ընչեն ատի բախեն անտի, խորտակեցաւ
կէս կայմին.
Առագաստակալն և առագաստն անկան 'ի
ծով բացաձիգ,
Ինքըն ջրասոյզ 'ի տագնապի մնաց ներ-
քոյ ժամըս ձիգ.
Արագ 'ի վեր չուժեաց վազել ընդ Թափ
ահեղ կոհակին,
Զի ծանրացան ձորձք ջրապարպատ՝ զոր
ետ նըմա Դիցուհին.
Վազեաց ապա, 'ի բերանոյն ժայթքէր
զաղին ջուր ծովուն.
Գլխոյն վարսից ջուրն առուանայր, յե-
չեաց ըղլաստն 'ի ժամուն.
Թափ ետ յալիս կալաւ ըղնա նըստաւ 'ի
մէջ մազապուր,
Ըղլաստն աստ անդ վարեն կոհակք առ-
նուլ ըղնա ծովակուր.
Որպէս յաշնան փուշք 'ի հիւսւէն վա-
րեալք 'ի դաշտ և 'ի յանդ.
Կըռուփն յիրեարս, այսպէս ըղլաստն
հողմք վարէին աստ և անդ.
Ը'· զի հարաւ վանեալ ըղնա հիւսւին յը-
ղէր նըպատակ,
Է զի Եւրոս վարէր հանդէպ զեփիւռու-
սին նըշաւակ։

Ետես զՈդիւս դուստրըն կադմեայ այն
գեղեցկուհին Ինէ.
Ար կենդանեաւ սա յայս անուն կոչէր
Նախնեացն 'ի զարմէ.
Լեւկոթեա կոչեալ ապա շուք առ զծո_
վուն դիցուհեաց,
Սա աղեկէզ թափառականըն Ոդիսեայ
խընամ ած.
Թըռուիչս էառ իբր հողամաղ եւ յալու_
ցացն իւր 'ի վեր,
Նստաւ 'ի լաստն բազմադուցիկ, ձայն առ
Ոդիւս արձակէր.
« Հիքացեալ դու, Երկրասասանն հէմ
զայրացաւ քեզ այդչափ.
Զարիս նիւթէ, թէպէտ անձկայ՝ մահուն
չածցէ քեզ տագնապ:
Լո՛ւր զոր ասեմ, զի ուշիմ ես. ըզլաստդ
հողմովք տո՛ւր յալիս,
Մերկեա՛ զհանդերձդ, անկի՛ր 'ի լիւղ առ
Փէակեանս՝ ուր ապրիս.
Ա՛ռ քեզ զայս շար անմահական ձըգեա՛
'ի լանջդ անվեհեր.
Քեզ ո՛չ զըմբաղք ինչ աղդեսցեն, և ո՛չ
արկածք մահաբեր.
Հասեալ ծովափն հան դու ըզշարդ, ա_
րա՛ դարձեալ ծովասույզ.
Ա՛րկ բացագոյն 'ի ցամաքէն կալեալ ըզդ_
դէմսդ 'ի յետ կոյս »:

Ասաց, ըզշարն ետ դիցուհին, և ինքն 'ի
ծով ալէտանջ
Իջեր հողամաղ սուզաւ 'ի խորս ծած-
կեալ կապոյտ կոհակաց:
Ընդ միտս եկեալ Համբերատարն հեծէր
'ի խոր 'ի սրտէն.
« Վա՜յ, մի՞ այլ նենգ լարեն ինձ դիք զըր-
կեալ զիս արդ 'ի լաստէն.
Քա՛ւ ո՛չ անսամ. զի ես բացեայ տեսի
զերկիրն ապրանաց.
Այլ որ լաւն է, մընամ ցոր վայր հոծք
են ինձ շարք տատաղձաց.
Ժուժամ ցայնվայր և չարչարիմ մինչև կո-
հակք յաղթք ծովուն
Քակեն ըզլաստն. 'ի լող անկայց. չիք
բան քան զայս լաւագոյն »:
Մինչ զայս խորհէր, անդուստ կոհակ
լեռնակարկառ Պոսիդոն
Դրդեաց զահեղն, ըզմոլեգինն, և Ոդիւ-
սեայ ետ մըղօն.
Եւ որպէս օդք ուժգնահնչակք ցամաք
յարդիցն հողմավար
Ըզչեղջաչեղջըն փոթորկեն յայսկոյս յայն-
կոյս դիր և տար,
Նոյն Ոդիսեայ քակեալք ցնդին տատաղձք
հոծեալքն 'ի բևեռ,
Ինքն 'ի հեծան մի վերեւեալ իբրև արագ-
ձի վարէր.

Մերկեաց զհանդերձն, ըզդիցուհւոյն
ըզշարն 'ի լանջ իւր ձգեաց.
Թափ ետ 'ի ծով, անկաւ 'ի լուղ բազկա-
տարած 'ի յորսայս ։
Տես Պոսիդոն, շարժեաց ըզգլուխն,
ասէր ընդ միտս զայրագին.
Այդպէս տանջեալ Թափառ ընդ ծով
հասցես յորեար Դրոսին 27.
Այլ ոչ և անդ յանդորր ելցես, ա-
սաց, ըզձիս գեղավարս
Մտրակ 'ի կուշտ վարեաց 'ի տուն իւր
հոյակապ 'ի յԵգաս ։
Բայց Աթենաս հնարեալ քաջիկ զուղիս
հողմոց կուրացոյց.
Զարթոյց միայն զարագն Հիւսիս, զայլսն
'ի հողմոց Թմբրեցոյց.
Երեկ զալիսն 'ի հանդիպոյ, մինչև դիւ-
ցազն Ոդիւսէս
Հասցէ փեկեանց յազգ ծովագէտ զերծ
յօրհասէն փութապէս.
Անդ զերկուս տիւս երկուս գիշերս ծը-
փայր յալիս ահագին,
Ծըփփայր Ոդիւս, և շատ անգամ գոգցես
մեռաւ 'ի սրտին ։
Բայց վարսագեղն երևեցաւ, զօրըն եր-
րորդ կատարեաց,
Եւ հողմն հանդեաւ և պարզութիւն ան-
դորրաւէտ յաջորդեաց.

Յայնժամ կոհակ մի ահագին ամբարձ
ըզնա առ 'ի վեր ,
Եւ նա 'ի մօտ զերկիրն անձկով կոր ովաբիւ
ակնարկէր .
Որպէս յորժամ կեանք ծընողին որդւոց
դառնայ խնդալի ,
Որ բազմօրեայ ծնդեալ ծիւրէր անկեալ
ցաւոց 'ի մահճի ,
Զի դահճաբար լլկէր ըզնա ոմն 'ի Քա-
ջաց ոխերիմ,
Այլ Դիք զգթածք ըզհայրն իւրեանց թա-
փեն ժանեաց յօրհասին .
Նոյն Ոգիւսեայ երկիրն , անտառն , երեւ-
ցաւ բերկրալի ,
Եւ զոտսն 'ի լիւղ ճեպէր շարժէր անձ-
կայր 'ի կոյս ցամաքի :
Իսկ երբ այնչափ կաց 'ի բացեայ , որչափ
լըսի ձայն մարդկան ,
Գոչիւն ահեղ լըսէր Ոգիւս ընդ ժայռս
բախեալ ծովական .
Վարազացեալք մըռնչէին ալիք խուժ-
եալք ընդ ալիս ,
Եւ զափնածիրն ափնիք ծովուն ծածկեն
փրփուրս յամեհիս .
Ո՛չ ծոցք , ո՛չ գոգք կային անդէն , ոչ նա-
ւակայք 'ի դադար ,
Ողջ ծովափունքն 'ի դուրս ցցուեալ են
ահագին վէմք և ժայռ :

Ընկաւ Ոդիւս, և ծունկք լուծան, և
աշխարեալ հան Թառանչ.

« Իսկ զի՞ Դիոս ցոյց ինձ ցամաք, ղակոս
հատեալ կոհակաց.

Ո՜վ դեպք սիրունք. այլ վայ է ինձ, ելք
չերևին 'ի ծովէն,

Ահա ցցուեալ ժայռք սայրասուրք և շուրջ
ալիք մռնչեն.

Ալիք ահեղք, վէմ սեպացեալ, և մօտ կայ
ծով մեծախոր,

կռուան ոտից չի՛ք ինչ ուրեք, չի՛ք ելանել
ինձ յանդորր.

Յանկարծ թէ յելս զիս մեծ կոհակ հան-
դէպ 'ի վէմ որձաքար

Ցափրշտակեալ և բախեսցէ, ձիգն իմ լի-
ցի վայրապար.

Իսկ թէ 'ի լող յառաջ վարիմ գտանել
ծովափին առ 'ի ցած

կամ նաւակայս, գուցէ դարձեալ մրրիկ
տարցէ զիս 'ի բաց.

Ծով ձկնաւէտ զիս հափափեալ, հեծե-
ծեցից ես յողի,

կամ՝ յիս ծովէն արձակեսցէ Քաջ ոմն
ըղկէտ ամեհի.

Զի և շատ ինչ վիշապ ձրկունս Ամփի-
տրիտէ 28 բուծանէ.

Քանզի գիտեմ զի Պոսիդոն ընդ իս 'ի մարտ
պայքարէ »:

Մինչդեռ հեծէր, ընդ նա կոհակ յափըն
վարեաց ապառաժ.
Կարթակոտոր լինէր համբուն թէ յօգն
հասեալ չէր Պալլաս.
Յուշ ած նմա. Ոդիսս ընդ վէմն կալաւ ձե-
ռօքըն կրկին
Յոր կռուեալ կայր, մինչ ընդ գլխովն էանց
կոհակն ահագին.
Հեծէր Ոդիսս. զերծաւ յայնժամ, այլ
մրմռեալ վերադարձ
Խուժեաց կոհակն եհար ընդ նա վարեաց
՚ի ծով ՚ի յափանց.
Որպէս յորժամ ըզպողիպոդ կորզեալ
յորջոյն ՚ի խորոց,
Խիճք և քարինք կռուեալ կան անդ իւր
ճիրանացն ՚ի խոռոչ,
Նոյն Ոդիսեայ ջլապինդ ձեռաց մորթն
հերձոտեալ ՚ի խարակ
Մնաց կռուեալ. և զնա ծածկեաց հե-
տախաղաղ մեծ կոհակ.
Անդ հիքացեալն անշուշտ գրաւէր նա-
խավախճան յօրահաս,
Թէ չէր նըմա ուշ և հանճար յորդեալ
խաժակն Աթենաս.
Վազեալ յալեաց, քերէր զափամբ, դի-
տէր զերկիրն և լողայր
Գտանել ուրեք ծովափն անքոյթ կամ
նաւաց ինչ ընդդադար.

Մինչև 'ի լեռն հաս 'ի բերան գետահոսան
'ի գետոյն .
Վայրն էր անքոյթ, զերծ 'ի վիմաց, և
պաշտպանեալ 'ի հողմոյն ։
Ծանեաւ զհոսանսն, և աղօթէր յանձայն
սրտին հեծութեան ,
« Լո՛ւր ինձ, արքայ, ո՛ որ իցես, բազմա-
պաղատ առ քեզ գամ.
Սուրբ է և դիցըն անմահից մարդոյ լինել
վանատուր ,
Որպէս Թափառ ես առ հոսանսդ, առ
ծունկսըդ գամ մաղապուր .
Ի սպառնալեաց Պոսիդոնի փախեայ յա-
հեղ 'ի ծովէս ,
Ցիս, տէր արքայ, ողորքաւոր խոստովա-
նիմ զիս առ քեզ » ։
Ասաց . և նա ցածոյց զհոսանս, սանձ եած
ալեաց յարձակման ,
Կալաւ զառաջսն, և զՈդիւսևս փրկեաց
գետոյն 'ի բերան ։
Նա զերկուս ծունկս և զյաղթ ըզձեռս
կրքեաց յերկիր վշտոլմբեր ,
Մարմինն ողջոյն էր ջրապարպատ, ուռ-
ցուցք, բերանն, ծով հոսէր .
Էր ծովատանջ, անշունչ, անձայն, ան-
կաւ անդէն ապիկար ,
Զի ամեհի ալիքն ըզնա կոչկոճեցին չա-
րաչար ։

Իբրև շնչեաց նա միւսանգամ, ուշաբե֊
րեաց և 'ի նոյն,
Եհան ըղշարն ըղԼեւկաթեան արկ յա֊
ղաջուրն 'ի գետոյն.
Ընդ կրուկ ըղշարն ալիք ծովուն 'ի ջուր
գետոյն վերբերէ,
Աճապարեալ բռնահարեաց առ ըղշար
իւր Լեւկաթէ:
Քայլեաց Ոդիւս տար 'ի գետոյն, անկաւ
յամուրս կընիւնոց,
Անձկով համբոյր ետ ցամաքին և հառա֊
չեաց 'ի խորոց.
“ Վի՜շտ վըտանգիս, կրեցի՜ց դարձեալ,
Թէ առ գետովս աստ ոքնիմ,
Դառն է գիշերս, տագնապեսցեն զիս
օդք ցրտինք, ցօղ գիջին.
Կար զօրութեան իմ պակասեաց, վըտան֊
գեցայց ես ոգջոյն,
Երբ և այգուն այն ցրտագին սըղոխք շըն֊
չեն 'ի գետոյն.
Իսկ թէ 'ի սարն անդ ելանեմ հովանա֊
ւորն 'ի յանտառ,
Եւ 'ի թաւուտս ընկողմանեալ ըղթուփս
առից 'ի դադար,
Թէ քուն անոյշ ինձ ներեսցէն ցուրտն
և խոնջել ոսկերաց,
Խիթամ լինել ես կերակուր գիշերայած
գազանաց ”:

Համայն ընտրեաց նա զայն խորհուրդ,
յուղի անկաւ 'ի մայրին.
Եգիտ ըզվայրն հուպ առ ջըրով յերևանի
'ի բլրին.
Եգիտ զերկուս բոյսս համաբոյսս 'ի ձի-
թենեաց 'ի ծառոց
Մին ընտանի և մին վայրի, զերծք գիջա-
շունչ 'ի հողմոց.
Անդ ոչ հրակէզ նետք նըշուլից արե-
գականն են թափանց,
Եւ ոչ հոսանք են միջամուխ տեղատա-
րափ անձրևաց.
Այնպէս խիտք, հոծք, և համաբոյսք գան
առ իրեարս ճաղպատին.
Անդ մուտ Ոդիւս և իւր ձեռօք զայն յար-
դարեաց անկողին.
Անդ կոյտ ամբաւ կայր սաղարթուց, եր-
կուց արանց բաւական
Նաև երից առ 'ի ծածկոյթ և 'ի ձմերան
դառնութեան.
Զայն վայր տեսեալ տերևասփիւռ համ-
բերատարըն բերկրէր,
Ընկողմնեցաւ և բարդ 'ի բարդ սաղարթ
զանձամբն արկանէր.
Զոր օրինակ այր մենակեաց 'ի ծագ վեր-
ջին իւր անդոյ
Առեալ խանձող խնամով ծածկէ թուխ
դաղախոյն 'ի ներքոյ,

Սերմն ըղձըլրոյն պահէ առ իւր, մի՛ հուր
    այրուստ լուցանել,
Նոյնպէս Ոդիւս անձին հոգ. ած սաղար-
    Թապատ 'ի ծածկել։
Պարտասելոյն գութ ած Պալլաս, աչացն
    եհեղ քուն անոյշ,
Հեշտին այնպէս նա ըղձյոգնեալ զար-
    տեւանունսըն կափոյց։



# ՈԴԻՍԱԿԱՆ

ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Զ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Մօտ 'ի քաղաք Փէակեցւոց 'ի քուն լինել Ոդիսեայ, Աթենաս երևի 'ի գիշերի յերազի դստեր արքային Փէակեցւոց՝ որ կոչէր Նաւսիկէ. ձայն տայ նմա երթալ 'ի գետն լուանալ զհանդերձսն, իբրու մերձ էր օր հարսանեաց կուսին: Նաւսիկէ առեալ զկառսն 'ի հօրէն, ելանէ նաժշտօքն 'ի քաղաքէն: Լուացեալք զհանդերձսն, և պարապին 'ի գնտախաղս: Ճառաչիւն գնտակացն զարթուցանէ զՈդիսս 'ի քնոյն, որ մօտեալ առ արքայադուստրն, խնդրէ օգնութիւն: Նաւսիկէ ձեռն տայ հիքացելոյն Ոդիսեայ՝ կերակրով և հանդերձիւ, և առեալ ածէ զնա 'ի քաղաքն:



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Զ.

Ի ՔՈՒՆ անոյշ հանգչէր անդէն դիւցազն
Ոդիւս խոնջ վաստակ,
Բայց Աթենաս յարեաւ գնալ Փէակե-
ցւոցն 'ի քաղաք.
Որք յառաջ առ Կիկղոպեանս առ մեծա-
սաբեր ազգ մարդկան,
Վայրագք հուժկուք, բնակեալ էին 'ի
լայն սահմանս Հիւպերեան։
Վեհ Նաւսիթոոն հան ըզնոսա հեռի յա-
րանց ճարտարաց,
Ած 'ի Սքերիա, շինեաց անդ տունս և քա-
ղաքին պատուար ած.

Կտաւոյց մեհեանս, բաշխս եդ անդոյ, էջ
 օրհասխումն 'ի դըժոխս,
Եւ անդ յայնժամ Թագաւորէր այր դիւ-
 ցախառն Աքիլլէոս.
Ի տուն սորա չոքաւ խաժակն, հնարէր
 ըղձարձ Ոգխուսին,
Դնէմ եդ 'ի շէն 'ի սրսկապանն ուր ննջէր
 դուստր արքային.
Էր Նաւսիկէ կուսան չքնաղ 'ի մոյն 'ի
 գեղն անմահից,
Նաժիշտք երկուք յոյժ շնորհաշուքք
 կան երկուստեք առ դրանդիս.
Դուռք լուսափայլք տղխեալ կային.
 մուտ իբրև սիւդ գիցուհին.
Մատեաւ առ կոյսն, կայ 'ի սնարիցն 'ի
 տիպ դստեր Դիմանտին.
Էր Դիմանտէս հըզօր նաւաղ, դուստրըն
 նորա նազելի
Էր Նաւսիկեայ յոյժ սիրաբուն 'ի նոյն 'ի
 տիս հասակի:
Ընդերեալ խաժակն ըղտիպ սորա, «Զի՞,
 Նաւսիկէ, կարդայց ձայն,
Զի՞ զքեզ տարտամ ծընաւ մայր քո.
 ձորձք քո յանհոգս անկեալ կան,
Զորձք շնորհատիպք. Ո՞չ հարսանիս
 քեզ 'ի մօտոյ գործեսցեն,
Ի զգեստ պայծառ վայելչացիս, որոց
 ըղձքեզ ածիցեն.

Համբաւաւորեանն լեալ քո այժմիկ, և խըն-
    դասցեն հայր և մայր .

Արդ ընդ այգն 'ի լըւանալ, ես փոյթ
    գործոյդ կամ սատար .

Ոչ ևս այլ շատ մնասցես դու կոյս . ըղ-
    ջերդ յաղջկըդ փեսակերանց

Խնդրեն աւագք . արդ ընդ այգն և Երթ
    ըղհայր քո դըրդեանց .

Հրաման տացէ ածել ըղկառս , 'ի լուծ
    ձըգել զոյգ ջորեաց ,

Քոց կամարացդ և շըղաշից , պայծառա-
    ձորձոցդ բեհեզաբարձ .

Գնասցես շըքով և մի հետի , զի հեռի
    կան լըվացարանք ” .

Ասաց խաժակն , եւ յՈղիմպոս՝ ուր դից
    ասեն գոլ կայեանք .

Կայեանք յաւէժք . ոչ շնչէ հողմ, ոչ տե-
    ղայ տեղ, ոչ ձիւնէ ,

Պարզ է բնաւին և անամպորակ , ներշոյլ
    յստակ փայլակէ .

Ցանգ ուրախն դիք . անդ եւ Պաղլաս երբ
    զայն խորհուրդն ետ կուսին ,

Եւ ոսկեղահ այգըն ծագեաց , զարթոյց
    զՆաւսիկ գեղանին :

Հիացեալ էր նա ընդ երազն . յարեաւ
    պատմել ծընողաց ,

Եգիտ ըզմայրն 'ի ներքս 'ի տան , շուրջ
    ղասք կային նաժըշտաց .

Նստէր մանէր 'ի յաղէկատն ըղձովային
ծիրանին .
Այլ հայրն յատեան գընայր 'ի կոչ յա-
ւագորեար քաղաքին .
Եգիտ առ դուրս . մատեաւ Նաւսիկ՝
« Հա՛յր իմ սիրուն , ձայն կարդաց .
Ո՞չ տաս ածել ըղբարձրադահն , ըղքաջա՞-
նիւն ինձ ըղկառս .
Գնացից 'ի գետ անդր 'ի լոգանս զաղտ
պերճ ձորձոց 'ի ջինջել .
Ճա՛հ է մեծիդ յատեան մեծացն մաքրա-
հանդերձ երևել :
Հինգ քո որդիք , երկուք զուգեալք , ե-
րեքն առոյգք անպսակ ,
Խնդրեն սոքա ջինջ և պայծառ ձորձովք
լինել պարերգակ .
Այս են հոգք իմ » : Նա զայս ասաց և 'ի
հօրէն պատկառեաց ,
Զբան հարսանեացն 'ի վեր չեհան , այլ
հայրն եղև իրազգած .
« Քեզ ոչ ջորիս և ոչ այլ ինչ խանդամ ,
աներ , ո՛վ դուստր իմ .
Ե՛րթ . բարձր ըղկառսն ածցեն ծառայք
ըղբեռնաբարձ զքաջանիւն » :
Ասաց , ձայն ետ , ածեն ծառայք կառս
քաջանիւս ջորեձիգ ,
Լծեն 'ի կառս . կոյսն 'ի յարկէն զձորձ-
սըն ածէր գեղեցիկ .

Կուտեաց 'ի կառս . մայրն 'ի սակառ եղ-
խահս անոյշ համահամ,
Ըսպաս բաղում. հեղ և գինի անուշաբար
տիկ յայծեան :
Սերեւակեաց կուսանն 'ի կառս, եղ
և յոսկի 'ի կամխասկ
Իւղ դիւրգ անոյշ յօծումն անձին ընդ-
նաժշտացըն դասակ .
Աւ ըղմորակն առ զերասանն, գանեալ
ջորեջն 'ի դաշտին
Վազեն դոփեն, տանին ըզձորձսն և ըզ
նաժիշտսն ընդ կուսին :
Հասին գետոյն 'ի պերճ հասանսն, ուր
անսպառ լոգարանք
Են շատաջուրք, և զօղտ անջինջ առ 'ի
մաքրել բաւականք :
Լուծեալ կառաց վարեն առ գետըն յոր-
ձանուտ զզոյգ ջորեաց
Ուտել ըղսէզ անուշահամ. բարձին ըզ-
ձորձսն 'ի կառաց .
Արկեալ 'ի փոսս, ջնջել արագ գան ըզ-
մուխեամբք յել և ել,
Մինչև լուացեալ ջինջ և պայծառ առին
կարգաւ 'ի սփռել
Առ ծովափամբն, ուր խիճք քարինք 'ի
ջուրց ծովուն ողորկին .
Լուացեալք օծեալք պարարտ իւղովն
գետափին 'ի ճաշ նստէին .

Զորձքըն սփռեալք ցամաքէին յարփւոյն
հրակէզ նըշուլից ,
Մինչ կշտացեալ ինքնք կոյսն և նաժիշտք վայե
լեցին 'ի խահից ։
Գնդակախաղք լինէին ապա զերծեալք
ըզքօղս 'ի գլխոց ,
Եւ Նաւսիկէն լուսածըղլին ձայն նուա-
գաց տայր երգոց .
Որպէս յԵրմանթ կամ 'ի Տայգետ դըր-
ժուարակոխն 'ի յոտից 29
Գընայ ընդ սարս լեռնախաղաց ոսկեփըր-
քինն Արտեմիս .
Կապարճ զուսովն յորս վարազուց խըն-
դայ և շըյա եղջերուաց ,
Եւ շուրջ խաղան կոյսք մազգեղունք յա-
ւերժհարսունքըն մայրեաց ;
Ղետոյն 'ի սիրտն անդ մեծապէս ընդ օ-
րիորդն իւր խնդայ ,
Որ գըլխով չափ և ճակատուն ընաւից նո-
ցա 'ի վեր կայ ,
Նաև 'ի մէջ գեղաւորաց գեղովն հեշտա
գայ յերևան ,
Այսպէս Նաւսիկն էր ընդ նաժիշտս աշ-
խոյժ կուսանն անընման 30 .
Լըծեն զջորիս , ծալեն ըզձորձս և հան-
դերձեն դարձ 'ի տուն ,
Բայց Աթենաս խաժակն այլ ինչ հնա-
րեաց խորհուրդ 'ի ժամուն .

Զի զարթուցեալ Ոդիւս 'ի քնոյն տեսցէ
ըղձեհ զայն կուսան,
Որ զնա տուեալ տարցի շըքով Փէակե-
ցւոցն 'ի յոստան:
Գնդակ մի կոյսն արկ 'ի նաժիշտ, վրի-
պեաց արկ խորս 'ի գետոյն.
Մեծապարբառ խնծղան նաժիշտք, զըր-
թեաւ Ոդիս 'ի քնոյն:
Նստաւ կանգուն, խորհէր ընդ միտ,
« Վա՜յ ինձ, ասէր, ո՞ւր իցեմ.
Արդեօք վայրագ և վնասակար մա՞րդք անօ-
րէնք աստ բնակեն.
Իցե՞ն արդեօք արք վանատուրք, ոյց դից
ահն է 'ի սրտի.
Այլ ես կուսից յաւերժհարսանց բար-
բառ լսեմ կանացի,
Որք 'ի լերինս են բնակաւորք կոլեալք
վերջին զարտևան,
Եւ որք յաղբիւրս 'ի խոտաւէտս, յա-
կունս գետոց օթևանան.
Արդեօք մարդկա՞ն լսեմ ըղձայն. ա՛ղէ
ինքնին փորձեմ ես,
Տեսից աչօքս ». ասաց, արտաքս ել 'ի
թաւոյն Ոդիւսէս:
Ափածանելի կորզեաց ուժով ոստ սա-
ղարթուք քաջաբուն
Ի թաւ մայրէն, սփածաւ զրնայր իբրև
առիւծ լեռնասուն.

Գաղանն հուժկու, անձրևայեղց, և հող֊
մահար, սիգապանծ,
Դիմէ յանդեայս, յօդիս, 'ի բոյլս վայրա֊
գասուն եղջերուաց.
Աչքըն հրացայտ, փոր սովատանջ, մինչ
փարախն անգ 'ի բուն,
Գուժկա՞ն խաշին. այսպէս Ոդիսևս յայտ֊
նէր կուսիցն ընդաստուն:
Նա յօրիորդացն վարսագեղ գայր և մօ֊
տէր անվեհեր,
Թէպէտ մերկ էր, այլ անհրաժեշտ իւր
հարկն ըզնա ըստիպէր:
Պակեան, տեսեալ զայր գագաշոտ յաղտ
ծովային և 'ի մօյն,
Ջոքս արձակեալ փախեան աստ անդ
բարձըր զափամբք ըզգետոյն:
Մընաց միայն վեհ Նաւսիկէն. զի զնա
անահ և սրտեայ
Եդ Աթենաս. յակաստանի նա կայր մը֊
նայր Ոդիսեայ:
Խորհէր Ոդիւս, փարե՛լ զծնգովք այն
աչագեղ Նաւսիկին,
Թէ 'ի բացուստ աղու բանիւք սիրտ ամո֊
քել ըզկուսին,
Ցոյցք անկեալ խնդրել քաղաք, խնդրել
հանդերձ մերկութեան.
Հաստատեցաւ 'ի յայս վերջին, բացուստ
ձայն տալ աղուական.

Զի մի՛ Թերևս ըղձումնդամն առնեալ սրտ֊
նեսցի կոյսն 'ի ժամուն.

Զայն ետ ապա, ձայնն էր աղու, 'ի նոյն
և բան իմաստուն։

“Ողջաւոր եմ քեզ, դշխոյդ. մարդ
ես եթէ դիցուհի.

Եթէ արդեօք ոմն յանմահից երկնաձե
միցն 'ի կարգի.

Ես 'ի գեղոյդ, յառոյդ անձնէդ, և յերա֊
նէդ գերակայ

Ըզքեզ համնգոյն քաջ ճշգրտեմ կուսին
մազդեղն Արտեմեայ.

Իսկ եթէ մարդ ես ոք երկրաբնակ, հայր
քո երիցս երջանիկ

Եւ մայրդ արդոյ, նաև եղբարքդ երիցս
անդամ երանիկք.

Զի ցանգ նոցուն հըրճուելն ոգիք և դու
ինքնին ես պատճառ,

Երբ տեսանեն զայդ վեհ բողբոջդ 'ի պար
խառնիլ գեղապար.

Իսկ ապա այրն է վեհ բնաւից երանե֊
լեաց գերաբուն,

Որ օժտագանձ բազմահանդերձ ածցէ ըզ֊
քեզ կին 'ի տուն.

Զեբ իմ նըրման 'ի մահացուաց մարդ ոչ
տեսեալ և ո՛չ կին.

Հիացեալ կամ, զինչ 'ի Դեղոս Ապողո֊
նեան առ բագնին,

Երբ նորատունկ արմաւենւոյ ընձիւղ տե-
սի անձրման 31 ,
(Եւ անդ յերթալս ինձ բազմամբոխ ըղ-
ձետ խաղայր մեծ խուժան ,
Բայց ձախողակ դիպաւ ինձ այն) , արդ
զայն ընձիւղն երբ տեսի ,
Յանկարծ կայի . տունկ նորատիպ երբեք
բուսեալ չէր յերկրի .
Եւ արդ նոյնպէս ընդ քեզ , ով կին , յան-
կարծուս կացեալ հիանամ ,
Այլ ոչ ժրտիմ փարել ըզծունգաց , թէ-
պէտ ցաւով տանջեալ կամ .
Աւուրս քըսան 'ի կապուտակ ծովն յա-
լեաստ ծըփեցայ ,
Երեկ զերծայ . յայս դիւաշունչ վարեալ
կղզւոյն յՈգիգեայ .
Արդ յայս յափունս արկ զիս աստուած
թերևս և այլ տալ ինձ գան
Գուցէ սաստիկ և չարագան . խիթամ թէ
դիք ոչ դըլան :
Յիս , ով դշխոյդ . ես չարատանջս ըզքեզ
գըտի առաջին .
Ի դաշտայնոց , քաղաքայնոց ինձ զոք ծա-
նօթ ոչ ունիմ .
Ցոյց ինձ քաղաք , տուր ինձ հանդերձ
մարմնոյս ծածկոյթ ըրջապատ .
Թէ աստանօր զու ձորձ բերեր , տուր ինձ
ձորձոցդ ըզպատատ .

Տացեն քեզ դէք ըստ քում ըղձին, և տուն և լաւ ամուսին,
Եւ միաբան խաղաղութիւն, քան զոր չկայ մեզ լաւ բաժին.
Նոյն այր և կին միախորհուրդք տուն տընտեսել լինին իղձք,
Չարք չարչարին, բարիք խնդան, և մանաւանդ ըմծակիցք»:
«Չէ՛ք քո, ո՛վ հիւր, ես նուաստիկէն ոսկեծըղլին պատասխան,
Չէք քո 'ի բանսդ ոչ անկածի ոչ անմըտի կերպարան.
Բարեաց, չարաց, մեծ Ողիմպեանն բաշխեաց պարգևս ըստ կամի.
Քեզ ցաւըս ես, համբերատար պարտիս լինել 'ի վշտի.
Բայց արդ հասեալ քո մեր յերկիր գտցես զամէնն յոստանէն,
Զարձ և այլ ինչ ողորմաւոր հիւրացելոց որ պէտք են.
Ցուցից զքաղաքն, ցուցից և զազգն, յերկիրս Փեակեանք բնականան.
Ես դուստրն եմ մեծն Աղկինոսի որ Փէակեանց է իշխան»:
Ասաց, ձայնէր իւր նաժշտաց. «Ըզ կայ առէք, կանանի,
Ո՞ւր փախչիք դուք, զայր ոք տեսեալ կարծէք այր դուլ թշնամի.

Չիք մարդ ծընեալ և ոչ ծնցի, որ փէա֊
կեանց ոսկերիմ

Աղէտս անցէ․ զի յոյժ սիրունք եմք ան֊
մահից երամին․

Նա՛ զի եմք իսկ ծովապարփակք, չեք տուր֊
եալ ընդ մարդկան․

Այս հիքացեալս այր է Թափառ և եկն
առ մեզ ապաստան․

Հիւրք և աղքատք են 'ի Դիւայ, գոհ են
նոքա և ընդ խումն․

Այլ դուք նաժիշտք առատաձեռն ար֊
բումն և կեր տուք հիւրոյն․

Լուացէք 'ի գետն յանքոյթ հողմոց »․ ա֊
սաց, առին քաջալեր,

Ընդ հովանեաւ ածեն զՈդիւս՝ որպէս
Նաւսիկէն ետ պատուէր․

Ածեն և ձորձ, լօդիկ, բաճկոն․ աման
իւղ յոսկի 'ի կամիսակ,

Եւ միջամուխ, յորդորեցին, լուանալ
գետոյն 'ի հոսանք։

Ասէր Ոդիւս․ « Վայր մի 'ի բաց, ո՞ ա֊
ղախնեայք մինչ ինքնին

Ես ըզմարմնոյս զաղտ ըզծովուն լուա֊
ցեալ և ողջ օծանիմ․

Արդէն յանոյշ 'ի յօծմանէն շատ ժամա֊
նակ զուրկ եմ ես,

Այլ քաւ թէ մերկ լուացայց համդէպ
օրիորդաց գեղադէս »։

Լուան, չոքան պատմել կուսին. մինչ-
դեռ Ոգիս 'ի գետոյն

Լուսնայր ջնջէր զաղտ տարրացեալ ըզ-
քամակին և զուսոյն.

Ջնջեաց ըզժահն և ըզգլխոյն, լուացաւ
ոզջոյն և օծաւ

Եւ զընծայեալսն 'ի Նաւսիկեայ ըզպատ-
մուճանսըն արկաւ:

Ըզնա Պալլաս եդ առոյգանձն, և փա-
ռաշուք եւս գիտակ,

Եւ վարսք գլխոյն հեղան գանգուրք յա-
կինթ ծաղկան հանգունակ.

Որպէս յորժամ զոսկի 'նդ արծաթ ա-
ռեալ յեռու այր ճարտար

Սանն Հեփեստեայ և Պալլասայ ամեն-
արուեստ գործարար,

Նոյն գեղ և շնորհ 'ի գլուխն և յուս ա-
ռեալ Ոգիս Պալլասէն,

Մեկուսացաւ նստէր 'ի յափն, և հիանայր
Նաւսիկէն.

« Իմ գեղապարք, լուարուք նաժիշտք
բան մերկանամ ձեզ ահա.

Ոչ յակամայս ողջ անմահից առ փէա-
կեանս եհաս սա.

Յառաջն անշուք ինձ երևէր, արդ երկ-
նաշէն դից նըման,

Իցիւ թէ սա առս ընակաւոր ինձ սահմա-
նեալ էր փեսայն.

Ո՛վ թէ հաճէր մընալ առաւէն. այլ դուք
ըսպաս տո՛ւք դըմա ״.
Ասաց, արագ յարբուցմն 'ի կեր պաշտօն
հարյն Ոդիւսեայ։
Նստաւ Ոդիւս, առնոյր զընթրեացն յա-
պուրակի ըղձաշակ,
Իբրու որ այն անկերակուր մնացեալ հա-
րուստ ժամանակ։
Բայց Նաւսիկէն ոսկեծըղղին ո՛յլ ինչ
խորհեալ 'ի սրտի,
Ծալեալ ըղձորձսն եդ 'ի պերճ կառս
լըծեաց զջորիս կորովի.
Ել և հրաւէր տայր Ոդիւսեայ ״. Արի՛,
ո՛վ հիւրդ, 'ի քաղաք.
Տարայց ըզքեզ առ ադ իմ հօրն ես 'ի տա-
ճար բարձրայարկ.
Անդ Փէակեանց հիւրամեծար առցէն
ըզքեզ քաջորեար,
Այլ դու արա՛ զոր ես ասեմ. նա՛ տըղու-
եալ է քեզ համճար.
Ցորվայր ընդ դաշտ ուղևորիմք, ընդ ան-
դաստանս մըշակաց,
Ցայն վայր ճեպ տուր ընդ իմ նաժիշտս
ըզհետ ջորեաց և կառաց.
Ես առաջ հորդեմ մինչև ելցուք բարձրա-
պարիսպն 'ի քաղաք,
Ուր են անդորր աստի անտի անձկանե-
ղուց նաւակայք

Նաւք անդադար ծածկագնացիկք մէն մի
կարգեալք շար 'ի շար,
Եւ հրապարակ նաւահանգստից առլայսատակ
քաղՋ յարդար.
Վայր միջանկին մեհենադարդ Սերապէոնին
է կայան,
Ընդ ձեռն 'ի գործ ժրաջան կահել զէն
և կազմած նաւական.
Զէ գործ նոցա կապարճ աղեղն, այլ
Թիկք, պարանք, և կառանք,
Կայմ, և քաշանք, նաւք առագաստք, ո-
րով ծովէն փէակեանք.
Ի գժալըհի փախչիմ զրուցաց, մի որ արկ-
ցէ ըղձեա իմ,
Զի են նոքա այրք ըստամբակք և սինլքորք
խուժանին.
Թերևս խեռ որ ընդառաջեալ պատահեսցէ
լիցի քաղաքիդ.
Ո՞ է այդ հիւրդ ընդ Նաւսիկեայ այր
Թիկնաւէտ, գեղեցիկ.
Ո՞ւր գտեր զդա, անշուշտ այր իւր. կամ
Թէ Թերևս զայր Թափառ
Ի տար երկրէ առ 'ի նաւէ, զի մօտ առ
մեզ չիք որ այր.
Կամ անձկայրեաց յողոք կուսին յերկնից
իջեալ որ աստուած
Կայ առ դմա. կալցի ըղձեա ողջոյն զա-
ւուրս իւր կենաց.

Սակայն լաւ ես, եթէ գնացեալ այլուստ գիտ իւր ամուսին,
Ոչինչ արարեալ ընդ տարփածուս ընդ արս աւագ մեր ազգին ։
Զայս ասասցեն, և լինիցիմ ես այպանեաց նշաւակ,
Ես որ ցասնում ընդ անհնազանդ իւրոց ծնողացն ընդ զաւակ,
Երբ նա գնացեալ խառնի ընդ արս նախ քան զհրաշակն հարսանեաց.
Վասն այն լուր ինձ և փոյթ գոցես նաւս 'ի հօրէս և ըղձարձ ։
Մեք զՊալլասայն գոցուք յուղւոջ կա- ղամախից պերճ մայրի,
Անդ է աղբիւր և մարգ և դրախտ, անդ է կալուածս հայրենի.
Հեռի կայ վայրս 'ի քաղաքէն, որչափ լսի ձայն մարդկան.
Անդ կացցես դու ժամանակ մի մինչև եկ- ցուք մեք յոստան.
Երբ համարիս հասեալ ըզմեզ 'ի հայրե- նին մեր 'ի յարկ,
Դու զԱղկինեայ հօրն իմ ըզտուն խնդ- րեա՛ մտեալ 'ի քաղաք.
Ցերևանի կան ապարանքն, ածցէ ըզքեզ և տղայ.
Զի չեն նման յարկք Փէակեանց յար- կաց դիւցազն Աղկինեայ.

Ա՛յն ինչ մտեալ, ընդ յարկ գաւթին ա-
րագ արագ դու անցցես,
Մինչ յարքունիս առ կրակարանն նըս-
տեալ ըզմայրն իմ գտցես.
Նա 'ի լոյս հրոյն, յեցեալ 'ի սիւն, ըղձի-
րանին յաղեկատ
Զքնաղ մանէ. գասք նաժշտաց յետուստ
նորա նստին անդ.
Գահոյք կայ հօրս, ուր դիւցազնաբար բազ-
մեալ ըմպէ գինի զորթոյ.
Դու անց յառաջ առ զոտից մօրս, տես-
ցես արագ ըզդարձ քո.
Տարադիմեալդ տեսցես անշուշտ, միայն
ընդ միտ մտաւ մօր իմ,
Ըզիրբելքսդ, և զապարանսդ, տեսցես
զերկիրդ հայրենին »:
Ասաց, գնաց. Զորքն հուժկուք Թո-
ղին հապճեպ զհուն գետոյն,
Վաղս առնուին ելեալք միմեանց 'ի վէգ
ոտիցն արագուն.
Այլ կոյսն ուշիւ կառավարէր ընդ 'օդ-
բախեալ խարազան,
Զի հետևակքն Ոդիւս, նաժիշտք ընդհետ
գայցեն միաբան:
Արեգն եմուտ, 'ի պերճ անտառն հասին
'ի ձօն Պալլասայ,
Անդ կաց Ոդիւս, մաղթէր մեծի որիոր-
դին Որմըզդայ.

« Գէթ լո՛ւր ինձ տուր, որ ոչ լուար յա-
ռաջին յուխտին իմ պաշտօն,
Երբ աղէտանքն զիս գանտալից տարեալ կո-
ծէր Պոսիդոն.
Տուր ինձ շնորհս առ վանատուրս, քև
գութ ածից Փէակեանց ».
Զայս աղօթեաց յողոքք անկեալ. Պալլաս
լուաւ մաղթանաց։
Բայց ակն ածեալ վեհ Հօրեղբօրն 32,
ոչ տայր դեռ ձեռն անվեհեր,
Զի՛ նա՛նդ Ոդիսս, մինչև տարեալ, հրա-
վառ ցասմամբ բորբոքէր։



## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Հասանէ Նաւսիկէ 'ի քաղաք իւր և յարքունիս. յետ սակաւուց և Ոդիւսէս: Նման 'ի կերպարան մարդոյ երևի Աթենաս, և բազում ինչ իրաց խելամուտ առնէ զնա: Հիանայ Ոդիւս 'ի զնին արքունեացն Ալկինոսի արքայի Փէակեցւոց: Նկարագիր նորա գեղեցիկ, որպէս և պարտիզին արքունի: Մտեալ Ոդիւս յարքունիսն յոտս անկանի առ դշխոյն Արետէ. հիւրընկալի մեծապէս 'ի նմանէ և յարքայէն և 'ի պալատականացն: Հարցեալ 'ի դշխոյէն՝ 'ի ճանաչել անդ ըզպատմուճանն արկեալ զՈդիւսեայ, պատմէ ոճով զանցս ուղւոյն իւրոյ՝ 'ի Թողուլ իւրում զկղզին Կալիփսեայ, մինչև 'ի հասանել իւր 'ի կղզի անդր Փէակեցւոց:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Է.

Յաղօթս Ոդիւս կայր, և ըզկոյսն ածէն
ջորիքն 'ի յոստան.
Հասեալ 'ի հօր պերճ ապարանսն, կաց
նախադրանցն յանդիման :
Յարեան եղբարքն, որպէս անմահից, բազկ
ըզնովաւ գործեցին,
Լուծին զջորիսն, զհանդերձանսն առեալ
'ի ներքս ածէին :
Կոյսըն չոգաւ 'ի սրսկապանն. Նըմա պա-
ռաւն հուր վառէր
Սենեկապանն Եպիռացի, Եւրիմեդէ
անուանէր.

Ըզսա երբեմն նաւք յԵպիրոսեայ Ալկինոսի ձիր ածին

Իբր արքայի, ում և փեկեանք իւր Աստուծոյ լսէին :

Ըզնաւասիկէն լուսածրըղի ընթոյց աւասարդս այս 'ի տան .

Սա ըզխարոյկըն արկանէր և զարդարէր ըզսեղան :

Ոդիւս յարեաւ գընալ յոստանն . ըզնա Պալլաս հովանի

Ամպով ծածկեաց . մի ոք փեկեանց ուղւոյն նորա խոչ լիցի

Կամ բան պարսեալ, կամ ո՛ իցէ՝ հարցափորձեալ ընդ երկար .

Մինչև Ոդիւս եկաց առ դուրս մտանել յոստանն 'ի պայծառ .

Ընդառաջեաց նըմա խաժամկէն իւր օրիորդ մի կուսան ,

Որ ըզսափորն առեալ տանէր , և կաց նըմա յանդիման .

« Այզէ , ո՛վ դուստր , ո՞չ տարցիս զիս , ձայն Ոդիւսէս ետ նըմա .

Տարցիս 'ի տունն Ալկինոսի , որ քաղաքիս է արքայ .

Հիւր եմ եկեալ չարչարագգեաց 'ի տարադէմ 'ի ծագաց .

Մարդ զոք երկրիս ոչ ճանաչեմ, ոչ քաղաքիս 'ի բնակաց » :

Կրկնեաց Խաժակն. « Տուն զոր խնդրես,
Ես քեզ ցուցից, հեռւ հայրենի.
Մերձ անդամնոր ընակէ հայրն իմ. ես աւահ
հորդեմ. Էկ լըռւիկ.
Մէ հայեր յոզ, մի հարցաներ. որք վա-
նատուրք սոքա չեն.
Եւ ոչ սիրով հիւրամեծարք օտար մարդ-
կան դիրկ ածեն.
Ընդ ծով կուռւել սոցայն նաւաց տայ
Գոսխդոն արձակուրդ,
'Ի ալիս սուրան. նաւքն են սոցա շղյաք
իբրեւ Թեւ, կամ խորհուրդ 33 »:
Ըսաց Խաժակն, հորդէր առաջ, Ոդիս
ըղհետ ընԹանայր.
Անցեալ գնայր ընդ մէջ մարդկան, որք
փէակեանց չիմանայր,
Զի Թոյլ ոչ տայր վեհն ԱԹենաս քաջ
գեղազդէս գիցուհին,
Եւ երկնամուխ ծածկեալ ամպով կայր
հովանի Ոդիսեին.
Անդ զնաւատորմ և զնաւակայս տեսեալ
Ոդիս հիանայր,
Ըղհրապարակըս գիւցաղանց, զերկայնա-
նիստ ըղպատուար.
Պատուարք բարձունք և շէրտափակք.
գործ հրաշալի յարուեստին.
Մինչեւ եկին 'ի յապարանս արքեհահրաշ
արքային:

Ասէր խաժակն. « Ահա քեզ տունն, ով
հիւր հայրենի, զոր խնդրես.
Գտցես աւագս 'ի ճաշ բազմեալ. մտեա
դու և մի երկնչիցես.
Զի այր սրտեայ, թէպէտ օտար, յաջո-
ղեսցի յիրս ուղջոյն.
Բայց դու մտեալ, քեզ յարքունիսն առ-
նըպատակ ըզդշխոյն.
Արեանառու է արքային, դշխոյս կոչի
Արետէ.
Զի Պոսիդոն ծնաւ զՆաւսիթ 'ի Պերի-
բեայ չքնաղէ.
Եր Պերիբէ դուստրն կրսեր Եւրիւմեդոն
քաջազին,
Որ Տիտանեանցըն թագ կապէր վիտացե-
լոցըն զարմին.
Սա ըզխուժանն եղեռնաւոր կորոյս և ին-
քըն կորեաւ,
Եւ Պոսիդոն ընդ Պերիբեայ դստեր նորա
խառնեցաւ.
Ծընաւ որդի ըզՆաւսիթոս փէակացւոց
թագաւոր.
Նաւսիթ ծընաւ զԱղկինոոս և զՀարա-
զատն Հռեքսինոր.
Փեսայ եկաց սա անուանըն, հարաւ Փեբ-
եայն 'ի վըրէն.
Դուստրն միակ թող զԱրետէ, զոր Աղ-
կինոս ած 'ի կին.

Պատուեալ ըղկինն, որպէս ոչ ոք 'ի յա-
րամբեալ մեծարի,
Այնչափ գլխոյս 'ի սերս սրտէ Աղկինոսի
է յարգի.
Սիրեն ըղնա գասք զաւակացն և Աղկինոս
և խուժանն,
Հայլին իբրև 'ի դիցանոյշ տեսեալ ըղ-
գնալն ընդ ոստան.
Ընդառաջեն նուբբողենիւք. զի է խակ
նա քաղքուշիմ.
Կայ հովանի իւր սիրելեաց, կալ խաղա-
ղէ զխուժանին:
Արդ թէ երբէք դու հնարիմաց ընդ միտ
մտցես գլխոյին,
Տեսցես անշուշտ ըղձիրելիադ, ըղասուն,
զերկիր հայրենին »:
Ասաց, ընդ ծով չոքաւ անքէր, զխզբերն
եթող ցանկալի.
Ի Մարաթոն ուղևորէր և 'ի յԱթէնս
լայնուղի.
Մուտ յերեքթեայն տուն քաղաքուր
'ի սեպհականն իւր տաճար.
Մինչդեռ Ոդիսս անդ հեռէր յԱղկի-
նոսին տուն պայծառ.
Կայր հիանայր մինչև ինքնին 'ի սեամն
հասեալ պղղընձի,
Քանզի ճաճանչ տունն հատանէր իբրև
լուսին և արևի.

Որմք պղպըղնձիկք աստի անտի 'ի խորս ձգին
'ի սեմոյն ,
Եւ բոլորէր շուրջանակի որմոց պըսակն
երկնագոյն .
Դուռք ոսկեղէնք փակեն ըղտունն , սե-
մոյն դրանդիք արծաթի ,
Էր բարաւորն արծաթեղէն . զարդ մա-
նեկին էր ոսկի .
Կան պահապանք աստի անտի բարակք
ոսկիք , արծաթիք ,
Ի հրաշարուեստ Հեփեստոսէն զգայուն
հաստեալ կենդանիք .
Պահել ըղտուն Ալկինոսին , անմահք ,
անծերք յաշխարհի .
Եւ ընդ որմոցն երկայնութիւն գահք
կուռք աստի և անտի .
Շարք են սփռեալք բարակամանք , են
կանանույն գործ ճարտար .
Անդ 'ի խնճոյս յարբուսմն յաւէժ Նստին
փեկեանց քաջորեար :
Իսկ պատանիք կայլին ոսկիք ջահք բոցա-
վառք 'ի ձեռին ,
Լոյս 'ի վերուստ չէին սեղանոց տալ գի-
շերի 'ի յարկին .
Յորս յիսուն ժիր աղախնեայք , կէսքն
երկանաւ խարտեաշ հատ
Աղան ալիւր . կէսք ոստայնանկք , և կէսք
շրջէին զաղէկատ .

Շրջեն արագ որպէս տերևք կաղամախից
    են շարժուն.
Իսկ յոստայնից քաղանկելոց դող իւղ
    կաթէ գիրդ փայլուն.
Որչափ փեկեանք են հնոտագոյնք արա֊
    գանաւք 'ի ծովուն,
Այնչափ Պալլաս քաջ անկանել ետ գործ,
    հանճար կանանայն:
Իսկ արտաքոյ մերձ յարքունեա էր մեծ
    պարտէզ սիրալի,
Չորս լըծավար. և ցանգ ամուր շուրջա֊
    նակի բոլորի.
Ծառք բարձրուղէշք, դալարադեղք. ա֊
    ճէր անդ նուռն և տանձքք,
Խնծորք չքնաղք, և թուզք քաղցունք,
    և քաջատունկ ձիթենիք.
Յաւերժաբար պտուղ նոցա ոչ նուազէ,
    ոչ ծնգի,
Ոչ ձմերանի, ոչ յամառան. ցանգ զե֊
    փիւռ կայ հովանի,
Շնչէ անդուլ, ըզկէսս եփէ, ըզկէսս առ֊
    նէ աճեցուն:
Ըզկնի տանձոյն տանձ ծերանայ, խնծորն
    ըզկնի խնծորոյն.
Ըզհետ խաղող գայ խաղողոյն, թըզոյն
    դարձեալ թուզն ըզհետ,
Եւ կայ անդէն բազմապտուղ անկեալ
    այգի զինեկէտ.

Կէս զողկուզացն յարեգունիսըն ցամաքէ շող արփեան,
Ըզկէս պահեն 'ի յայգեկութ, ըզկէս կոխեն 'ի հնձան.
Որք 'ի ծաղկին ազոխացեալք, և որք հասեալք և խայծին.
Բայց երփներանգ մէջակեալ ածուք կան 'ի դրախտին. ծագ վերջին
Մշտածաղիկք գունակ գունակ. իսկ և աղբիւրք են կրկին,
Մին ծաւալի ողջ ընդ պարտէզ մին ընդ ատակըն գաւթին,
Հոսէ գընայ մինչ յապարանսն, անտի մարգիկ ջուր առնուն.
Այսպէս աստուածքն յարդարեցին զԱղկինոսին պերճ ըզտունն:
Յակձիռս անդ կայր դիւցազն Ոդիւս և ընդ միտ իւր հիանայր.
Եկաց զննեաց առհասարակ, 'ի ներքս եմուտ 'ի տաճար.
Ջաւագորեարն եգիտ ձօնել բաժակ արթուն Հերմէսին,
Որում նուէր վերջին ձօնեն յորժամ գընան յանկողին.
Քայլեաց Ոդիւս յաներևոյթս, հաս 'ի դըխոյն և յարքայն.
Էր քօղազգեաց յԱթենասայ ծածկեալ 'ի յամբ թանձրութեան.

Զեռամբ զոտիցն առ զԱրետեայ, բա-
ցաւ գիւցեան քող ամբոյն.
Տեսեալ ըղձիւրն և համբրացան հիացեալք
ընդ յարկն ընդ ողջոյն:
« Դուստըր վեհին Հաւքսեննորի, ձայն
պաղատէր Ոդիւսէս.
Առ քոյ փեսայն և առ քոյ ծունգս գամ
չարչարեալս մեծապէս.
Գամ և առ ձերն աւագորեար, ոյց քաղցր
արկք ծագեսցին,
Թողցեն որդւոց զանձ, կարասի. Թողցեն
և շուք քաղաքին.
Յիս, Արետէ. դիք զիս ուղղոյ, տուն տե-
սանել զիմ արագ,
Զի տարադէմ 'ի սիրելեաց տանջիմ ես
ձիգ ժամանակ »:
Ասաց, առ հուր կրակարանին նստաւ վե-
րայ 'ի մոխրոյն.
Կայր նա այնպէս. արքն հիացեալք ամի
'ի բերան կան ողջոյն.
Մինչև ուրեմն Եքենոս վեհն աւագ Փե-
կեանց ծերունին,
Բանկայ ճարտար, հնութեանց ներհուն,
պատուասիրեաց յատենին.
« Քեզ, Աղկինէ, չէ այդ 'ի ճահ, չէ դե-
ղեցիկ, ո՛վ արքայ,
Նստել հիւրոյդ առ կրակարանն յերկիր
մոխրոյն 'ի վերայ.

Լուռ կայ ատեանս, զի քում ձայնին ապասեալ մնեան ազգութեան .

Կանգնեա ըղհիւրդ և բազմեցո յարծաթափայլ բազմական .

Տուր Քարոզից մատռուակել նուէր հանցուք Դիոսի .

Ամպրոպայինն արդոյ հիւրոցդ յորդորքն կայ հովանի .

Հաց և հիւրոյդ կինըն անօրէն տացէ յառաջ ձեռն կերակրոյն ” .

Լուաւ, յարեաւ մեծն Ալկինոս, խորագիտին առ զաջոյն .

Կանգնեաց մոխրոյն, գահ ետ փայլուն, ըղԼաւդամաս քաջորդին

Շարժեալ գահէն, որ մերձ նստէր և էր նորա նազելին .

Ջուր աղախինն արկ յոսկեղէն 'ի գեղեցիկն 'ի յաման ,

Կոնք արծաթի ած 'ի լուանալ . մերձ եդ մաքուր և սեղան .

Հաց սուրբ եդաւ կինըն անօրէն , և խահս առ ձեռն ած պէսպէս .

Այնպէս յընթրեաց վայելս առնոյր համբերատարն Ոդիւսէս .

Անդէն յայնժամ ձայն Քարոզին Ալկինոոս ետ արքայն .

“ Ո՛վ Պոնդոնէ, գինի պաշտեա խառնեալ քո զայդ խառնարան .

Բնաւից 'ի տանս լեր մատուռուակ, Նուէր
 հանցուք Դիոսի .
Ամպրոպայինն արդոյ հիւրոցն յողջոյնքն
 կայ հովանի ,,։
Խառնեաց Պոնդոսն զանոյշ գինին, բաշ-
 խեաց ձօնեալ 'ի բաժակ .
Խօսէր արքայն երբ ըղձալինոյն լցին ըղձմանն
 և ճաշակ .
« Արդ զիմ մրտաց լուարուք խորհուրդ,
 պետք Փէակեանց և առաջք .
Ընթրեալք, հանգիստ առէք 'ի տունս .
 և խմբեսցուք մեք ընդ այգ .
Ատեան կարգեալ զծերակուտին մար-
 դոյդ լիցուք հիւրասէր .
Եւ Աստուածոց պերճ հոյակապ ձօնիս
 հանցուք 'ի Նուէր .
Խորհուրդ ապա առցուք զուգուոյն, զի-
 նորդ այդ հիւրդ անաշխատ,
Ջուարթ, արագ, հասցէ յիւր տուն, թէ-
 պէտ իցէ յոյժ բացատ .
Ընդ հովանեաւ մեր որերոյն մի ինչ
 կրեսցէ 'ի չարեաց
Մինչև հասեալ անդրժելի յերկիր իւրոց
 հայրենեաց .
Անդ նա առցէ 'ի գժպըհի Թելահանիցն
 յօրհասէն ,
Որ զինչ Նըմա Թել Նիտացին յործամ
 ծընաւ 'ի մօրէն 34 .

Բայց թէ յանկարծ ոք յանմահից յՈ֊
ղիմպոսէն էջ առ մեզ,
Այսուիկ ապա մեզ զայլ իւրաց յայտնեն
աստուածք ըղձանդէս.
Զի մեզ 'ի ձօն հարկաւորեղին ցանգ երևին
յանդիման,
Եւ հանդերձեալք 'ի հացկերոյթ ընդ մեզ
առնուն բազմական:
Իսկ թէ իցէ այր առանձին յուղի անկեալ
անցաւոր,
Ոչ ծածկեն զինք. զի եմք իսկ քաջ մեք
աստուածոց մերձաւոր,
Որպէս միմեանց են Կիկղոպեանք և Տի֊
տանեանք ազգ վայրագ 35 ».
Կարծեաց Ոդիւս բազմահանճարն և առ֊
դրադարձ ետ արագ.
« Փոխեա՛ ըղմիտդ, ո՛վ Աղկինէ. չեմ
անմահից ես հանգոյն.
Երկնաբնակաց ոչ նըմանիմ, ոչ 'ի մարմին,
ոչ 'ի մոյն.
Ի մահկացուաց, զո՛ր ճանաչէք, վշտատե֊
ալոցն եմ ձեռաց.
Նոցուն նըման, նա սաստիկ ևս, չարչա֊
րեցայ ես 'ի դից.
Այլ աղէ ինձ թողէք ընթրել թէպէտ
ցաւովք տանջեալ կամ,
Զի և չիք այլ ցաւ առաւել քան զստա֊
տանջ որովայն.

Սա բուռն առնէ զհարկ իւր յիշել, Նաև
սաստիկ տանջելոյն ,
Որպէս և ինձ ցաւագնելոյս բանացեալ է
արդ ողջոյն .
Հրաման կարգայ ինձ անհրաժեշտ ուտել յանդորր և ըմպել ;
Անյուշ չարեացս լինել խապառ և կշտապինդ վայելել .
Բայց դուք ընդ այգն ուղղոյն ճեպ տուք
հեքացելոյ իմ անձին
Տաժանելոյս լերուք , մի՛ տեարք , յուղարկաւորք 'ի տուն իմ .
Տեսէք զիմ անդս և ըղձառայս , տեսէք զիմոյն շուք յարկի ,
Թո՛ղ ինձ ապա ակնապարար արևն յաչաց իմ հատցի »:
Լուան սիրով . փութան լինել սատար
հիւրոյն քաղցրաբան .
Արբին ըստ կամս , հանեին Նուէր , չըքան
'ի քուն յօթեւան :
Մընաց Ոդիւս և առ նըմա վեհն Արետէ
'ւ Աղկինոս ,
Մինչդեռ անդուստ ժիր աղախնեայք
կահ բառնային ըղկոչնոց :
Զայն առաջին եա Արետէ , քանզի ծանեաւ զպատմուճան
Յուսն Ոդիւսեայ , զլօդիկ , զբաճկոն , ըզձեռագործն իւրական .

Ինքն էր նիւթեալ ընդ նաւաժշտաց. ձայն
ետ ապա. « Ո՞վ հիւր դու.
Նախ զայս հարցից. ո՞ ես և յո՞յց ես ՚ի
մարդկան ՚ի դասու.
Ո՞ ետ քեզ զայդ ըզպատմուճանդ. ո՞չ
ասացեր թէ առ մեզ
Հասեր դու աստ թափառ ընդ ծով ».
լուաւ կրկնեաց Ոդիւսէս.
« Դըժնդակ է, ո՜վ թագուհի, պատմել
ողջոյն զարկած մեր,
Զոր երկնաւորքն ինձ հասուցին. սակայն
ասեմ զոր հարցեր ։
Ովգիւգ կղզի կայ ՚ի տար ծով, տուն մեհ
դստերն Ատլասի.
Ուր խարտուաիկըն Կալիփսէ բնակէ դժնդին
դիցուհի.
Կենաց կըցորդ ՚ի մահացուաց չունի և
զոք յանմահից.
Այլ անդ միայն ըզհիւքացեալս զիս Քաղցն
էած յարկակից.
Երբ Ամպրոպեանն ՚ի ծով կապոյտ հրա-
ցան շանթիւ դիր և տար
Քակեաց զիմ նաւն, անդնդասոյզ կո-
րեան ողջ իմ քաջորեար.
Ես զգրոգ նաւուն բռնահարեալ այնպէս
ինն օր ծըփեցայ.
Ի մութ գիշեր տասներորդին հասի կղզին
յՈվգիւգեայ.

Անդ զիս սիրով առ և բուծեաց այն կա-
    լիփսէն գանգրահեր,
Եւ զիս անմահ առնէր գործել և կեանս
    ունել միշտ անծեր.
Այլ ոչ ըղձիցս յանկոյց երբէք. անդ
    ամս եօթնեակ ես կայի,
Եւ ըզհանդերձս զոր նա ետ ինձ ցանգ
    արտասուօք թանայի
Հոլովեցաւ ամն ութերորդ և տայր յոր-
    դոր իմ դարձին.
Կամ բանբեր եկն յԱրամազդայ, կամ
    շրջեցաւ իւր ոգին.
Եդ զիս 'ի լաստ բազմակապուցիկ, հաց ետ,
    գինի անուշակ,
Ետ ձորձս անմահ, և շնչեաց հողմ ինձ
    քաղցրասիւք յաջողակ.
Լաստեալ այնպէս եւթն և տասն օր
    գնայի ընդ ծով ալեբեր,
Յութն և տասին երևեցան հովանաւոր
    լերինք ձեր,
Սիրտ իմ խայտայց. այլ տաժանելիս մնայր
    դարձեալ շատ լալոյն,
Զոր ինձ զարթոյց բազմարկածեանն եր-
    կրասասանն Պոսիդոն.
Նա հողմ յուզեաց, արգել զուղիս, խռո-
    վեաց ըզծովն ահագին.
Կոհակք ընդդէմ ինձ ամբարձան, յոդուոց
    հանեմ 'ի լաստին.

Մրրիկ խուժեաց, քակեաց ըզլաստն, 'ի
    լիւղ զանդունդս չափեցի.
Մինչ հողմավար և ալեծուփ կալայ ըզձեր
    զայս կղզի.
Ընդ ելանելս բախէր զիս ծով 'դ ափըն
    վիմուտ առապար.
Ի լիւղ անդրէն անկայ մինչև հասի 'ի գետ
    բերկրարար.
Վայրն էր ախորժ, ոչ վէմք կային, ոչ
    հողմ շնչէր դառնաբեր.
Ելեալ 'ի դիւրն, ոգի առի, մինչ աստուա
    ծեանն հաս գիշեր.
Ի գեղահոս մեկնեալ գետոյն, ննջեմ 'ի
    թուփ թանձրութեան
Սաղարթապատ. և ինձ Աստուած արկ
    քուն անոյշ անպայման.
Նինջ 'ի տերևս առի զգիշեր մինչ յայգ
    և յօր հասարակ.
Խոնջ էր ոգիս. մտանէր արեգն և թող
    զիս քունն անուշակ:
Նաժիշտք դստերդ անդ խաղային, ինքն
    էր նըման գիցուհեաց.
Յողոք անկայ. նա քաջուշիմ էր և բարուք
    բարեզգեաց.
Ուշիմ այնչափ, մինչ դժուարին գտցես
    նըմին համանման,
Զի հանապազ մանկագունից խորհուրդք
    մըտաց խօլանան.

Ես հաց տաւատ, 'ւ անոյշ գինի, լուաց 'ի ջուրն 'ի գետոյն,
Զորձ զայս արկ ինձ. այս է ճշգրիտ հեքացելոյս պատմութիւն »:
« Անշուշտ, ո՛վ հիւր, կրկնեաց արքայն, դուստրն իմ յանցեաւ քեզ յայնժամ,
Որ զքեզ ինքնին ընդ նաժշտաց չէած 'ի մերն օթեվան.
Այն զի նմա դու խոնարհեալ յողոք անկար առաջին ».
Կրկնեաց Ոդիւս. « Մի՛ մեղ, արքայ, գիցես անբիծ կուսանին.
Նա ընդ նաժիշտս ուղ ինձ հորդեաց. այլ ես ընդդէմ ակն ածի,
Գուցէ այնպէս տեսեալ քո զիս, սրտմըտեսցիս 'ի յոգի.
Գիտես իսկ քաջ. ազգ եմք մարդկան ազդկասկածոտ հեշտաբար ».
« Չե՛ք յիս, ո՛վ հիւր, ասէր արքայն, չե՛ք սիրտ ցասկոտ վայրապար.
Միշտ սիրելի է վայելուչն: Ո՛վ, Զեւս, Պալլաս, և Փեբէ.
Ո՛վ, այդպիսի գոլով ոք միշտ և իմ խորհուրդս քոյն իցէ,
Որ առ մնայիր առեալ զիմ դուստր և զքեզ փեսայ կոչէի,
Եւ կամակար առ մնացելոյդ քեզ տուն և գանձ ես տայի.

Զի զքեզ բռնի կալցի ոչ ոք. չեն այս
հաճոյք հօր Դիւայ.
Ըզքեզ վաղիւ, գիտեմ քաջիկ, ուղւոյ
դընեմ ես ահա:
Դու քաղցր 'ի քում լեցիս յուղւոջ. քեզ
խմս որեար ծով հատցէ,
Մինչ հայրենին տարցին յերկիր, կամ
ուր հաճոյ քեզ իցէ.
Թէպէտ հեռի քան զԵւբիա, զոր յոյժ
ասեն բացական
Որք միանգամ մեր որերոյն գնացեալ տեսին զայն սահման,
Երբ ըզխարտեաշն Հռադամանթոս առ
Տիտիոս երկրածին
Տարան նաւեալք 'ի յայն աշխարհ, և անաշխատ ծով հատին.
Նոյն օր չոքան, նոյն օր դարձան. ըզփորձն առցես դու զարգիս,
Զիա՛րդ կուռք նաւքս և ենր որեարս 'ի
ծով շարժէ ըզքաշտիս»:
Ասաց արքայն, խնդաց Ոդիս. և աղօթէր
նա 'ի նոյն.
«Արամազդ հայր, արքայն զիւր բանն ո՛վ
թէ լնոյր ինձ ողջոյն.
Սա յաշխարհի անմահական անձին զրաւէր շուք փառաց,
Եւ ես յիմ տունն գնայի ողջամբ». զայս
զրուցէին ընդ միմեանց:

Իսկ Արետէ ձայն տայր կանանց մահիճ
ձըգել 'ի գաւթի,
Գորգս արկանել, սփռել չքնաղ պաս-
տառակալս ծիրանի.
Խըլլայս և թաւըս արկանել, վերածած-
կել ըզմարմին.
Լուան ճեպեն 'ի տաճարին Ջահըս կա-
լեալ 'ի ձեռին:
Արկեալ քնքուշ թանձր անկողին, հրաւ-
էր կարդան Ոդիւսեայ.
« Արի՛ ննջել, մահիճդ, ո՛վ հիւր, պատ-
րաստեցաւ քեզ ահա ».
Հրաւէր քընոյն յոյժ քաղցրացաւ համ-
բերատարն Ոդիւսի.
Ննջէր մահիճս 'ի քերածոյս յարձագան-
գողն 'ի գաւթի:
Նաև արքայն 'ի սրսկապան բարձու յար-
կին ընկողմնէր,
Եւ որ քնարան անդ զարդարեաց դշխոյն
եմուտ առընթեր:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Ատեան խորհրդոյ Փէակեցւոց, դարձուցանել զՈդիւս 'ի հայրենիս իւր։ Ընթրիս մեծահաց տայ Արքայն, և անդ Դեմոդոկ կոյր երգահան Նուագէ զկագն՝ որ երբեմն ընդ մէջ Ոդիւսեայ և Աքիլլեայ. Ոդիւս փղձկի յարտասուս։ Մրցանաց խաղք Փէակեցւոց, յորում հանդիսանայ Ոդիւսէս. Նուագէ դարձեալ Դեմոդոկ զհնարիմաց վարմն Հեփեստեայ, յորում շաղեաց անզերծ զնացեալսն զԱրէս և զԱստղիկ։ Ընծայաբերութիւնք առ Ոդիւս։ Դեմոդոկ դարձեալ Նուագէ ըզՃարտարարուեստ երիվարն փայտեայ՝ յառման Տրոյիոյ, և դարձեալ չհանդուրժէ արտասուացն Ոդիւս։ Յայնժամ արքայն ստիպէ զՈդիւս յայտնել զինքն, ասել զանունն, և պատմել զամենայն անցսն։



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ը.

Այգ վարդամատըն ծագեցաւ, յարեաւ
արքայն 'ի մահճաց.
Յարեաւ գիւցազն և Ոդիւսեւս քանդիչն
հըզօր քաղաքաց.
Կարապետէր վեհն Ալկինոս առ Նաւս
Փեկեանց 'ի յատեան.
Ի սրբատաշ քարանց վերայ մտեալք նըս-
տին միաբան:
Իսկ Աթենաս ըզտիպ առեալ ըզՔարոզին
արքունի,
Եւ ընդ ոստանն. հոգայր ըզդարձն համ-
բերատարն Ոդիւսի.

Ձայն արձակէր, ո՛ւմ և դիպէր. «Արի՛ք,
իշխանք փէակեանց,
Ճեպ տուք յատեան ըղձաւն հիւրոյն
լսել 'ի լուր ականջաց.
Այս հիւր նորեկ, հիւր անդնդոց, զեր-
ծեալ ծովուն 'ի սաստից
Կայ արդ 'ի տան վեհ արքային մարմնով
նըման անմահից»։
Ասաց, զարթոյց ողջոյն զօստանն. լընոյր
ատեանն յորերոյն.
Լընուն աթոռք, և ընդ Ոդիսս հիացեալ
կային անդ համբուն.
Ի գլուխ նորա և բակ զուսովք Պալլաս
շուք հեղ արփենի.
Եդ առոյգանձն և շնորհատիպ, սիրուն
փեկեանց և յարդի,
Յորդեաց և ոյժ յաղթել նոցա 'ի փորձ
խաղուց 'ի մըցման.
Եւ բոլորեալ բազմականին, ձայն ատե-
նին ետ արքայն։
«Լուարուք, արքայք, հիւր եկն առ իս.
թէ ո՞վ իցէ, չեմ գիտուն.
Յելի՛ցն արդեօք իցէ բնակչաց, թէ 'ի մը-
տից արևուն.
Ուղի խնդրէ, մաղթէ ճեպով. մեք որպէս
միշտն և զարդիս
Ժրասցուք 'ի գործն. հիւր ոք առ իս չէ-
կաց յերկար վշտալից.

Հապա նաւ նոր անցուք 'ի ծով. և քաղցք
յիսուն և երկու
Կուռ 'ի նաւոցս կապեալ քաշախս, ելլեն
մրցել ընդ ծովու:
Ճեպ տուք ապա յընթրիս իմ մեծ. պա-
տուէր զայս տամ պատանեաց.
Բայց յօթեվանն իմ փութաջիք, խուռն
թագաւորք աւագաց.
Զի այս հիւրոյս լիցուք միրով հիւրասե-
ծարք մեք 'ի տան.
Բայց կոչեցէք ըզԴեմոդոկ զաստուա-
ծային երգահան.
Որմա Աստուած քնարախաղհիկ ետ շէր և
տաղ անուշակ,
Եւ զեղեցիկ իւր մոլութեամբ ինքն յոր-
դորէ 'ի նուագ »:
Ասաց, քայլեաց, առաջայքն ընթեռ. Քա-
րոզն ձայնեաց զերգահան.
Իսկ պատանիք յիսուն և երկուք ըստ հրա-
մանին կազմեցան.
Ղուքան 'ի նաւն, առ ծովափամբ արկին
'ի խորս 'ի ծովուն,
Եդին ըզկայմն, և կուռ փոկովք կապեն
զքաշախս զարդարուն.
Առնուն պարզեն և զառագաստն, նաւուն
'ի խորս տան դադար,
Յարեան ապա յԱլկինոսին յապարանա-
կանն 'ի տաճար.

Լըցան գաւիթք և որմափակք, լըցան և
 տունք 'ի յարանց,
Անդ պատանիք շատք խռնեցան, շատ և
 դասակք ծերունեաց.
Երկոտասան 'ի յայն կոչունս ոչխարս ե-
 զեն մեծ արքայն,
Գալարեղջիւր եզինս երկուս, սպիտակ
 ժանիս ութ խոզեան.
Մորթեն, կազմեն. այնպէս ընթրիս
 պատրաստեցին մեծահաց.
Եհաս Քարոզն որ զԴեմոդոկն ածէր ըզ-
 վեհ տաղասաց.
Յանչափս ըզնա սիրեաց Մուսայն, ետ
 ըզբարին և ըզչար.
Յաչաց լուսոյն զրկեաց ըզնա, այլ երգ
 շնորհեաց բերկրաբար 36.
Նըմա 'ի մէջ Քարոզն էարկ արծաթազամ
 գահ պայծառ
Յեց 'ի սիւն մեծ, և 'ի մնարից կախեաց
 ըզպերճն ըզկիթառ.
Ուսոյց նըմա առնուլ 'ի ձեռն. եդ և սե-
 ղան առաջի.
Եդ և ըզխանն, բաժակ գինւոյ, առնուլ
 արբումն ըստ կամի:
Նոր բազմականքն կերան, արբին, և
 կշտապինդք յագեցան,
Անդուստ Մուսայն երգել ըզքաջս զար-
 թոյց ըզվեհ զերգահանն.

Երգ մի երգեաց, որ փառքն յայնժամ
եհաս մինչև 'ի յերկինս.

Նուագ երգոյն էր Ոդիսեայ և Աքիլլեայ
պայքարին.

Զիարդ երբեմն աղու բանիւք պայքա-
րեցան յակումբի

Ի դից կոչունս. 'և Ագամեմնոն խնդայր
ծածուկ 'ի սրտի,

Տեսեալ զի քաջք Աքայեցւոց այր ընդ
ընկեր կագ յուզեն.

Զի զայս Փեբոս գուշակեալ էր առ 'ի Պիւ-
թեայ պատգամին,

Երբ Ատրիդէս եկ 'ի քարեայ սեամս 'ի
խնդրել հաւատոյս,

Զայս գուշակեաց եթէ յայնժամ լիցի
ըսկիզբն աղէտից,

Եղծցին Տրոյեանք, կորեայցեն և Յոյնք մե-
ծին Դիայ խորհրդովք 37.

Արդ զայս նուագ երգէր յայնժամ մեծն
երգահան Դեմոդոկ։

Լսէր Ոդիսս, ոչ հանդուրժեաց, առ-
զպատմուճան ծիրանին,

Ած ընդգլխովն և ածկանէր քօղ գեղեցիկ
պատկերին.

Զարտասուսն աչաց ծածկէր յարանցն. իսկ
մինչ կիթառըն լռէր,

Սրբեաց զարտասուսն, եղերծ ըզքօղն, առ-
զգաւաշխուրան, հան նուէր.

Իբրև անդրէն հրաւէր իշխանք տային
    երգոյն բերկրաւոր,
Անդրէն յայնժամ և Ոդիւսէս քօղ ընդ գըլ-
    խովն արկ և լայր։
Զանխուլ յայլոց կայցին լալիք, զննեաց
    միայն Աղկինոս.
Մերձ կայր նորա, լսէր զի խոր հանէր
    Ոդիւս 'ի յոգւոց։
Զայն եւս անդէն 'ի յատենի. « Լսեա-
    րո՛ւք, իշխանք Փէակեանց.
Շատ ինչ արդէն վայելս առաք մեք հա-
    մաչափ 'ի յընթրեաց.
Վայելս և քնարս 'ի կիթառէն, որ ապ-
    սակն է պերճ կոչնոց,
Արի՛ք զարդիս, նաև մրցմանցն աղջոյն
    տացուք մեք ընդփորձ.
Զի հիւրն 'ի դարձին հռչակ հարցէ, քանի՜
    վեհք եմք մեք քան զայլս
'Ի բռնամարտ, 'ի գօտեմարտ, յոստոստումն
    ոտից, և 'ի վազ »։
Ասաց արքայն, քայլեաց յառաջ գնային
    ընդհետ արքն աղջոյն.
Քարոզն յայնժամ ընդպերճ կիթառն ա-
    ռեալ կախեաց ընդսեպոյն.
Առ և զաջոյն Դեմոդոկեայ և 'ի յարկէն
    արտաքս ած,
Հորդէր նորա ուր այլք գնային կալ 'ի
    զննին մրցմանց.

Վազեաց յառաջ 'ի նըպատակն, և զայլսն
եթող ըզկընի,

Որչափ զեզինս թողուն ջորիքն ակօսա-
բեկք 'ի յանդի ։

Եկին ապա 'ի գժուարին գօտեմարտին 'ի
հանդէս ․

Աստ Եւրիւղոս ընդ աւիւց քաջաց յաղթա-
նակեաց մեծապէս ․

Ի փորձ ոստման վերայ ընդ աւիւց հռչակե-
ցաւ Ամփիղոս ․

Իսկ 'ի սահրիճ յոյժ գերազանց գըրաւ-
անդէն Եղատրոս ․

Քաջքռնամարտէր Լաւղամաս ․ իսկ երբ
ողջոյն մրցանաց

Զիղձըն հարին, ձայն ետ ապա վեհն
Աղկինեան Լաւղամաս ․

“Եկայք, հրաւէր տացուք մըցման, թէ
գիտէ ինչ, մեր հիւրոյն ․

Զի տեսոյգ է յաղդերս, 'ի սրունս, ող-
ջոյն յիրան և մարմնոյն ․

Պարանոցն յաղթ, կորովն է մեծ, քաջ-
տեսոյգ է, այլ անկած ․

Զի բեկանել և զայր հուժկու չէք քան
ըղծով չարատանջ ”։

“Քաջ ասացեր, ո Լաւղամէ, կրկնեաց
նըմա Եւրիղէս ․

Այժէ դու ինքն հրաւէր կարդա ձայն տուր
նըմա յառաջարկես ”։

Լուաւ զայն վեհ արքայորդին, արձանա-
ցաւ 'ի միջի.

Ասէր ցՈդիւս. « Եւ դու հայր հիւր, 'ի
փորձ մրցմանց ո՞ն արի.

Գիտես թերևս. ճա՛հ է գիտելդ. շուք է
մարդոյ մեծապէս

Ի կենցաղիս լինել քաջոտն և 'ի ձեռացն
'ի հանդէս.

Մատի՛ր 'ի փորձ. զի՞ քեզ թախծելդ.
ուղիղ մօտ կայ աւադիկ.

Քո նաւն այժմէն 'ի ծովն արկեալ, և պատ-
րաստ կան նաւաստիք »:

« Զի՞, Լաւդամէ, ասէր Ոդիւս, խաղ
ընդ հեգն ինձ ձայն տայք.

Ցաւք զիմ ոգիս վարակեալ են. զի՞նչ եր-
ևին ինձ մրցանք.

Անձն իմ արդէն չարչարանդեաց, վշտաց
տարայ եմ պէսպէս.

Եւ աստ նստեալ դարձիս կարօտ մաղթեմ
զարքայս և ըզձեզ »:

« Ըզքեզ, ո՛վ հիւր, կրկնեալ յայնժամ
Եւրիալոս նախատեաց,

Չասեմ նըման հմուտ մարդոյ կենցաղ-
օգուտ մրցմանց,

Այլ որ 'ի նաւս կացեալ 'ի գլուխ վաճա-
ռական նաւազից,

Հաշուէ ըզբեռն, 'ւ օգտածարաւ կայ
աւարաց պարէնից.

Մրցանաւոր ախոյենից ամենեցին նըման
չես ”։

Տիգջք աչաց կըկնեաց յայնժամ բազմա-
հըմուտն Ոդիւսէս.

“ Ինձ դու, ով հիւր, ոչ ճարտասան,
այլ քաջ ժըլպիրհ տեսանիս.

Զի և Աստուած ոչ տայ միում զամէն ըն-
ձիրս պանծալիս.

Ոչ գեղ դիմաց, և ոչ հանճար, ոչ բան
ճարտար 'ի լեզուէ.

Է որ անգեղ, սակայն Աստուած ըզնա
բանիւք զարդարէ.

Յակնճիւս 'ի նա այլք հեշտանան, յոր-
ժամ բանայ ըզբերան,

Խօսի պարկեշտս և հրաշակերտս, և պեր-
ճանայ 'ի յատեան.

Թէ գնայ 'նդ քաղաքն, իբր աստուծոյ
այլք կան նորա 'ի զըննին.

Եւ է դարձեալ ոք գեղաւոր տիպ յան-
մահից պատկերին,

Այլ շնորհ բանից չէք 'ի նըմա. սապէս
և քո տիպ դիմաց,

(Ե՛ւ ոչ Աստուած հասանէր այլ լաւ).
սակայն միտք են անկած.

Դու 'ի սիրտ իմ հուր վառեցեր բարբա-
ռելով անալիս.

Այլ ես անփորձ չեմ մրցանաց, որպէս
բանիւքդ ըղբիս.

Ի տիս առուոյգ ես ժիր բազկաւ մրցանա-
ւորս առաջին,
Արդ վշտալից շատ ինչ կրեցի 'ի մարտս, 'ի
ծովն ահագին.
Համայն այնպէս չարչարանօք 'ի փորձ
մրտից մրցանաց.
Երգիծական բանդ աւէծուցի զիս վեր 'ի
վայր ամբոխեաց »:
Ասաց, Թափ եա, ձորձ իւր զանձամբ
առ վէմ բոլոր 'ի բռունն.
Ծանր և հաստուած կշռէր քան զայն որով
'ի փորձ մասաչէին.
Ըրջանակեաց արկ յաղթ ձեռամբն, վէմն
ահագին շռինդն հար.
Զարհուրեցան. յերկիր կռքին Փէակա-
ցւոց քաջորեար.
Անցոյց զանցոյց զամէն նշանս, ոլորացոյց
ձեռամբն յաղթական.
Բայց Աթենաս 'ի տիպ մարդոյ մատեաւ
'ի վայրն եդ սահման.
« Ո՞վ հիւր, ասէր, նաև կոյր ոք շօշափե-
լով զայս նշան,
Մարթի զատել յայլ նշանաց. կայ միայ-
նիկ բացական.
Արդ դու ո՞վ քաջ, լեր անվեհեր 'ի ձիգ
յաղթող 'ի բազկէ.
Փեակեանց ոչ ոք հասցէ 'ի դա, թո՛ղ թէ
զայնուիկ անցուսցէ ».

Լուաւ խնդաց դիւցազն Ոդիս, զի ընկեր
մի բարեբար
Գիտ յադոնին. և փէակեանց ձայն զայս
կարդաց աղուաբար.
„ Հաստուցէք յայդ, ո՛ պատանիք, զի ես
արդ իսկ վերստին
Վէմ ձրգեցից կամ հաւասար կամ ծան-
րագոյն 'ի կշռին.
Իսկ և դուք, քաջք, ույց կամք իցեն, արիք
ելէք 'ի մրցանս,
Վառեցէք զիս 'ի բռնամարտ, 'ի գօտէ-
մարտ, և 'ի վազ.
Ոչ հրաժարեմ յողջոյն Փեակեանց, բայց
'ի քաջէն Լաւդամեայ.
Հիւր եմ նորա. իսկ ո՞ 'ի վէգ ընդ հիւրըն-
կալն իւր խաղայ.
Պանդուխտ է այրն և անաւագ որ 'ի յօտար
սահմանէ
Գայ, 'նդ հիւրընկալն 'ի վէգ մրցի և զիւրս
անձին խանգարէ.
Յայլոց անտի ոչ հրաժարեմ, բայց ոչ
քերեմ և յընչաց.
Կամիմ գիտել և ակներև կամիմ փորձել 'ի
մրցանս.
Չեմ վատ արանց, որ զինչ և փորձ. իմ
կորովի յաղեղան
Նետն իմ Թուչի խոցէ նախկին զայր Թըշ-
նամին 'ի խըռաւն,

Թէպէտ զինև բաղում համհարզք նորա
կշռեսցեն Թշնամեաց.
Մինն Փիլոկտետ ինձ յԵզեան յաղԹէր 'ի
ձիգս Հելլենաց.
Վէգն իմ ընդ հինան չէ ընդ Հերակլ, ոչ
ընդ Եւրիտ Եքաղեան,
Որք 'ի յաղեղն և ընդ անմահս 'ի վէգ յառ-
նել ժըռեցան.
Վասն այն 'ի տան մեծն Եւրիտոս անծեր
մեռաւ փութապէս.
Ըսպան Փեբոս զի ձայն նըմա կարդաց
յաղեղն յասպարէս.
Եմ արգանընկէց, որչափ ոչ ոք որ կորաքէ
նետ ձըգեն.
Միայն յոտիցս, որք Թէ Փեկեանց զիս
պարտեսցէ, զանգիտեմ.
Քանզի նըրկում եղէ յալեաց բազմակոհակ
'ի ծփման,
Եւ զի պարէն չէր ցանդ 'ի նաւն, վասն
այն անդամք իմ լուծան »:
Լռեաց, կացին ամ 'ի բերան. արքայն
միայն ձայն կրկնէր.
« Չեն բանքդ անճահ, որ զանկակից քո
զարութիւնդ մեզ ցուցեր:
Յասեար, զի այրդ 'ի յադոնին ըզքեղ
հեղնեաց 'ի լեղուէ.
Այլ ողջամիտ այր ուղղախօս քո զարու-
Թիւնդ չայպանէ:

Բայց լո՛ւր ինձ, հիւր, զի և այլոցն զխու-ցաղանց պատմեսցես,
Յորժամ 'ի տանդ ընդ ընտանեացդ բո-լորեալ ճաշ առցես.
Պատմեա՛ յայնժամ զմեր արուեստիւն զոր Արամազդ մեզ ձօնեաց,
Զոր և յաւէժ ժառանգութեամբ ունիմք անդուստ մեք 'ի հարց.
Չեմք քաջ ըմբիշք, ոչ գօտեմարտք, այլ չոյտք 'ի վազ, քաջք նաւաւ.
Են մեր յաւէժ խնճոյք անոյշք, պարք, և նուագք կիթառաց.
Հանդերձս ունիմք փոխանակաւ, մա-հիճք, և ջերմ աւազանք,
Համպա Փեկեանց, քաջ կոյթահարք, ա-ռէ՛ք 'ի խաղ յոր պանծամք:
Պատմեսցէ հիւրն 'ի տան իւրում, քանզի վեհք եմք 'ի ծովու,
Քաջ նաւագնացք, արագոտինք, յերգ և 'ի կայթս 'ի պարու.
Նա և ճեպ տո՛ւք 'ի շուք մերոյ Դեմոդո-կեայ երգակին
Գնացէ՛ք ածէ՛ք զկիթառն անոյշ կախեալ 'ի մեր տաճարին »:
Ասաց արքայն, յարեաւ Քարոզն ածել յարկէն արքունի.
Յարեան և ինն հարթիչք խաղուց մրցա-նակեալք քաղաքի:

Հարթեն տափեն ընդլայն պարուն, լայ-
նեն կրկէս սրբահետ.

Եհաս Քարոզն, զկիթառն անոյշ Դեմո-
դոկեայ 'ի ձեռն ետ։

Առ եկն 'ի մէջն և պատանիք քաջ կայ-
թահարք բարկ գործեն,

Առոյգքն 'ի մէջ ընդպերճ կրկէսն ոտիւք
տրոփեալ հարկանեն.

Յոտից կայտառս հայէր Ոդիսևս. և հիանայր
'ի յոգին.

Իսկ Դեմոդոկ յանոյշ կիթառ երգէր
զտարփանս Արեսին.

Նոյն զԱստղկան գեղազարդեալ, զհանդ-
անկան գաղտաբար.

Ընծայս շատ ետ և զՀեփեստեայն զմա-
հիճ աղծեաց և զտաճար.

Արեն եանես, գուշակ եղև. լուաւ ըղ-
ձոյժն Հեփեստոսի.

Եղթ 'ի դարբնոց, չարիս նիւթէր. առ
կոճղն մի փութայէս.

Սալ ահագին եդ 'ի վերայ. սարիս ան-
լոյծս առ կռուեաց,

Անխորտակելիս. զի կաշկանդեալք կացցեն 'ի
նոյն 'ի յանցանս.

Յորժ զայրացեալ էր ընդ Արէս. եա
կազմութիւն դարանին.

Չոգաւ տայա 'ի յառապաստան, ուր դիրք
նորա անկողին.

Եհեղ ողջոյն անդ ըղձարխս շուրջ յամենայն 'ի կողմանց.
Եհեղ բազումս և 'ի վերուստ յառատագատին 'ի ձեղուանց.
Իբրև ամբաւ սարդի ոստայնք անդ 'ի յարկին ձըգեցան,
Անտեսք յաչաց և յաստուածոց, զի յոյժ հնարիւք նիւթեցան:
Իբրև ողջոյն կազմեաց ըղձաւն, կեղծեաց երթալ 'ի քաղաք
'Ի չէն Լեմնոսն, զոր նա սիրէր քան զամենայն ըզնահանգ:
Չեկաց Արեսըն ոսկեսանձ դէտ վայրապար զննութեան,
Զհեփեստ ճարտարն տեսև մեկնիլ, չոքաւ 'ի տուն Հեփեստեան.
Խնդրէր զԱստղիկ, որ նա այն ինչ մեկնեալ հօրէն քաջզաւրուն
Եկեալ նստէր. Արէս 'ի տուն եմուտ 'ի ներքս առ զաջոյն.
« Ո՜վ քաջ, ասէր, եկ հանգիցուք, զի Հեփեստոս չէ 'ի տան.
Նա տարագէմ կայ 'ի Լեմնոս առ Սինտացիս խորդաձայն »:
Ասաց, յանկոյց. ընկողմնեցան անդորրացեալք երկոքին.
Եւ շաղեցան յանկոյծ սարդին Հեփեստեան ճարտարին,

Շաղեալք այնպէս ձեռն շարժել ոտն ամբառնալ չէր հնար.

Ծանեան մղձկեալք զի գաւեցան հեղձեա- տեսոյն յանդերձ լար:

Մատեաւ Հեփեստ, 'ի Լեմնոսէն դար- ձեալ 'ի կէս 'ի յուղւոյն.

Զի գէտ անքուն եկաց Արեւն, Ճառեաց նորմա զպատմութիւն.

Չոքաւ 'ի տուն թախծեալ ոգւով, կաց զայրագին 'ի գաւթի.

Ցոյժ էր որմնեալ, գոչեաց ահեղ ողջ դից առար լսելի.

« Արամազդ հայր, և դիք յաւէժք եկայք գործոց 'ի զննին,

Գործք են համբուն ծիծաղելիք, անտա- նելիք զլխովին.

Զիարդ զիս կաղս Աստղիկ հեգնեալ, սի- րէ զԱրէս մարդասպանն,

Զի առոյգ է, զի քաջոտն է, և ես յոտից եմ անկած.

Զինչ իմ առ այս յանցանք իցեն, բայց թէ ծնողքն իմ կրկին,

Որ զիս ծնանել չէր պարտ նոցա. բայց արդ եկայք 'ի զննին.

Ահա դուք վերկայք, ուր արդ հանդչին ե- ղեալք 'ի յիմ սրսկապան.

Հայիմ թախծեալ. այլ չարասցեն և ոչ վայր մի այլ անդամ,

Թէպէտ տապալեալք . զի և քաջ իսկ զղջա-
ցեալ են աստղիկ .
Այլ ըղձոսս անզերծ կայցին իմ որո-
գայթն և սարիք .
Մինչ զօժիտն իմ հայրն ողջ տացէ վասն
անամօթ աղջըկան .
Թէպէտ չքնաղ դուստր է նորա , բայց
անժուժկալ 'ի տարփման ":

Գնաց , խմբին 'ի կուռ տաճարն . եկն
երկրաշարժ Պոսիդոն .
Եկն և Հերմէսըն մարդասէր , եկն և ար-
քայն Ապողոն .
Բայց դիցուհիք ամօթահարք մնացին 'ի
տունս առանձին .
Իսկ բարերարքն աստուածք կացին 'ի նա-
խադրունս տաճարին .
Անդ երջանկացըն անմահից ծաղր ան-
պայման հատանէր ,
Զարուեստ ճարտարըն Հեփեստեայ տե-
սեալ խօսէր այր ցընկեր .
“ Ո՛չ յաջողէն գործք անբարիք . յամբըն
յարագն հասանի .
Որպէս Հեփեստոսն յամբաքայլ կալաւ
զԱրէս կորովի .
Սա է յաստուածս Ողիւմպոսին արագն
ոտիւք անյեղման .
Այլ կաղն յոտից կարթեաց ըզնա . լուծցէ
ըզվրէժ շընութեան ":

Զայս զրուցէին . իսկ առ Հերմէս զուարթ
Թագաւորեաց Ապողոն .
« Սատա՛ր բարեաց , ժրացեալդ Հերմէս
հրեշտակութեանն 'ի պաշտօն ,
Արդեօք յԱստղիկ փափաքեսցի՞ր , շաղեալ
սարեօք դու այդպէս » :
« Բա՛րէ , ո՛ տայր , ո՛ քաջաղեղն , անդէն
կրկնեաց զայս Հերմէս .
Սարիք եթէ հեղեալ կային երիցս ան-
բաւք 'ի կարգի ,
Եւ 'ի զինեն դիք , դիցուհիք . ո՛չ ես այն-
պէս յեանէի » :
Ասաց , զանմահս շարժեաց 'ի ծաղր , այլ
ոչ ժպտէր Պոսիդոն .
Խնդրէր անդուլ 'ի Հեփեստեայ լուծեալ
զԱրէս տալ խօր ձօն .
« Լո՛յծ դու , և ես , որպէս կամիս , առ-
նում ըզգա յերաշխի .
Հատուսցէ դա ողջ զարժանին դիցն ան-
մահից յատենի » :
Կրկնեաց Հեփեստոս . « Քա՛ջ Պոսիդոնդ
երկրասասան մի՛ ժպտեր .
Յանկարծ երաշխ վասն անկածից չեմ լինչ
այնպէս անվեհեր .
Թ՚ Արէս փախիցէ զերծ 'ի պարտուց ,
զիա՞րդ ես բուռն առնեմ քեզ » :
» Քա՛ջ լեր , կրկնեաց վեհ Պոսիդոն ,
Թէպէտ փախուստ տայ Արէս ,

Թէպէտ պարտուց իւր դրժեցէ, ես հատուցից յարժանեաց ».
« Օրէն բանիդ չէ անստատել ». ասաց Հեփեստ, և խզեաց :
Իբրև սարեք կուռք խզեցան, վազեաց Արէս 'ի Թրակէ,
Ճեպ և Աստղիկ ուղղոյ եղեալ և 'ի Կիպրոս հասանէ.
Վայրն էր Պափոս, ուր և Նըմա անտառ, բուրեան կայր բագին.
Ըզնա Շնորհքն լուացին անբիծ, և յիւղ անմահ օծեցին.
Նովաւ ծաղկին յաւերժականքն. արկին և ձորձ աննըման.
Արդ զայս յայնժամ երգէր 'ի քնար վեհ Դեմոդոկն երգահան:
Ոդիսս լուեալ զմայլէր 'ի սիրտ, նոյն քաջորեար Փէակեանց.
Մինչև արքայն Աղկոսի և Լաւդամեայ ձայն կարդաց,
Զի զկայթն հարցեն նոքա միայն անզուգականքն յարուեստին.
Հմպա չքնաղ ծիրանեգոյն առին ըզգունդն 'ի ձեռին,
Գործ Ճարտարին էր Պողիբեայ. մին առ ըզգունդն և ձգեաց
Թեքեալ յետկոյս յամբս վերինս, և միւսն ոստեալ վերամբարձ,

Այնպէս հեշտի կախեալ ընդ օդս յա֊
փըշտակէր ըզգնդակ,
Մինչև կշիռ ձգեալ գնդոյն կատարեցան
այն մրցանք։
Յերկրի ապա կայթեն ճարտար, կայթն
էր փոփոխ դարձադարձ,
Եւ 'ի գլխին անդ ծափք և ձայնք հատա֊
նէին պատանեաց։
Յորդեաց գոչիւնն, և յԱղկինոս ասէր
դիւցազն Ոդիւսէս
« Յոյժ պանծալի է, արքայ քաջ, կայ֊
թահարեցդ այդ հանդէս.
Քաջք, անվըրթարք են յարուեստին հիա֊
ցեալ կամ 'ի գլխին ».
Լուաւ խնդաց մեծն Աղկինոս, ձայն ետ
Փեկեանց ակըմբին։
« Լուարո՛ւք, իշխանք. ըզհիւր մեր զայս
ես տեսանեմ քաջուշիմ.
Արդ օ՛ն արէ՛ք, հիւրոյթս արդոյս տա֊
ցուք նըմա զարժանին.
Արքայք են աստ երկոտասան, ես եռա֊
տասն 'ի կարգի.
Մէն մի լօդիկ ջինջ, և բաճկոն, ածէք ոս֊
կւոյ տաղանդ մի.
Ածցուք փութով. առեալ զայն հիւրս
յոյժ խրախասցի մեր յընթրեաց.
Իսկ Եւրիալոս դրդեսցէ զդա 'ի ձօնս 'ի
բանս բարեզգեաց.

Քանզի անճահ բարբառեցաւ »: Ասաց
արքայն, գովեցին.

Այր այր յուզէր զիւրըն Քարոզ ընծայաբեր դիւցազին:

Յայնժամ Եւրիւղ ասէր ցարքայն. « Արքայ, բնաւից վեհափառ,

Ըզհիւր մեր զայս ես հաշտ առնեմ ըստ հրամանին քո արդար.

Ըզ սուր իմ զայս պղընձակուռ յարծաթ դաստակ տաց նըմին,

Պատեան կռեալ 'ի փըղոսկրէ, գործ նորակերտ ճարտարին.

Կալցի ըզդա իւր փարելի ». ասաց, մատեաւ անվեհեր.

Զարծաթագամ եդ սուրն 'ի ձեռս, և առ Ոդիւս բարբառէր.

« Խնդամ, հայր հիւր. և զդժպրհի բանն ասացեալ վայրապար

Արագ արագ 'ի յօդ լուծեալ մրրիկք տարցին հողմավար.

Տացեն քեզ դիք 'ի տուն դառնալ և տեսանել զամուսին,

Զի տարաշխարհ երկայնաւուրբք չարչարեցար 'ի յոգին »:

Զայն և Ոդիւսն ետ բաղձիմաստ. « Խնդամ և դու, բարեկամ.

Եւ քեզ ինքնին բարօրութիւն տացեն աստուածքն յաւերժեան.

Եւ դու մի այլ 'ի կենդանութեան աշխարհ
կարօտ լինիցիս ,
Զոր ինձ ետուր և զերդ բանիւք հայրա
սիրաբեր զիս զարդիս »:
Ասաց . բղխաւորն արծաթագամ կախեաց
զուսոյն կոթողի .
Արեան եռեալ . ընծայքն արդոյք կան Ռ.
դիւսեայ առաջի .
Զայն յարքունիս տարան Քաղաքացն . ար-
քայորդիքն ընկալան .
Զընծայսն արդոյս առ մայր դշխոյն ածին
եղին յանդիմանն :
Յառաջ արքային , նոքա ըղձեալ 'ի յար-
քունիս բազմեցան
Ի բարձրագահս եւեալք յաթոռս . ձայն
դշխոյին եւ արքային :
« Աղէ , ով կին . ածեալ աստէն զարկեղն
չքնաղ հրաշափառ ,
Դիցես 'ի նմա լօդիկ , բաճկոն , զհանդեր-
ձանին ըղպայծառ :
Եւ ջեռուցէք սան մեծ առ հուր . պատ-
րաստեցէք ջուր ջերմին .
Լուասցի մեր հիւրն , և պերճ ձօնից փե-
կեանց կայցէ 'ի զնին .
Գեղեցկակարգ տեսեալ զամէնն զբօսա-
ճասցի մեր յընթրեաց ,
Զուարճասցի նաև 'ի լուր քաղցրաձայ-
նեալ նուագաց .

Եւ ես զոսկին իմ դաշխուրանն ընդգեղե-
ցիկ տամ Նորմա.
Ցանդ յիշեսցէ Նուէր 'ի տանն Հանեալ
Քաջացն և Դիւայ »։
Լուաւ դշխոյն. հրաման կարգաց կազ-
մել ըղսանն լայնատարր,
Ծիր ազախնեայք սան լուացման եղեն
առ հուր բոցավառ.
Արկին ըղջուրն, և ժողովեալ անդ 'ի
ներքոյ փայտ վառեն.
Բոցըն պատեաց ըզփոր սանին և ջերմա-
նայր ջուրն անդէն։
Դշխոյն առ հիւրն յառաջապատէն զարկ-
ղըն ածէր գեղապանծ,
Եդ պերճ զընծայսն, ձորձս, և զոսկին,
ձօն զաւագաց Փէակեանց.
Եդ ըղօղիկն, եդ ըզբաճկոնն, և ձայն
կարգաց յՈդիսեւս.
« Արդ դու արդ, և ած ըզխուփն, և կապ
մի տուր պնդապէս,
Մի՛ ոք յուղւոջ քեզ դըժեսցէ 'ի խոր
քունեալդ 'ի նաւին ».
Մատեաւ Ոդիւս, ած խուփ և կապ բազ-
մակնճիռն հանգուցին.
Արդդուն Կիրկէ 38 ուսոյց զհանգոյցն.
ապա հրաւէր լուացման
Տայր Նորմա կինն. Ոդիւս մտաղիւր 'ի
ջերմ եմուտ լոգարան.

Չէր դարմանեալ յորմէ հետէ ըղձաւորն
    ելից Կալիփսեայ
Գանդրահերին, որ ցանդ դարման իւր
    աստուծոյ տայր Նըմա.
Լուացաւ օծաւ 'ի սպաս կանանց, արկ
    ըղձալըլայն պատմուճան,
Ելեալ գընայր 'ի բաղանեաց կոչնակա-
    նացն 'ի սեղան։
Իսկ Նաւսիկէն կոյս դիցատիպն տա-
    սեամս յարկին եկն եկաց.
Անկնակառոյց հիացեալ յՈդիւս բարբա-
    ռեցաւ և ասաց.
« Խնդամ ով հիւր. և տուն հասեալ 'ի
    հայրենիդ յիշեամ զիս.
Եւ նախ սատար եմ արևուդ՝ զոր տեսա-
    նես դու զարդիս »։
« Նաւսիկէ դու վեհ դուստր արքայի,
    կըկնեաց Ոդիւս բազմիմաստ.
Տացէ ինձ դարձ ողջամբ 'ի տունս ամպրո-
    պայինն Արամազդ.
Անդ 'ի կեանս իմ իբր աստուծոյ ես շուք
    հարից քեզ ամբաւ.
Դու իմ փրկիչ, կոյս գեղապանծ ». ա-
    սաց, յարքայն մերձ նստաւ։
Սանք բաշխէին, գինին խառնէր. ան-
    դուստ Քարոզն հասանէր,
Զարդոյն երգակ ըզ Դեմոդոկ կոչնակա-
    նաց զարդ ածէր.

Առ և եբեր յեց 'ի սիւն մեծ նըստոյց
'ի մէջ ակմբին.
Ոգլիւս ըզԹամբ կորեաց զոգին գլխաւորա-
րար վարազին.
Եւ Քարոզին. « Ա՛ռ յոյր ըզԹամբդ
Դեմոդոկեայ տուր 'ի ձաչ.
Ես մեծարանս ըղնեմ մարդոյդ, Թէպէտ
Թախծեալ հանապազ.
Ըզբեզ մարդիկ են երգահանք, արդոյք
'ի մէջ երկրածնաց.
Մուսայն նուագս ասոյց նոցա, զերա-
ժշտաց զազգ սիրեաց »։
Ասաց. Քարոզն առ ըզխորտիկն եւ Դե-
մոդոկ գիւցազին.
Առ և խնդայր, մինչ բազմականքն ըզխըն-
ձոյից զիղձն հարին։
Զայն եւ Ոգլիւս առ Դեմոդոկ. « Եւ
նախ, ով քաջ, քեզ տամ ձօն.
Ըզքեզ կամ վէհ Մուսայն վարժեաց և
կամ ինքնին Ապողոն.
Դու յոյժ ճշգրիտ 'ի յերգ առնուս
զնախճիրս, ըզկիրս, Հելլենաց,
Իբրու որ կամ ականատես և կամ 'ի լուր
ականջաց.
Ա՛դէ երգեա՛ դու և ըզ դէպ զերիվարին
փայտակերտ,
Զոր Եպէոս ընդ Պալլասայ կերտեաց և
առ մոյծ 'ի բերդ.

Մոյծ նա հնարիւքըն Ոդիսեայ լցեալ
զայն քաջ որերամ

Որք զնդիոնըն քանդեցին. ո՛ն արդ. զայն
դէպս ա՛ռ 'ի դամ.

Թէ զայդ ճշգրիտ ինձ պատմեսցես, աշ-
խարհալուր զքեզ առնեմ

Թէ ո՛չ մոռասցիք ըզքոյ կիթառն՝ այլ Թէ
աստուածք հարկանեն »:

Լուաւ, անդէն աստուածաշարժ նուագ-
առնոյր 'ի սկզբանց,

Զիա՞րդ Հելլենք նաւագնացիկք հուր
նախ արկին խորանաց.

Ի՞բր Ոդիսեանք 'ի Տրոյիա նստան ձիոյն
'ի փորին,

Եւ Տրոյացիք զայն երիվար 'ի բերդն ա-
ւրին և մուծին.

Կայր երիվարն, և ընդ նովաւ նստեալ
Տրոյեանք խորհեցան.

Եւ մեր 'ի վայր երբեակ խորհուրդք յա-
տեան նոցուն յուզեցան.

Կամ զփայտակերտն յերկաթ մտանել և
կամ հատել 'ի ժայռից,

Կամ զանարկին զայն ընդ բոշեալ հաշտ դից
պահել 'ի ձօնիս.

Յաղթեաց վերջինն. 'ի մահ անձանց 'ի
ներքս առին զերիվար,

Ուր քաջք Յունաց կային դարեալք Տրո-
վեանց մահուն դուժարար:

Երգէր, զինուո՞րդ դարանամուտքն արտաքս վազեալ՚ի ձիոյն,
Քանդեն զոստանն, աւեր ածեն շահաստանին այն բարձուն :
Անդ իբր Արէս դիմեաց Ոդիւս ընդ Մենելաւ քաջազին,
Եւ Դեփոբեայ յաղթէր ՚ի գուռն ընդ հաւանեաւ Պալլասին :
Մ՚ինչ զայսոսիկ, կիթառ հարեալ, վեհն այն երգէր երգահան,
Տայէր Ոդիւս և ՚ի ցօղոյ արտևանանցն այտք թանան :
Զոր օրինակ բազմակական սիրուն զաւրամբ կինըն լայ,
Զի փրկանակն իւրոց որդւոց և քաղաքին տապաստ կայ,
Հայի ՚ի նա յոգւոց պարզելն և թալանայ կինն համբուն,
Մինչ ՚ի թիկանց տէգք թշնամեացըն դահճաբար զուսն հարուն,
Քարշեն յանդարձն ՚ի գերութիւն լի անձկութեամբ լի վշտօք,
Եւ հիքացեալ կընոջն յայնժամ այտքըն տապին արտասուօք,
Նոյն Ոդիւսեայ ողորմելի յարտևանանցն արտասուք
Ցօղէր անդուլ. բայց հասարակ յայլոց եկաց ՚ի ծածուկ.

Միայն արքայն բազմեալ ընթեր եղև
բանին իրազգած .

Խոր 'ի յոգւոց լըսէր հեծիւն, դարձաւ
ձայն ետ փէակեանց .

“ Լուարուք իշխանք . սանձ Դեմոդոկ
տացէ անոյշ կիթառի .

Քանզի նուագ երգոյն նորա չէ բոլորից
փարելի .

Յորմէ հետէ նստաք յընթրիս և վեհն եր-
գիչ նուագէ ,

Արտասուր անդուլ հեղու մեր հիւրս ան-
շուշտ սրտին ցաւ ազդէ :

Լըռեսցէ երգն , հրճուեսցի հիւրն , հիւր-
ընկալուքն հրճուեսցին .

Լաւ է խորհուրդս . զի վասն հիւրոյս այս
ամենայն հանդերձին .

Ուղւոյ գնեմք , ընծայս ձօնեմք , մարդա-
սիրեմք մեք հիւրոյն .

Հիւր ողջախոհ իբրև եղբայր է մըտաւոր ո-
րերոյն :

Արդ մի ծածկեր դու պատ 'ի պատ զոր
հարցանեմ 'ի կարգին .

Չէ լաւ ծածկել . ասա՛ զանունդ զոր
անդ ըզքեզ կոչէին

Հայր քո , և մայր , քաղաքացիք , սահմա-
նակից քո որեար .

Զի անանուն չիք մարդ ծնեալ եթէ բարի
եթէ չար .

Այլ որք ծնանին առնուն անուն . բայց
դու ասամ և զոստանդ ,
Զազգ և զաշխարհ , զի նաւքս ուղիղ ա-
ռեալ ըղձքեղ տարցին անդ .
Զի փէակեանց , իբրև այլոց , չեն պէք
վարչի , ո՛չ քեղեաց .
Այլ նաւքն ինքնին են խորհրդոյն ու-
ղևորաց խորագգած .
Զամենեցուն գիտեն նոքա քաղաքս և յոյր
անդաստան ,
Արագաթռիչք ծով հատանեն պատեալք
'ի մէգ թանձրութեան .
Ոչ վրտանգին , ոչ կորնչին . բայց և հայրն
իմ Նաւսիթոն
Ասէր երբեմն՝ եթէ ընդ մեզ ցասմանէ
վասն Պոսիդոն .
Ցասնու , զի մեք բնաւից անքոյթ եմք
ուղեհորդք 'ի ծովու .
Նաև ասէր , թէ մխասնեացէ նա քաջակուռ
մեր նաւու ,
Ծովատանիջեալ կապոյտ յալիս վրտան-
գեսցէ 'ի դարձին
Ըզմեր ոստան լեռամբ ծածկեալ . զայս
ինչ ասէր ծերունին ։
Արդ զայն Աստուած թէ արասցէ թէ
չարասցէ ըստ կամի ,
Դու զթափառելդ և ըզգաւառսն ողջ
պատմեա ինձ ըստ կարգի .

Զի՞նչ չէին քաղաքք, զի՞նչ արք իցեն, ո՞ւր
չարք վայրագք և դժնիք.
Ո՞ւր հիւրասէրք, ո՞ւր երկիւղած միտս
ունիցին գեղեցիկ ։
Ասա՛ և զայն, հզի՛մ լաս լուեալ Տրոյեանց,
Յունաց ըզվըտանգ.
Ո՞չ զմահ քաջաց դիք կնքեցին յետնոցս
առնուլ 'ի նուագ.
Կամ յԻլիոն մեռան աներք և որք փեսայ
փարելի,
Արգոյքն առ մեզ ըզկնի դաստուն արեան-
առուաց և զարմի.
Կամ Թէ Թերևս տապանտ անկաւ անդ
ընկեր քո մըտերիմ,
Զի քան զեղբայր չէ ինչ խոնարհ այր որք
ընկեր քաջուշիմ՚՚ ։



## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Սկիզբն առնէ Ոդիսեւս պատմութեան անցից իւրոց 'ի մեկնելոյ անտի իւրմէ 'ի Տրոյիոյ։ Մարտ պատերազմի ընդ Կիկոնեանց։ Հասանել 'ի կղզին Լոտոսակերաց։ Նկարագրութիւն գեղեցիկ կղզեկի միոյ։ Նկարագրութիւն քարանձաւին Կիկղոպին Պողիփեմեայ։ Այս Կիկղոպ հափափեալ ուտէ զվեցս յընկերաց Ոդիսեայ։ Ոդիս յետ կուրացուցանելոյ զմիրագն, անձնապուր լինի հանդերձ այլովք, նորասքանչ հնարիմացութեամբ։



# ՈՂԻՄԱԿԱՆ

## ՅԱՂԹԵՐԳՈՒԹԻՒՆ Թ.

ԱՐՔԻԼՈԷ, տէր վեհափառ, ձայն եւ
յայնժամ Ողիմպեաս,
Զայդ երգահան ունել սատէն անշուշտ
մեզ է մեծապէս.
Զայն ունի դդէց, մեծ են կոչումնքս, հեր-
ձուլին ամէնքն 'ի յոգի,
Երբ 'ի յակումբս առեալք բազմոց նուագ
լըսեն հրաշալի:
Հացիւ խանձիւք լի է սեղանն. խառնա-
րանէն ըղձինի
Մատռուակեն, ընուն բաժակք. զինըղ-
խընձոյք փարելի:

## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Սկիզբն առնէ Ոդիւսէս պատմութեան անցից իւրոց 'ի մեկնելոյ անտի իւրմէ 'ի Տրոյիոյ։ Մարտ պատերազմի ընդ Կիկոնեանց։ Հասանել 'ի կղզին Լոտոսակերաց։ Նկարագրութիւն գեղեցիկ կղզեկի միոյ։ Նկարագրութիւն քարանձաւին Կիկղոպին Պողիփեմեայ։ Այս Կիկղոպ հափափեալ ուտէ զվեցս յընկերաց Ոդիւսեայ։ Ոդիս յետ կուրացուցանելոյ զԿիկրոպն, անձնապուր լինի հանդերձ այլովք, նորասքանչ հնարիմացութեամբ։



# ՈՐԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Թ.

ՐՁԿԻՆՈԷ, ուր մեհապետ, ձայն ետ
    յայնժամ Ողիմպոս,
Զայդ երգահան ունել աստէն անշուշտ
    մեզ է մեծապէս.
Զայն ունի գդից, մեծ են կոչումբս, հրր-
    ճուփն ամէնքն 'ի յոգի,
Երբ 'ի յաղթումբս առեալք բազմոց նուագ-
    լըսեն հրաշալի:
Հացիւ խանհիւք լի է սեղանս. խառնա-
    րանէն ըղձլինի
Մատռուակեն, ընուն բաժակք. զինրդ-
    խընձոյք փարելի:

Բայց դու զիմ կիրս խնդրես լսել, զի ես
եղէց ցաւագին.
Այլ զո՞րն յառաջ կամ զո՞ր երկրորդ կամ
զո՞ր պատմեմ ես վերջին.
Ինձ ցաւս ամբաւ ետուն անմահք. զա-
նուանս ասեմ ես յառաջ,
Զի անձնապուրս հիւր ձեզ եղէց, Թէ-
պէտ յոյժ եմ տարակաց:
Ողիւսէան եմ ես լայերտեան աշխարհա-
լո՞ւր խորագէտ,
Ղուքս հաս յերկին: Իթակ երկիրս արե-
գունի է յաւէտ.
Ներիտ անդ լեառն անտառախիտ, գե-
ղաշխտակ, բարձրածայր,
Եւ շուրջ բնակեալ կղզիք բազմամբք յոյժ
մերձ միմեանց առնուն պար,
Դուլիքիոս, 'ի նոյն Սամէ, Թանձրա-
մայրին Զակինթէ.
Ծովապարփակ կայ յարեւմուտս խոնարհ
և վեհն Իթակէ 39.
Ընդ արեւելս և ընդ հարաւ հային կղզիքն.
այլ Իթակ
Է տառապար. բայց պատանեաց քաջաց
վայր է ընդունակ:
Քան զհայրենիս զի՞նչ քաղցրագոյն. բայց
զիս կալաւ Կալիփսէ
Վեհ դիցանոյշն յանձաւս 'ի խոր. ընկոյն
արար և Կիրկէ.

Կիրկէ Էէյեանն այն խորագէտ պահէր
յիւրում զիս յարկին .
Զիս ըղձակից ունել իւրեանց իղձք լի-
նէին երկոքին ։
Բայց զոգւոյն իմ ոչ յանկուցին . չիք քան
ըզբունն անուշակ ,
Թէպէտ ընչեղ յօտար երկիր լեալ 'ի ծնո-
ղաց տարաբնակ ։
Այլ ա՛ղէ քեզ և ըզդարձն իմ զարտա-
սուելին պատմեցից ,
Զոր դարձելոյս 'ի Տրովիոյ Ասմպրոտայինն
կընքեաց ինձ ։
Հողմքն շնչեալ յԻղիոնէն ած զիս յԻս-
մար Կիկոնեանց .
Զոստան նոցա աւար հարի , որ հասս ածի
բընակչաց .
Կանայս գերեալ , և շատ կապուտ բաշխ-
ել ընաւից յաւարէն .
Ես եւ յայնժամ արագ արագ զմնայն խոյս
տալ յորդորեմ .
Ինձ խոլամիտքն անսաստեցին , շուայ-
տեալք զօրէն գինեբբուաց
Նախին ծովափին , ողիս զենուն և Թալթա-
հերձ 'ի յանդեաց .
Մինչ շուայտէին , յարեան Կիկոնք ձայն
Կիկոնեանց կարդացին ,
Որք են դրացիք քաջք , բազմաթիւք , ընա-
կարընունդք գաւառին .

Քաջք 'ի կառաց ներհունք կռուելոյ, ներհունք 'ի մարտ և հետի .

Եկին վաղ քաջ, որչափ սաղարթք, ծաղիկք բուսեալք գարնանի ։

Որ չար ծագեաց հիքացելոցս յԱրամազդեան արկածին .

Արձանացեալք մղեն Կրկինք մարտ ընդ նաւաց հանդիսին .

Տեղեան Նիզակք . ցորվայր այդ էր և օրն աճէր սրբազան ,

Յայն վայր սակաւքս ընդդէմ շատից կայաք անձանց 'ի պաշտպան .

Արեգն 'ի մայրն իւր խոնարհէր , Կրկնոքն ընդ Յոյնս վանեցին ,

Եւ դիտապաստք մէն մի նաւաց վեցք քաջորեար անկանին .

Անդ նշխարեալքս նաւեալք անդրէն զալիս հերձուլ ընդծովուն ,

Բայց անձնապուրքս ցաւիմք 'ի մահ նիզակակցաց մեր սիրուն .

Ոչ յաղթեմք մինչեւ զայր այր կոչեալ երիցս յանուանէ

Ընդ հիքացեալսն , որ անդ անկան 'ի Կրկնեանց նիզակէ ։

Յայնժամ զհիւսիս մրրկեալ 'ի նաւ շընչեաց Դիոս շանթաբեր ,

Ընդ ծով ցամաք ամպովք ծածկեաց , յերկնից պատեաց մութ գիշեր .

Նաւք տատանեալք. յերկիս 'ի չորս հեր-
ձուածս ծուէնս տարագաստք,

Ամփոփեցաք ահաբեկեալք, մարեմք ըզ-
նաւս 'ի ցամաք.

Տէս և գիշերս կացաք երկաւս մղձկեալք
յոգիս ըժկամակ.

Մինչև զերրորդն օր մեզ ծագեաց անկե-
զիստակն արեւակ:

Այլ յամբարձեալ և զառատագաստս ան-
դրէն պարզեալ ըզաղխատակ,

Նաւեմք անդուրր. ըզնաւս մարեն քերքեն
և հողմ յաջողակ.

Գնայի ողջամբ յերկիր ծննդեանս. այլ
զիս կոհակ յորձանաց.

Նոյն և հիւսիս շուրջ ըզՄալեաւ՝ առ և
դարձոյց 'ի Կիւթերեանց.

Աւուրս ինններակ ես 'ի յանդունդս հող-
մովք ծըփեալ ահագին.

Ի տասներորդն ելաք յերկիր Լոտոսա-
կեր խուժանին.

Ասեն նոքա ճարակ ծաղկեալ. մենաք
յերկիրն առաք ջուր.

Ճաշեաք առ նաւս առնունք բաժակ առ-
նունք 'ի նոյն կերակուր.

Յայնժամ ըռանես յղեմ երկուս, երրորդ
զՔարոզն ընդ նոսին,

Դիտել խնձ զազգն. յարեան նոքա զԼո-
տոսակերացն գլխովն.

Վրնաս մահու չարին մերոյն, ետուն լուսոյ ճաշակել,
Իսկ որք կերանն զանոյշ պտուղն, ոչ կամէին դարձ առնել.
Ուշ և յուսերընդյապէկին. ցանդ անդ մընալ փափաքին
Լուսատաւակեր ազգին ընկեր, զոր մատուցեալք ըղդարձին.
Լալեօք զնոսա ածեալ 'ի Նաւս, Նոյա եւ բուռն արարի,
Լաստափայտին ընդ նստարան կապեալ զնոսա պրկեցի.
Այլոց ձեռք տամ մտանել 'ի նաւ, զի մի նըման ոք նոցին
Լուսաս կերեալ զախտն ախտասցի. մըտին զնըստոցաղն առին.
Կարգ ըստ կարգէ հարեալ քաշտիս, ըղծով բախեն զալէտանջ.
Նաւեալք անդուստ գնացաք հանդէպ, յողիս հարեալք տրամադզեաց:
Ցերկիրն հասաք մէջ Կիկղոպայց. նոքա չունին ինչ օրէն.
Միայն 'ի գլխ վստահացեալք ո՛չ տունկ տընկեն, ոչ հերկեն.
Անսերմ, անհերկ, ցորեան գարի անդ բուսանի. և այգի
Մեծողկուզեան և գինեկէտ յանձրեն աձեալ Դիոսի.

Իսկ 'անմարդեաց չէք ոչ օրէնք և ոչ ա-
տեան խորհրդեն.
Լերանց բարձանց ընակեն 'ի ծայրս. 'ի
քարանձաւըս խորին.
Տեարք են կանանց և զաւակաց, և ոչ հո-
գան ըզմիմեանց.
Եւ կայ անդէն կղզի խոնարհ առ նաւա-
կայս Կիկղոպայց.
Ոչ մօտ ոչ առ է մայրախիտ վայր այ-
ծեմանց անբաւից.
Շրջէն անհօտք զի չէք մարդկան անդ ահ
ելից և մըտից.
Չէք անդ որսորդ յոգնեալ յանտառս
յածեալ ընդ գարըս լերանց,
Ոչ հօտարած, և ոչ մշակ արօրադիր
սերմանեաց.
Անհերկ, անսերմ, վայր անմարդի. անդ
այծք պապաշեակք արածին.
Եւ Կիկղոպայք 'ի կարմրայտից զուրկ են
նաւաց գլխովին.
Չկէ անդ քաշտիկ օդաստամաստոյց յայց
եղանել քաղաքաց,
Որպէս մարդիկ 'ի պէտս անձանց նաւա-
գնացիկք են միմեանց։
Չէ չար երկիրն. և բերէ նա պտուղ զա-
մէն ըստ ժամուն.
Զի են անդ մարգք առ ծովափանք,
յուռթիք, կակուղք, բարեբերք.

Որթք անսպառք անդ բուսանին. երկերն յարօր է հեշտին.

Եւ հունձք առատք ամառայնոյ. զի յոյժ պարարտ է գետին:

Է՛ անդ անքոյթ նաւահանգիստ, ուստ չէն խարիսխ արկանել.

Ո՛չ լար կապել և ոչ կառանս. կայ անդ նաւաղն անարգել.

Կայ, և Թողու, երբ և կամի և երբ հողմունք շնչեսցեն.

Բայց 'ի ծայրին ընդ անձաւուտ ջուր սուրբ հոսէ յաղբերէն:

Նոյն իջաք մեք ածեալք 'ի գլից 'ի յաղջամուղջ գիշերին,

Զի նաւքս 'ի մեզ և յամպ ծածկեալ ոչ շողշողէր մեզ լուսին.

Ո՛չ զկղզին տես ոք 'ի մէնջ, ոչ զծովափն ալեսատ,

Մինչև հասեալ անդ մեր նաւաց, ամփոփեցաք զառագաստ.

Ծովափին ելեալք, Թմրեալք 'ի քուն մնացաք վեհին մեք այգուն.

Մինչև ծագեաց մեզ առաւօտ ծայրակարմիրն արևուն.

Իջանեմք ընդ վայրն, շրջիմք, և մեզ յաւերժհարսունք դերաբուն

Ճաչ պատրաստեն, քանզի յարօտ զայծերն վարեն լեռնասուն.

Ճեպ 'ի նաւաց հասոտ զաղեղունս առաջ
և սուր ըղձեղարդ,
Ցերիս առաջս նետահարեալ, ես մեզ
աստուած որս առատ.
Մեկն մի նաւացս երկոտասան՝ ինն այծ
առին 'ի վիճակ.
Այլ ես տասն. և յերեկոյն առանուռքն
ըղխահս և բաժակ.
Քանզի անոյշ կարմիր գինին չէր ըսպառ-
ռեալ 'ի նաւաց.
Զի մեք շատ ինչ առմանեցաք յառնուլ
զոստանն Կիկոնեանց։
Մօտ Կիկղոպայցն հայիմք 'ի ծուխն. նու-
ցումն և օդեաց ձայն լսէր.
Արեգն եմուտ, պատեաց խաւարն, հան-
գեաք ծովուն առ եզեր։
Յայգ վարդամատն երևեցաւ, խրախեալ
զընկերս բարբառիմ.
« Մնացէք դուք աստ, ես նաւազնաց
յուղի իմովքս անկանիմ,
Դիտել զորեարն արդեօք ժայռերհք են
արք վայրագք չարխմնաց,
Եթէ արդեօք արք հիւրասէրք և յաս-
տուածոց երկիւղած։
Ելեալ 'ի նաւն հրամեմ արանց տալ ար-
ձակուրդ կառանաց.
Ելեալ և արքն առեալք նաւոց կառուին
քաշտեօք ընդ ալեաց.

Հասեալք 'ի վայրն 'ի ծայր վերջին տե-
սաք անձաւ մօտ 'ի ծով.
Բարձր էր անձաւն, շուրջ սաղարթենիք.
անդ այծք և ոչխարք կան յոլով.
Կայր շուրջ պատեալ և գաւիթ բարձր
'ի վիմատաշ 'ի քարանց,
Հաստահարուստ 'ի թեղօշից, ամբարձ-
ուղէշ 'ի կաղնեաց:
Բնակէր անդ մարդ սոսկավիթխար, որ
հօտ մեկին արածէր,
Հրէշ ահագին, անմերձ յայլոց կայր նա
'ի զատ և մոլէր.
Չէր նա իբրև մարդ հացակեր, այլ մայ-
րախիտ արտևան
Ինձ երևէր լերանց բարձանց կացեալ
յուրոյն գագաթան:
Թողի զընկերս 'ի պահ նաւուն, առի ինձ
քաջս երկոտասան,
Առի զգինւոյն տիկն այծենի՝ զոր ետ
Մառոն Եւանթեան.
Սա քահանայ էր Փեբոսին, որ պահ-
պանէր զԻսմարէ.
Զնա շուքով ընդ ընտանեաց մեք փրկե-
ցաք յարկածէ.
Բնակէր այս քուրմ 'ի ունկախիտ Ապո-
ղոնին յանտառի.
Ընծայս չքնաղս, տաղանդըս եօթն ետ ինձ
զոսկւոյն արքինի.

Եր ինձ բաժակ համակ արծաթ. և 'ի սափորս երկաթեան

Գինի սեաւ քաղցր անապականն, Ճաշակ անմահ ըզմայլման.

Գինեաց ոչ որ 'ի ծառայից, ոչ նաժշտաց որք 'ի տան,

Այլ գինեէր ինքն և կինն արդոյն և անա֊ կալուչ կին միայն.

Հրաշէկ գինւոյս յայս անուշակ քանիցս անգամ որ ըմպէր,

Ի մի բաժակ չափոյս քսան ջըրոյն 'ի նոյն արկանէր.

Բուրումն անմահ խառնարանէն գրգէր յարբումն անդանդաղ.

Ցիկ մեծ լցի 'ի յայն գինւոյն. եդի պա֊ րէնս 'ի մախաղ.

Ասեմ ընդ միտս, որպիսի՞ այր արդեօք եկեսցէ ընդ առաջ,

Բռնութ և վայրագ, ոչ իրաւանց ոչ օրի֊ նաց իրազգած:

Դ'եպ ուսեալ մեք մտաք յանձաւն, ըն֊ դնա 'ի ներքս ոչ գտաք.

Յարօտ խաշինն իւր դեգերէր. մտեալք յանկծիւս անդ կայաք.

Կողովք պանրովք էին ակաղձուն. գա֊ ռամբք, ուլովք լի պատուակք.

Զատ նախածինք, զատ միջնածինք, զատ նորածինք կան 'ի փակ.

Տաշտք, գոյլք, կըթոցք ամանք հովուին
    լոզան ողջոյն 'ի չիճուկ.
Մաղթեմ ընկերքս, ինչ մի կապուտ առ-
    ցուք պանրոյն և դարձցուք.
Նաև գառինս ու ուլս պառակաց վարեալ
    անկցուք մեք յուղի.
Անշուշտ յոյժ լաւ էր այս խորհուրդ՛.
    այլ ես նոցա չանսացի.
Կամիմ հիւրոյթ առնուլ յառնէն, այն
    որ մեզ էր ոխերիմ.
Ուտեմք պանրոյն, և հուր վառեալ զո-
    հեմք, մընամք վերագին.
Եկն յարօտէն. բեռն ահագին հեծան
    ցամաք յուս բառնայր
Ի պէտս ընթրեաց. դուրս յանձանէն ա-
    հեղ թնդմամբ արկ 'ի վայր.
Փախեաք ահիւ 'ի ներքսամայրն. վարեաց
    ըղհօտն յանձաւին.
Զարուսն ամէն խոյ և նոխազ թող ար-
    տաքոյ 'ի դաւթին.
Բարձեալ ապա եդ անձաւին վէմ յաղթ
    հարուստ դռնափակ.
Ո՛չ կարէին զայն քառանիւ քըսան 'ւեր-
    կու շարժել կառք.
Զայծսն պապչեակս և յոյր զոչխարս
    էառ նստաւ և կըթէր.
Առ հասարակ կըթեալ կարգաւ, ներ-
    քոյ զծընդանդան արկանէր.

Ըզկէս կաթինըն մնակարդեաց եդ 'ի հիւ-
սեալ սակառի ,
Ըզկէսն առեալ արկ 'ի յամանս 'ի պէտս
ընթրեաց ըմպելի :
Լըցեալ ըզգործն , հուր բորբոքեաց , ե-
տես ըզմեզ և եհարց :
« Ո՞ էք , ո՞վ հիւրք . ուստի՞ նաւէք , ար-
դեօք 'ի շա՞հ վաճառուաց .
Արդեօք շրջիք թափառականք իբրև ծո-
վու աւազակք ,
Որք թափառին անձնանախատք ածել
այլոց ըզվտանգ » .
Ասաց . և սիրտք մեր հալեցան , ահեսեալ
ըզհրէշըն ահարկու ,
Լուեալք ըզձայնըն խուժադուժ . բայց և
այնպէս ձայն ետու .
« Մե՛ք 'ի Տրոյեայ Յոյնք զարոտուղիք վա-
րեալք յալիս ամէհի ,
Ուղղեալք 'ի տուն հողմավարեալք գամք
այժմ ընդ այլ ընդ ուղի .
Այսպէս կնքեաց զայս Արամազդ . մեք
Ատրիդեայ եմք որեար ,
Որ արդ մեծ են փառքըն ընդ երկնաւ , զի
զմեծ ոստանն եդ յաւար .
Ագամեմնոն անուն նորա , որ շատ խու-
ժան արկ տապաստ .
Բայց մեք զարգելս առ ծունկըս քո ողո-
քաւորք եկաք աստ .

Արդեօք հիւրոյթ տա՞ս հիւրընկալդ,
	կամ այլ պարգև ’ի քոյոց.
Առ քեզ, ո՜վ քաջ, մեք գամք յոգունք, դու
	անձն ածցես աստուածոց,
Հիւր որերոյն ողջքաւոր Արամազդն է
	հովանի.
Այն վանատուէրն սիրէ ընդհիւրն և շուք
	եդեալ պահ ունի »։
« Մո՛լ ես դու, հիւրդ տարադիմեալ,
	ձայն մի կրկնեաց խըժաբար,
Որ ինձ հրամես երկիւղագին խորշել ’ի
	դից գերափառ.
Ոչ ըզԴիայ, և ո՛չ զայլ դից փոյթ ինչ ոչ
	է Կիկղոպայց.
Մեք քաջք հուժկուք. և Դիոսին չեմ ես
	’ի խէթն երկիւղած.
Եթէ կամիմ, ’ի քեզ ’ի քոյսդ խնայեմ
	կամ ոչ, գիտեա՛ քաջ.
Այլ ասա՛ դու, ո՞ւր եհաս նաւդ. առ-
	դեօք հեռի՞, թէ մօտ կաս »։
Ասաց, փորձեաց. այլ խեղամուտ ես խու-
	բանօք տամ բարբառ.
« Ըզնաւն իմ կուռ մեհ Պոսիդոն խոր-
	տակելով հար ընդ ժայռ
Ի ծագ կղզւոյդ ’ի դահաւանդն, հող-
	մունք տարին ’ի ծովէն.
Ես նշխարեալ ընդ որերոյս զամ անձնա-
	պուր յորհանէն »։

Լուռ կայ միերազն, և Թմրի առեալ յերի-
կուս խմոց ընկերաց,
Բանահարեաց և ընդ գետինն եհար կո-
րեանց հանդոյն շանց.
Ծորէր ուղեղն, Թանայր զերկիր. յօ-
շեալ զանդամս եդ յընԹրիս.
Լափէր զընդերս. չեԹող ինչ միս, չե-
Թող զոսկերս ուղղալից.
Մըռընչայլէր սովատանջեալ իբրև ա-
ռիւծ լեռնաստան.
Սոսկամք ընդ գործն. յերկին ձեռք մեր
և արտասուս աչք հեղուն:
Կամք յուսահատ. միերադ Կիկղոպն ելից
ըզփորն ահագին.
Հրէշ մարդակերն արբ կաԹն անոյշ, պա-
ռակեցաւ յանձաւին.
Ածի զմտաւ Թափ տալ սրովս 'ի լանջն
ընդ կողն ընդ ողջոյն,
Ընդ ցանդ լերդին. այլ յուշ ածեալ յե-
տոյս կաց' 'ի խորհրդոյն.
Դրան օրահաս մընայր և մեզ, զի էր
անհնար զգլխովին
Վէմ զանարին շարժել 'ի դրանց. մնայաք
այգուն ցաւագին:
Այգըն ծագեաց. նա հուր վառեալ կը-
Թէր զոչխարսն ըստ կարգի.
Մատեաց զզաւակինսն. ելից ըզգործն, ան-
դրէն Թափ եա սոսկալի.

Զերկուս և այլ գօշեալ յիմոցն ճաշ փա-
ղաղեաց զայն համակ.
Ըղձօքն 'ի դուրս վարէր բարձեալ զայն
ահագին դռնափակ.
Փակեաց դարձեալ զայն հեշտաբար որ-
պէս խուփ մի կապարճի,
Հորդան խաչին եւ դղրդմամբ ընդ դարս
ընդ սարս 'ի վայրի:
Խորախորհուրդ մնացի յայնժամ ըղձկէժ
առնուլ վերադին,
Ո՜վ թէ ինձ փառս տայր Աթենաս. և
խորհեցայ զայս վերջին:
Կայր Կիկղոպին լախտն 'ի պառակ բուռն
յաղթ և մուրճ ձիթենւոյն,
Կորեացնա անդ թող ցամաքել. մեք առ-
կացաք 'ի տեսոյն.
Էր յաղթ հեծան, քըսանաթի կուռ մեծ
նաւուն՝ իբրև կայմ
Որ ընդ անդունդս կուռեսցի, այնչափ
երկայն էր և լայն.
Հատեալ 'ի բնոյն վեց ոտնաչափ տամ ըն-
կերացս 'ի յղկել,
Եւ ես սրածայր գործեալ ըղնա ածի զբո-
ցով 'ի խանձել.
Եդի 'նդ աղբոյն անդ դէզդադէզ. ապա
իմոցս տամ վիճակ,
Վարսել ընդ իս զխանձողն ընդ աչն, երբ
քունն առցէ զայն՝ վիրապ.

Եւ ըստ ըղձիս չորից միջնակին և ես էի
հինգերորդ.

Դարձաւ'ք երեկս մերազն յանձամն ըզ
գեղմնաբարձ մարեաց հօտ.

Վարեաց ողջոյն, չեթող 'ի դուրս կամ
յաստուածուստ, կամ խիթաց.

Փակեաց զանձամն կըթէր ըզհօտն և ըզ
ծընունդս ներքոյ ած.

Անդրէն ապա զերկուս յխոյզն յընթրիս
գօշեաց յերեկոյն.

Եւ ես հրաւէր տամ Կիկլոպին 'ի ձեռս
բաժակ սեաւ գինւոյն.

" Որ ըզմարդկան կերար մարմինս, ընկալ
Կիկլոպ, արբ գինի.

Տե՛ս զո՞ր արբուռն ածաք առ քեզ պա-
հեալ 'ի մերն 'ի նաւի.

Ես զայդ նուէր քեզ բերեի գըթալ յը-
ղել զիս 'ի տուն,

Այլ ո՞ յապայս մօտի առ քեզ, մերանդ
մոլեալ դու անհուն.

Զար գործեցեր, վայրագասանդ ",
լուաւ էառ ըզբաժակ.

Ըզմայլեցաւ. խնդրէր յինէն կրկնել զար-
բումն անուշակ:

" Տո՛ւր ինձ դարձեալ. զանուանդ ասա՛.
հիւրոյթ տաց քեզ խնդագին.

Ի՛ Կիկլոպայց խաղողն արգոյ յանձրեն
աճեալ Դիոսին.

Բայց այդ բաժակդ անման Ճաշակ և նեկ-
տարին է ըմպումն ».

Ասաց, և ես հրաշէկ գինւոյն ետու կըր-
կին 'ի յարբումն.

Ետու երիցս, որբ նա երիցս անմըտա-
ցեալ'ի յօգին,

Մինչև ուրեմն հրաշէկ գինին եկըն զա-
կամբ վիրագին ։

Աղու բանիւք ասեմ յայնժամ. « Զա-
նուանս խնդրես, Կիկղոպէ.

Բայց դու'ստ խոստմանդ մի զըկեսցես
զիս հիւրականդ յընծայէ.

Ասեմ, Ուդիս է անուն իմ. Ուդիս ծը-
նողք զիս կարդան.

Ուդիս ընկերքս ». լուաւ վիրագն և ձայն
խեթիւ ետ յայնժամ.

« Այս քեզ հիւրոյթ. յետ բոլորից ու-
տեմ զՈւդիս 'ի վերջոյ ».

Ասաց, յորսայս պառակեցաւ թեքեալ
յաղթ զուլն 'ի յուսոյ.

Ընկլաւ'ի քուն խոր թանձրութեան, գի-
նի ժայթքէր կոկորդէն,

Զգայունէր գինեաւ, ժայթքէր 'ի դուրս
կոտորս մարմնոց մարդկեղէն ։

Յայնժամ զխանձողն 'ի թանձր յաճիւն,
մինչ'ի ջեռնուլ, վարեցի.

Եւ գործակցացս մի վեհերել շատ քաջա-
լեր ես տայի.

Իբրեւ գալար ձող ձիթենւոյն անդ հրա-
    ւառեալ կարմրացաւ,
Առ ի հրոյն, շուրջ կան ընկերքս, Ա-
    տուած ոյժ մեզ հեղ ամբաւ.
Մօտ առ վիրագն առեալ սրածայր զխանձ
    ձողն 'ի յաչս վարսեցին.
'Ի վեր կանգնեալ ես 'ի ծայրէն պտտոյտ
    տայի խանձողին.
Որպէս յորժամ ըզնաւափայտն Ճարտարք
    գչրաւ Թափ ծակեն,
Ի այլք երկուստեք շրջեն փոկով և զնա
    անդուլ պտտուտկեն,
Այսպէս զխանձողն ըզհրավառեալ պը-
    տուտկէաք 'ի յական,
Եւ ընդ հեծանըն տարաշէկ վըտակ հոսէր
    յորդ արեան.
Զարտեւանունսն և ողջ ըզյօնսն եկեղ
    խանձոյն գոլորշին,
Եւ տապախառն այրեցաւ բիբն, ար-
    մատքն 'ի հուր շաչէին.
Որպէս դարբին Ճարտարապետ մխեալ
    զտապար և կացին
Ի ջուր 'ի ցուրտ առեալ վարէ, անդուստ
    շաչիւնք հատանին,
Քանզի մխէ և կուռ գործեալ տայ ամ-
    րութիւն երկաթոյն,
Այսպէս շաչէր ակն ըզբրնով տարաշէկ-
    նեալ ձիթենւոյն:

Գոչեաց ահեղ, բոմբեաց անձաւն․ վարատեցաք 'ի յահէն․
Առ ըղխանձողն արիւնշաղախ կորզեաց մերագն յականէն․
Մոլէր ցաւօքն, արկ զայն 'ի բաց, տայր Կիկղոպայց մեծ բարբառ,
Որ բնակէին մօտ անդ յանձաւս 'ի դահաւանդս հողմահար։
Լուեալք զգոչիւնն սաստ անտի վազեալք կան շուրջ անձաւին,
Հարցանէին․ « Հի՞մ, Պողիփեմ, ցաւեալ գոչես ահագին․
Գոչես ընդ մութն, անքուն առնես․ ըզ հօտդ արդեօք գո՞ղ տանի․
Արդեօք երկեա՞ր թէ ոք ըզքեզ նենգաւ սպանցէ կամ բռնի »։
« Ո՛չ բռնութեամբ, խօլ Պողիփեմն 'ի յանձաւէն ձայն կրկնեաց,
Ուտիս ըսպան զիս, բարեկամք, ո՛չ բռնութեամբ․ նենգ գործեաց »։
» Եթէ ո՛չ ոք 41, կրկնեն նոքա, քեզ միայնոյդ չար արար,
Ցաւ քեզ ուրեմն հաս 'ի Դիայ, յորմէ խուսել չի՛ք հընար․
Հօր քում մաղթեա՛ Պոսիդոնին »․ ասեն, դառնան ետ ընդ ետ․
Ցոյժ խընդացայ․ խաբեաց անուն և խորհուրդն իմ խորագէտ։

Կիկղոպն հնծէր, խարխափ ձեռամբն
առ զահագին վէմն 'ի դրաց,
Նստաւ առ դուրս, ձեռս կարկառեալ
կալցի զելեալն ընդ օդեաց.
Խօլ զիս կարծէր. այլ ես յայնժամ յու-
զեմ 'ի միտս այլ խորհուրդ,
Զիա՞րդ զերծից ես հնարիմաց ինձ և իմոցս
արձակուրդ.
Հիւսարս նիւԹեմ և անդաձնեմ. օրհասն
առ դուրս հասեալ էր,
Եւ 'ի վերջէ, գոլ անձնապուր, ինձ քաջ
խորհուրդ այս Թուէր.
Ոչխարս արուս յաղԹ Թաւագէս առի
ես յայն պառաւկէն,
Կապոյտք, պարարտք. և զուեղեայն կա-
պեմ յողորս քաջհիւսկէն,
Ցորըս Կիկղոպն ընկողմանէր մահաշը-
շուկն այն վիրաց.
Ջերիսն 'ի մի յայնց ոչխարաց առեալ կա-
պեմ ես արագ.
Միջինն այր մի տանէր ներքոյ, զնայլն
երկուքն 'ի կողմանց,
Փրկեն ըզնա. այսպէս երեքն ըզմին տա-
նէին յընկերաց։
Խոյ մի էր անդ երևելի յաղԹամարմին 'ի
հօտին,
Կալայ զԹիկանց, տարածեցայ 'ի Թաւա-
գեղմն 'ի պորտին.

Ջերկայն ատոյն կուռ ունէր պատեալ
ձեռամբ քաջարուն.

Այսպէս անդէն յոգւոց հանեալ սպա-
սեալ մընամք մեք այգուն։

Երբ վարդամատն այգ ծագեցաւ, ա-
րուքն յարօտ տան հորդան,

Իսկ էգքն անկիրթք բառաչէին՝ ըստինքն
կաթին 'ի զեղման։

Կիկղոպն 'ի ցաւս, զնինէր ձեռամբ զթի-
կունս կանգուն ոչխարաց.

Ոչ գիտաց խօլն, որք կան կապեալք ստ-
որաբուսիցն առ 'ի լանջ։

Խոյն եւ յետոյ մեծ գեղմնաբարձն, և ես
շատ ինչ անդոհիմ.

Առ և ըղձա և շօշափէր. ձայն լռեալ զմե-
րադին.

« Զի՞ քեզ, ո՛ խոյ. զի՞ գաս վերջին. չէր
քո երբէք դանդաղեալ.

Դու առաջին յարօտ մարգաց վազս առ-
նուիր մեծաքայլ.

Դու 'ի վտակս արծաթափայլ գետոց
գնայիր առաջին.

Դու ընդ երեկս նախկին 'ի գոմն. և արդ
մնացեր դու վերջին.

Թերևս հոգւովդ սենչաս ակամն, զոր եղծ
Ուդիսն 'ի գինւոյն,

Ուդիսն այն չար դեռ ընդ իւրոցն կար-
ծեմ չէ զերծ 'ի մահուն.

Ո՜վ թէ էիր ինձ համախորհ և լինէիր ձայնահան,
Եւ ասէիր ո՛ւր նա խուսեաց յիմոյն բազ-կէն յաղթական.
Քաջ ասա և անդ ուղեղ նորա ցայտէր յատակս անձաւիս,
Դիւրէր ըղձաս զոր ինձ հասոյց ում-պէտն արանց վատն Ուղխս „:
Նաց, ըղխոյն եթող երթալ. մեք յան-ձաւէն վայրիկ մի
Գնացեալք յաւաղ, զերծայ խոյէն, ապա և զայլոյն լուծի:
Վարեմք ընդ մեզ որ շուրջ ըղձմեզ շատ յոյր ոչխարս յանձաւէն.
Հասաք 'ի նաւն, տեսին անձկավ ըղձեզ զերծեալ յօրհասէն.
Լայծն զընկերսն, ես ամնարկի յմխուք առնեմ մի հեծել.
Այլ ձեռս զոչխարս գեղագեղնակ 'ի նաւն առնուլ և ծովել.
Մըտին արագ, առին նաւոց, քաշեցաք ըղձոյն հարկանեն.
Գնացաք այնչափ որչափ լսէր ձայն 'ի յանձաւն 'ի նաւէն.
Ձայն կարդացի, կըծեմ. զԿիկլոպն.
“ Արդ, Կիկլոպէ, ո՛ւր դու կաս.
Ուստի, զազանդ, 'ի խոր անձաւդ 'ի վա-տի առն յընկերաց.

Աղօթքդ ընդքեզ առցեն, ո՛վ չար. ու-
տել ընդհիւրս քոյ յարկին
Ո՛չ քաշնեցար. վասն այն ընդքեզ Դիտս
և դիք պատժեցին „:
Լուսաւ վերադն, 'ի բոց ցասմանն անդ-
զարաւանն անարի
Կործեաց զերրին, արկ առ նաւուձ տար
'ի զեկէն վայրիկ մի.
Ճայռըն բոմբեաց, ծով դիզացաւ, յոր-
ձանքն աշեաց դարձ առին,
Ծովն աշէկոծ վարէր ըզնաւն և մօտ ձգէր
ցամաքին.
Զող մեծ առեալ կալայ ընդդէմ զեր-
ծուլ ըզմեզ ցամաքէն.
Զայն տամ' գլխովս թափ տալ քաշեաց
և խուսափել յարկածէն.
Վարեն ըզնթիւն. իսկ երբ ծովեալ երկից
այնչափ հեռացաք,
Զայն դա Կիկլոպ խնդրեմ կարդալ
կրկին կրծել զայն վերադ.
Ընկերքս յօղդք թոյլ ոչ տային կացեալք
սաստ և անտի.
„ Զի՞ քեզ, այր դու. հե՞մ գրգռես զայ-
րըդ վայրագ անհեի.
Ա՛յն ինչ 'ի ծով դա նետ ձգեաց վարեաց
ըզնաւս 'ի ցամաք.
Զերծաք հազիւ. թէ ո՛յլ ձայն տաս,
կործէ ո՛յլ ժայռ դըժնդակ,

Ջախէ ըղձնաւս եղմեր կառաւմին․ այնչափ
Նեռէ սոսկալի »․
Ջայս տուէին․ բայց և այնպէս ոչ յան-
կուցին զիմ ոգի ։
Զայն զայրագին կարդամ դարձեալ․
« Թէ ոք հարցցէ, Կիկլոպէ,
Զի՞ դու յաւէժ կաս 'ի գիշեր, ո՞ զքեզ
զրկեաց յականէ,
Ասա․ քանդիչըն քաղաքաց ինձ Ոդիւսեւս
խաւար ած
Այն Լայերտեանն, որ յԻթակէ ունի իւր
տունս արքունեաց »։
Լուաւ Կիկլոպն, յոգւոց եհան․ « Վա՜հ
հին պատգամքն ինձ հասին․
Էր աստ երբեմն այր լաւ և մեծ, էր դու-
շակաց առաջին․
Անուն նորա էր Տելեմոս, Եւրիմիդեայ
քաջ որդի,
Գուշակութեամբքն 'ի Կիկլոպայս հաս
յալեւոյթ հասակի․
Սա գուշակեաց ինձ զամենայնն, ինձ կու-
րանալ յՈդիւսեւսայ․
Յանդ մինայի թէ ոք առոյգ հասցէ աստ
այր յաղթ արտեայ․
Իսկ զիս ումնղէտ այր դուզնաքեայ յաղ-
թեալ գինեաւ կուրացոյց․
Այլ մղէ այսր Ե՛կ Ոդիւսեւս, քեզ լիա-
ձեռն տաց հիւրոյթս․

Քեզ Պօսիդօն հայրս ուղեկից, մաղթեմ որդիս, լիցի՛ արդ.
Նա թէ կամի, զիս բուժեսցէ. ոչ դիքն անմահք և ոչ մարդ »։
« Ո՜վ թէ, կրկնեմ, ես քո զոգիդ 'ի վիհն յանլոյս տայի ձօն,
Եւ անդ քո զակն ոչ բուժեսցէ և ոչ ինքնին Պօսիդօն »։
Լուաւ և ձեռս ամբարձ յաստեղս, Պօսիդօնին ձայն կարդայր.
« Լո՛ւր Պօսիդօն, ծիրանավարսդ, երկրասասան, լո՛ւր ինձ հայր.
Թէ ես քո եմ և դու հայր իմ. մի՛ Ոդիւսևս տուն տեսցէ
Քաղաքաւերն այն Լայերտեան, որ տուն ունի յԻթակէ.
Իսկ թէ կնքեալ է տեսանել տուն և զերկիր հայրենին,
Գէթ անագան չարաւ հասցէ և միշտ գտցէ առ տընին.
Նաև զընկերսն ողջ կորուսեալ 'ի նաւ օտար ծով հասցէ ».
Մաղթեաց վիրագն, անսաց ձայնին վեհ Պօսիդօնն 'ի ծովէ։
Բայց նա մոլեալ առ միւսանգամ վէմ առաւել ահագին,
Շրջանակեաց, թափ ետ ուժոյն յաղթաբազուկ կորովին.

Արկ յետ նաւուն կշիռ 'ի խելս գոգցես
'ի ծայրըն ղեկին,
Ծովն 'ի վիմէն ծփեալ ըղնաւն 'ի կոյս
վարէր ցամաքին.
Կալաք զկղզին, ուր դադարեալ նաւք
քաջակուռք մեր կային,
Եւ մեր ընկերքըն անդէն նստեալք մեզ
ըսպասեալք, ողբային:
Ելաք 'ի դուրս և զլաստափայտն ձգեմք
յաւազն 'ի դադար.
Բաշխեմք զոչխարս ըզԿիկղոպին բաշխ բո-
լորից հաւասար.
Ըզխոյն ընկերքս պատուասիրեալք ինձ
'ի բաշխէն յաւելին.
Եւ ես ըզնա յաղեմ մեծի ամպահաւաք
Դիոսին.
Նորա զըստեցն այրեմ զԹամբս, նա չը-
հոգայր ինչ համբուն.
Խորհէր զիա՞րդ նաւք կորիցեն, 'ի նոյն
ընկերքս իմ սիրուն:
Նստեալք խնջոյս ցըմուտս արփւոյն առ-
նումք մեք խաղ և բաժակ.
Արևն եմուտ, մութըն պատեաց, առ-
ծովափամբըն հանգեաք:
Մարդածըղիկ այգն երևէր, ձայն տամ
լուծման կառանաց.
Յարեան արագ, մըտին 'ի նաւն, առին
նստոցս ըզքաշտեաց:

Կարգաւ այնպէս Թիավարեալք ծով
հատանեմք տարադէմ·
Ըզմահն ողբամք մեր սիրելեաց , խըն-
դամք զերծեալքս յորհասէն ։



## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Հասանէ Ոդիս 'ի կղզին Էողեայ: Եղոս արքայ կղզւոյն համբարապետ հողմոց ընծայաբերէ Ոդիւսեայ տիկ մի կապեալ՝ յորում ամենայն հողմունք բաց 'ի զեփիւռէ: Ընկերք Ոդիւսեայ հետաքրքրեալք լուծանեն զկապ տկին, յառնէ մրրիկ, և միւսանգամ դառնան առ Եղոս, մերժեալք վարին 'ի նմանէ: Գնան 'ի քաղաքն Լեստրիգոնաց մարդակերաց. բազմագոյնք յընկերացն Ոդիւսի և 'ի նաւուցն 'ի կորուստ մատնին. բաց 'ի միոյն՝ որով հասանէ 'ի կղզին Կիրկեայ վհկին, որ 'ի խոզեան փոխակերպէ զկէսս յընկերացն Ոդիւսեայ, մին միայն ողջանդամ գայ և գուժէ: Ոդիս բժշկական ինչ խոտով ուսեալ 'ի Հերմեսէ, լուծանէ զվհկութիւնն: Ամ մի կացեալ առ Կիրկեայ, խորհրդով նորա պատրաստի իջանել 'ի սանդարամետս 'ի տուն Անդնդեհպետին:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ժ.

ՅԵՈՂԻԱՑ հասաք կղզին, ուր անմահից սիրելին
Բնակէր Եղոս Իպպոտասեան ծովապարփակ 'ի կղզին ։
Կուռ պղնձոյ պատուար, և ժայռն ողորկ պատէր զայն շրջոյն,
Եւ ծնան նորա վեցեակ դստերք և վեց ուստերք քաջաբուն.
Ետ ըզդստերս որդւոց իւրոց. նոքա արդոյ ծնողաց
Խրախճանակիցք ցանդ լինէին 'ի համադամ'ի խորտկաց.

Ըզտիւն ողջոյն հնչէր բուրեան ողջ արքունիքն 'ի գաւթի,
Ըզցայգ ննջէն պարկեշտ հարսամբք 'ի գորգազարդ 'ի մահճի։
Սա ամիս մի հիւր քաղաքին զիս յարկ չքնաղ մեծարեաց,
Հարցաքննէր ինձ զԻլիոնն, ըզնաւս Յունաց և ըզդարձ.
Ողջ պատմեցի. հաս օրն, և զիս ուղւոյ դառնել մաղթէի.
Յանձն առ սիրով. զիս արձակեաց, նաև հորդեաց ինձ ուղի.
Պատուասիրեալ ետ ինձ և տիկ զմորթոյ զեզին իննամեայ,
Եւ ըզհողմունս մրրկաշունչս ելից կապեաց 'ի նմա.
Ըզնա հողմոց համբարապետ եդ Արամազդ յաշխարհի,
Զի սանձ կամ թափ տացէ նոցա իշխանաբար ըստ կամի.
Տիկ զայն առեալ, 'ի լար արծաթ ամրկեաց եդ խորս 'ի նաւուն,
Ըզդուշացաւ զի մի արտաքս սպրդեսցի սիւգ մի խուն.
Զզեփիւռ միայն թող մեզ արտաքս շնչել նաւաց օժանդակ,
Սակայն 'ի զուր. զի մերոյին անմտութեամբ մեք կորեաք.

Նաւեալք էին օր մի և գիշեր տեսաք զերկիր հայրենին,
Ի տասներորդն ընդկրակաւառուս տեսաք գոլով մերձ նորին.
Անդ զիս քուն առ, զի խոնջ էի. ցանդ յիմ ձեռս էր նաւուն ղեակ,
Զետոսս ունեմք զ՚ ՚ի հայրենիս հասանիւցեմք մեք արագ:
Զբօսուցեն ընկերքս թէ զարծաթոյ եմ և զոսկւոյ ըմբեթեր
Զիր զԵղոսին տանիմ ՚ի տուն. և այր ասէր ընդ ընկեր.
« Բամբէ, ընտանից արգոյ է այրս յոր և աշխարհ հասանէ,
Նաև փարթամ նա շատ կապուտ ՚ի Տրոյիոյ ՚նդ իւր ածէ.
Իսկ ուղեկիցքս ունայնաձեռն ահա դառնամք մեք ՚ի տուն.
Նա և Եղոս պատուաւորեալ շնորհեաց սմա տիկ թաղուն.
Եկայք տեսցուք զինչ կայ ՚ի տիկն, որչափ ոսկի և արծաթ ».
Զայս խօսեցան. և հրապուրեալ յաղթեաց նոցա խորհուրդ վատ:
Լուծին զտիկն. հողմունքն անդէն թափ տան ՚ի դուրս և խուժեն.
Մրրիկ ահեղ առ ընդոստ ՚ի հայրենի ՚ի յերկրէն.

Ծըփման յանդունդս և կականեն. ես ըս_
 թափեալ 'ի քընոյն,
Խորհիմ, արդեօք հոսեալ նաւէն մա՜հ
 խնդրեցից 'ի ծովուն.
Կամ թէ արդեօք լուռ ժուժեցի՞ց և ապ_
 րեցա՞յց տակաւին.
Համբերեցի և քող առեալ կայի այնպէս
 'ի նաւին:
Լան զի անդրէն նաւք մըրկեալք յհողմա
 վարեցան.
Անդ առ ծովափն առեալք ըզջուր, առ
 նաւս 'ի ճաշ բազմեցան.
Կերին արբին. ես Քարոզիւն և ընկերաւ
 'ի յուղի
Զոքայ յԵղոս, գըլուխ 'ի ճաշ ընդ ընտա_
 նեացն յակըմբի:
Մըտայք 'ի տուն. նստիմք առ սեղան.
 հիացեալ նոքա հարցանեն.
« Դարձա՞ր, Որդեակ. զի՞նչ քեզ աղէտք
 հասին 'ի չար 'ի Քաջէն.
Մեք զամենայն քեզ հոգացաք յըղել 'ի
 տուն հայրենին,
Կամ թէ ուր քեզ հաճոյ իցէ ». լռեալ,
 կրկնեմ թախծագին.
« Մեղան ինձ արքս, մեղաւ և քունս.
 տուք, բարեկամք, զօրավիգ ».
Այլու բանիւք կարծեմ գըրգել, նոքա համ_
 բուն կան լըռիկ.

Ձայն կարդաց հայրն. « Ե՛լ 'ի կղզւոյս,
Ե՛լ այր չուառ, այր նըկուն.

Չէ ինձ մարթ զայրն առնուլ, յղել, ընդ
որ անմահ դիք ցասնուն:

Ե՛լ երթ 'ի բաց. զի Աստուծոյ աստ
ոխերիմ հասեալ ես ».

Ասաց, վարեաց. ել 'ի տանէն. յոգւոց
հանեալ դառնապէս:

Նաւեմք յառաջ թախծեալ ոգւով, սիրտ
նաւավարաց բեկեալ էր.

Զի մեք ինքնին անմտացաք, և մեզ այլ
դարձ չերևէր:

Վեց օր նաւեմք, տիւ և գիշեր. եօթնե-
րորդին ծագեաց այգ,

Ցերկայնադուռն Լեստրիգոնեան հասաք
Լամին 'ի քաղաք:

Ուր ընդ երեկս ածեալ ըզխաշն հովիւն
հովուին ձայն կարդայ,

Եւ հովուականին անդուստ լուեալ առնու
զանդեայսն 'ի դուրս գայ.

Վարձք են կրկին հսկող հովուի յարօտ
անդեայց և խաշին,

Եւ կարգ առեալ արօտք առանձնեան գիշե-
րայնոյն հետևին.

Ընդհանրական առհասարակ ժայռք բար-
ձրացեալք շուրջ պատեն,

Եւ երկուստեք սարաւանդեալ ափունքն
անձուկ մուտ գործեն.

Մուծեալք 'ի ներքս ըղնաւախումբ կա-
պէն ըղնաւ մերձ նաւու.
Չի՛ք անդ ալիք ո՛չ փոքր, ոչ մեծ. և կան
անծուփք յանդորրու.
Ես ըղնաւն իմ կալեալ արտաքս, ընդ վէմ
կապեմ ընդ վերջին.
Կացեալ անդէն, 'ի դիտարանն ելի վե-
րայ 'ի ժայռին.
Գործ չերևէր անդեայց, մարդկան. ե-
լեալ յերկրէ ծուխ տեսաք.
Յըղեմ լըրտեսս դիտել զինչ արք են հա-
ցակերքն անդ բընակք.
Յղեմ զերկուս, երրորդ զքարոզն. յա-
րեան կալան զուղին հարթ,
Ընդ որ սայլորդք զբարձանց լերանց ա-
ւեալք յոստանն տանէին փայտ:
'Ի առաջ ելին առ քաղաքաւ Անտիփա-
տեայ վեհ դստեր,
Որ յԱրտակեան յարծաթաբուխ 'ի յաղ-
բերէն ջուր հանէր.
Ջուր քաղաքին անտի ածեն. հարցին
զարքայն գաւառին,
Հարցին զարանց. նա մատընցոյց առնէր
ըզտուն ծընողին.
Ի բարձրայարկն 'ի տուն մըտին, գըտին
ըզկինն, սոսկացան.
Կին հարուստ յաղթահասակ իբրու լերին
արտևան.

Արդ . արդ հրապարակէն կարդայ
զայր իւր Անտիփատ .

Դիմեաց վերադն , կորզեաց ըզգին և յա
շատեալ ընթրեաց անդ .

Երկուքն ահիւ խուճապեցան 'ի նաւս 'ի
շտապ տագնապի .

Գոչեաց վերադն , խօլք Լեառնբիգոնք վա-
զեն աստի և անտի .

Անդրադք 'ի Թիւ , չեն մարդատեսակք , այլ
են հսկայք սոսկալիք .

Ցորոց ձեռաց , կացեալք 'ի ժայռս ,
վէմք արձակեն անարգք .

Խօշիւն հատաւ անհընարին նաւատորմին
արհաւրաց ,

Անդ մահ , արիւն , էր տեսանել , և ջախ-
ջախել ըզնաւաց .

Իբրև ձըկունս կարթահարեալս 'ի քըստ-
մնելի կերակուր ,

Այնպէս մտեալքն 'ի նաւակայան եղեն
մահուան անձնատուր .

Սուր յաղթելէս հանեալ յայնժամ հատի
զպարանս 'ի նաւէն .

Ձայն տամ խմոյս թափ տալ Թիւոց և ձո-
ղոպրիլ յարկածէն .

Արդ քաշեցաք խաղան 'ի խորս , նաւն
իմ զերծաւ 'ի վիմաց .

Իսկ այլքն ողջոյն քարակոշկոճք անկան
յիմոց ընկերաց ։

Անդամք զերծեալքս, նաւեմք յառաջ
ընդ մահ մերոց թախծագին.
Ցեյան կղզին ժամանեցաք, ուր և բնա-
կէր դիցուհին.
Էր սա Կիրկէն այն քաղցրաձայն, և գե-
ղահիւս վարսք գլխոյն,
Քոյր հարազատ ուշիմն Եոտեայ, ձեռք
լուսասփիւռ Արեւուն.
Յովկիանուն 'ի դստերէն ծընեալք մօրէն
'ի Պերսեայն.
Աստ 'ի յանքոյթ նաւահանգիստ եմուտ
նաւ մեր լռելեայն.
Մեզ ոմն 'ի դից էր առաջնորդ. անդ եր-
կուս տիւս և գիշեր.
Ելեալք 'ի դուրս դեգերեցաք խոնջք և ա-
գուով վշտոմբեր.
Ծագեաց երրորդ այգ գեղագէս, առի
ըզսուրն և զաշտեան.
Ելի 'ի դէտ գործ տեսանել կամ ձայն լը-
սել ըզմարդկան.
Կացեալ 'ի դէտըն ժայռաւոր, տեսի ես
ծուխ 'ի բացեայ
Ընդ թաւ կաղնիս և ընդ մայրին, ուր ա-
պարանքն են Կիրկեայ.
Խորհիմ 'ի միտս երթալ դիտել, այլ թուե-
ցաւ լաւագոյն
Դառնալ 'ի նաւն, և ճաշ տուեալ յըղել
անդ դէտս յորերոյն.

Մերձեալ առ Նաւս, և միայնոյս խնամա-
կալու ամն տատրուած

Ինձ բարձրեղջիւր յաղթ եղջերու 'ի նոյն
ուղին արձակեաց.

Սա 'ի տապոյ արփւոյն՝ պապաքեալ, մո-
րւոյն 'ի գետն իջանէր.

Հարի 'նդ. Թիկունս ընդ ողնայարն և Թափ
աշտէն անցանէր.

Անկաւ տապաստ, հանեալ մայրին դիակ-
նացաւ կենդանեին.

Ես Թափ առեալ քարշեմ զաշտէն՝ Թո-
ղեալ անդէն 'ի գետին.

Երթեալ կորզեմ Թուփ և կընիւն, լար
ոլորեմ վեց կանգուն.

Եւ ախնդ. ադրկեալ կապեմ զոտիցն ըղմիթ-
խարի զեղջերուն.

Բարձեալ ընդ ուս գնայի 'ի նաւ օժան-
դակեալ 'ի յաշտէն,

Ձի չէր հընար միով ուսով բառնալ տա-
նել յաղթ զէրէն.

Արկի 'ի վայր, ասեմ, « Ո՞արք, Թէպէտ
տանջեալք 'ի ցաւոց

Նախ քան զօրհաս մեք ոչ իջցուք առ բա-
րապան դըժոխոց.

Յոր վայր 'ի նաւն է հաց գինի, մի ծըն-
դեսցուք 'ի սովուն ».

Այրքն 'ի ծակուց ելին ծովափին, հիանան
ընդ յաղթ եղջերուն։

Յագեալք տեսլեամբն, լուսացեալք ըզ-
ձեռս, խրախճան կազմեն մեծահաց.
Ցըմուսս արփւոյն անոյշ գինեաւ ուտեմք
յառաւատ 'ի խորտկաց:
Րրին եմուտ խաւար պատեաց, համ-
գեալք ծովուն առ ափան.
Վարդածըղին ծագեցաւ այգ, ժողով
խմբեալ ձայն կարդամ.
“ Թէպէտ ցաւեալք, ո՜ բարեկամք, լուա-
րո՛ւք զարդիս ինձ ողջոյն.
Աստ ոչ գտանեմք ո՞ւր իցեն մուտք աշխարհ-
ասփիւռ արևուն.
Դարձեալ և ո՞ւր ելք արփենւոյն, այս եւ
'ի մէնջ զանխուլ է.
Կամք յերերի. խորհուրդ առցուք, եթէ
խորհուրդ ինչ կայցէ.
Բայց զանգիտեմ. զի դէտ կացեալ եմ 'ի
ժայռէն դիտեցի,
Ծով անսահման պատէ զկղզիս կացեալ
խոնարհ 'ի կայս.
Ծուխ 'ի միջոյն տեսի աչօք ընդ թաւ-
կաղնիս ընդ մայրին ”.
Լուան, բեկան. զՂեստրիգոնեն զար-
կածն անդէն յուշ ածին.
Յիշեն և զհոյն ըզԿիկղոպայ ըզ վերադին
մարդակեր,
Ի գերաբարբառ հառաչան սաստիկ. այլ զինչ
լալեք շահաբեր.

Յերկուս բաշխեմ ըզքաջորեարն և երկո-
ցուն տամ իշխան .
Մխոյն ես պետ, միւսոյն եկաց Եւրիպղքոս
գլխւցանմամն .
Տարուբերեմք 'ի սաղաւարան արագա-
պէս ըզվիճակ .
Եւ ել վիճակն Եւրիպղքեայ . յարեան եր-
թալ նահատակ .
Գնան և երկու ընկերըքն 'ի լաց թողին ըզ-
մեզ ցաւագին .
Զըքան գըլոխն ըզյարկ Կիրկեայ 'ի վայե-
լուչ 'ի հովտին .
Ցարկ վիմատաշ հարթեալ քարամբք յե-
րևանի գեղեցիկ .
Շուրջ պահ կային գայլք լեռնաստունք և
առիւծունք ամեհիք .
Հրահանգք և հեզք էին գազանքն 'ի դեղ
աղու 'ի Կիրկեան .
Ո՛չ յարձակէին . քծնեալք զարամբքն եր-
կայն ձետուք կանգնեցան .
Որպէս քըծնին շունք ըզտեարամբ , որ յա-
րուցեալ 'ի կոչնոց ,
Ցանգ 'ի ձեռին կալնու պատառ , պատառ
հրապոյր շանց ոգւոց .
Սոյնպէս զարամբք սոսկաձիրանք , գայլք ,
առիւծունք քծնէին .
Ի տես հրէշիցն արք զատուաջինն անդ սոս-
կացեալք վերջամին :

Սյացին առ ստամբս դիցուհւոյն վարսա-
 գեղոյն քաղցրաձայն.
Լռեն, Կիրկէ անոյշ երգէր փակեալ 'ի
 ներքս յօթեվան.
Ոստայն նիստայր նա լայնատարր յանմա-
 հական 'ի ձեռին,
Գիրգ, շնորհաշուք և ձիւնափայլ, գործք
 դիցուհեաց երամին.
Պողիտէս պետն արգոյն, սիրուն, ձայն
 ետ արանցն և ասէ.
« Ահա 'ի ներքս, ո՛ բարեկամք, ոք ոս-
 տայնեալ քաղցր երգէ.
Երգէ և յարկն արձագանգաւ կրկնէ
 ձայնին քաղցրասիւգ.
Կամ նա կին է, կամ դիցանոյշ. այլ մեք
 նըմա ձայն տացուք »:
Լուան, ձայն տան. յարեաւ փութով,
 ըզդուրս եբաց լուսափայլ,
Հրաւէր կարդայր. մըտին նոքա առհա-
 սարակ խօլացեալ.
Եւրիղոքոս խիթաց ըզդաւն, մընաց ար-
 տաքս անդ միայն.
Նա ըզմանեալսըն մեծարէր, և տայր նըս-
 տոց, բազմական.
Խառնէր գինի ըզՊրամնիոյ, և մեղր առ
 եգ դալարի,
Ալիւր, պանիր, և ընդ հացին խառնէր
 Կիրկէ դեղ դժնի.

Ախտամտեալ էր, զի մոռացային նոքա զեր-
կիր հայրենեաց.
Ետ հաց, արբոյց. եհար ջըրալով, 'ի խո-
զարոյնն առ փակեաց.
Կնճիթ խոզաց առին նոքա, խանչիւն,
ըստև. և մարմին.
Այլ միտք ամբողջ էր 'ի նոսա, որպէս
յառաջին ունէին.
Փակեալք այնպէս և արտասուէին. Կիր-
կէն նոցա արկ յառաջ
Կաղին, սղոցի, եղջիւր, 'ի կեր գետնախըշ-
տի բուս խոզաց:
Խթուճանապեցաւ Եւրիղոքոս, 'ի նաւն եհաս
գուժաբեր.
Ըզգաուն օրհաս պատմել զարանցն, թէ-
պէտ կամէր, ոչ կարէր.
Ցաւ գառնութեան հարեալ յոգին, լի
էին աչքն արտասուօք.
Վարանեցաք մեք յայն տեսիլն անդոհա-
կան խորհրդովք.
Ամփչեալք այնպէս հարցուածս առնեմք,
արդեօք դիպան ինչ արկած.
Նա հուսկ ուրեմն ոգի առեալ զոյժ ար-
կանէր զընկերաց.
« Ըստ հրամանիդ, մեծդ Ոդիւսէս, 'ի
կաղնատունն ընթացեալ,
Գտաք ըզյարկն անդր 'ի հովտին, տաշա-
յատակ սըբափայլ.

Յարկ գեղեցիկ յերևանի․ անդ ոք ժրա-
ցեալ յոստայնին
Ի բարձր աւաչ երգէր անոյշ․ էր գլցուցէ
և կամ կլին․
Ձայն տան նըմա․ յարեաւ փութով ըզ
դուրան եբաց լուսաբուն,
Հրաւէր կարդայր․ խակախորհուրդքն 'ի
ներս մըտին անդ ողջոյն․
Դուռ խիթացայ, ես ոչ մըտի․ ո՛չ այլ
զընկերս իմ տեսի․
Անհետացան համանգամայն, թէպէտ
յերկար դէտ կայի »։

Լուսայ, առի զաղեղն և սուր զարծաթա-
դամն իմ զուսով․
Ձայն տամ նըմա․ « Հա՛պա ուղղոյն ինձ
կարապետ լե՛ր փութով »․
Նա արտասուօք յողոք անկեալ կալաւ զի-
մոց ըղծնգաց,
Եւ պաղատէր․ « Մի՛ անդր, ո՛վ քաջ, մի՛
զիս ածեր յակամայս․
Բա՛ և ոչ դու դարձցիս այսրէն կամ դար-
ձուցես զոք անդուստ․
Մինչդեռ օր կայ մեզ ապրանաց, անկցուք
ոտքօք 'ի փախուստ »։
Ասաց․ անդէն ձայն կրկնեցի․ « Եւրի-
զըքէ, նե՛ստ դու աստ,
Կե՛ր, ա՛րբ, այր դու․ բայց ես գընամ․
հարկ բուռն առնէ մեծասասատ »․

Զայս ասացեալ եւ՝ 'ի նաւէն և ձեռպեցայ
'ի յուղին,
Ընդ ձմեռալ վայրսն 'ի մեծայարկն հասի
Կիրկեայ դեղատունն։
Եւ լինձ հանդէպ ոսկեզարդարութիւնքն Հեր-
մէս իբրև պատանի,
Որ անգղք մորուաց նորածաղիկ, տիպ
չնորհաշուք պատկերի.
Ձեռն եա 'ի ձեռն և ձայն կարդաց.
« Ո՞ւր հիքացեալդ, ո՞ւր գնաս,
Անդէտ վայրացս այս ապալեր 'ի գիւտ
երթաս ընկերաց.
Նոքա Կիրկեայ յանձուկ նըկուղս իբրև
խոզեան փակեցան.
Եւ ոչ դու ինքն անդրէն դարձցիս՝, մնացես
խոզայքն յերամ։
Բայց յարկածեդ փրկեմ ըզքեզ. առ
դու զայս դեղ հրաշագործ.
Մո՛ւտ առ Կիրկէ. այդ դեղ յոր չար
պահէ ըզգլուխ քո անփորձ.
Անեմ զնորա կերս մահահոսս. խառնա-
բաժակ քեզ տացէ,
Եւ հաց դեղեալ, այլ չազդեսցէ ինչ
քեզ վըհուկդ այդ Կիրկէ.
Այս դեղ հրաշից, զոր ես տաց ՝քեզ,
պարտէ ըզնա. բայց ասեմ,
Երբ ցուպ յերկայն հարցէ ըզքեզ, դու
հա՛ն ըզսուրդ յաղգերէն.

Թմփ տուր 'ի նա խըրու մխել, նա երկուցեալ կըքեսցի,
Ապայողըք անկեալ տացէ հրաւէր քեզ յիւրն 'ի մահճի.
Դու մի հրաժեշտ տուեալ զըղուեր ըղձէցուհւոյն մեծարանս,
Զի արձակուրդ տացէ քոյոցդ գըրգուեալ ըղձեղ 'ի յիւր վանս.
Բայց տուր երդնուլ զերդումըն մեծ առ 'ի դաւոյն գող անքոյթ,
Մի՛ զքեզ տեսեալ մերկ 'ի զինուց, մերկ վատեսցէ և յուժոյդ »:

Լսաց Հերմէս, եւ ինձ ըղձեղն զոր ինք կորզեաց 'ի հողոյն.
Ցոյց ինձ ըղըուծն, արմատն էր սեաւ, կաթին ծաղիկն էր հանգոյն.
Ըզնա Մոլի կարդան աստուածք. մարդկային կորզել դժուարի 42.
Այլ աստուածոց չէք ինչ անմարթ. եւ զայն Հերմէս և մեկնի:
Վերապալացաւ 'ի մեծն Ողիմպ նա 'ի կըղզւոյն մայրաքեր.
Ես առ Կիրկէն չոգայ 'ի տունն. սիրտ իմ ծըփայր և վազէր.
Կացի առ սեամս և ձայն կարդամ գեղանուշին դեղապանձ.
Լուաւ ըղձայնս յարեաւ փութով, ըղլուսափայլ դուռսն եբաց.

Հրաւէր կարդայ, մըտի թախծեալ. եւ ինձ չքնաղ բազմական,
Գահ հրաշակերտ արծաթադամ, եդ և ոսկից պատուանդան.
Զխառնարանաժակն ինձ հանդերձէր, յարբումն 'ի սկահ արկ յոսկի,
Արկ և ըզդեղն. մեքենայեալ չարիս նիւթէր 'ի սրտի.
Մատռուակեաց. առեալ արբի. այլ զիս դիւթել ոչ զօրեաց.
Ամբարձ ըզգաւազն 'ի հարկանել, 'ի նոյն սաստիւ զայս ասաց.
« Արի՛ դու արդ 'ի խոզարոյն, խշանեակ ընդ քոյոց ա՛ռ անդէն ».
Այն ինչ ասաց, ձըգեմ և ես ըզսուր սուսերն յազդերէն.
Թափ 'ի Կիրկէն յարձակեցայ խըրոխ հարուլ մոլեգնած,
Ճըչեաց սաստիկ և ընդ ոլորտս վազեալ կալաւ զիմ ծնգաց.
Ձայն ինձ կարդայ ողոքաւոր. « Ո՞ ես, ուստի՞ ես, այր դու.
Ո՞ւր քո քաղաքն, ո՞ւր և ծընողքդ. դու միայն ինձ անհարկու.
Հիացեա՛լ եմ. որ զիմ ըզդեղն արբեալ դու ոչ դիւթեցար.
Չեկաց ոք այր, որ արբ զիմ դեղն, և զնա նախանձ ոչ արար.

Ոչ հանդուրժեաց, որ զայս բաժակ քա-
մեաց ընդ փող կոկորդին .
Այլ քեզ ուսո՞ւ այս անձրկանդ ոյժ
տարրացաւ 'ի յոգին .
Մինթէ արդեօք դու ինքն իցես բազմա-
հընարն Ոդիւսէս ,
Զոր աստ գալոց ցանգ ինձ ասէր ոսկե-
բարսմունքըն Հերմէս .
Արդ ողջ եկեալ 'ի Տրոյէոյ, ա՛րկ 'ի պա-
տեանդ ըզսուսեր ,
Եւ մեք յանդորր 'ի սէր յողջոյն կացցուք
աստէն անվեհեր ":
Լուայ, կրկնեմ. “ Զիա՞րդ , Կիրկէ ,
խնդրես , զի ես հեզանամ,
Դու որ զընկերս իմ դարձուցեր կընճը-
թակերպ 'ի խոզեան ,
Եւ ինձ աստէն նենգ լարելով հրամէր
կարդաս յառագաստ ,
Մերկել ըզզէնս , զի և յուժոյն մերկեալ
արկցես զիս տապաստ .
Քա՛ւ , ոչ գընամ ես յառագաստ , թէ
ոչ երդնուս , դիցուհի ,
Զերդումն ըզմեծ թէ ինձ աղուանք այլ ոչ
նիւթես 'ի սրտի ":
Իբրև երդուաւ զերդումն անսուտ , մտի
'ի յարկն աննըման .
Նաժիշտք պարկեշտք քառեակ թուով
ըսպասարկուք են 'ի տան .

Հարսունք նոքա ծնեալք յաւէժս 'ի յաղ-
բերաց, 'ի մորեաց,
Եւ 'ի գետոց նուիրական, որ ծով գնան
յալէտանիք.
Մ'ին ժիրաժիր գորգըս չքնաղս անդ 'ի
գահոյս արկանէր,
Ըղծիրանիան առ 'ի վերուստ, ներքոյ
կրտասուս տարածէր.
Իսկ միւսն հանդէպ պերճ գահոյից սե-
ղան դընէր արծաթի,
Եւ 'ի վերայ առեալ կարգէր չքնաղ
ըղխանըն ոսկի.
Ցարեաւ երրորդն, 'ի խառնարանն զգի-
նին խառնէր անուշակ,
Էր խառնարանըն արծաթի. բաշխեաց
ոսկի եղ բաժակ.
Չորրորդնած ջուր, և հուր վառեաց
սանին մեծի 'ի ներքոյ,
Գնալով զընայր ջերմանայր ջուրն 'ի մէջ
հրաշէկ պղնձոյ.
Հրաւէր կարդաց 'ի լոգարանն, և զիս
լուանայր 'ի մեծ սանն,
Ի գլուխ և յուս հեղիկ հեղոյր մինչ խոնջ
անդամքս հատտեցան.
Լուաց և օծ անոյշ իւղով, արկ պերճ
բաճկոն և խլլայ.
Եմոյծ նստոյց յարծաթագամ չքնաղ 'ի
գահ գերակայ.

Ընդ 'ի ներքոյ և պատուանդան. և կինն յոսկի յամանոյն
Արկ ջուր ձեռաց յարծաթ 'ի կոնք. և ապաս եհար սեղանոյն.
Ած կին տնտեսն հաց և խորտիկ շատ հանդերձեալ, և ձայն տայր.
Ձայն հրաւիրի տայր ճաշակել, այլ հաց ինձ ոչ քաղցրանայր.
Ես 'ի բազմոց, միտք իմ այլուր խորհուրդ խորհէին ձախողակ.
Դիտեաց Կիրկէ. նստիմ անճաշ 'ի սուգ հարեալ դըժնդակ։
Մատեաւ, ասէր. « Զի՞ քեզ, Ոդիս, զի՞ իբրև համր 'ի սեղանս
Նստեալ մղձկիս, չուտես չըմպես. թերևս դաւ մի այլ խիթաս.
Ո՛չ քեզ երդումն երդուայ անսուտ. զի՞ տակաւին քեզ խիթալ »։
Ասեմ, « Կիրկէ, ընդ իմ թախիծ հե՞մ քեզ այդպէս զարմանալ.
Ո՞ր այր երբէք այր ուղղատես բաժակ ըմպէ, հաց ճաշէ
Մինչև զընկերսն յանդորր հանեալ և ողջ աչօքն իւր տեսցէ.
Արդ թէ անշուշտ ինձ փափաքես ուտել ըմպել 'ի տան քում,
Տո՛ւր արձակուրդ. ինձէն աչօքս տեսից զընկերսն իմ սիրուն »։

Լուսաւ Կիրկէ, եւ 'ի յարկէն, 'ի ձեռն
ունէր գաւազան.
Եբաց ըզդուրս խոզաբունոյն, 'ի դուրս
վարեաց հետ զորեանն.
Իննամեայց խոզաց նման էր կերպարանն
որերոյն.
Եղեն արտաքս, հանդէպ նորա կային
այնպէս անդ ողջոյն:
Շուրջ գայր Կիրկէ, և այլ դեղով օծէր
զայր այր առանձին.
Եւ անկք գիւթեալք նախկին դեղովն ողջ
'ի մարմնոյն թափէին.
Քան զառաջինն յաղթ քաջառոյգ զար-
ձաւ նոցա տիպ մարմնոյն.
Ծանեան զիս անդ, յառաջ եկեալ և
ձեռն 'ի ձեռն տան ողջոյն.
Ի ձայն լալեացըն քաղցրութեան մեծ
ապարանքն հնչեցին.
Խանդաղատեալ և դիցուհին ձայն ինձ
կարդաց առանձին.
« Բազմահնար քաջ Լայերտեանդ դու-
արդ 'ի նաւդ երթ արագ.
Առ ծովափամբ առուք որերոյն քարշել
ըզնաւն 'ի ցամաք.
Զինչս և ըզզոյս բարձէք յանձաւս և զա-
մենայն ըզկազմած.
Եւ դու փութով դարձիր այսրէն առեալ
ըզխումբ ընկերաց »:

Հաւանեցայ, չոքայ 'ի ծով, գըտի զըն-
    կերս առ նաւին,
Նստեալք 'ի սուգ ողորմելի յորդ արտա-
    սուս հեղուին.
Զոր օրինակ պատուականին որթք կայթս
    հարեալք և խայտան,
Երբ 'ի փարախն արօտական պատուակա-
    մայրըքն դառնան,
Շուրջ զան ըզմարբք, բակք և գաւիթք
    ըզխայտացեալսն ոչ սանձեն,
Նոքա զնոքօք կայտռուս հարեալ ըստէպ
    ըստէպ բառաչեն,
Սոյնպէս սոքա այն ինչ տեսին, լալեօք
    առ իս վազեցին,
Եւ թուէր այնպէս եթէ յերկիրն հա-
    սեալ իցեն հայրենիսն,
Մըտեալք ժայռուտըն Իթակայ բնակա-
    սընուանդն 'ի յոստան.
Այնպէս զինև փարեալ լալեօք ձայն կար-
    դային միաբան.
« Դարձիդ ողջամբ. խնդամք այնպէս,
    ո՞ մեր դիւցազն Ոդիսեւս,
Որպէս եթէ 'ի հայրենիս հասեալ իցեմք
    յԻթակէ.
Ա՛ղէ զարկածն ասա՛ զմերոցն ». Խնդրոյն
    ձայն զայս տամ արագ.
« Արկէք, զի՞ կայք. մեք ձեռ ընդ ձեռ
    տացուք ըզնաւն 'ի ցամաք.

Իսկ անդ Կիրկէ տուեալ զորեանն, ըրու-
աց և օձ յիւղ պարարտ.

Խըլլայս չըքնաղս և պատմուճան արկա-
նոցա արդ և զարդ։

Գըտաք ըզմերան 'ի խրախուԹեան. խըն-
դան տեսեալք այր զընկեր.

Զաղէտն յիշեալ արտասուէին և 'ի լա-
լեաց յարկն հեծէր։

Զայն դիցուհին մատեաւ կարդաց.
“ Շատ են լալեք, մի ողբայք.

Գոմ ախտակից, դիւցազն Ոդիս. և ես
ինքնին եմ գիտակ,

Դուք քանիօն յանդնդախորն 'ի ծով
կրեցէք 'ի վշտաց,

Նոյն 'ի ցամաք յարանց խժից քանի՛ ա-
ղէտք և արկած.

Այլ արդ արբէք 'ի ճաշ, յարբումն. ա-
ռուգասցին ձեր ոգիք,

Որպիսիք անդ յորժամ զԻԹական ըզհայ-
րենիս ձեր Թողէք.

Վատեալ էք դուք ցանդ ձեր զաղէտն 'ի
յուշ բերեալ դառնապէս,

Չի՛ք ցնծուԹիւն 'ի սիրտըս ձեր, զի շատ
եղէք վշտատես ”։

Լուաք ըզբանն, և հաւանեալք տարի մի
ողջ անդ նստաք.

Ի խահս խորտկաց զօր ամենայն անսպառ
բաժակ քամէաք։

Մամ բոլորէր յեղանակաց, ամիսք անցին
և աւուրք.
Ընկերքս յայնժամ զիս մեկուսի առեալ,
տարեն 'ի ծածուկ.
“ Ո՞չ քեզ 'ի յուշ գայ, հիքացեալդ,
աշխարհդ և տուն բարձրաշէն.
Ո՞չ և ողջամբ զայն տեսանել սահմանե-
ցաւ քեզ արդէն „.
Քա՛ջ էր խորհուրդն. անդ ողջ ընդոտին
ուտեմք, առնումք ըմբաժակ.
Արեգն եմուտ, մութն պատեաց. այր
այր առին ընխշտեակ.
Ես 'ի Կիրկեայն 'ի յարկ պայծառ մտեալ
յողոք անկանիմ.
“ Ըզքո խոստումն ինձ լից, Կիրկէ. ը-
սէր հեզիկ իմ ձայնիւն.
Ուղղեայ զիր զիս. 'ի տուն ոգիքս իմ և ի-
մոցս փափաքեն.
Դոքա զաւրտ իմ հաշէն լալեօք, երբ դու
բացեայ ես յինէն „:
“ Քա՛ջ Լայերտեանդ, ուշիմդ Ոդիս, մեհ
դիցուհին ձայն կրկնեաց.
Քա՛ջ է. ոչ ևս 'ի տան իմում դադարես-
ջիք յակամայս:
Բայց նախ 'ի տունն Դըժոխայնոյն պարտ
է ուղի հատանել,
Եւ զահարկուն Պերսեփոնեայ յարկ խա-
ւարին տեսանել.

Անդ հարցանել խորհուրդ յոգւոյն Թէ-
բայեցւոյն Տերեսեայ.
Գուշակ է սա, կոյր է մարմնով, այլ միտքն
'ի բուռն ամբողջ կայ.
Պերսեփոնէն սորա միայն 'ի մեռելոցն
զանէն
Շնորհեաց ըղձիւս. այլքըն Թափառք
իբրև ըստուերք խուսափեն »:

Ի լուր բանին անկայ բեկեալ. յարտասուր
հատայ եւ ողջոյն.
Ձարև կենայս այլ ոչ խնդրեմ, ըղձոյս
տեսեալ զարփենւոյն:
Իբրև լալեօքըս յագեցայ, ասեմ. « Կիր-
կէ, խոր յոգւոյ.
Իսկ ո՞ լիցի ինձ ուահահորդ 'ի տունն եր-
Թալ Դըժոխոց.
Ո՞ր մարդ ցայսօր անդ նաւազնաց ըղձողին
եհաս ալեբեր ».
« Մի՛ տագնապեր, դիւցազն Ոդիս, Կիր-
կէն ձայնեաց քաղցրալէր.
Առաջնորդի չէն պէտք նաւուդ. կանգ-
նեա՛ ըղկայմն և բացմեա՛ց.
Բա՛ց զառագաստ, տարցի ըզնաւն հիւ-
սիսն յիւրոց 'ի շնչմանց.
Հասեալ նաւու զՈվկիանոս, ուր խո-
նարհ կան ծովափունք.
Եւ ուր անտառ Պերսեփոնեայ, ուր
կաղամախք կան բարձունք,

Ուր չար 'ի չըր և ուռենիք անպտղա-
բերք վարսաւոր,
Դու անդ ըղձեալդ առակայացո յՈվկիա-
նոսն յորձանուտ.
Գնասցես 'ի տուն Դըժոխայնոյն տուն
խաւարին մեգամէս.
Ուր յԱքերոն գետոյն հոսեն Պիրիփլե-
գեթ, Կոկիտէս.
Է Կոկիտէս Ստիւգեայ վտակ. և անդ
գոցես քարաժայռ,
Կարկաջասահ երկլին գետոցն բաղխելոց
է այն վայր.
Դու անդ, դիւցազն, առա'ր անտի մօտ
փոս փորեամ կանգուն մի.
Եւ շուրջ նուէր հան մեռելոց, նախ մեղ-
րակաթն ըստ կարգի.
Հեղցես ապա անոյշ գինի, երրորդ-
արկցես և ըղջուր,
Եւ ցան և ցիր սփռեամ ամնդէն և զըսպի-
տակըն գալեւր.
Մաղթեամ ապա խաղաղակայս Թափուր
գանկկաց և ուխտ դիր.
Հասանել յԻթակ յաշտ մեռելոց կով մի
ամուլ քաջընտիր
Յադել 'ի տան. նաև խարոյկ ընծայ յիրաց
պատուական,
Բայց Տիրեսեայ խոյ համակ սեաւ յադել
զհօտինն ընտրական.

Իսկ կատարեալ քո ըղձաղըթանս արդոյ ազգին մեռելոց,
Յաղեամ ոչխար արու՝ւ էգ սեաւ զուլալն շըջեալ յՆերեբոս։
Բայց դու գետոյն լե՛ր 'ի հոսանսն ակըն-կառոյց անքըլթիլթ,
Եւ անդ հոգիք շատ մեռելոց դայցեն առ քեզ խիտ առ խիտ.
Զոչխարս յաղեալս, ձայն տուր քոյոց, մորթել այրել 'ի կրակի,
Յուխտ մեծազօր Դժոխայնոյն, Պերսե-փոնեայն ահարկուի.
Սուսեր մերկեամ, նիստ մի թոյլ տար սին փուտ գանկից կառափանց
Մօտել յարիւն, մինչև կալեալ ընդ Տի-րեսեայ փորձ և հարց։
Ոչ յամեսցէ, դայ քեզ Գուշակն 'ւ իշ-խանն ազգին, առնել ազդ
Յայտնել զուղին և զչափ Նորա, ըղ դարձն ընդ ծովն ալեսաստ»։
Այն ինչ ասաց, և ոսկեգահն երևեցաւ այգն արփեան.
Առեալ խըլայ և ըղբաձկոն, արկ նա զի-նև պատմուճան.
Ինքն ըղկրկնոցն առ զձիւնափայլ, զբա-րակամաննն, և զարդոյն,
Ած ըղգօտին ջքնաղ ոսկի, և գըլխաշուք արկ գըլխոյն.

Ցարեալ ընդ տօմն և ընթացեալ ձայն
 տամ՛ խմոյ որերոյն .
Աղու բանիւք ձայնեմ. « Հաստ էն վայելք
 անույշ ձեր քընոյն .
Արի՛ք, երթամք. այդէ Կիրկէն » . լուան, .
 յարեան անդ արագ .
Այլ վա՜հ, զի ողջ և ո՛չ անդուստ զընկերսն
 հանի անվըտանգ :
Էր Եղպէնոր այր խօթամիտ, ոչ քաջ
 մարտիկ, մանկագոյն .
Սա յընկերաց զատեալ 'ի տանն, էր ծան-
 րացեալ 'ի գինւոյն,
Ննջէր ուրոյն 'ի զովանալ. լուաւ տրոփ-
 մամբ ղօղանաձայն .
Զարթեաւ յանկարծ, յուշ ոչ եբեր
 զէջս ընդ սանդուղսն ընդ երկայն .
Թափ 'ի յարկէն հոսեալ 'ի վայր շըրու-
 շակ ուղան ջախջախէր .
Դիակնացաւ և դըժոխոց 'ի տունն հոգին
 իջանէր :
Խմբի որեանն . ասեմ. « Կարծէք 'ի տուն
 երթալ հայրենի .
Բայց մեզ Կիրկէն վեհ դիցանույշ սահ-
 մանագրեաց այլ ուղի,
Ի տուն ահեղ Պերսեփոնեայ, Դըժո-
 խայնոյն յարկն 'ի բուն .
Զի Տիրեսեայ Թեբայեցւոյ խորհուրդ
 հարցցուք մեք յոգւոյն » :

Ի լուր բանի՛ն իմ սրտառուչք նուագեալք.
   և լա՛ն, վարսս խըզեն.
Եղի՛ աղագս ո՛չ գրտանեն, զի՛նչ ՚ի լա-
   լեաց շահք իցեն.
Գընամք թաղծեալք ՚ի ծով ՚ի նաւն հե-
   ղումք ՚ի յորդ արտասուաց.
Եկեալ Կիրկէն խոյ մի ՚ի նաւն և էգ մի
   սեաւ եդ կապեաց.
Անտես ապա սրացաւ ըղ մեօք. զի ո՞ տես-
   ցէ ոք զաստուած,
Երբ նա զանձն իւր ծածկէ յաչաց, թէ
   աստ կամ անդ ուր գընայ։



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ոդիսևս ցանկործեալ 'ի պատմութիւն իւր, հասանէ առ Կիմմերականս, և իջանէ 'ի խորս դժոխոցն: Կատարեալ զպարտաւոր արարողութիւնս, յերևան գան նմա հոգիք մեռելոց: Իսկ ապա Տերեսիոս պատգամախօս խելամուտ առնէ զՈդիս վասն հանդերձելոցն: Երևի Ոդիսեայ հոգի մօրն յորմէ իմանայ զվիճակ տանն իւրոյ: Գան ապա երևին նախնի դիւցազնուհիք մեռեալք, և ապա դիւցազունքն, յորս Ագամեմնոն, և Աքիլլէս, և Այաս. ապա Մինովս, և Տիտիոս, և Տանտաղոս, և Սիսիփոս և Հերակլէս. մինչև յահի մեծի եղեալ Ոդիս, յարուցեալ դառնայ 'ի նաւ իւր:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԱ.

ՀԱՍԵԱԼՔ 'ի ծովն անդէն ըզնաւն ա-
ռեալ 'ի ջուր ձգեցաք.
Կանգնեմք ըզկայմ և զառագաստ պար-
զեմք նաւուն զըսպիտակ.
Առնումք զոչխարս. մըտաք լալեօք յոգի
հարեալ թախծութեան.
Այլ սատարեաց մեզ գանգրահեր վէհ
դիցուհին քաղցրաձայն.
Ընկեր բարի մեզ 'ի յետուստ սիւգ մի
փչեաց յաջողակ,
Լից զառագաստն. մեք ըզկազմածն 'ի
կողմն եդեալ նստէաք.

Հողմ և քեղին վարէր ըզնա ըզտախիւն ող-
ջոյն ծովագնաց.

Եմուտ արեւն. և զճանապարհս առ-հասա-
րակ մութ պատեաց.

Յանդնդախորն Ովկիանոսն նաւ մեր ե-
հաս 'ի սահման.

Անդ կիմմերեանք մածեալք 'ի մէգ, ու-
նին քաղաք և խուժան.

Զուրկ են յարփւոյն 'ի նըշուլից թէ յամ
բառնայն 'ի յերկինս,

Եւ թէ յորժամ 'ի մայր դառնայ յաս-
տեղազարդն 'ի յերկնից.

Կան 'ի մըթան. ըզհէգ զորեանն գիշե-
րամած օդք պատեն.

Անդ մեք ըզլաստ մեր ձըգեցաք, առեալ
զոչխարսն 'ի նաւէն.

Գոտեպնդեալք գնայաք ընդ ափն ովկի-
անոսն հոսանաց.

Ժամանեցաք մինչ 'ի տեղին զոր դիցուհին
մեզ ազդեաց.

Պերիմեդէս և Եւրիլոք զոչխարսն ունէին
յագելի.

Ես սուր մերկեալ փոս փորեցի աստի ան-
տի կանգուն մի.

Զօն մեռելոց տալ մեղրակաթն, անոյշ
գինի և ըզջուր,

Եւ ցան և ցիր անդ սփռեցի և ըզսպիտա-
կըն զալիւր.

Մաղթեմ ապա խաղաղակոյս Թափուր
դամբկից ուխտադիր

Յաշտ մեռելոց հատեալ յԻթակէ կով մի
ամուլ քաջընտիր

Յաղել 'ի տան. նաև խարոյկ լնուլ յիրաց
պատուականս.

Իսկ Տիրեսեայ խոյ համակ սեաւ յաղել
զհօտինն ընտրական.

Երբ առ մեռեալս ուխտիւս հայցմանց
դուլ արարի և գաղար,

Զենի զոչխարն փոսոյն վերայ և սեաւ
արիւն խոխոջայր.

Խումբ խումբ յայնժամ յԵրեբոսէն դայ-
լին հոգիք մեռելոց.

Խռնին հարսունք, և ամուրիք, և հին-
օրեայ դաւք ծերոց.

Կուսանք փափուկք, նոր սգաւորք, և
այլք շատք խոցք 'ի յաշտէս,

Անկեալքն 'ի մարտ, արիւնշաղախք ու-
նին ըզզարդս և ըզզէնս.

Փողով բազում բակ ըզփոսովք աստի
անտի շուրջ վազեն.

Գոչիւն խառնեալ, խօշիւն ահեղ, և դեղ-
նեցայ ես յահէն.

Զայն տամ իմոցն զոչխարս յազեալս
մորթել այրել 'ի կրակի,

Յուխտ մեծազօր Դըժոխայնոյն, Պերսե-
փոնեայն ահարկուի.

Հողմ և քեղին վարէր ըզնա ըզտիւն ող-
ջոյն ծովագնաց.
Եմուտ արևն. և զճանապարհս առ հասա-
րակ մութ պատեաց.
Յանդնդախորն Ովկիանոսն նաւ մեր ե-
հաս 'ի սահման.
Անդ կիմմերեանք մածեալք 'ի մէգ, ու-
նին քաղաք և խուժան.
Զուրկ են յարփւոյն 'ի նշուլից թէ յամ-
բառնալն 'ի յերկինս,
Եւ թէ յորժամ 'ի մայր դառնայ յաս-
տեղազարդն 'ի յերկնից.
Կան 'ի մըթան. ընդհէգ զորեանն գիշե-
րամած օդք պատեն.
Անդ մեք ըզլաստ մեր ձըգեցաք, առեալ
զոչխարսն 'ի նաւէն.
Գօտէպնդեալք գնայաք ընդ ափն ովկի-
անոսն հոսանաց.
Ժամանեցաք մինչ 'ի տեղին զոր դիցուհին
մեզ ազդեաց.
Պերիմեդէս և Եւրիղոք զոչխարսն ունին
յաղելը.
Ես սուր մերկեալ փոս փորեցի աստի ան-
տի կանգուն մի.
Զոհ մեռելոց տալ մեղուակաթն, անոյշ-
դինի և ըզջուր,
Եւ ցան և ցիր անդ ալիւեցի և զըսպիտա-
կըն զալիւր.

Մաղթեմ ապա խաղաղակոյտ Թափուր
զանկկից ուխտադիր
Ցաշտ մեռելոց հասեալ յԻթակ կով մի
ամուլ քաջընտիր
Յաղել 'ի տան. Նաև խարոյկ լնուլ յերաց
պատուական.
Իսկ Տիրեսեայ խոյ համակ սեաւ յաղել
զհօտինն ընտրական.
Երբ առ մեռեալս ուխտիցս հայցմանց
զուլ արարի և զաղաղր,
Զենի զոչխարսն փոսոյն վերայ և սեաւ
արիւն խոխոջայր.
Խումբ խումբ յայնժամ յԵրեբոսէն գայ-
ին հոգիք մեռելոց.
Խանձին հարսունք, և ամուրիք, և հին-
օրեայ զաւք ծերոց.
Կուսանք փափուկք, նոր սրգաւորք, և
արք շատք խոցք 'ի յաշտէս,
Անկեալքն 'ի մարտ, արիւնշաղախք ու-
նին ըզզարդս և ըզզէնս.
Ճողով բազում բնակ ըզփոսովք աստի
անտի շուրջ վազէն.
Գոչիւն խառնակ, խօչիւն ահեղ, և դեղ-
նեցայ ես յահէն.
Ձայն տամ իմոցն զոչխարս յազեալս
մորթել այրել 'ի կրակի,
Ցուխտ մեծազօր Դըժոխայնոյն, Պերսե-
փոնեայն ահարկուի.

Ես սուր մերկեալ նստիմ շրջամ այն ըն-քեռողըն գանկից
Մօտել յարիւն, մինչեւ խորհուրդ 'ի Տէ-րեսեայ ես հարցից:
Նախ եկն հոգին, Եղպենորայ. չեւ էր թա-ղեալ ընդ հողով,
Զոր մեք անլաց 'ի տան Կիրկեայ թողաք անթաղ հապճեպով.
Տեսեալ ըզնա յարտօսր հառայ, խան-դաղատեալ բարբառիմ.
« Զիա՞րդ եկիր, ով Եղպենոր, յայս յաղ-ջամուղջ խաւարին,
Զի՞արդ հետի կանուխ եկիր քան զիս, որ եմ նաւադնաց ».
Կրկնեաց լալով. « Ուշիմդ Ոդիս, անսամ, ով քաջ դիւցազանց.
Զիս չար օրհաս պարտեաց Քաջին՝ նաեւ գինին անպայման,
Անկեալ 'ի տան յուշ ոչ բերի զէջս ընդ սանդուղսն ընդ երկայն.
Թաւի 'ի յարկէն հօսեալ 'ի վայր շրջա-շակ ուլանս ջախջախէր,
Մարմինս տապաստ, հոգիս 'ի տուն Դը-ժոխայնոյն իջանէր.
Եւ արդ 'ի սէր տարակայից, վեհ ա-մուսնոյդ պաղատիմ
Եւ հօր ծերոյն, որ զքեզ մանկիկ դը-գուեալ սնոյց 'ի յարկին,

Նաւ 'ի ներ Տելեմաքեայ զոր անդ Թողեր միածին ,
Մի՛ զիս , արքայ , զամայացեալս անյուշ Թողցես 'ի դարձին .
Քանզի գիտեմ, դու արդ Թողեալ զայս խաւարին օԹեվան ,
Աստի ընդնաւդ խարըսխեսցես դարձեալ կղզին 'ի յԷյան .
Մի՛ զիս անլաց և մի՛ անԹաղ, մեկնեալ անտի , մոռասցիս ,
Եւ մի՛ ինչ խէԹ վասն այնորիկ քեզ յուզեսցես դու 'ի դիս .
Այլ զիս այրեալ համադերձ զինուքս , տուր առ ծովափին ինձ դամբան ,
Հողադամբան հիքացելոյս լու եղիցի և յապայն .
Զայս կատարեալ նաև ընդԹին վերոյ շիրմին զիմ վարսեաց ,
Որով 'ի կեանս Թիավարեալ գնայի ընդ իմ ընկերաց ” :
Լուայ , կրկնեմ. « Այո՛ զխնդիրդ հիքացելոյդ ողջ լըցից ” .
Այսպէս անդէն մեք նստէաք , բանըս զրուցեալք Թաղծալից .
Ես յապաժոյժ արեան վերայ կալեալ ընդ սուրն իմ սուսեր ,
Եւ ընկերիս ուրուն ընդ իս 'ի հանդիպոյ շատ խօսէր :

Եկն անդ հոգին և Անտիկլեայ մօրն իմ
սիրուն մեռելոյ
Աւտողիկի դուստրն քաջին սա նազելի և
արդոյ .
Երբ յԻղիոն ես չուեցի թողի ըզնա կեն-
դանի ,
Եւ արդ տեսեալ լացի ըզնա աղեկիզեալ
'ի յոգի .
Այլ ոչ և մօրն իմ թոյլ տայի , թէպէտ
յոյժ էր ցաւալից ,
Մօտել յարիւն , մինչև խորհուրդ 'ի Տի-
րեսեայ ես հարցից ։
Հա՛ եկն հոգին և Տիրեսեայ կալեալ ոս-
կի գաւազան .
Ծանեաւ ձայն ետ , " Հի՞մ դու , ո՛վ հեգ ,
լըքեր ըզլոյսըդ արփեան .
Զի՞ աստ եկիր յայց մեռելոց , վայր ան-
սանել տրտմազգեաց .
Արճ 'ի բաց լեր 'ի փոսոյդ , տար և ըզ-
սուրդ զայդ 'ի բաց .
Արբից արիւն , և պատմեցից Ճշմարտա-
խօս քեզ պատգամ " .
Ես վերջոտնեալ զարծաթագամ սուրն
իմ եդու 'ի պատեան ։
Արբ յարենէն նա ապաժոյժ , և խօսե-
ցաւ ինձ այսպէս .
« Եւ արդ դու քեզ դարձ անդորրիկ խըն-
դրես ո՛վ քաջդ Ոդիսեւս .

Այլ քեզ զուգիգ մի ոմն աստուած յար֊
գարեսցէ դժուարին.
Քեզ խոչ ընդ ոտն է Պոսիդոն, ախակա֊
լէ զայրագին.
Ցասեաւ զի դու կուրացուցեր զորդին
Նորա սիրական.
Բայց և այնպէս չարչարանօք հասջիք 'ի
բունն ձեր ժաման.
Միայն եթէ սանձ քեզ դիցես և ընկե֊
րացդ դասին,
Երբ քաղձակուռ հասցես Նաւաւ 'ի Թրի֊
նակեան 'ի կղզին 43.
Ջերծեալք ծովէն գտջիք յարօտ զան֊
գեայս զօդիս բարեբուն,
Հօտք են Արփւոյն որ բոլորից տեսող, լը֊
սող է ամենքուն.
Թէ անդ Նոցա ոչ դրժեսցես ուղղոյդ ե֊
ղեալ մըտադիր,
Թէպէտ և վիշտ կրեալ բազում հասջիք 'ի
բուն ձեր երկիր.
Իսկ թէ դրժես, նաւուդ կորուստ, քեզ
և քոյոցդ ես կարգամ.
Եւ դու թէպէտ զերծցիս ողջամբ, չա֊
րեաւ դարձցիս անագան.
Ողջ կորուսեալ ըզքո ընկերսդ օտար նա֊
ւու ծով հասցես,
Չարիս 'ի տան, զայրս գոռոզս և հաց֊
կատակըս գտցես.

Նոքա ցեցք տանդ և ամուսնոյդ են տար-
փածուք օժտաքեր,
Թէպէտ նոցուն ըղձեռութեանցն ըղ-
ձըէժն տուցես անձկեհեր :
Իսկ երբ տապատ արկցես զսեղխտ թէ
խաբանօք թէ յայտնի,
Ա՛ռ քեզ թի մի արուեստակերտ այնպէս
անկի՛ր դու յուղի.
Մինչև հասցես դու առ մարդիկ որ ոչ
ըղձով ճանաչեն,
Եւ ո՛չ ազիւ համեմելով ինչ կերակուր
ճաշակեն.
Ո՛չ ճանաչեն զինչ նաւքն իցեն կարմրա-
ներկեալքն 'ի խելաց,
Զինչ և քաշտեք արուեստակերտք, որք
թեկք թռուցիկք են նաւաց.
Տաց և նշան քեզ քաջայայտ զի դու
ճշգրիտ գիտասցես,
Երբ ուղևոր ոք ընդառաջ ելանելով
հարցցէ քեզ.
Ա՛յր դու, զինչ է այդ հեծանոցդ զոր
յաղթ 'ի յուսոյդ տանիս.
Վարուեա յայնժամ ըղթին յերկիր, Պո-
սիդոնին տուր ձօնիս.
Խոյ մի, ցուլ մի, վարազ արու, տացես
նըմա 'ի յաշտից,
Եւ հարիւրեզն յաղէմ 'ի տանդ երկնա-
բնակաց անմահից,

Կարգ ըստ կարգէ բնաւեցյաղեամ . և դու
    զերծեալդ 'ի ծովէն
Խաղաղ մահուամբ խոր ծերութեամբ
    մեռցիս 'ի տանդ յօրհասէն .
Նաև ըզքև քո ժողովուրդք երջանկասցին
    փարելի ,
Այս քեզ ահա անսուտ պատգամ ». լու-
    այ և ես կրկնեցի :
« Ինչուշտ ստացուածք , ո՛ Տիրեսէ , զայս
    կնքեցին . հնազանդ եմ .
Այլ ասա՛ ինձ , որ զմեռելոյ մօրս ըզհո-
    գին աստ գիտեմ .
Զի մեռ յարիւն դա լուռ նստի , երես
    որդւոյն իւր չառնէ ,
Ոչ և խօսի . ասա՛ , արքայ , զիա՞րդ նա զիս
    ծանիցէ » :
Կրկնեաց նա ինձ . « Լո՛ւր բանս հեշտին ,
    լե՛ր խելամուտ նոյն հետայն .
Զո՛ ոք մեռեալ մօտես յարիւն , նա քեզ
    ճշգրիտ խօսի բանս .
Իսկ ում խափանես , նա լուռ մեկնի 'ի քէն
    'ի բաց ընկրկի » .
Զայս ինձ հոգին Տիրեսեայ պատգամա-
    խօսն արքայի .
Ուղեաւ ապա 'ի տուն խաւար անդնդեհ-
    պետ Իշխանին ,
Իսկ ես 'ի վայրն անշարժ մնացի , մինչև
    մատեաւ անդ մայրն իմ .

Արբ յապաժոյժ սեաւ յարենէն, և իսկ
և իսկ ծանեաւ զիս.
Ձայն ետ լալեօք. «Դու ով որդեակ զի-
արդ եկիր աստ առ իս.
Աստ 'ի խաւար աղջամղջեան, դու աս-
կաւէն կենդանիդ,
Որ կենդանեաց դժնդակ է գալ 'ի տուն
յայս խորափիտ.
Գետք ահագինք կան անջրպետք, կան և
հոսանք սոսկալի.
Եւ առաջին Ովկիանոս, զոր հատանել չէք
հետի.
Անանց են խորքդ հեռաւակին, թէ քա-
ջակուռ չունի նաւ.
Գա՞ս դու թերևս 'ի Տրոյոյ հասեալ թա-
փառ ծով անբաւ.
Նաւագնացիկ լեալ ընկերօք ձիգ ժամա-
նակ 'ի ծովին,
Ո՞չ ևս հասեր դու յԻթակէ, ո՞չ ևս տե-
սեր զամուսին»:
«Օ՜հ, ով մայր իմ, ձայն կրկնեցի,
յայս տուն խաւար հարկն եբեր,
Զի ես խորհուրդ 'ի Տիրեսեայ յոգւոյն
հարցից անվեհեր.
Ո՛չ ևս հասի յԱրգոս, 'ւ 'ի տունս,
ցանգ թափառիմ վշտապցելոց,
Երբ յԵղենոն ընդ Ատրիդեայ չոգայ կը-
ռուել ընդ Տրովեանց.

Նայլ ասէ ինձ սաս, մայր իմ, պատմեա
այժմէն ինձ ողջոյն,
Զխմբրդ ըզքեզ առ յորհասիդ երկայնա-
ձիգ քուն մահուն.
Արդեօք յերկար ժամանակաւ դու ծիւ-
րեցար 'ի յախտին,
Թէ Արտեմիս աղեղնասէրն յանկարծ
հար քեզ դիրդ փըքին,
Ասա զհօրէս և զիմ որդւոյս, 'ի ձեռս
նոցա՞ են ինչք իմ,
Եթէ այլ ոք գրաւականեաց և չունին ակն
իմ դարձին.
Ասա, զկնոջ միտք են ամուսնոյս, ընդ իմ
մանկանս նա մնա՞յ,
Պահէ՞ ըզտունս, կամ թէ այր յոյն յա-
ւագանւոյն ած ըզնա ”:
” Քոյ ամուսինդ, ինձ պատասխան մայրն
իմ արդոյ ետ անդէն,
Միշտ կայ 'ի տանդ թախծեալ ոգւով, և
չէ մեկնեալ 'ի յարկէն.
Ինքն 'ի յարտօսր, և ցանդ նորա են տիւք,
գիշերք ցաւալին.
Չև ևս 'ի ձեռս է օտարաց քոյդ գեղե-
ցիկ կարասին.
Տելեմաքոսն 'ի յանդորրու պահէ զկա-
լուածս հայրենեան,
Եւ 'ի կոչունըս աւագաց ունի և նա բաղ-
մական.

Հրաւէր շըքով յամենեցուն պատուա-
սիրեալ գայ առ նա ,
Բայց հայրըն քո բնակէ յանդի և 'ի քա-
ղաք ոչ երթայ .
Անդ ոչ մահիճ, ոչ անկողին , ոչ խըլայք
և գորգք փարելի ,
Այլ ձմերանի ննջէ հայր քո 'ի ծառայ-
իցն 'ի յարկի .
Առ կրակարանին անկեալ յաճիւնս, զան-
ձամբ ուռի գրգըլեալ
Մինչև յամառն, և մինչ դալար գայ աշ-
նայնոյն եղանակ .
Յայնժամ՝ նըմա ողկուզաբեր այգւոյն ընդ-
վայր դալարին ,
Ի տերևոց թօթափելոց խշտիս կահեն
յանկողին .
Անդ նա անկեալ յոգւոց հանեալ ըզքո
զօրհասն արտասուէ ,
Ցոգի հարեալ է դառնապէս և ծերու-
թեամբ հաշեալ է .
Նոյնպէս և զիս վատեաց օրհաս , և ոչ 'ի
տանս Արտեմիս
Այն անվըրէպն աղեղնաւոր լաւիկ փքնաւ
եհար զիս .
Եւ ոչ դարձեալ երկար տանջեալ յախտ
ծնդեցայ դժուարին ,
Այլ ծիւրական որ յանդամանց առնու
քաղէ ըզհոգին .

Այլ քո անձուկն և տարբեր արգոյք, ո՛վ
իմ ազնիւդ Ոդիւսէ,
Եւ հոգս ըզքէն, զիս զրկեցին քաղցր
կենացս յարևէ »։
՚Նա զայս ասէր, և իմ անդադար խոր-
հուրդք սրտիս տապէին,
Ո՜վ թէ լինէր ինձ գիրկ ընդ խառն ու-
նել ըզմօրս ըզհոգին.
Երիցս ՚ի նա դիմեալ անձկով սիրտ իմ
փարել փափաքէր,
Երիցս յիմոց ել ՚ի ձեռաց իբրև երազ և
ըստուեր.
Յաւ սաստկութեան հարաւ ՚ի սիրտս,
յոգւոց հանեալ բարբառիմ.
« Մա՛յր իմ, ընդէր խուսես յինէն և ոչ
լըսուս զանձուկն իմ.
Թո՛յլ տուր գըրկեալք և ՚ի գըրկոխս յա-
գուրդ տացուք մեր սրտոյն.
Արդեօք ըստուե՞ր ինձ յողբ յըղեաց Պեր-
սեփոնէն այն արդոյն »։
Մայրն իմ արդոյ կրկնեաց, « Աւա՜ղ,
հեգ դու բնաւից իմ որդեակ,
Վեհ Պերսեփոնէն ոչ ննենգեաց քեզ. այս
մեռելոց է վիճակ.
Մարմինք, ոսկերք, և նեարդք չիք աստ.
Թափ մեծ հըրոյն զայն ծախէ.
Երբ զառաջինն շունչըն զոսկերացն զըր-
պիտակս ըզքանէ,

Հոգւին սրանայ խորոց երազ. այլ դու առ-
տի ե՛լ 'ի լոյս.
Եւ փխելամուտ զայս ամենայն գնացեալ
կընոջդ ած 'ի յուշ»։
Մ՝ինչդեռ խօսիմք, հան Պերսեփոնն 'ի
վեր ըզդաս բամբըշաց.
Էին նոքա կանայք արդոյք, էին դըս-
տերք աւագաց.
Առ սեաւ արեամբ գան և խռնին. խոր-
հիմ զիա՞րդ ըզմէն մի
Հարցից նոցա. և խորհըրդոյս ելս հնա-
րից զայս գըտի.
Մերկեալ ըզսուսերս, Թոյլ ոչ ետու ա-
րեան ըմպել խմբովին.
Ապա նոքա կարգաւ մօտեալք ինձ զազգն
իւրեանց պատմէին.
Հարցումն առնեմ ես բոլորից. և նախ
տեսի ըզՏիւրոէ.
« Դուստր եմ, ասէր, ես հօրամոյն վեհ
Սալմոնէան հայր իմ է.
Կին զինքն ասէր Եզեան Կրեթեայ, սի-
րեաց ըզգետն Ենիպոս,
Գետ դիւցազնեան ծաւալ 'ի դաշտ ըն-
ւից գետոց գեղահոս.
Ի սուրբ վըտակսըն Թարթափէր. և Պո-
սիդոն համանման
Ընկողմանեալ 'ի յորձախոր գետոյն հանդ-
չէր 'ի բերան.

Դիզան ալիքըն ծիրանիք լեռնակուտակ
ամբարձեալ,
Հովանացեալ ծածկեաց զաստուած և
զկինն անդէն Թարթափեալ.
Լոյծ ըզգօտին ըզկուսական, քուն մի ե-
հեղ ըզնովաւ,
Ցետ այնորիկ ձեռըն տուեալ զայս ինչ
առ նա խօսեցաւ.
Խնդա՛ դու արդ, 'ի դալ տարւոյս
մայր եղիցիս զաւակաց,
Հօդ մայրօրէն ած և սընի՛. չեն մուսք
ունայնք երջանկաց.
Ե՛րթ արդ 'ի տուն, գիտեա՛ միայն, և մի
ըզբանդ առներ ազդ.
Ասաց, ես եմ վէհ Պոսիդոն. սուզաւ 'ի
ծովն ալէսասոտ.
Ծընաւ զՊեղէս և ըզ Ներէս քաջ պաշ-
տօնեայս ըզԴիայ.
Բնակէր Պեղէս յերկիր անդորր 'ի խաշ-
նաւէտն Եովլքիա.
Պիւղոն յաւաղուտ բնակէր Ներեւս. բայց
վեհ Տիւրէ Թագուհին
Ծընաւ Կրեթեայ զԷսոն, զՓերետ, և
զԱմիւթոն քաջամին:
Տեսի ապա զԱնտիոպէ, և էր սա դուստր
Ասոպի.
Ամոլս որդիս յԱրամազդայ ծընաւ զԱմ-
փիոն, ըզԶեթի.

Սոքա զԹեբէն զեօթնադրունեան հիմ-
նեալ, բրգունքս կանգնեն.
Զի չէր բնակել, թէպէտ և քաջք, ան-
բուրգն 'ի մեծն 'ի Թեբէն:
Տեսի ապա զ՚Ամփիտրոնին պերճ զամու-
սինն Աղկմենա,
Որ մայր եկաց 'ի Դիոսէն առիւծասպան
Հերակլեայ:
Անդ Կրիոնեայ և վեհ այն դուստրն ինձ
Մեգարէն եկն 'ի տես,
Զոր ած 'ի կին յանձնապաստանն քաջա-
կորովն Հերակլես:
Զեպիկաստէն կին գեղաւոր զԻդիպոսին
տեսի մայր,
Այն որ ըղձեծն յանցեաւ եղեռն անգի-
տացեալ չարաչար.
Ամուսնացեալ իւրում որդւոյ հայրա-
սպանին եղև կին.
Սակայն աստուածք փութով զեղեռն
աշխարհագոյժ արարին.
Այլ Իդիպոս 'ի շէն Թեբէն տարեալ
ցաւոց և վշտաց,
Դից խորհրդովըն դժպըհի Թագաւորէր
Կադմոսեանց.
Յաւալըլուկ մայրն 'ի խեղդան կախեալ
ընդ բարձր ընդ գերան,
Էջ դըժոխոց նա 'ի դրանդիս պընդաձանիքս
անսասան.

Այլ հեգ որդւոյն նա ցաւ բազում Թող
ըզկըծի և ըզկանք ,
Որչափ ինչ շատ տան չարչարանս մօր,
վրէժխնդիր Երինեանք ։
Տեսի զՔլորէն չքնաղագեղ, զոր ած Նե-
ղևս իւր 'ի կին
Ցօժիտ ամբաւ. էր նա կրտսեր դուստր
Եասիդեան Ամփոնին.
Սա յՈրքոմէն Մինեան, 'ւ 'ի Պիւղ ար-
քայ եկաց քաջազօր.
Եւ ծնաւ Քլորէ զաւակս արդոյս ըզՔրո-
միոս , ըզ Նեստոր.
Ծընաւ և զքաջ Պերիկլիմէն , և ըզ Պե-
րէն հրաշալին
Կոյս անմըման. գրաւեցաւ ընաւից էր նա
խնդրեալ ամուսին.
Նեղևս ըզ կոյսն ոչ տայր ումեք , բայց
որ Փիւլաքեն 'ի դաշտէ
Առեալ զանդեայս գալարեղջիւրս , լայ-
նաճակատս , յինքն ածցէ.
Ձեռնարկ դըժար. պահէր զանդեայս
քաջ կորովին Իփիկլէս.
Բայց խոստացաւ զայս մին միայն վեհն այն
գուշակ Մելամպէս.
Այլ մեծազօր կամքն աստուծոյ խստա-
մանն եղև խոչընդակ ,
Եւ կապեցին անլոյծ սարեօք ըզնա հո-
վիւքն այն վայրագք.

Ամպք, աւուրք, և եղանակք լըցին զիւ-
րեանց ըզհանդէս.

Ամ շըջեցաւ, ելոյծ ապա ըզնա հուժ-
կուն Իփիկլէս.

Քանզի զպատգամս գուշակութեան բար-
բառեցաւ նա ողջոյն.

Այսպէս ապա եղև լըրումն Արամազդայ
խորհրդոյն:

Տեսի զԼեդէ, որ Տինդարի ծընաւ ըզ-
քաջս այս բամբիշ,

Ըզձիախըրոխտ զայն ըզԿաստորն և ըզՊո-
ղիւկ քաջ ըմբիշ.

Ի ծոց երկրի գոգցես իբրև ըզկենդանիս
կան սոքա,

Եւ ընդ հողով պարածածկեալք պա-
տուասիրեն 'ի Դիայ:

Փոփոխ աւուրքք մերթ կեան նոքա,
մերթ և դարձեալ մեռանին.

Եւ այսգունակ են աստուածոց համա-
նմանեալք վիճակին.

Ըստ նըմանէն զԻփիմեդէ տեսի ըզկին
զԱլոյեայ.

Սա բան ճառէր զանկանելոյն Պոսիդո-
նին ընդ նըմա.

Ծընաւ կըկին սա քաջորդիս. բայց կար-
ճօրեայք վախճանին.

ԶՈգոսն ասեմ ըզգիցատիպն և զԵփիալտ
բառացին.

Սոքա անչափ սոսկալլիթիւնք երևեցան յաշխարհի ,
Նաև անչափ չքնաղագեղք յետ հոյակապըն Հայկին . 44
Դեռ ինձանձայք ըստուարացան 'ի լայն ինըն կանգնաչափ ,
Եւ անձեցին բլուրք մըսեղէնք յերկայն ինըն գրկաչափ .
Սոքա յՈղիւմպ և անմահից ըսպառնալիս կապեցին ,
Իբրու խառնուրդ յուզել նոցա բազմաշըշուկ ըզմարտին .
Յաւակնեցան դընել զՈսսան Ողիմպոսին 'ի վերայ ,
Եւ Ոսսային ըզծայրն ըզմեծ զանտառախիտըն Պեղեայ . 45
Զի սանդղաձև ելանելի ուղ գործեսցեն 'ի յերկին ,
Եւ գործէին թէ էր նոցա հասեալ յարքունս հասակին .
Այլ քաջորդին Արամազդայ կորուստ նիւթեաց ամոլէց ,
Զոր Ղետոնէ ծընաւ նըմա դեղագիսակն 'ի վարսից .
Կորոյս զնոսա մինչև ծաղկեալ 'ի քունս նոցա տեղք մօրուաց ,
Եւ գիրգ ծընօտք ծածկեալ նոցա դեռաբուսիկ յաղուամազ ։

Տեսի զՓեդրէ, և ըզՊրոկրէ, զԱրիադնէն գեղերես
Ըզդուստրն ուշիմըն Մինոսի, զոր 'ի Կրետայ ած Թեսեւս.
Ած նա 'ի զուր 'ի սուրբ Աթէնս, զի զնա կանուխ Արտեմիս
Առ 'ի Դիա կալաւ կղզւոջն, և գուշակն էր Դիոնիս:
Տեսի զՄէրա, ըզԿլիւմենէն, զԵրիփիլէն չարազգեաց,
Որ ընդ ոսկւոյ ըզսիրելին զիւր զամուսին վաճառեաց:
Այլ թէ զքաջաց կանայս, զդստերս 'ի կարգ առնում զամենայն,
Ի լուր ճառիս չէ բաւական մեզ այս գիշերս աստուածեան:
Ժամ ննջելոյ հասեալ է ինձ կամ անդ 'ի նաւն կամ աստէն,
Այլ զիմ զուղին ես աստուածոց և ձեզ ինքնին յանձն առնեմ,,:
Ըսաց, լռեաց. ընդ մութ սըրահն առհասարակ լուռ կային
Զմայլեալք 'ի լուռն. մինչև ձայն ետ վեհն Արետէ առեննին.
“ Արդ ո՞ փեկեանք, ալէ զիարդ թուի ձեզ այս աւագ այր,
Ի տիպ դիմացն, 'ի յաւագոյթն, 'ի տընկակիցն իւր հանճար.

Դա հիւր իմ է. այլ բաժանորդ այր այր
'ի ձէնջ է պատուոյն.

Մի՛ զդա հապճեպ մի՛ ձեռն ունայն ար֊
ձակեսջիք դուք 'ի տուն.

Դա կարօտ է. ձեր յարկք բարեգք 'ի
դից շնորհաց զեղանին ,,.

Ասաց դշխոյն. և Եքեննոս դիւցազն ետ
ձայն ծերունին.

Այս ծեր արդոյ առ փէակեանս , “ Ո՞
բարեկամք իմ, ասէր ,

Ոչ վայրապար , ոչ ապաբան խօսի ուշիմ
դշխոյն մեր.

Օ՜ն ձեռն 'ի գործ. բայց մեք մընամք
ձայնին 'ւ արդեանց արքային ,,.

Լուաւ արքայն , և պատասխան զայս ինչ
կնքեաց յատենին.

,, Լիցի՛ այդպէս , թ' ես կեամ իշխեմ նա֊
ւամարզիկ փէակեանց.

Այլ հիւրս արդոյ ժոյժ ունիցի , թէպէտ
Ճեպէ ինքն 'ի դարձ.

Մինչ 'ի վաղիւ կահեմ զընծայս , ա֊
պըսպարեմ ես զուղին

Իմ որերոյս , և ինձ յաւէտ , որ իշխան եմ
քաղաքին ,,:

Զայն ետ Ոդիւս. “ Ալկինոէ , արքայ
բնաւից գերաղանց.

Թէ և ամ մի հրամեք մընալ, կազմել զու֊
ղիս , տալ ընծայս ,

Շահ մեծապէս գիտեմ ինձ զայս, թէ
լիաձեռն յիմ աշխարհ
Դարձայց, գըտից անդ շուք, սէր մեծ,
յիմ Իթակէն առապար ,,:
Կրկնեաց արքայն. “ Ո՞ Ոդիւսէս, չու-
նիմք ինչ խէթ մեք ըզքէն
Թէ խաբուսիկ պատրես ըզմեզ, որպիսի
ոք բազումք են.
Շատ իսկ երկիր սընուցանէ մարդիկ սըփ-
ռեալ աստ և անդ
Շաղաւաշուրթն, որ կըցկըցեն բանըս
սնոտեաց քըմազարդ:
Բայց ոք ըզքէն ոչ խիթասցի. պերճ ես
'ի բանս 'ւ ողջամիտ,
Որ զվէպն Յունաց, զերթ զԱրգահանն,
բան ճառեցեր մեզ ճըշգրիտ.
Ի նոյն և զքոյ ըզ չարչարանս. բայց աղէ
դու պատմեա մեզ,
Յեսմե՞ր և զոք 'ի քաջազանց որ արարին
չու ընդ քեզ,
Զու յԻղիոն քեզ մարտակիցք, և անդ
անկան յօրհասէ.
Աղէ պատմեա. երկայն գիշերս ոչ մեզ
փութով կարճասէ.
Ժամ ննջելոյ չե՛ է հասեալ. ճառես ինձ
գործս հրաշալիս.
Յայգ ես ժուժամ թէ դու ժուժես ըզ-
վիշտըս քո պատմել ինձ ,,:

Կրկնեաց Ոդիսս. « Ո՞ Աքիլլէս, առաջայ
բնաւից դու արդդ.
Ժամանակ է շատ խօսելոյ, ժամանակ է
և քընոյ.
Բայց զի դեռ ևս ցանկաս լսել, քան
զայս քեզ ոչ զըլանամ.
Պատմել զաղէտս ներզակակցացս, որք յետ
դարձին հիգացան:
Աւա՜ղ, նոքա զերծան Տրովեանց դերաշ-
խարան 'ի մարտէ,
Եւ 'ի դարձին անկան տապաստ 'ի չար-
արուեստ կընոջէ:
Յորդ ողջախոհն երբ Պերսեփոնի զհոգիս
խռնեալս ըզկանանց
Իշխանաբար առեալ զնոսա յայս կոյս
յայն կոյս վարատեաց,
Հան ինձ 'ի վեր զԱգամեմնեայ հոգին
Թախծեալ ցաւադին,
Ի նոյն և զարսն որք ընդ նմա անկան 'ի
տան Եգիսթին: 46
Արք յարենէն, ծանեաւ նա զիս. ըզյր
արտասուս յորդ ցօղէր.
Ձգեաց յիս ձեռն հըպել ցանկայր, այլ
կար և ոյժ ոչ ունէր.
Ո՞ւր այն նորա նախկին կորովն յանդաման
առոյգ և ճապուկ.
Տեսի ըզնա, արտասուեցի տապեալ 'ի
գութ և յանձուկ.

Զայն յանուանէն կարդամ առ Նա.
" Ատրիդ, արքայ գերաբուն,
Ո՞ր օրահաս պարտեաց ըզքեզ երկայնաքուն 'ի մահուն.
Արդեօք զարքայդ ընկճեա՞ց 'ի նաւս իշխան ծովուն Պոսիդոն
Ուժգնահնչակ սաստիկ հողմովք, դիզան ալեօք բարձրայօն.
Արդեօք ըզքեզ 'ի ցամաքի հարի՞ն Զօրերք Թշնամեաց,
Զանդեայս յաւար վարելով քո, հօտ գեղեցիկ զոչխարաց,
Կամ երբ արդեօք մարտ մըղէիր պահել ըզտունդ և զոստան ".
Զայս ես հարցի. Նա խոր յոգւոց հանեալ ետ ինձ պատասխան.
" Դիւցազն Ոդիսս, բազմախորհուրդ. ոչ Պոսիդոն զիս ընկճեաց
Ի բուռն հողմոց. ոչ 'ի ցամաք խումբ ոսոխերիմ Թշնամեաց.
Այլ ինձ Եգիսթ և կին իմ ժանտ 'ի տան տուեալ կերակուր
Մահ նիւթեցին, որպէս թէ ոք փողոտէ զեզն 'ի մըսուր.
Այսպէս մեռայ ես հեծքաբար, և շուրջ զինև իմս որեան
Մի ըզ միով փողոտեցան զերթ պարարեալ ըզխոզեան,

Որ 'ի սեղան առն հարըստի զենեալք յօ-
չին պատրուճակ,
Ի հարսանիս կամ 'ի խնճոյս կամ 'ի կոչ-
նոցն հանդանակ:
Ըմպմահ բաղմաց անկեալ ուրոյն, կամ թէ
'ի մարտ դու տեսեր,
Այլ դու յայնժամ զինն յակն արկեալ,
աղէտք սրտիդ տոչորէր.
Մեք 'ի յարկին զխառնարանիցք և զհացա-
լից սեղանովք
Անկարք տապաստ, և անդ յաստակն ներ-
կէր յարեանն մեր յուռոգ.
Լուայ զհեծիւն ըզ Կասսանդրեայ ըզ
Պրիամու ըզդստեր
Զոր մօտ առխս, ո՜հ, չարանիւթ Կլիտեմ
նեստրէն խողխողէր.
Անդ ես տապաստ յոգւոց պարզել ձեռն
իմ 'ի սուր դանդաչէր.
Եսես զայն ժանտ լերըն աներես, յինէն
'ի բաց խուսափէր.
Ձեկաց ինձ նա մօտ իջելոյս առ դըժոխոց
բարապանն,
Ձեկաց ձեռօքն փակել զիմ զաչս, և յար-
դարել զիմ բերան:
Ո՛վ, չէք ժանտ ախտ, չէք լերբ անդութ
քան ըզկին մի այսպիսի,
Որ այսչափ ինչ մըթերս չարեաց կու-
տեալ իցէ 'ի յոգի.

Այո՛ ինձ կինս աղունս աուլթեաց՝ զոր
ինձ ընծա կոյս ածի.

Մահ իւրում առն արուեստակեաց, սամ
ակն երբէք չունէի:

Ես սաէի, յողջոյն որդւոցս և ծառայիցս
զալ 'ի տուն,

Այլ կինն արեանց մնչքէնագործն անձին
աուլթեաց վատ անուն.

Նա և յապայս եդ նա արատ կանանց ազ֊
գին իգական,

Եւ կորացոյց անմօլթապարտ և ըղպար֊
կեշտաքն անգամ,,:

Լուայ ես զայն, յողւոց հանի. " Բանք
ըղձեան Ատրեսեանց

Զիարդ սաստիկ տանեաց Դիոս'ի կանան֊
ւոյն խաբանաց.

Ո՞չ'ի պատճառս և Հեղինեայ կորեաք
բազումքս Հելլենաց.

Եւ քեզ ինքնին բացակամիդ Կլիտեմնես֊
տրէն նենգ լարեաց,,:

Կրկնեաց դարձեալ Ագամեմնոն և խոր֊
հուրդ քաջ ինձ սադրեր.

" Մի և դու ինքն քոյին կնոջդ մի դնե
քաղցունս ցուցաներ.

Մի և ողջոյն ըզբոյ զաղտնիս 'ի վեր հան֊
ցես դու նման.

Այլ մասըն մի հաղորդեսցես և մասըն մի
քեզ պահես.

Այլ քեզ, Ոգիա, չիք խէթ անտի զի ող-
ջախոհ ես յոգին.
Քաջամիտ ես դուստրն Իկարեայ Պենե-
լոպէն այն ուշիմ.
Ըզնա նոր հարսն 'ի չուն 'ի մարտ թողաք
անդէն մեք 'ի տան,
Որդի ունէր դեռաբուսիկ մանուկ 'ի
ստեանց կաթնասուն.
Նա արդ շըքով նստի 'նդ աւագս. հայրն
իւր ըզնա փոյթ տեսցէ,
Եւ գիրկ ընդ խառն անդ 'ի դարձին որ-
դին համբոյր հօր տացէ.
Այլ, ո՛վ, իմ կինս և ոչ 'ի տեսան որդւոյս
յագուրդ ես աչաց,
Քանզի կանխեաց և զիս ինքնին յարեան
խմուել թաթաւեաց:
Բայց քեզ ասեմ, և կա՛լ անձինդ. գաղտ
ե՛լ յերկիրդ հայրենեաց,
Մի՛ դու յայտնի. զի մեզ ա՛յլ չիք վըստահ
լինել 'ի կանայս:
Այլ զիմ զորդեանն, ասէ՛ ասա՛, լուա՞ր
ուրեք կենդանի,
Կամ, յՈրքոմենն և կամ Պիւղեայ 'ի յաւա-
զուտ նահանգի.
Կամ 'ի Սպարտա լայնածաւալն առ Մե-
նեղաւ քաջ արքայն,
Զի դեռ ևս ձեզ կայ կենդանի իմ Որես-
տէսն աննըման »:

“ Ջայդ ինձ, ասեմ, զի՞ հարցանես. գի-
տեմ ինչ ոչ, Ատրիդէ,
Թէ կենդանի՞, կամ թէ մեռեալ. վայրա-
բանելն 'ի զուր է ”։
Մինչ այս մինչ այն, մեք զրուցեաք ջերմ
արտասուօք ցաւագին,
Անդէն 'ի վեր քաջին արանց Աքիլլէսին
եւ հոգին.
Նոյն Պատրոկղեայ 'ւ Անտիղոքեայ և
Այասայ քաջարւոյն.
Որ դէմքն, իրանն, յետ Աքիլլեայ էր
Աքայեանց վեհագոյն.
Ծանեաւ հոգին զիս Աքիլլեայ, յոգւոց
հանեալ ձայն կարդաց.
“ Դիւցազն Ոդիս, այր բազմարուեստ,
բնաւից հնարիւք գերազանց.
Զի՞նչ, հեքացեալդ, նոր նիւթեցեր. զի-
ա՞րդ իջեր յայս խաւար,
Տուն դըժոխոց. ուր մեռելոց խօլք ու-
րուականք վայրապար ”.
Ձայն կրկնեցի. “ Աքիլլ Պեղեան, դու
քաջ արանց յոյն ազգին,
Ի լուր եկի աստ խորհրդոյն Տիրեսեայ
գուշակին,
Զիա՞րդ հասից յիմ առապարն. չեւ եմ
տեսեալ զիմ երկիր.
ՅԱքայիա չեւ եմ հասեալ, եմ տակաւին
վշտակիր.

Այլ երջանիկ քան զքեզ, Աքիլլ, չէք 'ի
    նախնեաց, չէք յապայց.
Զի և յառաջ ըզկենդանիդ մեք պա-
    տուէաք իբր աստուած.
Նաև աստէն դու մեռելոց ես հրամանատար
    և իշխան
Ուստի Թախիծ, ո՛ Աքիլլէս, չէք քեզ և
    ոչ 'ի մահուան »:

Լուաւ Աքիլլ, ձայն մի աւաղ ընդդէմ
    կրկնեաց անվեհեր.
« Մի՛ ինձ, Ոդիսևդ քաջախոհ, մի՛ ինձ
    ըզմահըն գովեր.
Կամիմ յանդի պարէնաւոր առն աղքատի
    սինլըքոր
Վարձկան լինել, քան մեռելոց կալ բոլո-
    րից Թագաւոր:
Այլ պատմեա՛ ինձ դու զքաջորդւոյս. Է՞
    նա 'ի մարտ նահատակ.
Պատմեա՛ և զվեհ զհօրն Պեղեայ, եթէ
    իցես ինչ գիտակ.
Արդեօք ըզնոյն ունի՞ պատիւ նա 'ի յազ-
    գէն Միւրմիդեանց,
Թէ յԵլլադա, 'ի Փիթիա, զձձեն ըզ նա
    իբր անկած,
Իբրու որ այն ձեռք իւր և ոտք են ծերու-
    թեամբ դողդողջուն.
Ա՜հ, չեմ նըմա արդ զօրավիգ ընդ նըշու-
    լիւք արևուն.

Որպիսի ողջ յորժամ հրեշիմն 'ի Տրոյիա
լայնատարր
Ընդխումբ քաջաց հարկանէի կացեալ Յու-
նաց ես պատուար .
Եթէ այնպէս և վայրկիկ մի գնայի 'ի տուն
իմ այժմուս ,
Կորովս և հոյնս յահ խուճապէր ընդհօրն
իմոյ զանարգուս »:
« Ընկեր Պեղեայ, ասեմ, Աքիլլ, ոչինչ
լուայ ճշմարիտ ,
Այլ քեզ ըզճառըն ճշգրտեմ Նէոպտողեմ
որդեկիդ .
Ես նաւագնաց առեալ ըզնա ածի առ
Յոյնս 'ի Սկիւրայ ,
Եւ մեր յատեանս առ Տրոյիաւ նախ և
քաջիկ խօսէր նա .
Միայն Նեստոր և ես Ոդիս պայքարէաք
ընդ քաջին ,
Բայց 'ի խառնուրդ մարտին Տրովեայ նա
էր մարտիկն առաջին .
Էր նահատակ , ոչ կայր 'ի խուռն . շատից
եղև մարդախանձ .
Չիք ինձ ասել , այդ ախոյեանդ քանի
որեան սատակեաց .
Ասեմ ըզմահ Տեղեփիդեան Եւրիւպիղ-
եայ դիւցազին ,
Անկաւ յորդւոյդ նա 'նդ որերոյն վասն
հարսանեացըն օժտին .

Էին կետեանք որեւարն համհարքը Եւրիպիւղեայ քաղաքուոյն,
Զոր յետ գիւցազըն Մեմնոնի տեսի դեղով վեհագոյն ։
Վերեզ և զեղպեան փայտակերտեալըն պատմեցից զերիվար, 47,
Ցոր 'ի ծածուկ գարանակալք մտին Յունաց քաջորեար.
Հոգին ամենայն ինձ էր յանձնեալ փակել բանալ զայն գարան.
Բայց մտեալոցն անդ 'ի քաջաց յահէն անդամք դողդողջան.
Տեսի ես անդ զի քաջորեարն զարտասուր աչաց սրբէին,
Միայն որդւոյդ այդք անարտասուր սաւոյգ գունեան էր մարմին.
Շատ ինձ մաղթէր 'ի դուրս վազել ձեռքն 'ի դաստակ սուսերին,
Տէգ կուռ 'ի բուռն, որհաս արագ ածել Տրոյեանց խուժանին ։
Իսկ մեք յորժամ աւար հարաք ըզ Պրիամուն բարձր ոստան,
Նա մեծ կապուտ առեալ զիւր մասն 'ի նաւն եմուտ ողջանդամ.
Ոչ խոցեցաւ ոչ 'ի բացուստ, ոչ 'ի մօտոյ 'ի մարտին,
Որպէս դէպք տան 'ի խառնխուռն յահեղ խօշիւն Արեսին ,, ։

Չուաւ հոգին Աքիլլեսի, և 'ի գալար 'ի մարգին
Քայլ մեծաքայլ գընայր խայտայր լուեալ ըղձով զաւակին :
Իսկ այլ հոգիք անդ մեռելոց ցաւեալք զիւրեանց վիշտ պատմեն ,
Միայն հոգին մեծն Այասայ անդ 'ի բա- ցեայ կայր յինէն .
Կայր զայրագին , զի զնա 'ի վէգն վասն զինուցն Աքիլլեան
Ես պարտեցի , երբ զառաջեաւ եդ զայն Թետիս մեր յայնժամ .
Որդիք Տրովեանց և Աթենաս զայն դա- տաստան կնքեցին .
Իցի՜ւ թէ ես ոչ պարտէի ըզնա 'ի յայն պայքարին .
Արդոյ այն գլուխ վասն այն զինուց ամ- փոփեցաւ 'ի յերկրի ,
Այասն Յունաց յետ Աքիլլեայ վեհն 'ի նախճիրս 'ի մարտի :
“ Դիւցազն Այաս , ձայնեմ աղու , դեռ ևս յիշես 'ի մահուն ,
Անջինջ ընդ իս է խէթ ցասմանդ վասն այն զինուց մահաթոյն .
Դիք զայն Յունաց ետուն աղէտք . և դու- նոցուն կուռ պատուար
Անկար , և մեք զերթ զԱքիլլեայն ըզ մահդ ողբամք հեքաբար .

Մեզ չէք ումեք. Զեան ոխերիմ քաջաց
Յունաց. քեզ մահ եա.
Արի՛, արքայ, 'ի լուր բանիս. ընջեմ ո՛վ
քաջ, զօրայոյդ խէթ ,,:
Զայն չէտ, գոչայր. ընդ այլ մեռեալս
խառնէր յՆերեբն ընդ հոգիս.
Եւ անդ Թերսա, Թէսպէտ ցասկոտ, մեք
լինէաք խօսակից:
Րամ ցանկայի և այլ հոգւոց յայց եղա-
նել ես յայնժամ.
Տեսի զՄինոս մաղցեղն արքայ ոսկի կա-
լեալ գաւազան.
Բազմեալ 'ի գահ դատէր զմեռեալս, նոքա
անդ շուրջ արքային
Նստեալք, կացեալք, տային համար 'ի
տան լայնդուռն Պլուտոնին:
Տեսի զվիթխարըն զՈրիոն, վարէր զգա-
զանս 'ի մարգի,
Զորս ինքն եհար 'ի Թաւ լերինս, լախտ
կուռ կալեալ պղընձի.
Եզ Տիտիոսն զորդին երկրի տեսի տարած
'ի գետին,
Ըզչափ ըլինունց արտավարաց դրաւէր այն
մեծ վիթխարին.
Ասոր անտի Թափ յախոնգիս անգեղք
կտցօք գիշակեր
Կրծեն ըզլեարդն. ըզձեռսն ածեալ ինքն
ապիկար զուր վանէր.

Զի նա և ոչ ակն ած Դիոսայ վեհն ամուսնոյն Ղետոնեի ,
Բռնաբարեաց 'ի գնալն 'ի Պիւթ ընդ մարդ չքնաղ Պանոպի :

Ուր Տանտաղոս տեսի ես անդ ցաւովք տանջեալ դառնագին ,
Կայր նա կանգուն 'ի մէջ լըճի որ մօտ քերէր ծընօտին .
Ծարաւելոյ բերէր ըղձէմս , այլ կաթ յարբումն ինչ չունէր .
Ծերըն քանիցս յըմպել կըքէր , ջուրըն սըրացեալ սուզանէր .
Հող սևահող 'դ ոտիւք նորա գայր յերևան առաջի
Երաշտացեալ առ 'ի Քաջէն ցամաք համբուն անջրդի .
Ծառք ամրոստեանք վերոյ գլխոյն կախին պտղովք ակաղձուն .
Տանձ , Նուռն , և Թուզ , գիրգ ձիթենի , տունկ գեղամիրգ խնծորոյն .
Զգտէր ըղձեռս առ ինքըն զոստան ունել ձգնէր ծերունին ,
Հողմն ըզնոսա առեալ տանէր 'ի մուժ 'ի յամպըս վերին :

Տեսի ես անդ և զՍիսիփոս տուայտեալ ցաւովք չարաչար .
Վէմ ահագին և արաստոյ կրկէն ձեռօքըն բառնայր .

Ձեռամբք, ոտիւք, ձիգըն Թափէր ձըգ-
դել ըզվէմն յարտեան,
Քերեալ զծայրիւն անդուստ ընդ կրուկ
վանէր յուժոյն վերնական.
Վայրահոսեալ վէմն անարին գայր հոլո-
վէր ընդ գետին,
Նա Թափ ուժով տայր միւսանգամ ձգել
'ի ծայրըն լերին.
Այսպէս 'ի խրանս Սիսիփոսին յորդա-
կայլակ քիրտն հոսէր,
Եւ մըրըրկեալ ամբ մի փոշւոյ գլխոյն 'ի
վեր դիզանէր.
Տիպ 'ի վերջէ ըզՀերակլեայ տեսի դրո-
շեալ ուրուական,
Իսկ ինքն յանմահ դիցն 'ի խնճոյս բերկ-
րեալ ունի բազմական.
Ըզնազաքայլն ունի զՀեբէն դուստըր մե-
ծին ըզ Դիայ,
Ծընունդ արդոյ մեծ դշխոյին ոսկեկօշի-
կըն Հերայ.
Կանչիւն զնովաւ էր մեռելոց զերթ խու-
ճապեալ հաւուց ճիչ,
Ինքն 'ի պատկեր մութ գիշերոյ զաղեղն
ունէր լայնալիճ.
Նետ կազմ 'ի լարն աստ անդ խեթիւ հայ-
էր ձըգել ըզ փըքին,
Եւ առ լանջօքն ոսկի քեմուխն շողայր
ահեղ կամարին.

Անդ հրաշակերտք են քանդակեալ արձք
և վարազք վայրենիք ,
Սօս առիւծունք , մարտք և նախճիրք մա֊
հուանք , արեանց ճապաղիք .
Ճարտարն , որ զայն հրաշակերտեաց ,
այլ համանման ոչ արար
Կրչիւ գործել ճարտարութեամբն սքան֊
չելարուեստն ընդ կամար :
Յիս զակն արկեալ ծանեաւ անդէն , յու֊
զուոց հանեալ ձայն կարդաց .
“ Աւաղ , դիւցազն ուշիմդ Ոդիս , անշուշտ
և քեզ հաս արկած .
Որպիսի ինչ և ես տարայ յարև կենացս
աշխարհի ,
Թէպէտ և ձեռս Արամազդայ , դրաւեալ
յաղէտ ողբալի .
Զարաշուք առն եղէ 'նդ ձեռամբ . քըր֊
տամբք տանջէր զիմ ոգին .
Եւ էր զի աստ յղեաց նա զիս ըզ գամփռն
ածել ահագին .
Զայս 'ի նախճիրս ինձ մեծ մրցանք ան֊
կըռուելի կարծէր նա .
Հանի զայն գամփռն 'ի դըժոխոց ընդ
հովանեաւ ես Հերմեայ .
Հերմէս ինքնին հորդեաց ինձ աստ և
Աթենաս գլխովին ” .
Ասաց , անդրէն էջ նա 'ի տուն աշխար֊
հականց խաւարին :

Մնայի ես անդ թէ գայցէ ոք Նախավախ-
ճան դիւցազանց.
Եւ էր արդեօք ինձ տեսանել, ոյց ցան-
կայի ծերունեաց.
ԸզԹեսէոսն ասեմ դիւցազն և զՊիրի-
թոս հրաշալին.
Այլ անդ հապճեպ մեռեալք ամբաւք
խուռնին գոչմամբ սոսկալի:
Ես 'ի գալուստն հատայ յահէն, մի ինձ
ըզգլուխ Գորգոնեան
Ջահեղ հրէշին վեհ Պերսեփոնն 'ի վեր
հանցէ յերևան:
Ճեպիմ 'ի նաւս, ձայն տամ խմոցն. յա-
րեան լուծին ըզպարանս,
Մըտին արագ կարգ ըստ կարգէ առին
զիւրեանց նստարանս.
Նաւն ընդ ալիս Ովկիանոսն կոհակաւէտ
հոսանաց
Վարէր քաշտեօք, ապա և հողմին բարե-
շունչ մեզ փըչեաց:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Դառնայ Ոդիսս 'ի կղզին Կիրկեայ, կատարէ զդիահանս զմեռուելոյ միոյ յընկերացն, և մեկնի 'ի կղզւոյն․ խրատեալ և հրահանգեալ 'ի Կիրկեայ՝ անձնապուր լինի 'ի վտանգէ Ծովայնոցն, այն են քաղցրաձայն և մարդակեր Յուշկապարիկք և Սիրէնք։ Ապրի և յահագին Սկիլլայցն և Քարիւբդեայցն; այն են վտանգաւոր նեղուցքն Սիկիլիոյ․ այլ կորուսանէ զերկուս յընկերացն։ Հասանէ 'ի Թրինակիա, այն է Սիկիլիա, ուր ընկերքն ընդդէմ պատգամին զենուն յանդէոց նուիրելոց արեգական։ Արամազդ շանթէ 'ի նաւն, և ամենեքեան կորնչին, բայց յՈդիսսեայ ապաստարելոյ 'ի նշխարս նաւուն․ և զերծանի 'ի բազմավտանգ նեղուցացն զարմանալի հնարիմացութեամբ․ և յետ աւուրց տասնից հասանէ 'ի կղզին Կալիփսեայ։ Եւ աստանօր վախճան առնէ իւրում պատմութեանն։



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԲ.

ՀԱՍՑԵԱԼՔ զհոսանս անդնդախոր զՈվ-
կէանեան ըղձեւոյն,
Հասաք յԷյան մեք ’ի կղզին ընդ մըկա-
նուանս մեծ ծովուն.
Անդ տուն և պարք Արշալուսին զան ’ւ
ելք արփւոյն յերեւան,
Մեք յաւազուտն առեալ ըղնաւն ելաք
յանդորր ծովափան.
Երեկացաք, մինչ վեհ այգուն ծայրակար-
միր ծագեաց օր,
Յղեմ յիմոցն ’ի տուն Կիրկեայ ածել
զմեռեալն Ելպենոր,

Փայտ հատանեմք, Թաղեմք լալեօք առ
ծովափամբն 'ի կարկառ,
Մինչ մեռելոյն գլխակն և զէնք 'ի հուր
ծախին բոցավառ.
Հողակարկառ կուտեալ դամբան կոթող
անդէն կանգնեցաք,
Եւ 'ի ծայրին ընդքաջակերտ ըղթին նորա
վարսեցաք։

Մինչ այս մինչ այն մեք ըզբաղեալք, ան-
դուստ Կիրկէն նախազգաց
Դարձին մերոյ 'ի դժոխոց, զարդ արկ
զնուրն և վազեաց.
Ածին նաժիշտք հաց և միս շատ, հրա-
տապ գինի բերկրարար,
Եւ 'ի մէջ արձանացեալ վեհ դիցուհին
ձայն կարդայր.
“ Ա՜յ հեքացեալք, որ կենդանւոյն իջէք
Դժոխոց յօթեվան,
Դուք կրկնամահք, ուր այլ մարդիկ մահ
ճաշակեն միանգամ.
Բայց դուք աղէ աստ զօրն ողջոյն, արբէք
բաժակ, կերայք հաց.
Վաղքաջ յաւուրն յառաւօտել ուղւոյ
լինջէք նաւագնաց.
Ես ձեզ զուղին ցուցից անվրէպ, զի մի
նաւեալք 'ի նանիր,
Դուք կամ 'ի ծով կամ 'ի ցամաք լինջէք
յոգնիս վշտակիր ”։

Հանճարեալք ընդ բանին քաղցրախոհ , Նըս-տինք ցըմուտս արեւուն ,
Վայելս առնումք զառատ մըրգոյն և զա-նուշակ ըղձքինւոյն .
Արեան եմուտ , խաւար պատեաց , հան-գեան մարգիկն առ նաւուն .
Նա զիս ուրոյն առեալ զաջոյս , նստոյց հանդէպ , հարց ողջոյն .
Մանրամասին ինձ հարցանէր . ես կարգ 'ի կարգ պատմեցի .
Նա կրկնեաց արդոյն Կիրկէ , խօսէր յայտնէր ինձ ուղի ։
“ Զայդ ամենայն 'ի գլուխ հաներ . և արդ լո՛ւր ինձ զոր ասեմ ,
Եւ քեզ ըղըանս , թէ պէտք լիցին , նաև աստուածքն յուշ բերցեն .
Արդ դու նաւեալ ժամանեսցես նախ 'ի կղզին Սիրենաց .
Ողջ զանցաւորս վարմէն նոքա , հըմայս նիւթեն դիւթութեանց .
Որ անխորհուրդ անդ մերձենայ և զՍի-րենաց լըսէ ձայն ,
Նըմա 'նդ առաջ 'ի դարձն 'ի տուն կին և զաւակք ոչ խնդան .
Դիւթեն Սիրէնք անոյշ երգովն նստեալք մարգացն 'ի դադար ,
Եւ անդ շուրջ կան մորթք փտեալք մարդ-կան և կըմախից մեծ կարկառ .

Այլ դու նաւեալ վաղեմ զնոքօք, խըլցո՛ զականջս որերոյն,
Լմեալ մոմով քաջ քաջ խցցես, մի՛ ոք լուիցէ ՚ի յերգոյն.
Բայց թէ կամիս, դու լո՛ւր ըղձայնն. այլ զքեզ կանգուն ՚ի նաւին
Կապեսցեն առք զոտից, ձեռաց, պա-րապնդեալ ՚ի կայմին։
Լո՛ւր հեշտաբար զձայն Սիրենաց, և երբ խնդրես արձակուրդ,
Անդ շատ սարեօք զքեզ պրկեսցեն. այս քեզ լինէն քաջ խորհուրդ։
Անցեալ զնոքօք քեզ ընդ առաջ գլորցես զուղիս ըզկրկին,
Պատմեմ զերկուցն. այլ ոչ ընտրեմ, դու ինք խորհեմ առանձին.
Յայս կոյս են ժայռք սարաւանդեալք, ընդ որս կոհակքն հարկանեն,
Հնչեն ալիք կապոյտ ծովուն, զորըս Թա-փառք դիք կոչեն.
Ոչ հաւք անվնաս թռչին զնոքօք և ոչ ա-ղու աղաւնիք,
Որք վերբերեն Արամազդայ զճաշակն ան-մահ գեղեցիկ.
Զի և ՚ի յայնց շորթէ հաւուց ժայռն այն ողորկ սեպածայր,
Բայց այլ փոխան կարգէ անդ Հայրն, զի թիւն լցէ հաւասար.

Ընդ այս անզերծ ցարդ նաւ չէանց, այլ
ընդ լաստին և զօրեար
Ծովն ալէտանջ եկուլ, ’ի նոյն մրրրիկ
հրրոյն բոցավառ 48.
Մին ասա միայն անդրժելի սրացաւ վա-
զեաց հատեալ ծով
Արգոն այն նաւ համբաւաւոէնչ առ ’ի
յԵոտեայ նաւելով.
Բա՛ բախէին և զնա կոհակք ընդ այն խա-
րակս ամեհի,
Սակայն Հերա անցոյց ամբողջ, զի էր
Յասոն սիրելի:
Իսկ և յայնկոյս են ժայռք կրկին, մին
վերամբարձ մինչ յերկին,
Արածայր ծայրիւքն պարագրեալ ծածկի
’ի յամբըս մըլթին.
Օդ պարզութեան յաւերժաբար չէք ’ի
նորայն յարտեւան,
Ոչ յեղանակ աշնանայնոյն և ոչ դար-
ձեալ յամառան.
Ոչ ելանել ոչ իջանել երբէք չէ մարդ բա-
ւական,
Թէպէտ և ձեռք Թէպէտ և ոտք իցեն նո-
րա Թիւ քսան.
Այնչափ ողորկ սուրբ է պարեխն շուր-
ջանակի ’ի կողմանց.
Բայց ’ի ժայռին ’ի միջակին անձաւ կայ
խոր միգամած.

Ի մէտս 'ի կոյս Թեւակոխեալ հայի 'Նգ Երեք սոսկալէս.
Արագ ընդ այն սրացէք Նաւու, անսամ ինձ քա՛ջդ Ոդիւսէս.
Նետ 'ի Նաւէն աղեղնաձիգ և ոչ այլ ոք քաջագոր
Թափ ոստուցեալ հարկանիցէ 'ի քարան-ձաւն յայն 'ի խոր.
Աստ բնակութիւն ունի Սկիլլա, կանչիւն հանէ քստմնաձայն.
Ձայնն է ճչգրիտ իբրև կաղկանձ սանդխա-ցիկ կորեանց շան,
Ինքն է գժխեմ հրէշ ահարկու. որ միան-գամ տեսանեն,
Քստմնին սոսկան, թէպէտ տեսողն է յանմահից 'ի դասէն.
Ոտք են նորա երկոտասան, և ոտքն երկք են ողջոյն
Եւ պարանոցք վեցք են նորա երկայնա-ձիգք 'ի բընոյն.
Մէն մի ահեղ ունին գլուխ երեքկար-գեան ատամամբ,
Են ատամունքըն խիտք և հոծք սեաւ գու-ժաբեր լի մահուամբ:
Ինքըն միջով 'ի խորափիտն յայն քարան-ձաւ սուզանի,
Արտաքս 'ի վեր կալեալ ըղզլուխս յայն վիրապէն սոսկալի.

Կայ ինքն 'ի ժայռն լըռնես խոժոռ որսալ
ըղձուն, ըղձըլիւն,
Կէտս անարիս, բուծեալք ամբաւք յանկ
դըննդախորս Ամփիտրին.
Զի ևս ընդ այս անցին նաւազք անդըրժե-
լիք յօրհասէն,
Զի նաւազ մի մէն մի գլխոյն առնու կոր-
զէ 'ի նաւէն:

Մօտ ըզմիւս ժայռ գացես խոնարհ, հար-
կանելի 'ի վիքնաց.
Եւ կայ բուսեալ անդ բարձրուղէշ ժանտ
Թըզենի հերապանծ.
Բայց ընդ սովաւ վեհ Քարիբդիս կլանէ
զկապոյտ ջուր ծովուն,
Ժայթքէ երիցս աւուր աւուր երիցս ըմպէ
ահարկուն 49.
Դու 'ի կլանելն մի մօտ գնասցես, 'ւ ոչ
Պոսիդոն փրկէ զքեզ.
Այլ առ Սկիւլլաւ 'ի մօտ քերեալ արա-
ցի՛ր նաւու փութապէս.
Լաւ է վեց արս տալ վիրագլին քան թէ
զողջոյն նաւաստի ”:
Լուայ, կրկնեմ. “ Ասէ և զայն ասա՛ ճըշ-
գրիտ, դիցուհի.
Եա անձնապուր յօրահասէ մահաշըշուկ
Քարիւբդեայն
Եւ զՍկիւլլայն ոչ վանեցից երբ նա կոր-
զէ զիմ որեան ”.

Լուռ, կրկնեաց. " Ա՜յ հիքացեալ, դու
    տակաւին ըղձմարտից
Նախնեաց 'ի յուշ քո վերբերես ոչ ակն
    ածեալ յանմահից.
Չէ մահացու այդ Իտալիայդ, անմահ
    չար է 'ի ձեռէ,
Հարուստ, ահեղ, դըժոխոլմբեր, անկըռ-
    ուելի 'ի բաղկէ.
Չիք դեղ դարման. փախչելն է լաւ. Թէ
    'ի վանել գնաւն յամէ,
Թափ տայ կրկին այնչափ դըխովք այնչափ
    որեան յինք կորզէ.
Սրացի՛ր և անց, և առ Կրաթէն առ մայր
    Սկիլլայ ձայն կարդա 50,
Որ զայս ժանտախտ ծընաւ մարդկան,
    նոյն և որդւոյն իւր սանձ տայ:
Ի Թրինակեան հասցես կղզին. անդ շատ
    անդեայք յոյր օդիք
Արոտականք կան Արեգին. եօթն են ան-
    դեայքն Ջոլիոք.
Եօթն են և հօտք չքնաղ օդեաց. յիսունք
    թուով 'ի մէն մի.
Ոչ սերնդեամբ աճեն նոքա և ոչ մահ-
    ուամբ պակասին.
Հովիւք նոցա են դիցանոյշք յաւերժհար-
    սունք դերակայ,
Փաէթուսէ և Լամպետէ, ծընունդք վե-
    հին են Ներեայ.

Զասսա Ներէ ծընաւ զատերս վերնաձեմեալ Արեգին,
Ծընաւ, սընոյց, յղեաց 'ի տար 'ի Թրինակեան 'ի կղզին.
Զի անդ կալեալ ըզբնակութիւն կացցեն նոքա պահապան
Գալարեղջիւր անդեայց ջոկոց, ոդեաց հօտիցն հայրական:
Արդ թէ սոցա ոչ դործեսցես միայն 'ի դարձդ ուշադիր,
Ողջ ժամանէք դուք յԻթակէ թէպէտ տանջեալք վշտակիր:
Իսկ թէ դործես, մահ քեզ դուժամ, նաւուդ քոյոցդ միաբան.
Եւ դու փրկեալ, սակայն չարաւ դարձցիս 'ի տուն անաղան.
Նաեւ ցաւով դարձցիս անբաժ ողջոյն 'ի քոց ընկերաց »:
Այն ինչ յանդեաց վեհ դիցուհին, եւ ոսկեգահն այգ ծագեաց:
Ինքն ընդ կղզին մեկնեալ յինէն, երթեալ 'ի նաւն ես ձայն տամ.
Ցարեաւ որեարն, լըծ ըզպարանս, մըտին առին նստարան.
Զծովն ալէտանջ բախեն քաշտեզք, մեզ 'ի Թիկանց հողմ յըղէ
Վեհ դիցանոյշն այն դանդրահեր դեղգեղաձայնըն Կիրկէ.

Հողմըն ելից մեզ զառագաստ քաջ ուղեկիցն և ընկեր.
Լքեալք ըզլծիս, նստիմք յանձնեալ հողմոյն, քեղւոյն անվեհեր:
Յոգւոց հանեալ խօսիմ յայնժամ. « Ո՜ բարեկամք. արժան չէ
Միում ւ երկուց գիտել զպատգամս, զոր խօսեցաւ ինձ Կիրկէ.
Ի վեր հանեմ ես հասարակ, զի գիտասցեալք կամ մեռցուք,
կամ անձնապուր 'ի մօտալուտ մեք յորհանէն ապրեսցուք:
Հրաման ետ Նախ մեզ պատկառ կալ աստուածայնոց Սիրենայց,
Ցանոյշ երգոյն խուսել Նոցա և ծաղկաւէտն 'ի մարգաց.
Ինձ ետ լսել. բայց զիս սարեօք զիս պրկեցջէք 'ի Նաւին.
կանգուն անշարժ կացից այնպէս պարապնդեալ 'ի կայմին.
Թէ արձակուրդ ես խնդրեցից, դուք կրկնեցջէք ըզ կապանս ».
Զայս խօսեցայ. և Նաւն արագ հաս 'ի կղզին Սիրենաց:
Հողմն յաջողակ ձեպէր ցայն վայր, անդ իսկ և իսկ դադարեաց.
Հանդարտութիւն պարզ և անսխուք, ալեաց Թմբիր Քաղցն էած.

Յարեան նաւաղք և զառագաստս ծա-
լեալ դնեն 'ի նաւին.
Եւ փրփրադէզ շարժեն քաջոխս յըղ-
կեալս 'ի փայտ եղևին:
Ես գունտ մոմոյ մանրըր կտրեալ 'ի ձեռս
առեալ լըմէի,
Փոյթ կակղացուցի շողն Արևուն ջերնաձե-
մեալ արքայի.
Մատեայ, մոմով զականջս արանց խըցի
ես կարգ ըստ կարգէ.
Նոքա՝ կանգուն զիս պըրկեցին, ոտք ձեռք
պնդեալք 'ի կայմէ.
Նստեալք ապա արագ Թիովք ծըփեն ըղ-
ծով ըսպիտակ,
Մինչ 'ի կղզին, որչափ լինի ձայն լըսելի,
մերձեցաք.
Սիրենք լուան զշառաչ նաւուն, ձայն
տան անոյշ նուագաց.
« Կացո՛ ըզնաւդ աստ 'ի լուր մեր, քա՛ջդ
Ոդիսևէս, փառք Յունաց.
Չիք նաւագնաց որ աստ չեկաց անոյշ եր-
գոյն մեր 'ի լուր,
Եւ մեկնեցաւ բերկրապատար շատից ե-
ղեալ նա ներկուռ.
Զի յԻլիոն, Յունաց, Տրոյեանց, գի-
տեմք մեք զանցսն աստուածեան,
Գիտեմք և որ բազմասընոյց յերկրի վե-
րայ զինչ դէպք տան »:

Զայս երգէին քաղցրաձայնեալք, սիրտ իմ տապէր 'ի ձայնէն,
Յօնիւք հրամեմ զխս լուծանել, նոքա շտապաւ թի վարեն.
Բայց Պերիմետ և Եւրիլոք եկեալ կրկնեն զիմ կապանս,
Մինչև անցեալք այլ ոչ լըսեմք ըղձայն և զերգ Սիրենաց:
Լըսելափակքն անդէն 'ի բաց առին զխըցանս մոմեղէն,
Զոր ես ունկանց ետու նոցա, և զիս լուծին 'ի կապէն:
Թողեալք զկղզին, ծուխ և կոհակքըն ամեհիք ընդ առաջ
Բոմբեն ահեղ. պակեան նաւազք, թիք անկանին 'ի ձեռաց.
Լըլկեալք յանդունդս ձայն ամբարձին. նաւըն չունէր զօրավիգ
Կայր և ծըփայր, քանզի 'ի թիս ձեռք թուլացան կորովիք.
Ես վեր 'ի վայր գնացեալ ընդ նաւն, ամոք բանիւք ընկերաց
Տամ քաջալէր. « Ո՞ բարեկամք, բա՛ չեմք անփորձք 'ի չարեաց.
Քան զԿիկլոպայն չեն մեծ չարիքս երբ փակեցաք յանձաւին.
Զերծաք սակայն յանզերծ ուժոյն իմ խորհրդովքըս ուշիմ.

Դուք զայն յապայս յուշ ածիցէք . բայց
որդ լուարուք իմ ձայնի .
Քաջ Թիավարք , հարէք զանդունդս .
Դիոս կայ մեզ հովանի ։
Այլ որ զքեզին ունիս նաւուն , զայս
պատուիրեմ քեզ ով քաջ ,
Միտ դիր ողջիկ , ուղղեա ըզ լաստն 'ի
գուպս ծըխոյն և յալեաց ,
Դու զակն 'ի ժայռըդ կառուցես , մեկ-
նեաց անտի հանապազ ,
Մի՛ մեզ , այր դու , աղէտ ամբաւ առագ
ածցես օրահաս »։

Լուան ձայնիս , այլ զԽակկիլլայն լուեմ
զաղէտն անդարման ,
Մի՛ սրտաբեկ Թիավարողք լքցեն ըզԹիս
միաբան ։
Անյուշ Կիրկեայ գժնի բանին՝ այն որ
արգել ըզգէնս իմ ,
Ես զէնս պայծառ արկի զանձամբ և ոտք
կրկին 'ի ձեռին .
Լաստափայտին ելի 'ի գլուխ , ասեմ , ան-
տի Թափ տացէ
Սկիլլա վիրագն բնակիչ ժայռին , և զիմ
ընկերս հափափէ .
Ոչ կարացի ես ուշ ունել , զի յոգնեցան
անդ աչք իմ
Ցայս կոյս յայն կոյս ակնակառոյց սոսկ-
մամբ ընդ ժայռըն մըթին .

Յոդւոց հանեալ անցանէաք մեք ընդ կա-
ծան Նրբուղի .
Աստի Սկիւլլա , անտի Քարիբդ ահեղ կլա-
նէր ծով անդի .
Յորժամ ժայթքէր , ծով պղպըջայր իբրև
կաթսայ յեռանդան ,
Ցնցուղքն 'ի վեր անկանէին կրկին ժայ-
ռիցն յարտևան .
Երբ կլլանէր զաղին ըղջուր , ծովըն փլու-
զեալ յանդընդոց
Բոմբէր զժայռիւ , բանայր յատակն 'ի կա-
պուտակ աւազոց .
Մինչդեռ ողջոյն 'ի գոյն դալկան սար-
սիմք յահէն Քարիբդեայ ,
Անդուստ Նաւէն վեց քաջորեար առ հա-
փափեաց Սկիւլլա .
Դարձայ տեսի ես զեղկելիան ոտիւք , ձե-
ռօք վերամբարձ ,
Տատանիք ընդ օդս , ձայնեն Ոդիսս , ըղ-
ձայն վերջին եղկութեանց .
Ջոր օրինակ 'ի ցուպ երկայն կացեալ
ձկնորսն յապառաժ ,
Խայծ խաբուսիկ ընդ կարթն հարեալ
մանրիկ ձըկանց օրահաս ,
Առեալ 'ի ծովըն սուզանէ զեղջիւր եզին
ըղվայրադ , 51
Եւ ըմբռնեալ , մինչ թինդըս տան , հանէ
ձըգէ 'ի ցամաք ,

Այսպէս զնոսա, մինչդեռ տրտմեան, ընդ
ժայռն 'ի վեր ամբառնայ,
Եւ առ ժայռին գօշէր ուտէր գրժոխա-
կուղն Խսկիլա.
Յիս ըզմատունս տատանէին գերաշխա-
րան տագնապի.
Ողջ յաղէսս իմ ծովակըլուկ այս ինձ տե-
սիլ ողբալի։
Սկիլլեայն ժայռից մեք անձնապուրք և
մահահոտ Քարիբդին,
Արագ նաւեալք յառաջադէմք հասաք
'ի վէհ 'ի կղզին.
Անդ արածին արօտականք լայնաճակատ
պերճ անդեայք,
Ջոկ վերնաձեմն Արեգական, շատ և օ-
դեաց յոյր դասակք.
Լուայ նաւէն զոգեաց մայիւն, զբառաչ
զեզանց պառակին,
Ցուշ եկն ինձ բան Թեբայեցւոյն կոյր Տի-
րեսեայ գուշակին.
Զայն և Կիրկէն Էյայեցի ինձ երկրոր-
դեաց 'ի խրատուն,
Մի Թարթափել մեզ 'ի կղզին ակնապա-
րար Արեւուն.
Զայն տամ իմոցն. « Աղէ, համհարզք
վշտաչարչարքդ ունկըն դիք,
Ըզ Տիրեսեայն և ըզԿիրկեայն պատգամն
յայտնեմ ձեզ ողջիկ.

Գորտ է խուսել ինձ 'ի կղզւոյ անձնապա-
րար Արևուն.
Անդ մեզ աղէտ անհընարին դուժեաց
Կիրկէն 'ի խրատուն.
Օ՜ն ընկղզեաւդ անցէք արագ». Լուան,
բեկաւ սիրտ նոցա.
Ցարեաւ անդէն Եւրիլոքոս և բան պար-
սէր ինձ դժնեայ.
« Անգութ Ոդիս, անընկճելի, երբէք
ոգիդ ոչ խոնջի.
Արդարև քո ներքինքդ ողջոյն են 'ւ ար
տաքինքդ երկաթի.
Ցամաք ունել դու զըլանաս խոնջ և տըք-
նեալ ընկերաց,
Ի մօտ կղզիս չըտաս կահել մեզ կշտա-
պինդ հաց ընթրեաց.
Դու ընդ գիշերս արադահաս մեզ երե-
բել վայրապար
Տար 'ի կղզւոյս հրաման կարդաս ընդ
մուլթ անդունդըս Թափառ.
Հողմունք սաստիկք 'ի գիշերաց, մահունք
նաւուց, արձակին.
Եւ ո՛ զերծցի դառն յորհասէն եթէ յան-
կարծ մըրըրկին.
Կամ հարաւոյն կամ դիւաշունչ զեփիւ-
ռոսին 'ի փչմանց,
Որք և ըղլաստն անշուշտ քակեն գից ար-
քայից յակամայս.

Արդ մեք հնազանդք մութ գիշերոյն ըն-
թրիս տուցուք մերձ նաւու,
Վճռաքաջ ընդ այգն ելցուք 'ի վեր, մըտ-
ցուք 'ի ծովն ահարկու »:
Լուան ողջոյն և հաճեցան. անշուշտ
ծանեայ ես յայնժամ,
Թէ մեզ տղէտ նիւթեաց Քաջ ումն. հրա-
պուրողին ձայն կարդամ.
« Միաբանեալքդ, Եւրիղոքէ, տագնապ
ածէք միայնոյս.
Այլ մղէ դուք առ հասարակ երդուեալք
անսուտ ինձ երդմունս.
Թէ ջոկ զանդեայց և կամ զօդեաց տես-
ջեք դասակ գեղապար,
Մի՛ խոլացեալ մի՛ ոք 'ի սպանդ տարցի ար-
ջառ կամ ոչխար.
Կերայք անդորր ըզկերակուրն, զոր մե-
ծարեաց զմեզ Կիրկէ ».
Լուան անդէն և ուխտս եդին յանդրժե-
լին երդմանէ.
Ըզնաւն 'ի խոր 'ի նաւահանգիս մերձ կացու-
ցաք առ աղբեր,
Ելին նաւէն և ժիրաժիր ընթրիս կազմեն
առ եզեր.
Կերան, արբին. զարան յուշ ածեն կոր-
զեալս գօշեալս 'ի Սկիլլայ,
Լան դառնապէս. տրտմագգեցին հաս
անոյշ քունն 'ի վերայ:

Աստեղք յերկինս հոլովեցան. պահն էր
երրորդ գիշերին
Հողմ յուզեցաւ յԱմպրոպայնոյն խառ-
նեալ յահեղ մըրըրկին.
Զերկիր ըզծով ամպովք ծածկեաց, յերկ-
նից պատեաց մութ ամքոն,
Մինչև ծագեաց այդ վարդամատն առ-
նումք ըզնաւն 'ի յանձաւ.
Էր խոր անձաւ ուր պարք չքնաղք յա-
ւերժհարսանց գեղապար,
Ուր և բազմոցք. մէք անդ մուծաք ըզնա-
ւահայան 'ի դադար.
Խմբեալ զորեարն, ասեմ. „Ի նաւն ո՛ բա-
րեկամք գոյ ձեզ հաց,
Գոն կերակուրք, գոն ըմպելիք. ըզգոյշ
լերուք 'ի յանդեայց:
Այդ պերճ անդեայք, այդ մեհ օդիք
Աստուծոյ են ահեղին,
Արփւոյն ասեմ ամենատես ամենալուր
արքային.
Պատկառ կացցուք. մի ինչ կրեսցուք". —
լուան ըզբանն և անսան.
Սակայն անդուլ զամիսն ողջոյն չնչէր հա-
րաւ մեզ յայնժամ.
Եւ թէ դըլայր, հողմ ոչ շնչէր բայց ա-
րևելք և հարաւ,
Եւ արքն անդեայց պատկառ կային մինչ
հաց գինի գոյր 'ի նաւ.

Հնազանդ կային խմոյն ձայնի համայն
'ի սէր և կենաց․
Մինչև նաւուն ըսպառեցան պաշարք ող-
ջոյն ճարակաց․
Սով տագնապէր․ 'ի յորս հաւուց և կոր
կարթիւք յորս ձկանց
Շրջէին որսան զոր և գտանէին նքթեալք
անդէն սովատանջ։
Ես ընդ կղզին մեկուսացեալ մաղթել առ
դիս անդանօր
Վասն իմ դարձին, լուացի ըզձեռս, յա-
ղօթս կայի վայր յանդորր։
Երբ ինձ յաղօթս դիքն ողիմպեանք
քուն քաղցր հեղին իմ աչաց,
Անդ Եւրիղոք հրապոյր պղտոր արբու-
ցանէր ընկերաց․
« Լուարո՛ւք տանջեալքդ առ հասարակ․
մահուանք դառինք են ողջոյն,
Այլ սովամահ հիքացելոց մահն է աղէտ
դառնագոյն․
Եկայք զընտիրս յանդեայց Արփւոյն յա-
զեմք անմահ Ողիմպեանց,
Հասեալք յԻթակ անդէն Արփւոյն տա-
ճար կանգնեմք գեղապանծ,
Տաճար փարթամ․ դիցուք 'ի նմա արդոյ,
առատ, և ձօնիւ․
Տեսցուք փոխան եղջերաբերձ անդեայց
նուէր մեզ չարիս․

Թէ 'նդ դից ողջոյն դրժէ նաւուս, մահ
ծովակուր միանգամ
Ընտրեմ յաւէտ, քան յանմարդի կղզւոջ
ծիւրիլ 'ի վախճան ».
Լուան, խնծղիւք յարեան անդէն զըն-
տիրսն յանդեայց վարեցին,
Չի մօտ յարօտ լայնաճակատք կամար-
եղջիւրքն անդ կային.
Բակ ըղնդքօք յաղօթս առ դիս փափուկ
սաղարթս յաղթ կաղնւոյն
Կորզեն 'ի ձօն. զի չունէին գարի սպիտակ
'ի նաւուն.
Կացեալք յաղօթս զենուն մորթեն, զաղ-
դերս հատեալ պատեցին
Կրկին ճարպով, և 'ի վերայ ըղհում յօ-
շուածս կարդէին.
Գինի հրակէզ ոչ ունելով 'ի նուէր ձօնիցն
'ի ցօղման,
Խորովէին զընդերսն ողջոյն՝ նուիրելով
ջուր փոխան.
Զխասքս այրեցան, առին զճաշակս, մանր
յօշատեալք շամփրեցին.
Քունս անուշակ հատաւ յաչացս, յա-
րեայ երթալ 'ի նաւն իմ ։
Այն ինչ մերձեալ, բուրեաց ճենճերն
զհոտ խորովոյն քաղցրութեան,
Յոդւոց հանեալ եւ անմահից ողորմելի
ձայն կարդամ.

« Արամազդ հայր, և դիք յաւէժք, ինձ
քոյն հեղէք դառնագին.
Զեան մեծապէս. զի անդ որեարն ոճիր
գործեաց ահագին »:
Բայց մեծ Արփւոյն արագ զուժկան երթ
քօղազարդ Լամպետէն, 52
Բողոք բառնայր, զենա՜ն անդեայք, Ար-
փին ձայն դից ետ անդէն.
Զայրացեալ էր. « Ո՜վ Զևս, ո՜վ դիք, ըզ-
վրէժ լուծցեն Ոդիսեանք.
Ահա սատահակ այն որերոյն 'ի սուր զե-
նան իմ անդեայք.
Անդեայք փառքն իմ, երբ յաստղազարդ
ես 'ի յերկին ամբառնամ,
Եւ միւսանգամ առ 'ի յերկնից յերկիր
'ի մայրն իմ դառնամ.
Թէ ոչ լուծցեն նոքա զարժանն ըզ փո-
խարէն զանդէոց,
Ես 'ի դժոխս իջեալ հապճեպ անդ լոյս
ծագեմ մեռելոց »:
Կարճեաց անդէն ամպրոպայինն, « Դու
ո՜վ Արփի լուսակիր,
Դու անմահից լոյս և մարդկան 'ի կեն-
սատուն տո՜ւր երկիր.
Արագ արագ 'ի նաւ դոցա ես հեշտ ար-
կից շանթ հրացան,
Ըզ լաստն հարեալ քայքայեցից 'ի մութ
ծովուն ցիր և ցան »:

Զայս եւ լուայ 'ի բերանոյ վարդապետղցն
Կալիփսեայ.
Եւ ինքն ասէր լուեալ յառաջ 'ի հրեշ-
տակէն 'ի Հերմեայ:
Հաստեալ 'ի Նոյան, անդէն զայր այր կըշ-
տամբեցի առանձին.
Բայց անդարձան էին աղէտքն, զի պերճ
անդեայց գործեցին.
Այլ փոյթ նոցա դիք խօլականս հրեշէից
սոսկմամբ ցուցանեն.
Տողան կաշէք, հում և խորով միսքն 'ի շամ-
փուրս բառաչէին.
Իբրու զեզանց ձայն լըսէին. այնպէս մեզ
որ առնուն հաց.
Ուտէն խորովել այն յանցաւորքն զըն-
տիրան Արփւոյն 'ի յանդեայց.
Յոր եօթներորդ յԱրամազդայ մրրիկ
հողմոյն դադարեաց.
Ելաք 'ի Նաւն, մըտաք 'ի ծով, պարզեմք
'ի կայմն առագաստ,
Մեկնեալք կղզւոյն, չէք այլ երկիր, ծով
երևէր և երկին.
Ըզ Նաւն 'ի մէջ պատեաց Դիոս, ան-
դունդք ներքոյ մըթագնին.
Նաւըն քայլեաց վայր մի յառաջ, զե-
փիւռ շնչեաց յեղակարծ,
Մրրիկ հողմոյն ահեզակերպ խուժեաց
կայմին կառանաց.

Ուժգնահնչակ խզեաց զկառանսն, ան-
կաւ Թափ կայմն 'ի կործան,
Ի գոգ Նաւուն Թօթափեցան և ողջ կազ-
մածք նաւական.
Ղեկավարին 'ի խելս Նաւուն ջախէր գըլ-
լուխն 'ի կայմէն,
Ողջ և ոսկերք փշրեին գլխոյն, ինքըն գլե-
ցաւ 'ի Նաւէն.
Թմբեաց 'ի ծով իբրև լուղորդ, զոգին
փչեաց եղկելին,
Զևս որոտեալ անդ խիտ առ խիտ շան-
Թեաց հրացան 'ի Նաւէն.
Սասանեցաւ ողջ լաստափայտն հարեալ
'ի շանԹին աստուածեան,
Հոտ ծըծըմբոյն գրաւեաց ողջոյն, այրքն
'ի Նաւէն հոսեցան.
Շուրջ Թօթափեալք իբրև ագռաւք յա-
լեաց վերայ ծըփային.
Ա՜յ հիքացեալք. Աստուած ինքնին զլա-
նայր նոցա զօր դարձին:
Ես 'ի Նաւուն. մինչև մըրրիկ քակեաց ըղ-
կողմն 'ի տաշտէն,
Այնպէս մերկիկ 'ի բուռն ալեաց տաշ-
տըն ծըփայր ապաշէն.
Նաև զկայմին խլեաց մըրրիկ զհաստեալ
խարիսխն 'ի գոգէն,
Եւ էր անդ փոկ պատատ 'ի կայմն 'ի քե-
մխոյ արջառին.

Առեալ զայն փոքն, ըզգոգն ըզկայմն 'ի
միասին պրկեցի.
Նստայ 'ի յայնս, և դիւաշունչ ես 'ի հող-
մոյն ծըփայի.
Մըրըրկաշունչ ըն զեփիւռոս վայր մի
յայնժամ դադարեաց,
Հարաւ խուժեաց արագապէս, տագնապ
մահու ինձ էած.
Խնդրէր հարամն վարել կրկին զիս 'ի Քա-
րիւբդն ահագին,
Զողջոյն գիշերն այնպէս վարէր մինչև
ցըլոյս արեգին:
Ընկի Սկիլլեան 'ի ժայռն ահեղ և Քա-
րիւբդեանն 'ի վերայ,
Երբ նա զաղին ջուր զանդնդոց կլանէր
իբրև ըզմկշապ.
Ի շտապ ժամուն ես յայն'ի յաղթ ժանտ
Թըզենին վերոստեայ,
Պինդ ընդնովաւ շաղապատեալ իբրև չղջիկ
անդ մածայ.
Չէր ինձ հընարք ելից 'ի վեր, և ոչ ոտից
գոյր կըռուան,
Արմատքն էին երկայնաձիգք, ոստք բար-
ձրուղէշք բացական.
Ոստք երկայնեալք և ահագինք հովանա-
նան Քարիւբդեայ.
Անդ ես մածայ մինչև անդրէն ըզկայմն
ըզտաշտ ժայթքէ նա.

Եհաս ինձ ժամըն անձկացեալ, երբ դա-
    տաւորն յատենէ,
Պայքարս բանդուամս դատեալ զմարդկան,
    զընթրիս առնուլ յոտն յառնէ 53.
Յայնժամ Քարիբդ 'ի դուրս ժայթքեալ,
    բեկորքն 'ի ջուր ծածանին,
Ես 'ի վերուստ կազմիմ պարսել գտանել
    'ի ծովն ինձ զուղին.
Անկայ դոփմամբ 'ի մէջ ալեաց այն ա-
    տաղձիցն առ ընթեր,
Վերանստայ և ձեռն իմ անդ փոխան թիոց
    զիս վարէր:
Եդ զիս Դիոս անտես Սկիլլայ, պահեաց
    'ի դառն օրհասին.
Այրեալ այնպէս ինն օր յանդունդս ես
    ալէծուփ տարբերիմ:
Իր ինձ գիշերն այն տասներորդ, ածին
    զիս դիքն յՈվգիգէ,
Ուր վարսագեղ բնակիչ կղզւոյն էր դի-
    ցուհին Կալիփսէ.
Նա մարդասէր հիւրընկալու առեալ զիս
    անդ 'ի յալեաց,
Բազմահանդէս զիս մեծարէր. այլ զի՞ է
    ինձ պատմել զայս.

*Երէկ, արքայ, քեզ ճառեցի և հոյակապ*
*դշխոյին.*
*Եւ դըժնդակ է զճառ բանին անձուկ*
*պատմել վերստին »:*



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ոդիսեւս յետ կործանմանն Տրովադայ՝ 'ի դառնալն իւրում 'ի հայրենիս իւր յԻթակէ, շատ ինչ թափառեցաւ աստ և անդ բազմադիմակ վշտակրութեամբք՝ իբրու պատուհասեալ 'ի Պոսիդոնէ, զի կուրացոյց զանհաղթին միակն զԿիկլոպս Պոլիփեմոս զորդի Պոսիդոնի։

2. Ընկերք Ոդիսեւսայ ուղեկիցք կորեան առ հասարակ յուղւոջ. քանզի անսաստեալք Ոդիսեւսայ՝ ընդդէմ Պատգամի դիցն ժողովեցան առ քաղցուն ուտել 'ի Սիկիլիա յանդէոց անասնոյ՝ որ նուիրեալք էին Արեգական։

3. Եգիսթոս որդի Պելոպեայ հարեալ 'ի սէր կնոջն Ագամեմնոնի, սպան զԱգամեմնոն արքայ համակամութեամբ կնոջն՝ յետ դարձին նորա 'ի Տրովադայ։ Իսկ ապա Որեստէս մանուկ որդի Ագամեմնոնի 'ի չափ հասեալ 'ի վրէժխնդրութիւն արեան հօրն սպան զԵգիսթէս։

4. Ոդիսեւս տարագնեալ 'ի հայրենեացն արգելեալ 'ի դիցանուհւոյն Կալիփսեայ 'ի կղզւոջն, անձուկ մահուչափ երկէր հայ

ընեռացն՝ տեսանել մինչև և զծուխն ան-
դամ արձակեալ 'ի ծխահանից անտի եր-
կրին իւրոյ:

5. Հռոմանեացն կամ տարփածուացն դասակք յԻթակէ՝ որդիք անուանց 'ի տարագիտութեանն Ոդիսեայ տարփացեալք առնուլ 'ի կին զՊենելոպէ զկին նորա, հանապազօրեայ շուայտութեամբ վատնէին զինչս Ոդիսեայ 'ի տան անդ նորա:

6. Λαέρτης ծերունին՝ որդի Արկեսեայ դիւցազին՝ հայր մեծին Ոդիսեայ, հաւն Տելեմաքեայ:

7. Ἰκάριος որդի արքային Լիկայոնիոյ, հայր Պենելոպեայ:

8. Θέμις. դուստր երկնի և երկրի, քոյր Արամազդայ, դիցուհի Արդարութեան: Քանզի և Θεμις, 'ի յն. նշանակէ. Իրաւունք, Օրէնք:

9. Այս հռչակաւոր խորագիտութիւնն էր Պենելոպեայ կնոջն Ոդիսեայ, 'ի դեգերեցուցանել զտարփածուս իւր մինչև 'ի դարձ ամուսնոյն. դաշն եդեալ ընդ նոսա՝ յետ երից ամաց 'ի չերևել Ոդիսեայ ամուսնանալ ընդ այլում: Նմանապես զամս երիս ոստայն մեծ անկանել 'ի ռուէ, և քակել զնոյն 'ի գիշերի, մինչև դարձաւ ամուսին իւր Ոդիսեւս: Նուապա այս հնարիմացութիւն Պենելոպեայ յառակս եղև վասն ժամանակաձգաց խորագիտութեանց, ասել. Ὑφαίνειν 'ի φωτί, և λύειν 'ի νυκτί:

10. Զայսոց դժոխականաց ասէ, յա-

րոց զանգիտէ Տելեմաքոս՝ զի մի յանի֊
ծանել զինքն մօրն, ըլկեսցեն նոքա զնա ։

11 ․ Աքանչելի է Հոմերոս, զի զանց
երբէք չառնէ ՚ի քերթուածս իւր՝ ըստ
պատեհի իրացն միշտ ՚ի բարոյականն
հրահանգել զժողովուրդն ․ յաստուծոյ
նախախնամութիւնն միայն ապապարել
զամենայնն ։

12 ․ Բնածին գեղեցկութեամբք և
ճարտարահիւս պարզութեամբ և կեն֊
դանատիպ նկարուք՝ հօծեալ է բովան֊
դակ Ոդիսականն Հոմերի ․ ՚ի վէպս զար֊
մանազանս՝ զբարոյական հրահանգս այ֊
լաբանելով, [illegible], որպէս
վկայեաց Քերթողահայրն մեր, [illegible]
[illegible]։ Զայս միանգամ յուշ առ֊
նեմք վասն ամենայնին ։

13 ․ Տե՛ս զայսոսիկ յառաջին մա֊
տեանն Հոմերի՝ յԵղիականն ։

14 ․ Երկուց եղբարց, Ագամեմնոնի մե֊
ծի արքայի, և Մենեղաւոսի արքայի ։

15 ․ Զառածս Ճշմարիտս՝ ոսկեզինիկս
ջանայ միշտ Հոմեր յեռուլ ՚ի քերթուա֊
ծին ․ որ այն ինքն է կնիք գիւցազնական
Քերթութեանց ։

16 ․ Տե՛ս վերագոյնդ, ՚ի ծան ․ 3 ։

17 ․ Գովէ Հոմեր զերկիրն Եգիպտա֊
ցւոց, ոչ միայն իբրու բազում բժշկական
արմատոց և օգտակար դեղոց բուսուցիչ,
այլ և ներհուն բժշկաց վերբերիչ ։

18 ․ Ցիշատակէ զհռչակաւոր զահա֊
գին զերիվարն փայտակերտ, զոր մենքե֊

Նայեաց Ողիմպոս 'ի խաւարանսն կործա-նման Տրոյիոյ, և զոր կերպեաց Եսքիոս ճառասաց ժամանակին:

19. Յայտնի է ճանապարհորդութիւն Հոմերի յԵգիպտոս, զորոյ և զհանդա-մանս նկարագրէ սոա և 'ի յետագայս. որպէս յուշ արարեալ է մեր և յԵգիպտա-կանին: Իսկ զոր վայր մի սորա տայ Հոմերոս Ալոսիւդնէ, նշանակէ Ծովածին. և է մակդիր Թետեայ՝ Յաւերժահարսին ծովու:

20. Հռադամանթոս, որդի Արամազդայ և Եւրոպայ՝ ըստ առասպելին, եղբայր Մինովսի, 'ի Սանդարապետէն առ մեծի արդարասիրութեանն ընտրեալ 'ի դա-տաւոր Դժոխոց:

21. Այս այն է սատցեալն մերոյն Քեր-թողահօր Խորենի. զոր առնու 'ի Հոմերէ, 'ի Պատմ. եթէ Մէջյաղանաւք ապառաժոց ուէրձանք:

22. Λάρος. Թռչուն ծովային, յաւիրշ-տակող:

23. 'Ηώς որ է Այգ, ըստ առասպելին՝ դուստր արեգական և երկրի: Իսկ 'Ωρίων, Հայկ, ըստ առասպելին՝ որդի Արամազ-դայ և երկրի:

24. Որտիգիա. կղզի յԱրշիպեղա-գոսի. այն է՝ Դելոս: Կղզի՝ ըն լորամար-գիք. վասն այնորիկ և կոչեցաւ այնպէս, զի Որտիքս, 'ի յն. է Լորամարգի:

25. Տես յԵգիպտականն Հոմերի: Եւ զԱնջղաղանն յամբառնալ առէ Հոմ. քերթու

վասն Դիդեայ (Թագուհւոյն)․ Ենէա-կան․ Գ․ Ա․ 689․

«Անդր՚ի տաճարն եմուտ գշխոյն գեղանի,
Շուրջ բազմահոյլ պատեալ զնովաւ ման-կտի ։
Իբր Արտեմիս յեզր Եւրոտայ գեղապար,
Կամ՚ի Կինթեայ ձեմի լերինն՚ի կատար,
Եւ Որէադք աստի անտի բազմաբիւր,
Երամովլին խուռն ընթանան ըզհետ իւր․
Կրէ կապարճս՚ի յուս, և ինքըն վըսեմ
Ըզդիցուհեօքն ամենեքումբք է՚ի ձեմ․
Խանդաղատի անդ Լատոնէ՚ի տեսոյն
Զանխուլ՚ի սիրտ իւր խըլըրտեալ ցըն-ծութիւն․
Այսպէս Դիդէ զըւարթ ձեմէր անդանօր
Արքայութեանն՚ի կազմ, երկոցն՚ի յոր-դոր »։

31․ Յիշատակէ Կիկերոն, Օրէն․ Գիրք, ա․ զհրաշալի զայս արմաւենի․ « Զոր Հոմերականն, ասէ, Ոդիւսէս ՚ի Դեղոս վկայեաց զանձնէն տեսեալ զառաջագահա-սակն զայն և զնորատունկ արմաւենին․ զնոյն և մինչև ցայսօր ցուցանեն ան-դանօր »։

32․ Հօրէղջօրն․ այս է՝ Պոսիդոնի, որ ոխերիմ հանդիպացն Ոդիւսեայ․ գոլով Աթենաս դուստր Արամազդայ՝ եղբօր Պոսիդոնի։

33․ Որպէս և յԵղիականին ասաց Հո-մեր, եթէ՝ Չիք ինչ արագագոյն քան զխորհուրդս մտաց մարդոյ։

34․ Են երեք քորք առասպելեալք՝

ադօր և 'ի չքնաղ Դիւցազունս ․ ուսա-
տի և Κλυτος , Հոյակապ կոչէ զնա , Ճա-
հագրեալ 'ի խորենեան նկարագիրն, Յու-
շինմ ունայն և 'ի տաճարագանգուրն և 'ի խայտակն :
Զոր և այլուր Πελωριος, Վիթխարի , կոչէ
Հոմեր : Իսկ յիշատակութիւն սակաւլ
Հսկայից 'ի Հոմերէ , ակնարկէ 'ի բան
Գրոյն ․ Ծննդ ․ « Էին , ասէ , 'ի վերայ
երկրի Սկայք , որք յաւիտենից արք անուա-
նիք » : Եւ Սկայից այսոցիկ սաստիկ ըն-
ծայելով Հոմեր զերկնամուխ յանդգնու-
թիւնն քերթողաբար՝ լերինս 'ի վերայ
բառնալով լերանց , ակնարկէ 'ի շինու-
թիւն վաղամիուլ երկնաբերձ աշտարա-
կին , և զառ նովաւ զաստուածատատ
պատուհասն :

45 ․ Ոսսա , լեռն է Թեսաղիոյ : Ո-
ղիմպոս , Մակեդոնիոյ :

Եւ Պելիոն , լեռն է 'ի Թեսաղիա :
Մի 'ի հաղարայն՝ զոր 'ի փոխ 'ի վարժա-
պետէն էառ Վիրգիլիոս , է և այս՝ զոր
երգեաց գեղեցիկ՝ 'ի վանմական յուրում
Մշակականին այսպէս ․ Ա ․ 281 ․

« Թափ երիցս եսուն զՈսսան դընել Պե-
    ղեայն 'ի վերայ,
Եւ յՈսսան բարդել գիզան զանտառա-
    խիտն Ողիւմպոս ,
Շանթ երիցս և Հայրն ընկէց , հարթեաց
    ըզՍարան երկնաբերձ » :

Այլ Հոմերոս Անփոփոխեթ ոչ զՈղիմպոս
ասէ , այլ զՊեղիոս լեռն :

46 ․ Տես 'ի վեր ․ 'ի ծան ․ 3 :

47. Տե՛ս 'ի վեր. 'ի ծան. 18։

48. Ակնարկէ 'ի հրահոսան թափիս Հրաբխեացն՝ Եթնայ և Վեսուվի։

49. Ակնարկէ 'ի Տեղատուութիւն և 'ի Մակընթացութիւն Ջուրցն 'ի ծովու։

50. Մայր և ծնօղ Սկիլլեան դժուարանցանելի Նեղուցին կոչէ զԿրաթէ. քանզի Կրաթէ է գետ 'ի Կաղաբրիա։

51. Քանզի սովորեալ էին Ձկնորսք՝ ընդ մէջ կարթին և լարին յարմարել և կապել կոտորակ մի կապարեալ յեղջերէ եզին, զի անխզելի կացցէ լարն 'ի ձկանց։

52. Լամպետիա, ըստ դիցաբանից դուստր Արեգու և Կղիմենեայ։ Քանզի և Λαμπετίς. յն. է՝ Նշոյլ, ճաճանչ։

53. Կամի ասել. ընդ երեկս աստղերն, յորում պահու՝ ատենակալք և դատաւորք քաղաքին յառաւօտուց նստեալք յատեանս և զբաղեալք 'ի գործ պաշտամանցն՝ 'ի լուր դատից և պայքարոց քաղաքայնոցն, թողեալք ապա յատենէն դառնալ 'ի տուն և հաց առնուլ զերեկին։



# ՀՈՄԵՐՈՍԻ

## ՈԴԻՍԱԿԱՆ

## Ժ.Բ.



Վենետիկ

ի Սուրբն Ղազար

1848.

Digitized by Google

# ՀՈՄԵՐՈՍԻ
# ՈԴԻՍԱԿԱՆ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ Ի ՀԵԼԼԵՆԱԿԱՆԷ

Հ. ԵՂԻԱ Վ. ԹՈՄԱՃԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ

ՀԱՏՈՐ Բ.



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՌՄՂԶ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ․

Նորոգ ընծայաբերութիւնք առ Ոդիսևս ։ Զետեղեն զամենայն 'ի Նաւի ։ Հրաժեշտ առնու Ոդիս յարքայէն ․ Հաստուցանեն զնա ողջամբ յԻթակէ մինչ դեռ նա 'ի քուն է ։ Իսկ 'ի դառնալ անդրէն նաւուն, Պոսիդոն ոխերիմ նաւագնացութեանն Ոդիսեայ, 'ի քար փոխարկէ զնաւ զայն Փէակեցւոյն ։ Զարթնու Ոդիւս ոչ ճանաչէ զհայրենիս առ Թանձրամած միգի ․ Աթենաս փարատէ զմէգն երևեալ նմա 'ի կերպարան հովուի, ուսուցանէ նմա զօրինակ սատակելոյ հոմանեացն ․ և զառեալ ընծայսն տայ նմա ծածկել յանձաւի ուրեք ։ Ի վերջէ ուրեմն փոխարկէ զՈդիս 'ի մուրիկ ոմն հնօրեայ, որպէս զի մի ոք յԻթակէ յանկարծ ծանիցէ զնա ։



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ

Ասաց լռեաց. առ հասարակ զմայլեալք
'ի լուր պատմութեանց,
Կային լռիկք. մինչև ուրեմն Ալկինոոս
ձայն կրկնեաց.
« Անշուշտ Ոդիս, հասեալ քո աստ 'ի
մեծամուր 'ի տուն իմ,
Չարչարագդեացդ այլ ոչ լիցիս դու ծովա-
ծուփ 'ի դարձին.
Այլ ձեզ ասեմ քաջորերոյդ, որ աստ
առնուք ըզլբաժակ
Զանոյշ գինւոյն, զմայլեալք լսել զերգա-
հանին մեր նուագ.

Զորք և ընծայք առ հասարակ. հրաշակերտուածք և ոսկւոյն ,
Զոր մեր աւագք ածին հիւրոյս, չքնաղ յարկեղ կան ողջոյն։
Ազէ, և մեծ եռոտանի տացուք մյր այր և ըղսան ,
Դարձեալ 'ի նոյն պատուակրել յորդո-
ինեցուք ըղխուժանն .
Ծանր է միոյն ընծայաբեր գոլ բոլորին 'ի ժամուն ».
Ասաց արքայն, և կոչնականքն հաւանութեան ձեռն ետուն։
Այր այր 'ի տուն չոգաւ հանգչել, մինչ վարդամատն այգ ծագեաց
Եւ փութապէս ածեն 'ի նաւն զընծայսն արդոյս պղնձեաց .
Ինքնին արքայն ընդ նստոցիւք կարգեաց ըզկահ պղնձեան ,
Եւ զգուշացաւ զի թիավարք թիշարժեսցեն անխափան ։
Պարձան ապա 'ի խրախութիւն 'ի տուն մեծի արքայի ,
Ու Ալկինոս յաղէր արջառ Ամպրոպայնոյն հըղօրի .
Այրեալք ըզթամբըս զաղդերաց, կոչունս կարգեն մեծահաց
Զուարճանային, և Դեմոդոկ երգիչն երգէր գերազանց .

Այլ Ոդիսեւս ակնակառոյց ըստ էպ յար-
փին լուսափայլ,
Ե՞րբ նա արագ դարձցի 'ի մայրն, էր անձկ-
այրեաց 'ի դառնալ.
Որպէս դեղձուկ անձկայ հացին, երբ
սեաւ եղինք քաղցամուր
Ըղձիւն ողջոյն ընդ անդ երէզ ձրգեն
զարօրն հաստակուռ,
Սպասէ յոգնեալն ընթրեաց ժամուն 'ի
խոնարհել արեւուն,
Խնդայ ընդ ժամն և խոնջ ծնդովք գնայ
ընթրել նա 'ի տուն.
Այսպէս Ոդիւս ընդ մուտս արփւոյն
խնդաց, ձայն ետ փէակեանց,
Եւ առաջին Աղկինոսին. « Լսեր դու, ար-
քայդ գերապանծ.
Հանէք նուէր, գնացից ողջամբ, և դուք
ողջամբ մնասջիք.
Իղձք իմ լցան. կազմ է ուղիս. կազմ են
ընծայք գեղեցիկ.
Դիքն երկնաձեմք ձեր ընծայիւքն հովա-
նացին ինձ 'ի տան.
Վեհ զամուսինս ողջամբ գտից և զսիրե-
լիս ողջանդամ.
Դուք աստ մնացեալք պարկեշտ հար-
սամբքդ և զաւակօք բերկրեսջիք
Բարեբաստիկք եղեալք 'ի դից, մի ինչ
հասցեն ձեզ չարիք »:

Ընդ օրհնութեան բանս Ոդիսեան յոյժ
 մեծապէս խնդացին,
Ճեպ տան ուղղոյն և մեծ արքայն ձայն
 զայս կարդաց Քարոզին.
« Արի՛ Պոնտոն, խառնարանէն բաշխեա՛
 ընաւից անապակ.
Զօնեալք Դիայ և մեր հիւրոյն դարձ
 մաղթեսցուք յաջողակ ».
Խառնեաց Պոնտոն զանոյշ գինին, եկաց
 բաշխեաց բոլորից,
Զոն նուիրեն երկնաբնակաց այր այր յիւ
 րեանց գահոյից.
Յարեաւ Ոդիս տաշտ բոլորակ եդ 'ի ձե
 ռին Արետի.
« Խնդա՛, ասէր, դու յաւիտեան ո՜ հոյա
 կապ Թագուհի,
Մինչև ալիքն առցեն ըզքեզ, օրհաս ընա
 ւից տնկակից,
Ես արդ 'ի քէն ուղղոյ լինիմ, դու աստ
 կացցես բերկրալից.
Մայրըդ բերկրեալ 'ի զաւակաց, բերկ
 րեալ 'ի քոյ խուժանէն,
Բերկրեալ խապառ յերջանկափառ յԱղ
 կինոսէ արքայէն »։
Ասաց, ընդ սեամն ել Ոդիսէս. Քարոզն
 յարեաւ կարապետ.
Ըզսա արքայն եդ ընդ նորին ածել 'ի
 նաւն հետ ընդ հետ.

Դշխոյն ընդհետ յղեաց նաժիշտս. մին ձորձ տանէր ջինջ պայծառ,

Նոյն և լօդիկ. և միւս նաժիշտ զարկղն ամրափակըն բառնայր.

Երրորդն ընդհաց բարձեալ տանէր և ընդ կարմիր ընդգլխին.

Հասեալք 'ի ծով, նաւազք զպարէնն առին եդին 'ի նաւին.

Ի խելս նաւուն գորգ և կրտաւ սփռեն հիւրոյն յանոյշ քուն.

Եւ նա լռիկ ընկողմնեցաւ. նաւազք Թիոց կարգ եդուն:

Րուինն նստոցս, 'ի ծակ վիմէն առեալ զպարանն ձգեցին,

Եւ կորովի Թիավարեալք հարուն ըզջուրն ընդծովին.

Յարաւանուանըն Ոդիւսեայ անդ քուն անկաւ Թանձրութեան,

Քաղցր և անոյշ նինջն էր խորին մահահանգոյն Թմբրութեան.

Իսկ նաւն յայնժամ որպէս 'ի դաշտ ձիք քառալուծք 'ի յարուաց

Ի միասին խարազանեալք 'ի քեմխեայ մտրակաց,

Վերոստուցեալք ձեալ հատանէն ըզսահմանեալըն զուղի,

Այսպէս նաւուն խելք վերամբարձ վազէր ընդ ծովն ամեհի.

Ըղձեա ալիքըն ծիրանիք խուժեն ծովուն
բազմագոչ,
Սրանայր վազէր և լաստափայտն անքոյթ
ծովուն յանդնդոց.
Եւ ոչ բազէն այն Կիրկոսեան օդապա-
րիկն 'ի Թռչունս 54
Ժամանն լինէր Թռուցեալ նաւուն ընդ կա-
պուտակ մրկոնուն.
Թռուցեալ տանէր զայրն հանճարոյն
համանմանեալ աստուածոց,
Զայր վշտատես զմրցեալն 'ի մարտս,
զմրցեալն ընդ ծովս ալեկոծ.
Իսկ անդ յայնժամ քաղցըր ննջէր ան-
յուշ վշտացն իւր ողջոյն,
Մինչև պայծառ եղ արուսեակն հրեշտակ
լուսոյ արփենւոյն:
Յայնժամ արագ ծովայածուկ նաւն հա-
սանէր 'ի կղզին.
Բայց յԻԹակէ գոյ նաւաբաշխ ծովուն
ծերոյն Փորկինին 55.
Կրկին ափունք անդ առապարք են կար-
կառեալք առ միմեանս,
Ի սաստկաշունչ պահեն հողմոց և 'ի մե-
ծաց կոհակաց.
Նաւք միջամուխք անդ կան անքոյթ ար-
ձակ առանց պարանի,
Իսկ 'ի ծայրին աճումնաճիւղ հովանանայ
ձիթենի.

Մերձ առ նովաւ գոյ քարանձաւ հովա-
նաւոր և հեշտին,
Զոնեալ 'ի ձոն յաւերժհարսանց որ նա-
յասեանք յորջորջին.
Ի ներքս 'ի խոր սափորք և տաշտք կուռ
'ի քարանց մարմարեայց,
Ուր զանուշակն ընդ մուլթ անձաւ մեղր
գործեն պարք մեղուաց.
Կայ անդ 'ի ներքս և մարմարեայ ոստայ-
նանկացըն գործի,
Յաւերժհարսունք անդ հրաշարուեստ
ձորձ անկանեն ծիրանի.
Խաղան և ջուրք յաւերժահոսք. և անդ
կրկին դուռք բանին,
Մին առ հիւսիս մարդկան գնայուն, և
միւսն 'ի կոյս հարաւին.
Հարաւայինն է 'ի մասին աստուածայ-
նոց ըն ձօնից,
Երբեք ընդ նա ոչ գընայ մարդ, ուղի է նա
անմահից:
Յայս նաւաբաշխմուծին ընթաւն, եղեալք
վայրաց նախազգեաց,
Ի միջակէն շեշտ 'ի ցամաք Թիավարեալ
կորովեաց.
Եղին յափունս 'ի կուռ նաւէն բարձեալ
զՈդիւս խընամով,
Կտաւով, դորդովն եդին յաւազն զայրն
ընկղմեալ խոր քընով.

Ըղձօմս փեկեանց ձօնեալ նըմա ընդ հո-
վանեաւ Գալլասին ,
Ողջ զայն ընծայան ընդ ձիթենեաւ 'ի
դուրս յուղւոյն կուտեցին .
Ջի մի անցորդ ոք դրժեսցէ 'ի ժամ քը-
նոյն Ոդիւսի .
Որեարն ապա նաւամարզիկք 'ի տուն դար-
ձան հայրենի :
Բայց Պոսիդոն խէթ զՈդիսայն , զոր
սպառնացաւ մեծասաստ ,
Ոչ մոռացաւ . մատեաւ մեղմով հետաքըն-
նէր զԱրամազդ .
« Արամազդ հայր , ինձ չեք այլ եւ շուք
յանմահիցն 'ի դասէն ,
Երբ մահացուքն անշուք թողուն փե-
կեանք սերեալքն յիմ ձեռէ .
Ես տեսի , բազմաչարչար 'ի տուն դառ-
նալ Ոդիսի ,
Ընդ դարձն երբէք ոչ խանդացեալ , զոր
խոստացար ակնարկի .
Իսկ արդ Ոդիս 'ի քուն անոյշ նաւեալ
եհաս յԻթակա ,
Գըղինձ ոսկի առեալ ամբաւ և անկուա-
ծոյս բեհեզեայ .
Անշուշտ այնչափ նա ոչ տանէր Տրոյ-
եանց քանդեալ յոստանէն ,
Եթէ պառնայր ինքն ողջանդամ առեալ
զիւր մասն յաւարէն » :

« Բամբէ, կրկնեաց Ամպրոպայինն, զինչ
երկրաշարժդ ասացեր.
Շուք տան քեզ դիք. ծանր է գձձել զա֊
ւագդ հուժկուդ անվեհեր.
Իսկ թէ մարդ որ յաւակնելով քեզ շուք
չածէ զարժանի,
Դու քոյ բազկաւդ առջեւ ըզվրէժ, արա
հըզօրդ ըստ կամի »:
« Լուր Ամպրոպեանդ, երկրասասանն
կրկնեաց յայնժամ Դիոսի.
Է՞ր իմ բազկին անդործ մընալ թէ քեզ
պատկառ ոչ կայի.
Արդ կամ է ինձ ըզփէտակեանց զայդ հրա֊
շակերտ լաստափայտ,
Եթէ ’ի յուղւոյն դարձ արասցէ, ’ի ծով
սուզել ալեսաստ.
Ուսցին դոքա մի անխըտիր ուղւոյ դընել
ըզմարդիկ.
Նաւ լերամբ մեծակարկառ ծածկեմ զոս֊
ամենին ես ողջիկ »:
« Քաջ է, կրկնեաց Ամպահաւաքն, ընդ
բանդ և ես հաւանիմ.
Երբ լաստափայտն ’ի տուն մերձեալ տե֊
սիլ կացցէ խուժանին,
Քարացո՛ զայն ’ի տիպ Նաւուս, այն ինչ
մերձեալ ’ի ցամաք,
Ցահարկութիւն տեսանելեաց. լերամբ
ծածկեա՛ և զքաղաքս »:

Ճեպ Պոսիդոն, լուեալ չըքաւ 'ի Աքեր
 յերկիր Փէակեանց .
Անդ բնականէր . դայր նաւն անդուստ հա-
 տեալ զալիս ճեպընթաց .
Մատեաւ 'ի լաստն և քարացոյց զնա-
 ւամբն հարեալ դիւցեղէն ,
Արմատացոյց ընդյատն յանդունդս . ան-
 յայտացաւ ինքն անդէն :
Իսկ Փէակեանք նաւահրմուտքն երկայ-
 նաւթիկքն այն որեար
Հիացեալք սոսկմամբ առ հասարակ , այր
 ընդ ընկեր տայր բարբառ .
« Աւա՜ղ, ո՛ որ զարագ մեր նաւն 'ի ծով
 կապեաց ալեբեր ,
Մօտ էր 'ի տունն և մեզ արդէն ողջ լա-
 տափայտն երևէր » :
Զայս հիացեալք զրուցատրէին . հրաշից
 պատճառն կայր Թաքուն ,
Մինչև յարեաւ մեծն Աղկինոս ճորհէր
 լուծումն 'ի ժամուն .
« Բա՛բէ, պատգամքըն վաղեմիք, զոր
 հայրս ասէր ծերունին
Վասըն ցասմանն Պոսիդոնի , ըլրումն ահա
 մեզ առին .
Ցասնու այն վեհն , զի մեք ընաւէից ուղի
 հորդեմք անխոտոր .
Վասն այն , ասէր , 'ի ծով սուզցէ 'ի դարձն
 ընթաւ մեր զընաւր .

Նաև զոստան մեր ծածկեսցէ փլուզեալ
լերամբ ահագին,
Զայս Նախաձայն հայրն իմ ասէր. և արդ
ողջոյն յանդ ելլին:
Եկա՛յք, ո՞ արք, լուարո՛ւք ձայնիս. մի՛ լե
ջէք դուք ռահահորդ
Հիւրոյն 'ի մերն հասեալ յոստան, և մի՛
ցասմանն բաժանորդ.
Պոսիդոնին երկոտասան ցուլ քաջընտիր
յաղեսցուք.
Գթասցի 'ի մեզ և մի՛ ոստանս փարձցի
լերանցն 'ի դերբուկ »:
Աղքն երկուցեալ ածին ըղցուլս, Պոսի-
դոնին մաղթէին,
Ապագ որեարն Փէակեցւոց շուրջ ըղքագ-
նաւ բակ առին:
Օ արթեաւ յայնժամ մեծն Ոդիսէս
անկեալն յերկիր հայրենեան,
Ոչ ճանաչէր ըղհայրենիսն այր բազմա-
մեայն բացական.
Նաև Պալլաս 'ի մէգ մըլթին ծածկեաց
յայնժամ զայրն աւագ,
Թաքուն պահել 'ի հայրենեաց, ազդել
նմա կարգ 'ի կարգ.
Մինչև նորա 'ի հոմանեաց ըղ վրէժն ա-
ռեալ զամենայն,
Ոչ ծանիցէ ոչ ամուսինն, ոչ բարեկամք,
ոչ խուժան:

Վասն այն նըման տեսիլքն ողջոյն երևէին
    նորահրաշք ,
Ուղք արահետք , հեշտ նաւակայք ,
    ժայռք բարձրաբերձք և անտառք :
Եկաց կանգուն անդ 'ի գըննին բնակար-
    նումն հայրենեաց ,
Ցօղեաց արտօսր , ըղձեռն ածեալ ծեծէր
    ըղթամբ զաղտերաց .
Յոգւոց եհան . « Եղուկ եմ ես , իսկ յոյց
    երկիրն հասեալ կամ.
Արդեօք մարդիկն իցեն վայրագք , ար-
    դեօք ժըպիրհք , անըզգամ.
Եթէ արդեօք արք վանատուրք , և միտքն
    իցեն երկիւղած ,
Նա՛ զի ես ո՞ւր առեալ տարայց զայս լի-
    ութիւն բազմագանձ
Ո՞ւր և ես ինքն երթայց թափառ յաշ-
    խարհ օտար յաշխարհէ .
Բա՜րէ , մըրթերքս անդ առ փէկեանս մնա-
    ցեալ էին , իցէ՛ թէ .
Եւ ես դիմեալ գնայի առ ոք 'ի յարքայից
    Քաջազանց ,
Որ հիւրընկալ զիս ժողովէր , ուղի հորդէր
    ինձ 'ի դարձ :
Արդ ո՞ւր եդից զայս մեծութիւնս , կամ
    ասա թողից վայրապար ,
Լինել գանձուս անցաւորին յառ և յա-
    պուր և յաւար .

Բամբէ, բամբէ. աւագորեարն կղզւոյն
այնմիկ փէտակեանց
Չէին ուրեմն արք հանճարեղք և ոչ ար-
դարք երկիւղած.
Այն որ յԻԹականն իմ անձկացեալ յղեւ
զիս բան կռուեցին,
Եւ արդ յօտար արկեալ յերկիր իւրեանց
բանին դրժեցին.
Ո՜հ, 'ի նոցունց ողջընկալըն Արամազդ
վրէժ առցէ,
Դիտոն աշխարհի, որ զյանցաւորս անպա-
տուհաս չարձակէ.
Բայց ո՜ն. ընդ Թիւ արկեց ըզգանձս. խո-
րեալ լիցեն 'ի նաւին ».
Ասաց, ըզպերճ զեռոտանիսն Թուէր,
ըզսանսան, և զոսկին.
Ընդ Թիւ էարկ և ըզչքնաղ բարակամանս
բեհեզեայց.
Չեգիտ պակաս, այլ ինքն Երկրի էր հայ-
րենույն անձկայրեաց:
Նա բազմագոչ ծովուն ափամբ յոգւոց
հանէր և քայլէր.
Մատեաւ Պալլաս, գիրդ պատանւոյ ա-
ռեալ հովուի ըզպատկեր,
Տիպն էր նըման արքայորդւոյ, զուսով
կրկին պատմուճան,
Կօշիկ 'ի յոտսըն ձիւնափայլ և 'ի ձեռին
էր հաշտեան:

Խնդաց Ոգիս տեսեալ ըզնա, և ընդա-
ռաջ կարդաց ձայն.

« Որ զքեզ նախկին տեսի աստէն, խնդամ,
ողջ լեր, բարեկամ.

Գալուստդ ողջամբ. ապրեցո՛ զիս, և
ապրեցո՛ ըզգանձն իմ.

Իբր աստուծոյ մաղթեմ ես քեզ և ըզ-
ծնգովքըդ փարիմ.

Ասա՛ ճշգրիտ, զի՞նչ երկիր է. ո՞յք են
բնակիչք. զի՞նչ խուժան.

Արդեօք կղզի՞ է բարեխառն օդոց շնչող
քաղցրութեան.

Կամ թէ ափն է ծովահայեաց սա ար-
դաւանդ ցամաքի ».

Լուաւ խաժակըն Աթենաս և ճշգրտէր
մի առ մի։

« Մոլի՛ս, ով հիւր, կամ թէ 'ի տար
եկեալ ես դու յաշխարհէ,

Որ զայս երկրէս ինձ հարցանես, զոր ողջ
աշխարհ ճանաչէ.

Գիտեն ըզսա բնակիչք այգուն Թևակո-
խեալքն 'ի յարփին,

Գիտեն ըզսա պատսպարեալքն ընդ մթուտ
արփւոյն խաւարին.

Թէպէտ երկիր սա առապար ձիավարժից
անպիտան,

Այլ չէ բնաւին անբեղմնաւոր, ձգեալ
յանձուկ 'ի սահման..

Ունի գինի, ցորեան առատ, անձրեւ անդուլ, ցօղ քաղցրիկ,
Արօտ այծեաց եւ անդէոց, բիւրաբերում եւ մայրէք.
Են եւ աղբիւրք անհատահոսք. մինչ զի անուանն Իթակայ
Հասեալ է հո՛ւր եւ յԵղիոն, զոր տար ասեն յԵլլադայ „:
Ի լուր բանիցն Աթենասայ խայտայր Ոդիս մեծապէս,
Զի զհայրենի զերկրին լսէր ընդոմլութեանցըն հանդէս.
Այլ բան կրկնեաց ձախողակի ճշմարտութեանն 'ի մասին.
Սուտ կըցկըցեաց. ցանգ խորագէտ գամս որոճայր 'ի սրտին.
Պատմութիւն մի ողջ քըմազարդ հիւսեալ անդէն Պալլասայ,
“ Եւ ես, ասէ, լեալ 'ի Կրետէ լուր առեալ եմ զԻթակայ,
Ցայն լայնատարր ես 'ի ծովէն եկի աստէն ընդ գանձիս,
Ըզկէսն նորա թողեալ անդէն ժառանգութեան առ որդիս.
Փախեայ սպանեալ զԱրսիլոքոս զԻդոմենեայ քաջ զաւակ,
Որ 'ի Կրետէ արագ ոտիւք տանէր նա ցանգ մրցանակ.

Քանզի հնարէր կողոպտել զիս նա յա-
մենայն աւարաց,
Ոյր վասն 'ի մարտ, ընդ ապաժոյժ, ընդ-
ծովս հատի ալէտանջ.
Էր ցասուցեալ, զի՛մ հօր նորա պատուա-
սիրեալ ոչ կացի
Ես պաշտօնեայ 'ի մարտ Տրովեան. ուր
ես այլոց իշխէի.
Արդ մինչ դառնայր սա 'ի դաշտէն յու-
զւոջ մրտի 'ի դարան,
Էր մութ գիշեր. ընդ գործակցիս հարի
'ի նա սուր հաշտեան.
Ետես ոչ ոք, և ոչ նա ինքն որ անդ զոգւին
իւր փչեաց,
Փախեայ արագ ես ապաստան 'ի նաւ-
քաջաց Փիւնիկեանց.
Յորդոք անկայ, վարձ ետու մեծ, ասեմ
'ի Պիւղ տանել զիս,
Կամ ուր Եպեանքըն տիրէին 'ի հոյա-
կապն 'ի յԵղիս.
Անտի զնոսա հողմն ուժգնակի առ և վա-
րեաց յակամայս,
Այքն անխարդախք զայս վայր կալան ան-
դուստ Թափառք տարադնաց.
Էր խոր գիշեր. հազիւ քաշտեօք մտաք
Նաւաց յայս գագար,
Եւ ոչ ընթրիք մեզ յուշ եկին, թէպէտ
նքթեալք չարաչար.

Այլ հապճեպով մեք խառն 'ի խուռն
ելեալք արտաքս 'ի նաւէն
Ընկողմնեցաք. ես խոնջ էի զիս քուն ա-
նոյշ առ անդէն.
Նղքա զիմ զանձն հանեալ ցամաքն եզէին
ուր ես ննջէի,
Եւ 'ի Սիդոն բազմաժողով ինքեանք ան-
կան 'ի յուղի.
Ես ամայի Թողայ աստէն հարեալ 'ի սիրտ
կարեվէր ».
Լուաւ Խաժակն և ժպտեցաւ, մատեաւ
առ նա և աչէր։
Փափոխեցաւ նա նոյնհետայն առ ընկե-
նոջ ըղտիպար,
Զքնաղ և պերճ, և որ 'ի գործս հրա-
շակերտեալս է ճարտար.
« Անշուշտ; ասէր, յոյժ հնարիմաց էցէ
ոք այր խաբուսիկ,
Այր որ 'ի դասս քեզ յաղթեսցէ, թէ-
պէտ ինքնին իցէն դիք.
Հէգ, խորագէտ, անյագ 'ի նենգ, ոչ
ակն ածես և յերկրէդ,
Քեզ դաւք, խաբանք, և հիւսք լեզուին
քեզ քաղցրացան յօրոցէդ։
Այլ շատ է արդ. 'ի հայթայթանս մեք
երկոքեանս եմք ներհուն,
Դու վեհ շրթամբք և խորհրդով մահկա-
նացուաց 'ի դասուն,

Ես 'ի յանմահս եմ աննըման հնարից 'ի
գամս, 'ի հանճար.
Այլ դու զՊալլադն զԱթենաս վեհ զօ-
րիորդն ո՞չ ծանեար.
Զիս՝ որ յաղէտս փրկեմ ըզքեզ կացեալ
քեզ միշտ հովանի,
Զիս՝ որ ըզքեզ հեշտ բաղձալի Փէակե-
ցւոցն արարի.
Եկի և արդ սադրել խորհուրդ, գանձուդ
լինել պահապան,
Զոր լիաբաշխ քեզ ձօնեցին իմ խորհըր-
դովս աստուածեան.
Եւ արդ ասեմ. քեզ 'ի տան քում օր
վշտագին հասանէ.
Տար դու անմռունչ. այլ ըզգաղտնուստ
ոչ այր ոչ կին գիտասցէ.
Զանխուլ կացցես յամենեցունց. և ըզ-
ուելեայն դու՝ ցաւեա՛,
Մշտաչարչար անձնատաշոր պարսից բա-
նից համբերեա՛ »,
Արկնեաց Ոդիս. « Զ.քեզ, դիցանոյշ
ընդառաջեալ մահացուի,
Եւ ոչ ներհուն ոք ծանիցէ. զի յար
պատկերդ փոփոխի.
Զայս քաջ ծանեայ 'ի մարտ Տրովեանց,
ուր հովանի ինձ էիր,
Մինչև զոստանն ըզՊրիամուն մեք հար-
թեցաք ընդ երկիր.

Ծովայածեալք յուղւոջ աստուած ըզ-
Յոյնս կացոյց ցեր և ցան ,

Եւ աստ ես վեհ զօրիորդդ այլ ոչ տեսի
միանգամ.

Ոչ և 'ի Նաւս երևեցար դիւր մի առնել
իմ վշտին ,

Ես յիս տանջեալ Թափառէի , մինչև աս-
տուածք փրկեցին :

Յանդորր եղի մինչև քո ինձ 'ի Սքեր
տուեալ քաջալեր ,

Մինչև յոստանն Ճոխ Փէակեանց քո զիս
մուծեալ անվեհեր .

Արդ 'ի սէր հօրդ ես յողոք կամ. տաս
ինձ յայտ յանդիման .

(Զի ոչ կարծեմ ինձ արդ կոխել զիմ
անձկացեալն Իթակայն .

Ես դեռ անշուշտ յօտար աշխարհ Թա-
փառական դեգերիմ,

Եւ դու ընդ իս խաղաս բանիւք զստուեր
ածեալ Ճշմարտին) .

Ասա Ճշգրիտ . հասեա՞լ կամ ես յիմ
անձկացեալ հայրենիս ” .

Զայն ետ Պալլաս . “ Յանդ 'ի նոյն միտս
անփոփոխ կաս , ո՛վ Ոդիս .

Ուստի և ինձ անհընար է զքեզ լըքանել
'ի վշտին ,

Զի այր ես դու Ճարտարասան , այր հնար-
իմաց և ուշիմ.

Քանզի այլ այր իբրև ըղձեր թափառա-
կան 'ի դարձի,

Բա՛ փոյթ անձկայր ըղկլին, զորդիս իւր
տեսանել 'ի յարկի.

Դու տակաւին անհետազօտ փոյթ չա-
րարեր ինչ երբէք,

Ոչ նախ փորձեալ փորձ զամուսնոյդ, որ
կայ 'ի տանդ յուսաբեկ.

Նորա 'ի սուգ տիւք և գիշերք մաշին 'ի
դառն արտասուաց,

Բայց ես անշուշտ էի զդարձէդ, թէպէտ
և զուրկ յընկերաց.

Այլ հօրեղբօրս Պոսիդոնի ակն ածէի ես
վեհին.

Խեթաց ընդ քեզ՝ զի դու զսիրուն կու-
րացուցեր զիւր որդին.

Եւ արդ ա՛ղէ, քեզ 'ի հաւատ ըղկայս
ցուցից զԻթակայ.

Ո՞չ ահա սա է Նաւաքաշխ ծերոյն ծո-
վուն Փորկինեայ.

Ահա և քեզ 'ի ծայր նորուն աճուճա-
ճիւղ ձիթենին.

Մօտ կայ նըմա հովանաւորն և քարանձաւ
խնկելին.

Անձաւ ձօնեալ յաւերժհարսանց, որ
յորջորջին Նայասեան.

Ո՞չ ճանաչես զանձաւդ անդրոյր զկամա-
րաձեն աննըման.

Ո՞չ դու տայիր յաւերժհարսանցդ անդ
հարիւրեզն ըղնուէր.
Եւ ո՞չ դա լեառն է Ներիտոսն անտա-
ռախիտ մայրաքեր ”:

Այն ինչ ասաց. և զբալաձիգ մեգ փա-
րատեաց դիցուհին.
Երևեցաւ ողջոյն երկիրն, և կայր Ոդիսս
՚ի զընին.
Խայտաց յոդին, և զկենսատու ըղհող
երկրին համբուրէր,
Անդէն յաղօթս յաւերժհարսանց ամ-
բարձ ըզձեռն իւր ՚ի վեր.
“ Պա՛րք Նայասեանց յաւերժհարսանց,
կոյսք վեհազինք արփենի,
Կրկին ձեզ յայց ինձ եկանել ես ակն
երբէք չունէի.
Արդ ՚ի խայրեաց ո՛րտիս ձայնեմ, ողջ լե-
րուք, տեարք, խնդացէք.
Ես ձեզ ապա տաց և ձօնիս՝ որպէս յա-
ռաջ զիս տեսէք.
Թէ վեհ Պալլասն աւարածուն տացէ ինձ
կեանս յաշխարհի,
Լցցէ զարդուն բարօրութեամբք և զնա-
զելին զիմ որդի ”:
Կարձեաց Պալլաս, “ Քաջալերեա՛ց. դու
զայդոցիկ մի հոգար.
Ե՛կ, մեք զարդիս դիցուք զգանձն խոր ան-
ձաւիս ՚ի գաղար.

Աստ կան յանքոյթ, և մեք զիրացդ խոր-
հուրդ կալցուք առանձին ”.
Ասաց, եմուտ 'ի քարանձաւն հովանաւոր
դիցուհին.
Մտեալ խնդրէր զարան խրթին. ան-
դուստ Ոդիս բեռնաբարձ
Ածէր ըզպերճ հանդերձանսն, զոսկին,
պղինձ, զիւրըն գանձ.
Ողջ զետեղեալ, եդ վէմ Պալլաս դրան
կափարիչ անձաւին,
Եկին ապա, նստան նոքա վեհ ձիթենւոյն
առ արմին.
Խորհուրդ նիւթեն մահ օրահաս ածել
գոռոզն հոմանեաց,
Եւ առաջին 'ի խորհրդեան ձայն ետ խաժ-
ակն Աթենաս:
“ Ուշիմդ Ոդիս, խորհեաց զիա՞րդ լիցիս
դոցա գամադիտ.
Երրորդ ահա ամ հոլովի՝ ժանտք տիրա-
ցեալ են յարկիդ:
Վեհ ամուսնոյդ են տարփածուք օժիտ
տուեալ մեծագանձ,
Նա ցանդ 'ի տան արտասուալից հեծէ
անձկայ 'ի քոյն դարձ.
Նա յոյս ընդ խաբ տայ հոմանեաց, կըռէ
խոստումն ըզլեզուին,
Միոյ միոյ հրեշտակ յղէ, այլ ինչ ունի
'ի սրտին ”:

Գոչեաց Ոգին. « Բա՛րէ և ինձ Ագա-
մեմնոնեայն բօթ մահուն
Գուժայր 'ի տանս, թէ դիցուհիդ չէր
ուսուցեալ ինձ ողջոյն.
Դու ինձ աղէ ուսո՛ խորհուրդ, զիա՛րդ
եղէց վրիժառու.
Դու հովանի տացես ինձ, տէր, սիրտ ան-
վեհեր և հուժկու.
Որպէս երբեմն 'ի քանդել մեր ըզՏրովիոյ
պերճ բրգունս,
Եւ աստ նոյնպէս կորով հեղցես ինձ,
Աթենաս, 'ի բազուկս.
Թէ հանդիպիմ, վեհ դիցանոյշ, ես մե-
ծապէս այդ շնորհի,
Թէպէտ ընդդէմ երեքարիւր քաջաց հա-
րայց 'ի դիմի »:
« Ես քեզ անքուն, կրկնեաց Պալլաս,
կամ հովանի հանապազ.
Ընդ քեզ անգուլ նիզակակից եղէց 'ի
յայդ 'ի մրցանս.
Սեղեխք շամբուշք այդ որկորեայք որ
զինչըս քո ըսպառեն,
Թացցեն զատակդ 'ի յուղեղաց և յապա-
ժոյժ արենէն.
Բայց ես զարդիս այլափոխեալ եդից
ըզքեզ 'ի ծածուկ,
Մորթ խըռուացեալ յառոյդ անդամս
տամ ընդ մորթոյն քոյ·փափուկ

Խարտեաշ ըզվարսս առեալ գլխոյդ ,
    ձորձ քեզ արկից բոլորդըղեալ,
Զի որք 'ի քեզ ակնարկեսցեն՝ դարձցին
    'ի քէն քըստմընեալ.
Յաչս անգեղեայս և քոստեալս դարձ-
    ցին աչք քո գեղեցիկ,
Եւ պժգասցին կին քո 'ւորդիդ և ամե-
    նայն հոմանիք:
Բայց դու երթ նախ առ խոզարածդ
    հաւատարիմ 'ի դաշտին.
Նա զքեզ սիրէ, սիրէ զորդիդ; և զՊե-
    նելոպայն զուշիմ.
Գտցես ըզնա մերձ առ խոզեանն ելեալ
    'ի դաշտ 'ի Ճարակ
Անդ մօտ 'ի վէմըն Ագռաւուծ 'ւ Արե-
    թուսայն յաղբերակ.
Ուտեն զանոյշ կուրեանց զկաղին, ըզջուրն
    ըմպեն սեաւթոյր,
Յորմէ խոզեանն Ճարպով ծաղկեալ դառ-
    նան լինին գէր և յոյր.
Անդ կայցես դու և 'ի նմանէն հարցա-
    քննեա՛ զամենայն.
Մինչ ես երթամ 'ի Սպարտիա, ուր չըք-
    նաղացն է կայան.
Անդուստ առ քեզ կոչեմ, Ոդիս, ըզնա-
    զելիդ Տելեմաք,
Որ արդ 'ի մեծ Լակեդեմոն Մենեղա-
    ւեայն է 'ի յարկ.

Անդ նա չոքաւ լըսել ըզքէն, թէ արդեօք
կեա՞ս, և ո՞ւր կաս »:
Արկնեաց Ոդիւս. « Եւ դու գիտակդ հե՞մ
չասացեր նըմա զայս.
Միթէ և նա՞ ցաւովք զերթ հայրն ըզծովս
հատցէ զանքեղումն,
Եւ անդ օտարք ըզտան նորա ըսպառես֊
ցեն լըումթիւն ».
« Մի՛ վասն որդւոյդ, կարճեաց Պալլաս,
մի՛ լիցիս դու մըտատանջ.
Ես ինքն ըզնա անդ յըղեցի ստանալ ան֊
ձին մեծ պարծանս.
Այն զի անվիշտ վարէ նա կեանս անդ
յարքունիս Ատրիտեայ
Լի և զեղուն վայելչացեալ, և պակաս
ինչ չէք նըմա:
Այո՛ որեար նստի 'ի նաւ 'ի մահ վարել
զքաջորդիդ,
Դարանամուտ դարձին նորա. այլ ոչ
լիցին զամադիտ.
Դժոխորովայն այդ հոմանիք կանուխ
մտցեն ընդ հողով ».
Ասաց Պալլաս. հպեաց յՈդիս վեհ դիւ֊
ցական իւր ցըպով:
Երիթացոյց ըզգիրդն ըզմորթ նորա զա֊
ռոյգ ըզմարմնոյն.
Եւ ձեռն անեալ խարտեաշ ըզվարսս
ջնջեաց նորա ըզգլխոյն.

Արկ ողջ յերանն մորթ ըղծերոյ խըռ-
ուեալն ամօք ծայրալիր ,
Ի բիժ մըլթար անգեղացոյց զաչըս Նորա
լուսալիր .
Իսկ վերարկու արկ ըղնովաւ ձորձ հըննո-
տի գըրգըլեակ ,
Բաճկոն կեղտեալ և բըրդ-գըրզեալ 'ի ծուխ
'ի մուխ Թըխորակ .
Շուրջ արկ Նըմա մեծ լաշկամաշկ զա-
րագոտին զեղջերուի ,
Ցուպ ետ Նըմա , փոկ ոլորեալ 'ի մեջամեջս
մաղախի :
Մեկնին ապա այր յընկերէ քաջին խոր-
հեալ խորհուրդ զայս ,
Եւ 'ի Սպարտա առ Տելեմաք ուղղոյ լի-
նէր Աթենաս :



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԴ.

2 3

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Համանէ Ոդիսս 'ի տուն Եւմէոսի՝ իւրոյ հաւատարիմ ծառային և արգոյ խոզապանին. հիւրընկալի 'ի նմանէ յանծանօթս : Զրուցատրութիւնք նոցա ընդ միմեանս : Ոդիսս կեղծէ զանձնէն լինել 'ի Կրետեայ, և պատմէ զհիւսածոյ անցս : Զոհ Եւմէոսի և ընթրիք : Ի մրրկայոյզ և 'ի ցուրտ գիշերին յայնմիկ՝ և այլ ևս հիւսածոյս ճառ արկեալ Ոդիսս, առնու իւր վերարկու 'ի ծածկոյթ 'ի ծառայէն իւրմէ. և գնայ սա ընկողմանել ընդ քարանձաւաւ մօտ 'ի պահկերութիւն խոզերամակին իւրոյ :



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԴ.

ԻՍԿ Ոդիւսէս թողեալ զափունս եմուտ
ընդ ուղ առապար ,
Գընայր ընդ վայրս թանձրամայրիս ելեալ
ընդ գարս և ընդ սար .
Ուր և Նըմա եցոյց Պալլաս զայրըն զաւագ
խոզարած
Զհաւատարիմըն Ոդիւսեայ քան զամենայն
ըզծառայս .
Եգիտ ըզնա նստեալ առ դուրս բարձր և
արձակ իւր գաւթին ,
Գաւիթ անդորր և գեղաշէն էր յերևան
'ի վայրին .

Զայն նա շինեաց վասն խոզից մինչ տա-
րագէմ էր աղքայ,
Ոչինչ խնդրեաց ոչ տիկնոջէն ոչ 'ի ծե-
րոյն Լայերտեայ.
Եհատ քարինս, կերտեաց ինքնին, և 'ի
վերշոց զայն ցանգեաց,
Շուրջանակի խիտ խիտ վարսեաց ցիցս
գաւթին 'ի կաղնեաց.
Եդ խոզաբոյնս երկոտասան միմեանց խրչ-
տիս առընթեր,
Եւ 'ի մէն մի մատակ խոզեան յիսուն
թուով պառակէր.
Իսկ արտաքոյ արու խոզեանն գետնա-
խրչտեայք ննջէին
Յոյժ նուազունք, զի օր 'ի յօր զայն հո-
մանիք ծախէին.
Խոզ պարարակ միշտ խոզապանն ըզքաջ-
ընտիրն յերամոյն
Յղէր նոցա. մնացին միայն երեքարիւր
և յիսուն.
Գիշերապահք էն նոցա չորք գազանա-
տիպք 'ի գամփռանց,
Զորս սընուցեալ քաջ բուծանէր ինքնին
աւագ խոզարած:
Նա անդ կօշիկ հարթէր ոտից կըտրեալ
զեզին մորթ գունեան.
Նորա երեք որեաննն աստ անդ տաւաղէին
ըզխոզեանն.

Իսկ չորրորդին 'ի ձեռս տուեալ յայն-
 ժամ խոզ մի պարարակ,
Ցըղէր յոստանն խեռ հոմանեաց յաղէլ
 իւրեանց պատրուճակ:
Յանկարծ զՈդիւս տեսեալ գամփռանց
 և մեծահաչք վաղէին.
Ուշիմացեալ նսստաւ Ոդիւս ըզցուպն ար-
 կեալ 'ի գետին.
Էր իսկ անշուշտ յիւր կալուածին կըրել
 նըման մեծ արկած,
Բայց խոզապանն վաղեաց 'ի դուրս ըզ-
 մորթն արկեալ 'ի ձեռաց.
Սաստ մեծասաստ կանչեալ գամփռանց՝
 յայսկոյս յայնկոյս փարատէր.
Գիղ արկանէր նա խիտ առ խիտ, և առ-
 տէր իւր զայս ասէր.
« Վայրիկ մի ևս ով ծերունիդ, գազանքդ
 ըզքեզ գօշէին
Ինձ ցաւ բարդել, եբրու որ այլ չունիմ
 ես ցաւս 'ի յոգին.
Ես ըզտէրն իմ զաստուածանմանն նըս-
 տիմ և լամ հանապազ,
Եւ կերակուր այլոց բուծեմ զայս պա-
 րարակըս խոզայ.
Իսկ նա Թափառ յօտար աշխարհս և պա-
 րենին կարօտ է.
Եւ ո՞ գիտէ, կեա՞յ տակաւին և լոյս զար-
 փուոյն տեսանէ՞:

Աւաղ ալիք, ծեր, մնացուք 'ի յարկ. առ-
ցես ըզհաց և բաժակ,
Եւ պատմեսցես ուստի՞ ես դու և զի՞նչ
կրեցեր դըժնդակ »:
Զայս ասացեալ և յառաջոյ էանց ար-
գոյն խոզարած,
Եմոյծ 'ի յարկ և ոստըս Թաւս առեալ
յերկիր տարածեաց.
Սփռեաց վերայ և զԹաւամազ ըզմորԹ
զայծուն վայրենի,
Եւ անկողին եդ 'ի բազմոց Թանձըր և
լայն և հեշտի:
Խնդայր Ոդիս ընդ հիւրասէրն, ասէ,
« Քեզ Զևս և դից պար
Տացեն ով հիւր, զոր և խնդրես, որ զիս
այսպէս ընկալար »:
Զայն կրկնեցեր, արդոյդ Եւմէ. « Չէ
ինձ ով հիւր, չէ արժան
Ե՛ւ քան ըզքեզ հիւրն հիգագոյն անշուք
Թողուլ յիմում տան.
Զի ամենայն հիւրք և աղքատք յԱրա-
մազդայ գան առ մեզ,
Եւ հիւրոյԹ մի Թէպէտ չնչին սիրելի է
մեծապէս.
Այս վիճակ է մեզ ծառայիցս հիքացե-
լոցս 'ի բախտէն.
Մինչ ԹաքԹաքուրք գործեմք, յորժամ
տեարք պատանիք մեզ տիրեն.

Աւա՜ղ, զայն տէրն իմ խնամակալ աստ֊
ուածք 'ի մէնջ կապտեցին,
Մեռըն սիրով նա զիս սիրէր նաև լընոյր
ըզձեռն իմ.
Զոր օրինակ տէր բարեմոյն խնամէ իւ֊
րում ծառայի,
Տուն տայ նըմա և կարասի, տայ և կին
մի փարելի.
Զորոց և քիրան առ տէրըն իւր ինքնին
օրհնէ մեծն Աստուած,
Որպէս և զիմըն բարգաւաճ օրհնեաց և
եդ յայս կալուած.
Անշուշտ նա ինձ էր մեծապէս, թէ աստ
'ի տան ծերանայր.
Աւա՜ղ, կորեաւ. ո՜վ, Հեղինեայ զարմն
ազգովին կորանայր.
Զի շատ քաջաց կըլթոյց ըզծունգս, որ֊
պէս և տէրն իմ'ի շուք
Ագամեմնոնեայ ել 'ի տանէն Տրովկեանց
մարտին 'ի շըշուկ »:
Ասաց, անդէն գոտեաւն ընդ մէջ զիւրըն
պնդեաց վըտաւակ,
Յարեաւ չոքաւ 'ի խողաքոյնսն ուր էր
խոզաց երամակ.
Մատաղս երկուս առ փողոտեաց, խան֊
ձեաց յօշեաց և շամփրեաց.
Քաջ խորովեալ և ջերաջերմ այնպէս շամ֊
փրօքն առ յառաջ.

Եդ ըզխորտիկըն Ոդիսեայ, ցանեաց ա-
լեւր բավիտակ,
Խառնեաց 'ի տաշտըն բաղեղեան զանոյշ
գինւոյն ըզբաժակ.
Նստաւ հանդէպ, ասէր. « Ո՛վ հիւր,
կեր զծառայից զայս խորտիկ,
Զայս խոչքորակս, զի զպարարակ խոզ-
եանն ուտեն հոմանիք:
Վա՜շ, որկորեայց չի՛ք գութ 'ի սիրտ և
ոչ երկիւղ աստուածեան.
Բայց դի՛ք արդարք ատեան զչարիս, սիրեն
զբարիս ըզմարդկան:
Նա՛ թշնամիք յերկիր օտար կամօք Դիայ
՚ասպատակք
Լցեալք ըզնաւս և դարձ առնեն 'ի տունս
իւրեանց և 'ի յարկ,
Նոքա վրիժուն զասպատակին ունին զեր-
կիւղ 'ի յոգին,
Իսկ այդ սեղեխք յանձնապաստանք ան-
շուշտ ինչ մի լուր առին,
Լուր զօրհասի ըզտեառն իմոյ, կամ թէ
յայտնեաց ինքն Աստուած,
Որք խառն այնպէս տարփան 'ի կինն, և
առ իւրեանցն չառնեն դարձ.
Անյագ յանդորրու որկորաժէտք ըզդոյս
ծախեն անխընայ.
Զօր ամենայն մի սպանդ ւ երկու շատ
որկորոյն չէ դոյա.

Բաժակ քամեն նոքա յանչափս, զի էր
իմ տեառն ըստացուած:
Բազմահամբար, որչափ քըսանք չուձին
յարանց դիւցազանց
Ոչ 'ի ցամաքն և ո՛չ յԽԹակ, զոր արդ-
ընդ Թիւ արկից քեզ.
Անդ գոն անդեայք երկոտասանք, նոյն-
չափ օդեաց և հանդէս.
Այնչափ խոզաց են և արօտք, նոյնչափ
դաղարք լայնք այծեաց,
Եւ արածին յօտարական և բնակաւոր 'ի
հովուաց.
Եւ աստ դարձեալ փարախք այծեաց են
լայնատարր մետասան,
Արօտականք 'ի ծագ կղզւոյս, և կան արք
քաջք պահապան.
Մէն մի նոքա տան հոմանեաց յաւուրն
այծ մի պատրուճակ,
Ըզքաջընտիրն 'ի հօրանաց յղեն այծուն
պարարակ:
Իսկ ես աստէն վերակացու և զայս խո-
զեան պահպանեմ,
Նոցա խոզից յերամակէն զընտիր ընտիրն
առաքեմ »:
Մինչ նա պատմէր, Ոդիւս անդուլ ուտէր,
ըմպէր անդ լռիկ,
Եւ հոմանեաց 'ի խոր սրտին աղէտ նիւ-
Թէր և չարիք.

Իբրեւ ընթրեալ ընդքաղցն եհար, առ Եւ-
մէոս զըմպանակ
Որով ըմպէր, և լից գինեաւ, խնդաց
Ոդիս առ բաժակ։
Ձայն ետ Նըմա. « Ո՞ բարեկամ, ընդքեզ
գինոց ո՞ գինեաց,
Անշուշտ աւագ այր ոք փարթամ որպէս
բերան քո պատմեաց.
Ասես մատնեալ զայրն 'ի կորուստ Ադա-
մեմնեայ 'ի պատիւ.
Բայց աղէ դու հա՛րց ինձ, Եւմէ, թերևս
գիտեմ ըստուգիւ.
Գիտէ ճշգրիտ զայն Արամազդ և անմա-
հից գիտէ պար,
Թէ լուր տամ ես ականատես ընդ վայրս
բազում լեալ Թափառ »։
« Այր ոք Թափառ, կրկնեաց Եւմէս,
Թ' եկեալ լուր տայ զՈդիսին,
Ի լուրս նորա ոչ հաւատայ ոչ ամուսինն
ոչ որդին.
Պանդուխտք անյարկ.ք կարօտք են տան.
չասեն իրաւ այլ սուտեն.
Եւ աստ յԻթակ գան առ տիկինս և քը-
մազարդ բան պատմեն.
Նա հիւրընկալ հարցեալ զառնէն միշտ
յարտասուս լուծանի.
Այս կիրք կընոջն, որոյ փեսայն կորեաւ
'ի տար աշխարհի.

Արդ և դու ինքն, ով ծերունիդ, մեզ
    վէպս բանից հիւսեսցես
Թէ ոք բաղձկոտն և վերարկու ծածկոյթ
    անձին տացէ քեզ.
Այլ ատեան իմոյ, արդ յարադ շանց և
    'ի Թռչնոց երամոյն
Քանցեալ իցէ մորթն յոսկերաց, հոգին
    ելեալ 'ի մարմնոյն.
Կամ Թէ 'ի ծով կուր և ճարակ նա 'ի
    ձըկանց խունելոց,
Ոսկերքն անկեալք կան 'ի յափունս ընդ
    կոյտ խառնեալ աւազոց:
Աւա՜ղ, կործեաւ. և սիրելեացն և ինձ
    յաւէտ ցաւ առԹեաց,
Ո՞ւր տէր գըոէից հեզ այնպիսի ես յընդ-
    հանուրս աշխարհաց.
Եւ ոչ 'ի տուն հօրն իմ և մօր վայր իմ
    մննդեան յորորան
Գնացեալ անձկովն ոգւա 'ի տես հանգեայց
    յերկիրս հայրենեան.
Այնչափ անձկումն ես տապանամ տար-
    աշխարհիկն Ոդիսեայ,
Եւ պատկառեմ այսպէս կոչել Թէպէտ
    և է 'ի բացեայ.
Զի սերտ սրտիւ սիրէր նա զիս և խնամ
    ածէր գորովաբար,
Այլ զբացականն սիրեմ կոչել արդոյ
    երէց իմ եղբայր »:

“Անշուշտ ուրեմն, Ոդիս կրկնեաց, ո՛չ հաւատաս, բարեկամ.

Եւ զՈդիւսէս անդարձ ասես. բայց ես անսուտ ասեմ բան.

Երդնում ահա, դարձցի Ոդիս և տացես ինձ աւետչեայ.

Առից ես զայն վաղվաղակի՝ երբ 'ի տուն իւր գայցէ նա.

Բաճկոն, խըլայ, ա՛րկ դու զինև ձորձ գեղեցիկ իմ անձին,

Գձձեալ եմ յոյժ. այլ մինչ ոչ գայ, երբէք ես զայն չընդունիմ.

Ինձ Թշնամի և ատելի դրանց դըժոխոց է հանգոյն,

Այր՝ որ անխինչ հարկեալ յաղցից վաճառական է սըտոյն.

Ինձ փառք վեհին վըկայ լիցին Արամազդայ վանատրի,

Սեղանն հիւրոց, վըկայ և յարկ քաջին Ոդիւսեայ, յոր եկի,

Բանքն իմ ողջոյն լըրումն առցեն. գայցէ Ոդիւս 'ի յայս ամ.

Ի յելս ամսոյս, 'ի մուտս նորոյն դարձցի 'ի տուն ողջանդամ.

Առցէ ըզվրէժ, որ զամուսինն և կամ զորդին իւր գըձձեաց ”:

Լուար դու զայս, արգո՛յդ Եւմէ, ետուր յայնժամ անդրադարձ.

« Լո՛ւր, ծերունիդ, և հանգարտ լեր. ոչ
ես տաց քեզ զաւետչեայդ,
Եւ ոչ 'ի տունն իւր հայրենի դարձցի եր-
բեք Ոդիւսդ այդ.
Ա՛րբ դու ուրախ. մի այլ յիշեր. բան
փոխեսցուք 'ի բանէ.
Տապիմ ցաւով ցորչափ ոք ինձ զարգոյն
զիմ տէրն յուշ ածէ.
Այլ ո՛ն 'ի բաց թողեալ զերդումն, ո՛վ
թէ Ոդիւս գայր արագ,
Ում ես անձկամ և Պենելոպն և դիւցա-
նմանն Տելեմաք.
Անձկով անձկայ և ծեր Լայերտն. բայց
ես զարդիս լամ զորդին
Ըզ Տելեմաք, զոր իբր ուղէշ մնուցին աս-
տուածք 'ի գրախտին.
Ես ասէի ոչինչ խոնարհ լինել որդւոյն
քան ըզհայր,
Զի հրաշացեալ էր 'ի հանճար, նոյն և
նորուն 'ի տիպար.
Բայց ոմն անմահ և կամ մարդ ոք շրջեաց
ըզնա 'ի մըտաց,
Քանզի զհօրէն համբաւ առնուլ 'ի մեծըն
Պիւղ էր գընաց.
Արդ 'ի դարձին դոր հոմանիք դարանա-
մուտք են նըմա,
Զի ճեռ ընաջինջ բարձցի յԻթակէ դիւ-
ցանըմանն Արկեսեայ 56.

Թողցուք և զայս. նա կամ ընկճի կամ 'ի հաղբից զերծանի,
Այլ աջ հզօրին Արամազդայ լիցի նըմա հովանի.
Բայց աղէ, ծեր, ըղձքոյ աղէտս ճառեա՛ ինձ դու կարգ 'ի կարգ.
Ասա ո՞ ես, և ուստի՞ ես, ո՞ւր քո ծընողք, ո՞ւր քաղաք
Յո՞ր նաւ մըտեր, զի՞արդ ըղքեզ ածին նաւազք յայս երկիր,
Զի՞նչ նաւաստիք էին նոքա. զի ոչ հետի աստ եկիր »:
Բան խորագէտն Ոդիս հիւսեաց. « Քեզ ես ճշգրիտ պատմեցից,
Ասա 'ի յարկիդ զբօսեալք յերկար 'ի կերակուրս, յըմպելիս.
Սակայն այր այր իւրաքանչիւր պարապեսցի 'ի գործել,
Զի տարի մի ոչ բաւեսցէ ողջոյն զաղէտս իմ պատմել.
Յաղէտս անչափս 'ի դից կամաց ես չարչարեալ վշտացայ.
Լո՛ւր արդ զազգն իմ. ծընունդ եմ ես առն հարըստի 'ի Կրետայ.
Զաւակք բազումք 'ի բուն կնոջէն ծընան սընան 'ի յարկին:
Այլ զոր գընեաց, նա ծընաւ զիս, զի հարճ նորա կայ մայրն իմ.

Բայց ինձ շուք տայր զոյգ առաջնոցն
հայրն իմ Կաստոր Իղակեան.
Պանծամ Նովաւ, զի 'ի Կրետէ պատիւ
ունէր աստուածեան.
Էրիթրոջանիկ բազմահարուստ բերկրեալ
որդւովք քաջաբուն,
Մինչև վարեալ յօրահասէն էջ Նա 'ի
ստուերս 'ի մահուն.
Վիճակ արկեալ մանկունք հըզօրք զինչս
հայրենիս բաշխեցին,
Ինձ զուզնաքեայ հանեին 'ի բաշխ, և տուն
մի տան 'ի բաժին.
Ածի ինձ կին յարանց ճոխից, զի չէի իսկ
անաւագ,
Նա զխմազրաւ նահատակեալ էի 'ի
մարտս ես արագ.
Անցին ողջոյն. արդ տուայտեալ վշտօք
եմ ես ցաւալից.
Սակայն և քեզ հունձ զօրայիցն է ճա-
նաչել 'ի յարդից 57.
Քաջարութիւնս ինձ և Նախճիրս ետուն
Արէս և Աթենաս,
Երբ այրընտիր դարանամուտս տայի ընդ-
դէմ թշնամեաց.
Աշխոյժ ոգւոյս անյուշ էր մահն. ես 'ի
մարտի նահատակ
Փախըստէին թռուցեալ ըղհետ տէգ վար-
սէի 'ի քամակ.

Ինձ գործք անգոց ոչ քաղցրացաւ, ոչ
հող տնօրէն զաւակաց;
Այլ նաւք քաշտեօք, մարտք, և փղքինք,
և սայրասուրք սըլաքաց.
Գործիք դաւինք և որ անշուշտ ածեն
այլոց արհաւիրս,
Բայց ինձ սիրումնք 'ի մարտ մնելոյս, զոր
ինձ աստուած եդ յոգիս.
Զի ոմն յայս ինչ և ոմն յայն ինչ թեւա-
կոխեալ զուարձանայ.
Այլ դու լուր զիս, և որ ինձ դէպք նախ
քան զչըշուկ Տրոյիայ.
Իննիցս ինչխան արանց, նաւաց, կացի
ընդդէմ օտարաց.
Հարըստացայ վինձակընկէց և յինքընտիր
յաւարաց.
Տունն իմ արագ բարգաւաճեալ առ կրե-
տացիս գըտայ մեծ,
Մինչև ըզչուն զայն գուժալից կնքեաց
Դիոս շանթընկէց.
Զու գուժարկու, որ և ըզծունգս կըթոյց
բազմաց քաջազանց,
Եւ յայնժամ ինձ, 'ւ Իդոմենեայ յանձ-
նեն զհանդէս ըզնաւաց.
Ածել ըզնաւսըն յԵղիոն ձայն անհրա-
ժեշտ կարգացին,
Եւ հրամանին չէր անսաստել հարկապա-
հանջ խուժանին.

Ինն ամ կռուեալք 'ի տասներորդն հա-
րեալ զոստան Պրիամեան,
Նաւեմք 'ի տուն. իսկ ըզծովեալքս կա-
ցոյց աստուած ցիրուցան.
Այլ ինձ Դիոս աղէտ նիւթէր. զի ես
միայն ամիս մի
Ընդ կոյս ածեալ հարսինս 'ի տան և ընդ
որդւոց խնդացի.
Դրդիմ ապա գնալ յԵգիպտոս առեալ
կուռ նաւս, քաջ որեան,
Ինն նաւ կահեմ, և ինձ որեալ. արագ
արագ խմբեցան.
Վեց օր այնպէս կացեալ նոքա և միաբան
առնուն հաց,
Ըսպանդըս շատ յազեմ ես դից և 'ի
խրախճան ընկերաց.
Ցօր եօթներորդ նաւեալք հիւսիսին 'ի
պարզ 'ի հողմ յաջողակ,
Ընդ ծով Կրետայ իբրու ընդ գետ 'ի յան-
դորրու ծովէաք,
Նաւքն անվընասք, մեք ողջանդամք, ա-
ռեալք բազմոց 'ի նաւին,
Հողմունք անոյշք, քաջ ղեկավարք ըղնա-
ւաստորմն ուղղէին։
Ի յԵգիպտոս 'ի գեղահոսն հասաք ող-
ջամբ հինգօրեայք.
Եւ անդ 'ի գետըն Եգիպտոս 58 ետու
նաւացն ես դադարք.

Հրաման կարդամ իմ որերոյն մնալ առ-
նաւս 'ի պահել,
Կխոցն ելեալ 'ի դիտարանս զաշխարհն
երթալ լռեսել.
Սոքա ստահակք զԵզիպտացւոց զանդըս
յուռթիս կապտէին,
Անսանձք 'ի Թափ նաև զկանայս և ըզ-
մանկտին գերեցին,
Մահուանս գործեն և որերոյն. գուժեաց
շըշուկն 'ի քաղաք.
Լուան ըզհէնն, յարեան եկին երբ ծա-
գեցաւ երևակ.
Դաշտն 'ի հետեաց ւ այրուձիոյն շողայր
'ի փայլ պըղընձեաց,
Եւ յիմն որեար Ամպրոպայինն Թիկնա-
դարձոյց ահ Թափեաց.
Ողջ գիր և տար 'ի ցանց անել աշխար-
համած շաղեցան.
Հարան բազումք, կէսք կենդանւոյն 'ի
գործ 'ի խիստ վարեցան:
Ինձ Արամազդ 'ի տագնապիս խորհուրդ
'ի միտս իմ էարկ.
(Աւա՜ղ, ընդէր անդ յԵզիպտոս մահուն
չեղէ նըշաւակ.
Լաւ էր ինձ անդ մատըն լինել նախավախ-
ճան օրհասին,
Զի տակաւին կոծք և աշխարք ինձ դա-
րանեալ մընային.)

Որ զինչ և է․ ըզսաղաւարտ կուռ 'ի գըլ-
խոյս վայր եդի,
Զասպարն յուսոյս, և 'ի ձեռաց զաշտէն
'ի բաց ձըգեցի․
'Դ առաջ 'ի կառըս արքային փարեալ
ըզծունկս համբուրեմ.
Նա արտասուացս գութ ած փրկեաց,
ամբարձ 'ի կառս իւր անդէն.
Ած յարքունիս, թէպէտ բազումք յիս
տեգ հացեան գուսային
Ի մահ անդէն զիս տարածել. զի յոյժ էին
զայրագին.
Նա սանձ դընէր, զի վանատրին Արա-
մազդայ ակն էած,
Այն որ ցասմամբ միշտ վրէժխնդիր է որե-
րոյն հիւրատեաց.
Անդ յԵգիպտոս եօթն ամ շատ դանձ
կուտեմ յառատ ընծայից,
Ութերորդին 'ի հոլովել այր ոք Փիւնիկ
եկն առ իս.
Այր դաւաճան, ցանցորդ չարեաց, բազ-
մաց չարիս էր գործեալ.
Համոզակեր յանկոյց բանիւք 'ի Փիւնիկէ
ինձ երթալ.
Անդ էր նորա տուն և կալուած. ամ մի
կացի առ նըմա.
Մինչև ամիսք բոլորեցան, աւուրք անցին
'ի վերայ։

Դարձեալ տարին մեզ հոլովէր, գան
 եղանակք և տարւոյն,
Նա նաւագնաց 'ի Լիբիա առեալ եդ զիս
 'ի նաւուն.
Սուտ կրցկրցեաց, իբրու առնուլ զիս
 բեռնաբարձ իւր սատար.
Եւ խորհէր չարն առնուլ գին մեծ հա-
 նեալ զիս անդ 'ի վաճառ.
Գնացի զհետ հարկաւորեալ թէպէտ
 սաստիկ խիթայի.
Ընդէն հիւսսին 'ի հողմ ուժգին նաւըն
 սուրայր 'ի ծովն.
Թևակոխեալ մեք ըզԿրետեաւ, ժամ հաս
 նոցա օրհասին.
Թողեալ զԿրետէ չէր այլ ցամաք, ծով
 երևէր և երկին.
Ի նաւն յայնժամ ամբ կապուտակ կա-
 խեաց Դիոս ամպահար,
Մութըն պատեաց և 'ի ներքոյ ծովն ամե-
 հին թըխանայր.
Անդ խիտ առ խիտ որոտս հանեալ յան-
 կարծ շանթեաց 'ի նաւին,
Սարսեալ գլեցաւ ողջ լաստափայտն 'ի
 շանթ հրացան Դիոսին.
Ծըծըմբահոտ վարակեցաւ. արքն 'ի նա-
 ւէն հոսեցան,
Իբրև սակուռնք շուրջ ըզլաստիւն ալէկո-
 ծեալք 'ի ծփման.

Օրհաս անզերծ գուժեաց. աստուած.
    այլ ինձ տագնապն 'ի վերջին
Զլաստափայտին ըզկայծն երկայն եառ ինձ
    կռուուան 'ի ձեռին.
Գըրկեալ ըզնա, ինն օր ծփեալ 'ի հող-
    մակոծ 'ի յալեաց,
Ի տասներորդն զիս կոհակ մեծ վարեաց
    յերկիր Թեսպրոտեանց.
Ուր մուլթ գիշեր. արքայն Փեդոն առ զիս
    դիւցազն հիւրասէր.
Քանզի որդին իւր նազելին գիպաւ ինձ
    յայն ծովեզեր.
Ըզ ցրտահար վաստակաբեկս առ կար-
    կառեալ 'ի վեր առ,
Տարաւ ընդ իւր մինչև 'ի հօրն ած յար-
    քունեանն 'ի տաճար.
Բաճկոն լօդիկ արկ ձորձ զինև. անդ զՈ-
    դիսեայ լուայ ես.
Պատմէր զիմորդ զդարձեալն 'ի տուն հիւր-
    ընկալեաց մեծապէս.
Ցոյց ինձ և զինչսըն Ոդիւսեայ պըղինձ,
    ոսկի և երկաթ,
Զոր նա կուտեաց. որ 'ի Թոշակ յազգ-
    տասներորդ էր իսկ շատ.
Այնչափ ինչ գանձք կային նորա յաւանդ
    'ի տան արքային,
Այլ զՈդիսէս ասէր գնացեալ 'ի Դոդո-
    նեայն 'ի բաղին,

Առնուլ պատգամ յԱրամազդայ յամ-
բարձուղէշն 'ի կաղնի 59,
Տարադիմեալն յԻթակ 'ի տուն զանխո՞ւլ
մտցէ թէ յայտնի ։
Նաւ երդուաւ, նուէր հանեալ, թէ
կազմ է նաւն և որեան,
Որ ուղեկիցք լեալ Ոդիսևեայ յերկիր
տարցին հայրենեան.
Այլ զիս փեդոն նախ արձակեաց, զի
դէպք ետուն գեղեցիկ,
Նաւ Թեսպրոտեանց ունէր գնալ ցորե-
նաւէտն 'ի Դուլիք.
Նա զիս յանքոյթս յաւանդ յղէր Ակաս-
տոսի արքային.
Որեան զինէն խորհուրդ նիւթէր զի տան-
ջեցայց տակաւին ։
Այն ինչ մեկնեալք 'ի ցամաքէն, գլտայ
գերի վտարակ.
Մերկեն ըզխլայս, լօդիկ, ըզձորձ. արկին
զինև գրգըլեակ.
Արկին բաճկոն, ձորձ բըդդըղեալ զոր
տեսանես դու ինքնին.
Երիկացեալք, 'ի բերկրալիցն հասին յԻ-
թակ 'ի կղզին.
Լար քաջոլոր առեալ 'ի նաւ զիս պրկե-
ցին պնդապէս,
Ինքեանք ելեալք յափըն կղզւոյն ընթրիս
առնուն փութապէս.

Աստուածք ինքնին լուծին զկապանս. ես
ձորձ արկեալ ըզգլխով,
Ընդ զեկն յղկեալ սահեալ 'ի վայր ետու
ըզլանջն իմ 'ի ծով.
Ի լուղ ձեռամբք Թիավարեալ փոյթ 'ի
նոցունց հեռացայ,
Ելի 'ի Թաւս բազմածաղիկ 'ի վայր կաղ-
նուա, անդ անկայ.
Արքն 'ի խնդիր իմ հեծէին և յուսահատք
'ի գտանել
Մըտին 'ի նաւ. և զիս աստուածք անդ
ծածկեցին անարգել.
Առին ածին մարդոյ ուրուք ուշմագունի
'ի դադար,
Կնքեալ ուրեմն է տակաւին կեալ տե-
սանել ինձ զաշխարհ »:
Զայն կարդացեր առ Նա, Եւմէ. «Աւաղ
հիւրոյդ վշտագգեաց.
Յաղէտս քանիս Թափառեցար. և ճառ-
բանիդ զիս խոցեաց.
Այլ զՈդիսեայն ճառ ոչ գովեմ, ոչ
յանկուսցես զիս իսպառ.
Զի՞ քեզ, ով ծեր, ծեր քաջամոյն, սուտ
կրցկրցել վայրապար.
Քաջ իսկ և ես ըզտեառն իմոյ ըզճառ
դարձին քաջ գիտեմ,
Գիտեմ նըմա դիք քանիօն կալան անջինջ
ոխ ընդդէմ.

Զետուն նըմա 'ի Տրոյիա կամ Թէ 'ի ձեռս
սիրելեաց
Քաջին մահուամբ վախճան առնուլ ըղձ-
կնի մարտին մրցանաց.
Եւ Ցոյնք յայնժամ տային նըմա դամբան
ոչինչ 'ի ծածուկ,
Որ 'ի յապայս իւր զաւակին փառս հան-
դերձէր մեծաշուք.
Իսկ այժմ, աւա՜ղ, անփառունակ Ար-
պեանքն ըղձա կապտեցին,
'Ի ես Թաքթաքուր կամ առ խողեանն և
'ի քաղաք չերևիմ.
Բայց Թէ կոչեալ Պենելոպեայ, երբ արք
լրաբերք հասանեն,
Եւ շուրջ նստեալ մերքըն զաքամքք մահ-
րախուզիւ հարցանեն,
Թէ որք ցաւեալք տապին ընդ կորս Թա-
փառական արքային,
Թէ որք խնդան, և անպատուհասք 'ի գոյս
նորա պարարին.
Այլ ես ոչինչ հարցաքննեմ յօրէ յորմէ
զիս խաբեաց
Այր ոք Թափառ այր մարդասպան 'ի
յԵտողեան սահմանաց.
Եկն յայս փարախ հիւրընկալայ. ասէր
տեսեալ իւր զՈդիս՝
Առ Կրետացիս Նաւս նորոգել ըզխորտա-
կեալըն 'ի յալիս.

Կացեալ նորա առ խղամէն, գայցէ յա-
մառն կամ յաշնան,
Եւ զանձ բազում բարձեալ բերցէ ա-
ռեալ ընդ իւր քաջ որեան։
Արդ և դու ծեր ով չարակրեալդ, զի
զքեզ առխս ած աստուած,
Մի՛ ընդ միտ իմ մտցես հիւսեալ 'ի քրմա-
զարդ պատմութեանց.
Զրտաց քեզ շուք վասն այսորիկ և ոչ
լիցիս փարելի.
Այլ զի զլթամ, և զի Դիւայն ես ակն
ածեմ վանատրի ”։
“ Նշուշտ 'ի քեզ, կրկնեաց Ոդխս, սիրտ
անհաւատ տարրանայ,
Որ 'ի հաւատ ըզքեզ ածել և ոչ երդմամբ
մարթացայ.
Բայց ա՛ղէ դու. մեք դաշնադիրք լիցուք
յանստուտ 'ի բանից,
Եւ 'ի բարձանց վըկայք ահա զասք երկ-
նաձեմ անմահից.
Թէ տէրըն քո գայցէ 'ի տուն, բաձկոն,
ըղդէկ գեղեցիկ
Դու ա՛րկ զինև, և յըղեա՛ զիս յիմ փա-
րելին 'ի Դուլիք։
Իսկ թէ ոչ գայ, զիս որերուվդ ա՛րկ գա-
հավէժ 'ի ժայռէ,
Զի այլ մուրիկ ահաբեկեալ մի՛ ևս ըզքեզ
խաբեսցէ ”։

« Վա՜շ, ծերունիդ, անդէն յայնժամ
արդոյն Եւմէս ձայն կրկնեաց,
Եւ ո՞ր համբաւ ինձ կրօնաւէր լեցի 'ի
կեանս և յապայս.
Թէ հիւրընկալս զքեզ յիմ մարդակ ար-
կից 'ի մահ տարածեալ,
Եւ ո՞ր երբես կայցէ յայնժամ ձեռս 'ի
յերկին ամբառնալ:
Թո՛ղ անդր, արդ մեզ ժամ է ընթրեաց.
ընկերքս ահա աստ ձեպին.
Ընթրիս առատ մեզ կահեսցուք »: Զայս
ինչ նոքա զրուցէին:
Սկըն խոզեանն և խոզարածք երամակին
տան խշտի.
Փակեն 'ի փակս. դեռնախշտեայցն խառ-
չիւն հատաւ սոսկալի.
Զայն որերոյն կարդաց Եւմէս. « Ածէք
աստ խոզ պարարակ.
Զենից հիւրոյս տարաշխարհիկ և խրա-
խասցուք հաստարակ.
Մեք խրախասցուք, որ ըղխոզից վիշտըս
կըրեմք հանապազ.
Զի՞ լըբէնիքն օտալք ըզմերն ուտեն ըզ-
քիրտն երեսաց »:
Ասաց. կաղնի հերձ տապարաւ. խոզ
պարարեալ ածին
Խոզ հնգամեայ. և առընթեր կրակարա-
նին կացուցին:

Ուշիմն Եւմէս հանդերձեցաւ, էր անմա- հից անմոռաց.

Մաղս 'ի գլխոյն կորզեալ խոզին արկ 'ի խարոյկն և մաղթեաց.

ԶՈդիւսեսին ըզդարձն 'ի տուն մաղթէր 'ի դից ջերմաբար.

Ճերտիւ կաղնւոյն հար վերամբարձ արկ զկենդանին ընչասպառ.

Փողոտեցին և խանձեցին և յօշեցին փու- թապէս,

Ըզհում յօշուածս առ զանդամոց, պա- տէր 'ի ճարպըն Եւմէս.

Առեալ ըզկէսն ըզյօշուածոյն՝ ցանեալ նաշիհ արկ 'ի հուր,

Ապա և զայլսն մանրախորտիկ կտրեալ հարին 'ի շամփուր.

Քաջ խորովեալք քարշէին ողջոյն դընէին զամէնն 'ի սեղան,

Ցարեաւ Եւմէս խոհեմամիտն յեօթըն բաշխեաց զամենայն.

Ցաւերժհարսանց և Հերմեսի Մայեայ որդւոյն հան բաժին 60.

Ցաղօթս եկաց. ապա և զայլն յայր այր բաշխեաց առանձին.

Ըզթամբ զողըն սպիտակ ժանւոյն շըքով ձօնէր Ոդիւսի,

Ուրախ արար ըզտէրըն իւր. Ոդիւս ձայն ետ խնդալի.

« Ո՞ տայր, Եւմէ, հայրն Արամազդ այն-
պէս սիրէր միշտ ըզքեզ,
Որպէս և ես, որ դու այսչափ հիքացելոյս
շուք ածես »։
Կարձեաց Եւմէս. « Կե՛ր, արդոյդ հիւր.
բերկրեա՛ց 'ի տուրս աստուածեան.
Որ տայ զլանայ, որպէս կամի, քանզի կա-
րէ զամենայն »։
Ասաց, ձօնեաց զկից յաւերժից զերեխայ-
րիսն ըզզոհին.
Հրատապ գինի, համեալ նուէր, եդ
Ոդիւսեայ 'ի ձեռին։
Անդ մեկուսի մեծն Ոդիւսէս առեալ էր
իւր բազմական.
Զոքաւ յառաջ Մեսաւլիոս բաշխեաց
ըզհացն 'ի սեղան.
Ըզսա Եւմէս առ 'ի Տափեանց գընեաց
ընչիւքն առանձին.
Մինչ տարադէմ էր Ոդիւսէս, ոչ գիտէր
ծերն, և ոչ տիկինն։
Առնուն խորտիկ, առնուն բաժակ, մին-
չև ըզքաղցն հարկանել.
Ըզհացն եբարձ Մեսաւլիոս, յագեալք
ձեպին 'ի հանգչել։
Սահաս գիշեր, մութ դժուարին. Զևսն
անձրևէր անդադար,
Եւ ջրապարպատ մեծ զեփիւռոս շնչէր
անդուլ և գուժայր։

Զայն ետ յայնժամ Ոդիս յԵւմէս, զեւ-
րըն փորձէր խնամածուն,
Թէ զվերարկուն տայցէ ինքեան, և կամ
տացէ տալ այլում.
" Լո՛ւր արդ, Եւմէ, լուարուք և այք.
կամիմ խօսել ես պարծանս.
Զայս հրամայէ գինին շամբուշ ; որ զմարդ
հանէ 'ի խելաց.
Սա և ըզմեծ զայր իմաստուն դրդէ յան-
չափըս երգել,
Եւ մեղկաբար տայ ծիծաղել, նաև կա-
քաւս հարկանել.
Սա և երբէք տայ բարբառել, զոր չա-
սելն էր լաւագոյն 61.
Այլ զի կալայ ես կարկաչել, ոչ ծածկե-
ցից ինչ 'ի բուն :
Ո՛վ թէ յարբուննս էի տիոց կորովու-
թեամբ ես աւագ,
Որպէս յորժամ 'ի Տրոյիա դարան ծա-
ծուկ լարեցաք.
Իշխան էին անդ Ոդիւսէս և Մենեղաւ
Ատրեսեան,
Եւ 'ի նոցայն 'ի հրամանէն երրորդ կացի
ես իշխան.
Հասեալք յոստանն բարձրապատուար,
շուրջ ընդ թաւուտս քաղաքին,
Դարանեցաք մեք ընդ զինուք յամուրս
պրաուտոցըն ճահճին.

Գիշեր դըժար հաս 'ի վերայ պաղ հիւսի֊
սին 'ի շնչմանց.
Ձիւնէր ցրտին իբրև զեղեամն, ասպարքն
եղեն սառնամած.
Այլք վերարկուօք և բաճկոնիւք վահա֊
նափակք ննջէին.
Անմըռոտացեալ ես ընկերացս ըզվերարկուն
Թողի զիմ.
Զի և այնչափ ոչ կարծէի լինել ինձ անդ֊
ցրտահար,
Ասպար միայն առի ընդ իս և զլուսափայլն
իմ կամար:
Եհաս երրորդ պահ գիշերոյն. աստեղք
գնացեալ մեկնէին.
Ես յադգըղեալ յարմուկն, ասեմ ինձ
առընթեր Ոդիւսին.
Վըճարեալ է վասն իմ, Ոդիւս, դիւցազն
ուշիմ Լայերտեան.
Զիս հըմերունք պաշարեցին, անվերար֊
կու ես զոփամ:
Խաբեաց զիս Քաջն. եմ բաճկոնիւ և
ապրանաց չեմ ես արդ.
Լուաւ անդէն այր բազմահնարն և 'ի
խորհուրդս և 'ի մարտ:
Ձայն ետ մեղմով. “ Լո՛ւռ լեր, ասէ,
մի ոք լուիցէ 'ի Յունաց ,,.
Ասաց. անդէն և զարմըկամբն ըզգլուխն
առեալ ձայն կարդաց.

« Լուարո՛ւք ո՛վ քաջք, ինձ 'ի քունելս
երազ մատեաւ աստուածեան .
Ազդէր խորհուրդ՝ թէ 'ի Նաւաց մեք
յոյժ անկայք բացական .
Արդ ումն 'ի մէնջ գնասցէ յարքայն Ագա-
մեմնոն ազդարար .
Հրաման տացէ, գայցէ անդուստ մեզ զօ-
րավիգ շատ օրեար » ։
Լուաւ Թոաս Անդրեմոնեան, ձեպ տայր
'ի կոյս 'ի Նաւաց,
Անձապարեալ ըզվերարկուն զիւր ծիրա-
նին արկ 'ի բաց.
Առի ըզձորձն ուրախութեամբ ընկող-
մնեցայ պաշտպանեալ,
Մինչև ծագեաց մեզ արշալոյսն առաւօ-
տուն ոսկեփայլ։
Ո՛վ թէ և արդ յայն տիս էի քաջարու-
թեամբ ահարկու,
Ինձ և յայս փակ խոզարածից տայր ոք
անշուշտ վերարկու,
Ակն ածելով միանգամայն 'ի սէր 'ւ 'ի
շուք քաջութեան .
Իսկ աստ տեսեալ ըզցրցըլեակս իմր ան-
կածի շուք ոչ տան » .
« Ո՛վ ծերունիդ, կրկնեաց Եւմէս, քաջ
են քո բանքդ և արդար.
Եւ ոչ անձահ և վայրապար ինչ 'ի վիպիդ
խօսեցար .

Բայց ոչ և աստ 'ի ձորձ և յայլս երբէք կացցես անխղճնամ.

Ողջքաւոր հիւքացելոյն պարտ է ունել զամէնայն:

Այլ դու վաղուն արկ ըզնոյն ձորձսդ. աստ չէք բազում պատմուճան,

Եւ ոչ բաճկոնք փոխանակաւ. այր այր ունի մի միայն.

Երբ Ոդիսեայ գայցէ որդին, առատապէս քեզ տացէ

Լօդիկ, բաճկոն, քեզ 'ի ծածկոյթ, և ուր կամիս, յղեսցէ »:

Ասաց. առ հրոյն արկ անկողին Եւմէոս սիրով մեծապէս,

Եւ յոդենիս և յայծենիս ընկողմնեցաւ Ոդիսեւս.

Արկ ծերունւոյն և զվերարկուն զիւր Թաւամազ մեծ և լայն,

Զոր նա ունէր փոխանակաւ 'ի դառնաշունչ ձըմերան.

Այսպէս անդէն հանգեաւ Ոդիս և պատանիքն առ նովաւ.

Բայց Եւմէոս հեռ' 'ի խոզից իւր անկողին ոչ արկաւ:

Ելեալ 'ի դուրս 'ի զէն վառէր, անդուստ խնդայր Ոդիսեւս

Զի և գոյից բացականին այնչափ տանէր հոգ Եւմէս.

Նախ սայրասուր առեալ սուսեր շուրջ
նա կախեաց 'ի յուսոց,
Արկ և ըզթաւն ըզվերարկուն ամրածա-
ծուկ 'ի հողմոց.
Արկ և ըզմորթ յոյժ թաւամազ ըզքա-
ջաքոյծ յաղթ զայծուն,
Առ և սըլաք մեծ սայրասուր, մարդկան,
գամփռանց զահարկուն.
Զօրաւ հանգչել առ սաեւազգեաց մեծ
երամակըն խոզաց,
Ընդ փայլ վիմով ննջէր անքոյթ հիւսի-
սայնոյն 'ի շնչմանց:



# ՈԴԻՍԱԿԱՆ



ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԵ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Աթենաս երևի Տելեմաքեայ 'ի գիշերի, և քաջալերէ դառնալ 'ի Սպարտիոյ յԻթակէ : Հրաժարեալ Տելեմաք 'ի Մենեղաւեայ, հասանէ 'ի Պիւղ ընդ որդւոյն Նեստորի • անդուստ նաւագնաց լինի առեալ ընդ իւր զայր ոք գուշակ արգոսացի՝ անուն Տէոկլիմենոս, այր վտարական առ մարդասպանութեանն : Իսկ անդ յագարակի խոզերամակին դարձեալ զրուցատրութիւնք Ոդիւսեայ և Եւմեոսի, որ տակաւին յանծանօթս պատմէ Ոդիւսեայ զանցս գերութեան իւրոյ 'ի հինիցն Փիւնիկեցւոց, և զվաճառիլ իւր 'ի տուն Լայերտեայ հօր Ոդիւսի : Բայց յայնժամ հասեալ Տելեմաք ողջամբ յափունս Իթակայ, առաքէ զնաւն 'ի քաղաքն, և ինքն միայնիկ դէմ եդեալ գնայ 'ի տուն Եւմեոսի հաւատարմին իւրոյ յագարակին, ուր հիւրացեալ կայր Ոդիս յանծանօթս :



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԵ·

ԲԱՅՑ Աթենաս եմուտ յայնժամ 'ի Սպարտիա լայնատարր,
Քաջին որդւոյն մեծն Ոդիսեայ դարձին 'ի տունն ազդարար.
ԸզՏելեմաք և զՊիսիստրատ Մենելա-ւեայն յօթեվան
Ընկողմանեալ գտէ 'ի գաւիթին, անոյշ նինջէր Նեստորեանն:
Իսկ Ոդիսեան Տելեմաքեայ քուն քաղցր յաչաց հատեալ էր,
Ի լուռ խաղաղ 'ի գիշերին 'ի հոգ ծնողին տագնապէր:

Խաժակն 'ի մօտ արձանացաւ, բարբառ
կարգաց, և ասէ.
« Ղա՛տ է քեզ արդ, ո՛վ Տէլեմաք, կալ
տարադէմ 'ի տանէ.
Արանց ժանտից մի՛ տար ընդդոյսդ ողջոյն
'ի յառ և յապուր,
Նոքա ընկեամոսդ 'ի բաշխ համենայն, ուղխդ
լիցի քեզ 'ի զուր.
Թողու ընքեղ Թախանձ արկցես Մենե-
ղաւեայ արքային,
Զի և զպարկեշտ ընծայըրն քո գոյցես 'ի
տան տակաւին.
Արդէն եղբարքն և հայր նորա Եւրիմա-
քին 62 տան ընձա,
Զի օժտագանձ քան զայլ սեղեխս 'ի
տուրս գլտաւ գերակայ.
Փութա՛, զի մի՛ քեզ յակամայս ինչ մի
բարձցի 'ի տանէ.
Գիտես իսկ քաջ, եթէ կին մարդ որո՛վ
հոգւով զգածեալ է 63 ։
Նա զերկրորդի զառըն խնդրէ ընտանին
առնել բարգաւաճ,
Եւ առաջնոյ իւր ամուսնոյն մոռացօնք
են զաւակաց.
Եւ ում յառաջ 'ի տունն եմուտ կոյս
հարսն ամբիծ օժրաբուն,
Ընդեա իսպառ նա մոռանայ հոգ ինչ չառ-
նէ մեռելոյն ։

Այլ դու հասեալ, զի՞րս առաջնեին լա-
ւագունի նաժշտին
Յանձն արարցես, մինչև Աստուած ցուցցէ
քեզ՝ պերճ ամուսին:
Բայց դու միտ դիր. հայր քեզ այժմիկ
'ի հոմանեաց լարեալ կայ,
Դարան նստի քեզ յապառաժն յանձուկս
Սամեայ, և Իթակեայ.
Մինչև 'ի տուն քո ժամանեալ զմահ քո
խնդրեն, բայց 'ի զուր.
Զի հացկատակքդ այդ հոմանիք տա-
պաստ անկցին նախ 'ի սուր.
Կղզեացն 'ի բաց կալցես ըզնաւդ և նա-
ւարկեա գիշերի.
Ածցէ քեզ հողմ ոմն յանմահից, որ միշտ
կայ քեզ հովանի.
Հասեալ յԻթակ յափն առաջին, յղեա
ըզնաւդ և զորեան,
Գնասցեն յոստանն. դու ուղղոյ լեր
գտանել զԵւմէս խոզարածն.
Մերձ է քո հաւատարիմ, օթեա առ նա
զայն գիշեր.
Եւ զնա յղեա դու 'ի քաղաք Պենելոպեայ
'ի բանբեր.
Նա պատմեսցէ, թէ 'ի Պիւղեայ դարձ
արարեր ողջանդամ».
Ասաց Պալլաս, վերասլացաւ 'ի տունն
անդորր Ողիմպեան:

Նա զՔրիստոսարատ յանուշ քընոյն զար-
թոյց խըլթեալ աքացի .
« Արի՛ , արդոյդ , ըզքաջ նըժոյգդ 'ի
կառս ընծեա՛լ մեզ յուղի »։
Նա ձայն կըկնեաց . « Ո՛վ Տելեմաք ,
Թէպէտ և ձեպ տամք ուղւոյն ,
Չե՛ք մեզ ընդ մութ կառավարել . վաղ
ծագեսցէ լոյս այգուն ։
Թո՛ղ քեզ 'ի կառս դիցին հիւրոյթք Մե-
նելաւեայ յարքայէն ,
Եւ քաղցրաժիռք տացէ բանիւք մեզ արձա-
կուրդ 'ի տանէն .
Զի անմոռաց է ցանդ հիւր որ բարեկա-
մին հիւրասէր » .
Այն ինչ ասաց , և ոսկեգահն արեւագալն
հասանէր ։
Զարթեաւ արքայն Մենելաւոս ընդ
վարսագեղն Հեղինեայ .
Եկեալ անդէն յառագաստէ գայր մեր-
ձենայր առ նոսա .
Ըզգաց ուշիմըն Տելեմաք ձեպով զբաճ-
կոնն արկ մարմնոյն
Ըզլուսափայլըն , և առ ղուսով զամբարձա-
ծուկ վերարկուն .
Եւ նա արտաքս . եկաց ձայն ետ . « Դիւցա-
զն արքայ , Ատրիդէս ,
Ի սիրեցեալն իմ հայրենիս ուղւոյ դի՛ր զիս
փութապէս .

Անձկացեալ եմ 'ի տուն դառնալ »:
Լուաւ, կրկնեաց քաջ արքայն,
Քեզ, Տեղեմաք, անձկով դարձիդ չեղէց
յերկար ես խափան.
Ատեամ ես զայրըն վանատուր, որ ըզսի-
րոյն չափ չունի,
Զունի և չափ զատելութեան. միջասահ-
մանն է բարի.
Զոյգ յանցանէ որ զդանդաղկոտ հիւրըն
վարէ 'ի տանէ,
Եւ որ դարձեալ զճեպեալն 'ի դարձ յու-
ղւոյն իւրմէ խափանէ.
Պարտ է զյամեալն հիւր ժողովել և զա-
կամայն արձակել.
Այլ կաց, տեսցես մինչև 'ի կառս զիմ
պերճ զընծայս տաց բերել.
Նաև ճաշ քեզ տացեն կանայք, յորոց 'ի
ներքս 'ի յարկի,
Չէ ճահ, չէ շահ անկերակուր առնել
զերկայն քեզ ուղի.
Իսկ թէ ուղղեալ ես յԵլլադա և 'ի յԱր-
գոս, ընդ քեզ գամ.
Լծեալ նժոյգս և ընդ քաղաքս գնաս-
ցուք շրջել միաբան.
Ոչ ոք ըզմեզ 'ի մարդկանէդ արձակեսցէ
ձեռնունայն.
Ի ձօն տացէ կամ պղնձեայ զեռոտանի
կամ ըզսան.

Եւ կամ ջորեաց զոյգ կորովեաց և կամ
բաժակ ոսկեղէն ”․

Լուաւ ուշիմին Տելեմաք, ձայն արքային
եւ անդէն։

“Դիւցազն արքայ, Մենելաւէ, ես ’ի
դարձն եմ անձկայրեաց․

Քանզի ’ի մեկնելս զոք պահապան չեդի
իմոց կարասեաց․

Զի մի թերեւս ’ի խնդիր հօրս ես գլխովին
հեքացայց,

Եւ ’ի գոյիցս հայրենատուր բոլորովին
մերկացայց ”։

Լուաւ արքայն, ձայն ամուսնոյն եւ,
նաժշտացն և խմբի․

“ Հապա, խահիցն ’ի պահելոց ճաշ մե-
ծահաց կազմեսցի ”․

Զարթեաւ անդէն, եկն առ արքայն և
Ետոնէս Բոեթեան,

Զի չէր նորա ’ի յարքայէն յարկ անկող-
նոյն բացական,

Աւ ’ի խորով հրաման կարգաց հուր
բորբոքել ’ի ժամուն,

Նա ժիր ’ի գործն․ իսկ ինքն արքայն էջ
’ի բուրեան տուն գանձուն․

Ոչէր միայնակ․ էր Հեղինէն և Մեգա-
պենթն ընդ նմին․

Ի տան գանձուն կային մըլթերք և պա-
տուական կարասին։

Ինքնին անդստին Մենեղաւոս առ դերկե-
ունկին դաշխուրան.
Մեգապենթեայ որդւոյն բառնալ եւ
զարծաթին խառնարան.
Բայց Հեղինէ զասպատոս շարից երփնա-
զարդից, գործք ձեռին.
Ըար մի ջքնաղ, մեծ, երփներանգ եբարձ
անտի Տիրուհին,
Նման աստեղ ճաճանչն հաստատ, կայր նա
'ի տակ սապատուն.
Զոքան այնպէս առ Տելեմաք 'ի ձեռս ըն-
ծայք գերապատուն։
Զայն եւ արքայն. « Ո՜վ Տելեմաք. զան-
ձունկն 'ի տուն հայրենեան
Լցցէ ողջեկ քեզ Արամազդ փեսայն Հե-
րայ ամպրոպեան.
Տաց քեզ ընծայ զիմ տաճարիս ըզգեղե-
ցիկն աննըման,
Համակ արծաթ և ոսկեշուրթն հրաշա-
կերտեալ խառնարան.
Գործ ճարտարին է Հեփեստեայ, զոր և
սիրովին ձօնեաց
Փեդիմ դիւցազն, որ էր արքայ Սիդոնա-
ցւոց քաջ արանց.
Նա մեծապէս զիս ժողովեաց 'ի տրոհա-
կան 'ի դարձին.
Արդ ես ընծայն քեզ տամ յաւէժ կենիկք
սիրոյս մըտերիմ »։

Ասաց, և եդ 'ի ձեռս նորա ընդունչխու-
րան բոլորչի,
Եւ զխառնարանն քաջ Մեդապենեթն եդ
հանդիպոյ զարծաթի։
Իսկ Հեղինէ չքնաղն ընդշար 'ի ձեռս կա-
լեալ բարբառէր.
« Տաց քեզ և ես, ընկալ դու զայս որ-
դեակ սիրուն, 'ի նուէր.
Այս յիշատակ գործած անկուած իմ
Հեղինեայ է ձեռաքն,
Ցոր անձկացեալ քոց հարսանեաց տրկա-
նելի քում հարսին.
Առ այժմ 'ի տան կացցէ յաւանդ առ
մօրըն քո նազելւոյն,
Դու խրախսամիտ դարձցիս ողջամբ 'ի հայ-
րենին քո 'ի տուն »։
Ասաց և եդ 'ի ձեռս նորա. առ ընկալաւ
խնդագին.
Պիսիստրատոս զննեալ ողջոյն առ ամփո-
փեաց յանօթին։
Իսկ Մենեղաւ խարտեաշագեղն առեալ
ընդհիւրան երկոսեան,
Ած յարքունիս և տայր գահոյս նոցա
շըքով բազմական.
Ջուր 'ի լուացումն յարծաթ լական յոս-
կի չքնաղ յանօթոյ
Հեղոյր նաժիշտն, և սրբամաքուր սեղան
ձգեաց հանդիպոյ.

Կինըն տնօրէն հաց կերակուր ած եդ-
յառաջեռն 'ի խահից,
Եւ մերձ կացեալ Ետէոնէոս, բաշխէր ըզ-
միսն 'ի բաժինս.
Աքքայորդին Մեգապանթէս անդ մա-
տըռուակ էր գինւոյն.
Մինչ 'ի խահից և բաժակաց վայելըս առին
զսեղանոյն:
Ելեալ ըզձիս և յերփնազարդ ելին 'ի
կառս երկոքին,
Ի Նախադրանց ընդ ձայնատու գաւիթն 'ի
դուրս վարեցին.
Գայր ընդ նոսա խարտեաշ արքայն, ու-
նէր 'ի ձեռն անապակ
Ոսկի հորդել. բայց նախ նուէր ձօնէր
յոսկի 'ի բաժակ.
Համդէպ ձիոցն եկաց ձօնեաց. « Գնա-
ցէք, ասէր, խնդագին.
Ո'ղջ լերք, ո՛վ քաջք, և մեծ ողջոյն տուք
Նեստորայ արքային.
Նա հայրօրէն ինձ խնամածու էր 'ի մար-
տին Տրովականն ».
Լուաւ, անդուստ Տելեմաքոս ուշիմն ա-
րար պատասխան.
« Այո՛, դիւցազն, ոճով մեք զայս պատ-
մեմք նմա զամենայն,
Այլ ո՞ տայր ինձ և Ոդիւսեայ հասեալ
յԻթակէ ողջանդամ.

Քանզի 'ի քէն սէր և համբոյր հիւրասէ-
մեծար ընկալայ,
Եւ զքոյն զառատ տուրըս չքնաղս ցուցա-
նէի ես նըմա ”։
Մինչդեռ խօսէր, արծիւ Թռեաւ սա-
ւառնաթև 'ի յաջմէ
կորզեալ մագլօք սագ մի սպիտակ յազգ
ընտանուն 'ի գաւթէ.
Ըզհետ արծուոյն արք և կանայք գոչիւն
բարձին անպայման,
Նա մօտ նոցա յաջմէ կուսէ ճախրեաց
ձիոցն յանդիման.
Խնդամիտ եղեալք առ հասարակ, նախ Պի-
սիստրատ ձայն կարդաց.
“Արդ ո՛ւմ արդեօք ցուցաւ նըշանս, դիւ-
ցազն արքայ, դու խորհեա՛ց.
Ո՞վ, մե՞զ արդեօք թէ քեզ ինքնին եցոյց
Աստուած զայս նըշան ”.
Լուաւ արքայն, գումարեցաւ. խոկայր
ասել ինչ արժան.
Կանխեաց զարքայն, “Լուարո՛ւք, ասէր
քօղազարդեալն Հեղինէ.
Ինչ զոր ասեմ, անմահք սադրեն. դու-
շակութիւնս յանդ ելցէ.
Որպէս արծիւըն մագլցի կորզեաց ըզսագն
ընտանուն,
Սաւառնելով յափափայից՝ ուր են իւր
ձագք լեռնասուն,

Այսպէս Ոդիւս տանջեալ թափառ 'ի
տուն դարձցի վրէժխնդիր,
Կամ թէ դարձաւ, և հոմանեաց նիւթէ
ըղմահն անյարիր »:
« Ո՜վ, տայր ինձ զայդ վէհն Արամազդ,
Եւ Տելեմաք ձայն կրկին,
Ցաշտիւք յայնժամ իւր Աստուծոյ քեզ
կանգնէի ես բագին ».
Ասաց, գանեաց, և ձիք թռուցեալք ան-
դուստ 'ի դաշտ դիմեցին,
Ըշմանձն անդուլ թօթափելով ըղտիւն
ողջոյն սուրային.
Ամին եմուտ, մթնին ուղիք, նօքա հա-
սին 'ի Փերայն;
Ի տուն Դոկղեայ որ էր որդի Որսիղոքեայ
Ալփոսեան.
Անդ օթեցան, տուին հիւրոյս մինչ վար-
դամատն այգածին
Ծագեաց նոցա, լծին ըղձիս և յերփնա-
ղարդ կառս ելին.
Ընդ հնչական դաւիթն 'ի դուրս ձիք
մտրակեալք ձեպեցան,
Թռչին սրավարք մինչև հասին Պիւղեայ 'ի
բարձր 'ի յոստան:
Յայնժամ դարձաւ Տելեմաքոս առ Պի-
սիստրատ եւ բարբառ.
» Քա՛ջ Նեստորեանդ, ըստ քում խոստ-
ման զերդձն իմ լընո՞ւս մինչ խաղաղ.

Հիւրք հայրենիք եմք համաւորք, և սերտք
 յաւէտ յայս ուղւոյս

Լքցուք միմեանց, մի այլ վարեր Թող զիս
 աստէն մերձ Նաւուս.

Զիս յակամայս անշուշտ կալեալ առ իւր
 արդոյ ծերունին,

Զիս գգուեսցէ. բայց ես, ով քաջ, ձե-
 պիմ փութամ 'ի տուն իմ»:

Լռեաւ. խորհէր Պիսիստրատոս ընդուղ
 զոր ինչ խոստացաւ.

Ցանկոյց ըղձիւս. դարձոյց ըղկառս յա-
 փըն ծովուն մերձ 'ի Նաւ.

Զընծայսն շըքեղ զՄենելաւեայ եբարձ
 և եդ 'ի Նաւուն,

Ձայն ետ Նըման. «Արի՛ ել դու և տո՛ւր
 հրաման ընկերոյն,

Մինչև 'ի տուն ես ժամանեալ և հօրս
 պատմեալ ըստ կարգի,

Զի գիտեմ քաջ ըղձերունւոյն սրտմըտա-
 կանըն զոգի.

Զարձակեսցէ, ինքն հրաւիրակ աստ ե-
 կեսցէ մերձ Նաւու,

Լցեալ ըղձեռնդ ուղւոյ գիցէ. բայց և
 սաստիկ ցասնուցու»:

Ասաց, վարեաց զձիս զիասապանծ յոս-
 տան Պիւղեանց, հաս 'ի տուն.

Եւ Տեղեմաք ձայն տայր իւրոցն. «Առէք
 զկազմածս ընկաւուն.

Յարդարեցէք ելցուք 'ի վեր, անկցուք
 յուղի նոյնհետայն ».
Լուան, և փոյթք մտին 'ի նաւն, աչքն
 զքաշտեաց նաւարան:
Մինչ նա 'ի խելս ձեռպէր յաղօթս և ձօն
 ձօնէր Պալլասայ,
Մատեաւ առ նա այր մարգարէական այր
 յԱրգոսէն փախստեայ.
Էր նա այր իղձ տարաշխարհիկ Մելամ
 պոսին 'ի զարմէ.
Էր Մելամպոս նախ բնակաւոր 'ի խաշնա-
 ւէտն 'ի Պիւղէ.
Սա անդ ընչեղ տէր պերճ յարկաց, չո-
 քաւ յայլ ազգ տարադէմ,
Լեալ փախստեայ 'ի հայրենեացն և 'ի
 հոյակապ Նեղոսէն.
Սա բռնացեալ ամ մի ողջոյն ունէր ըզ-
 գանձս Մելամպեայ,
Որ տարաշխարհ 'ի խիստ կապանս տան-
 ջէր 'ի տան Փիւղակեայ.
Վասն դստերն Նեղոսին, դարձեալ և
 զի մեծապէս
Յանցեաւ յանցանս, զոր սոսկալին սադ-
 րեաց նրմա Երինեէս.
Լեալ անձնապուր 'ի Փիւղակեայ, մեծա-
 բառաչ ջոկ զանդեայց
Վարեաց 'ի Պիւղ և վրէժ էառ ըզ Նեղո-
 սին յանցանաց.

Կլին և եղբօրն ած նա 'ի տուն, ընկըքն
չոքաւ տարադէմ,
Նստաւ յԱրգոս 'ի ձիաւէտն, արքայա-
ցաւ նա անդէն.
Կէն ած, չինեաց տուն բարձրաբերձ,
ծընաւ կրկին քաջորդիս,
ԶԱնտիփատէս և զՄանտիոս, և Անտի-
փատ զՈիկլէս.
Մեծն Ոիկլէս զԱմփիարոն ծընաւ զազ-
գին ախոյեան
Զոր Արամազդ և Ապողոն սիրէր սիրով
անհնարին.
Այլ զծերութեան ոչ կոխեաց սեմս,
տապաստ անկաւ 'ի Թեբէ,
Զի մատնեցաւ Ամփիարոն 'ի յընչաքաղց
կընոջէ.
Բայց և որդիք ծընան նորա Ամփիլոքոս,
և Ալկմէոն.
Իսկ Մանտիոս ծընաւ որդի զՊողիփիդէս
և զԿլիտոս,
Այլ զԿլիտոսըն զանհնարման չքնաղագեղն
'ի դիտակ
Յափշտակեաց Այգն ոսկեգահ կալ յան-
մահիցն 'ի դասակ.
Ըզքաջըն արանց Պողիփիդէս զուշակ
մարդկան վեհագոյն
Եդեց ոգւով մեծն Ապողոն Ամփիարեայ
յետ մահուն.

Որ, ընդ խուռում հօր ցասուցեալ՝ չոքաւ
բնակէր յԻւսպէրիս,
Եւ անդ մարդկան գուշակօրէն 'ի վեր
բերէր ըղձազգոնս .
Այրդ որ յայնժամ մատեաւ 'ի նաւն Տե-
լեմաքեայ 'ի ձօնին ,
Թէոկլիմէն անուն նորա Պոլիւփիդեայ էր
որդին :
Եհաս առ նա , յորժամ ձօնէր · կարդաց
յողոքս 'ի ձայնէն .
« Զ' 'ի ժամ ձօնից ըղձերդ գլուխ, ո՛ բա-
րեկամ, քեզ մաղթեմ.
Մաղթեմ 'ի ձօնդ, և 'ի յաստուածն, մաղ-
թեմ 'ի գլուխ քո ինքնին ,
Մաղթեմ 'ի գաս քոց ընկերաց , մի բան
ծածկեր հարցողին .
Ասա՛ ճշգրիտ , ո՞ ես , ուստի՞ , ո՞ւր քո
ծընողք , ո՞ւր քաղաք » :
« Ահա՛ քեզ , հիւրդ , անսուտ բարբառ ,
կրկնեաց առ նա Տելեմաք .
Ես ինք ծընունդ եմ յԻթակայ , և է
հայրն իմ Ոդիւսէս .
Թէ արդեօք կեա՞յ , կամ թէ մեռաւ , վա-
րանեալ կամ մեծապէս .
Վասն այնորիկ խմբեալ ընկերս առի նաւ
մի քաջամուր ,
Եկ՛ 'ի խնդիր իմ ծընողին , թերևս առէց
ինչ ըզլուր » :

Թեւակոխմէն կրկնեաց դիւցազն , « Եւ
    ես յերկրէս հայրենի .
Կամ տարադէմ, զի յիմ ցեղէն զայր մի
    ես ինքն ընտանի ,
Այր շատ եղբարք , Ծով բարեկամք են 'ի
    յԱրգոս ձիաւէտ ,
Ի ես անձնապուր դառն յօրհասէն փա-
    խեայ անտի եւ ընդ եւ .
Արդ Թափառիմ ես յաշխարհի . զիս մա-
    հուանէս մօտալուտ
Մաղթեմ փրկեա , ընկալ 'ի նաւդ .
    զհետ իմ մրտեալ են անշուշտ » :
Կրկնեաց ուշիմն . « Արի և մուտ , քաւ
    չըմերժեմ ըզհիւրն իմ .
Կաց դու աստէն . առցես հիւրոյթս որ-
    չափ ունիմք 'ի նաւին » :
Ասաց , ըզտէգն առ և հանգոյց տախտա-
    կամածն ընդ երկայն ,
Եւ ինքն 'ի նաւն , նստաւ 'ի խելս , մերձ
    եդ հիւրոյն բազմական .
Լուծին զպարանսն . հրաման կարգաց
    առնուլ զկազմածս ըզլաստին .
Ծրացաւ որեարն . կայմն եղեւին կանգնեն
    'ի գոգ խարսխին .
Հաստ կառանօք կապեալ ըզնա , և զա-
    ռագաստն ըսպիտակ
Պարզեալ փոկովք քաշօլորիւք , հողմն
    շնչեաց յաջողակ .

Զայն սիւդ բարձի մեծն Աթենաս մերձեկաց
ընդ օդ ուժգնապէս,
Արագ արագ չափել նոցա զաղխ ծովուն
զասպարէս.
Արին եմուտ, ուղջ խաւարին, և նաւն
'ի սիւդ աստուածեան
Հաս 'ի Փերսա, 'ի մեծն Եղի ուր Եպաւ-
ցիք են իշխան.
Անուի մեկաւլ յառաջագեմ մուտ 'ի
դժուարըս կղզեաց.
Եւ վարանէր, զերծցի՞ արդեօք թէ ըմ-
բռնի 'ի դարանս։
Բայց 'ի գաւթին Ոդիս, Եւմէս ընդ ո-
րերոյն ընթրէին.
Ըզքաղցն հարին, ձայն եա Ոդիս փորձէր
զԵւմէս զայրն ուշիմ,
Եթէ արդեօք այն հիւրասէրն յաւեր-
ժանայ՞ 'ի խնամել,
Խնդրէ՞ ըզնա պահել առ իւր՝ թէ 'ի քա-
ղաք արձակել.
« Լո՛ւր ինձ, Եւմէ, լուարո՛ւք և այլք. յոյժ
տանն զընամ ես վաղ քաղ.
Անդէն մուրամ, զի մի այլ քեզ և ընկերոյդ
ծանրացայց.
Բայց դու խորհուրդ, և առաջնորդ
տո՛ւր ինձ ուղղել 'ի քաղաք,
Ի մուր անկայց դուռն 'ի դրանէ. տացէ
ոք հաց և բաժակ.

Գնայցես 'ի տուն մեծն Ոդիւսեայ՝ լուր
 տալ կընոջն իւր ուշիմ

Եւ հոմանեացըն գոռոզեց ես խառնես-
 ցայց յամբոխն.

Նոքա յիւրեանց լիութենէ տացեն թեր-
 եւս ինձ ընթրիս,

Եւ ժիրաժիր զինչ և հրամեն՝ ըսպաս նո-
 ցա ես հարից.

Գիտեա, ով քաջ, զի 'ի շնորհաց նուիրա-
 կին Հերմեսի

(Յորմէ գործոց կանացածնաց շընորհքըն և
 փառքըն ընծայի),

Ի գործ սպասուց մարդ ոք ընդ իս չէ բա-
 ւական 'ի մրցել,

Եթէ ըզկրակն 'ի յամփոփել՝ եթէ ըզփայտ
 պատառել.

Յոշեմ ըզմիս, քաջ խորովեմ, քաջ մա-
 տըռուակ եմ զգինւոյն,

Յոր ինչ ծառայք սպասահարկու լինին
 աւագ որերոյն ”։

Լուաւ յայնժամ և զայրագին կրկնեաց
 Եւմէոս այրն արդոյ.

« Աւա՛ղ հիւրոյդ, քեզ այդ խորհուրդ
 ուստի՞ անկաւ 'ի միտս քո.

Ըզմահդ անշուշտ խնդրես մեռեալ դու
 հոմանեացն 'ի ձեռին,

Ոյց շամբշութիւնըն գոռոզեց մինչ յեր-
 կաթին հաս յերկինն.

Իբրև ըզքեզ կարծես թերևս զըսպասաւ-
 կուս գուողայ.
Նոքա առոյգ են պատանիք արկեալ բաճ-
 կոնս և խըլայս.
Վարսք 'ի գըլուխս ջինջք և օծեալք, 'ի
 գեղ դիմաց բարեմոյն,
Կան 'ի սպասու, հացիւք, խահիւք, գի-
 նեաւ սեղանն յանկարծուն.
Կա՛ց դու աստէն, և մեզ յայս վանս ոչինչ
 իւիք ծանրասցիս,
Ոչ ինձ անշուշտ և ո՛չ ումեք յայս որե-
 րոյն որ ընդ իս.
Եկեալ որդին մեծն Ոդիսևայ, նա ինքն
 ըզքև ձորձ արկցէ,
Բաճկոն, խըլայ, և յըղեսցէ ո՛ւր և քո
 սիրտ փափաքէ »։
« Նշի՛ ևթէ, ո՛վ Եւմէոս, բարեբաստ-
 ցաւ Ոդիսևէս,
Սիրէր ըզքեզ վեհն Արամազդ, որպէս
 զարդիս ես ըզքեզ.
Ձի 'ի թափառ զիս 'ի կենաց և 'ի վըշ-
 տաց հանգուցեր,
Որ չէք յաւէտ քան զկեանս թափառ կա-
 նացածնաց դառնաբեր.
Նոքա 'ի սակս սովատանջեալ որովայնին
 չարակրին
Եւ թափթափուր և տարաշխարհք ցաւովք
 մեծօք վարակին։

Արդ թէ կամիս մընալ ինձ տաս, Ցեղեմա-
քոս մինչև գայ,
Ա՛ղէ դու ինձ պատմեա՛ ոճով յաղագըս
մօրն Ողիսեայ,
Նոյն և վասն հօր զոր 'ի չուելն եթող ըզ-
նա ծերացեալ,
Թէ արդեօք կեա՞ն և վայելե՞ն նոքա յալու-
փին լուսափայլ,
Եթէ թերևս արդէն մեռեալք 'ի դըժո-
խոց կան 'ի տուն »:
Լուաւ ըզբանն, և անդրադարձ ձայն Եւ-
մեոսն եռ արգոյն.
« Այս քեզ, ո՛վ հիւր, ողջ պատմեցից բա-
նիւ անսուտ 'ի լեզուէ,
Դեռ Լայերտէս կայ կենդանի, սակայն
Դիայ ցանգ մաղթէ.
Յոգւոց հանէ, զի փութասցէս լուծցի
հոգին 'ի մարմնոյն.
Զի կարեվէր ցաւագնեալ է ծերն յան-
ջատման իւր որդւոյն.
Թախծագին է նաև ընդ մահ ժիր ծնդա-
սէր իւր հարսին,
Քանզի մեռաւ և թող ըզնա յայն ալևոյթ
դըժուարին.
Հարսն հիքապէս մահ Ճաշակեաց ցաւով
իւր քաջ զաւակին.
Ո՛վ, մի առցէ մահ այնպիսի այր որ է ինձ
մտերիմ.

Նա ցորչափ կայր 'ի լոյս արփւոյն, թէ-
պէտ և էր տրտմազգեաց,
Քաղցր էր ինձ յոյժ բան կենակից ճա-
ռել նմա և հարցուած.
Նա սնոյց զիս 'ի մի ընդ պերճ իւրում
դստեր Կտիմենեին,
Դուստրըն չքնաղ և տեսլազարդ զոր նա
ծընաւ իւր վերջին.
Սննդակից եղեալ սըմա, գոգցես շունչս
էր մի և նոյն,
Մինչև հասաք մեք երկոքեանս 'ի տիս
յարբունս քաղցրամոյն.
Զնա 'ի Սամոս ետուն 'ի հարսն և ընկա-
լան ձիր անբաւ.
Եւ ինձ խալայս ետ գեղեցիկս, և ձործ
զինև նա արկաւ.
Ետ պատմուճանս, ետ և բաճկոնս, ետ
և ոտիցս իմ կօշիկ,
Եւ առ յղեաց զիս յագարակ, և միշտ
սիրէր զիս սաստիկ:
Աւա՜ղ, ես արդ կարօտեալ կամ. տակայն
ինձ պարզք աստուածոց
Ձեռըն ետուն և կերակրիմ, նաև յիմոցս
տամ հիւրոց.
Բայց իմ տիկինս ինձ ոչ արդեամբք և ոչ
բանիւք ինչ օգնէ,
Զի տուն նորա ողջ է գրաւեալ առ 'ի
գոռոզ մարդկանէ.

Ոչ և ծառայք կարող ինչ էին լռել յան-
դիման դշխոյին,
Կամ ուտել ինչ և կամ ըմպել, կամ խօսել
ինչ առանձին.
Եւ ոչ կարէին ասա յագարակ բերել նո-
քա և ինչ մի,
Որ այս ըսպաս է հանապազ գործ ծա-
ռայից սիրելի »։
« Մա՜չ քեզ ուրեմն, ո՛վ Եւմէոս, մեծն
Ոդիւսէս բան կրկնեաց.
Դու դեռ մանկիկ վտարեցար յերկրէ
քումմէ ՚ի ծնողաց.
Այլ դու պատմեա՛ ինձ ճշգրտիւ, թէ
քանդեցա՞ւ հիմնովին
Շէն քո քաղաքն՝ յորում բնակէր հայր
քո և մայր նազելին,
Արդեօք ըզքեզ լքեալ մենուկդ առ ՚ի
հօտից և յանդեայց
Հափափելով յանկարծակի հէնքըն տա-
րան ծովագնաց.
Առեալ բերին զքեզ ՚ի վաճառ աստէն ՚ի
տուն արքային,
Որ ժողովեաց ըզքեզ առ ինքն ըզգին
տուեալ զարժանին »։
« Դու մանրամասն ինձ հարցանես, ո՛վ
հիւր, կրկնեաց այրն աւագ.
Արդ լո՛ւր մնջիկ և սփոփեացիս, և ասա
բազմեալ ա՛ռ բաժակ.

Այն իսկ գիշերըս երկայնաձիգք և գոյ մեզ
ժամ ննջելոյ ,
Գոյ մեզ և ժամ'ի սփոփական առ 'ի բանից լըսելոյ .
Քեզ ոչ է ալարտ , Նախ քան ըղձամն ըղքուն առնուլ ընդ երկար ,
Զի քուն երկայն չօգնէ մարդոյ , Նաև է
իսկ վնասակար :
Նա՛ եթէ ոք ախորժեսցէ , 'ի դուրս ելեալ ննջեսցէ ,
Վաղ քաջ ընդ այգըն կերակրեալ ըզմեր
խոզեանն հողասցէ .
Բայց մեք աստէն ընդ մարդակաւս ըղհացն առեալ և գինի ,
Մեր իսկ ցաւոցս ըսփոփեսցուք ածեալ
մեզ զայն 'ի յուշի .
Զի ըզվըշտաց և զաղէտից բան ճառելով
սփոփի այր ,
Որ չարաչարն շատ տանջեցաւ և շատ եղև
նա թափառ :
Արդ ես ճշգրիտ քեզ ճառեցից ըստ քո
հարցմանդ առ յինէն .
Գոյ կղզի մի , եթէ լուար , անդ 'ի վերոյ
յՈրտիգիէն .
Անուն նորա է Սիւրիէ , ուր են և դարձք
արևուն 64 .
Ոչինչ այնպէս մեծ է կղզին , սակայն է
նա բարեբուն .

խաշնաւէտ է, և եղնաշատ, և գինևէտ,
   հացալից,
Անդ ոչ երբէք տօթին մարդիկ, և ոչ ցրտին
   'ի յախտից.
Այլ անդ մարդիկ մինչ ծերանան, մեծն
   Ապողոն անդուստ դայ
Արծաթաղեղն ընդ Արտեմեայ, և հեշտ
   փքնօքն օրհաս տայ 65:
Եւ են անդէն կրկին քաղաքք, են բար-
   գաւաճք երկոքեան.
Դիւցազներման հայրն իմ իշխան էր կոտ-
   սիոս Որմենեան.
Անդ արք Փիւնիկք, արք խաբեբայք,
   եկին հասին քաջք նաւաղ,
Բարձեալ 'ի սեաւ լաստանաւոյածին բիւր
   խաղալկաց աղխամաղխս.
Եւ էր յայնժամ 'ի տան հօրն իմ կին մի
   Փիւնիկ գեղապանծ
Կին առոյգանձն և կին ճարտար 'ի հրա-
   շարուեստ գործ մատանց.
Սա առ նաւուն մինչ լուանայր, 'ի յայնց
   արանց կարթեցաւ,
Եւ նախ միոմն յայն որերոյն անդ ընդ
   նմա շամբշեցաւ.
Քանզի և սէր մտերմութեան ըղձայծ
   ակար կանանի՝
Թէպէտ էցէ և 'ի զգաստից՝ հեշտ ըմբռնէ
   'ի մարմի:

Կընոջն ապա, ուստի՞ նա եկն, և ո՞ է ինքն,
հարցանէր.
Իսկ կինն անդէն նորա ըղտուն հօրս մատնանիշ ցուցանէր.
Իմ քաղաքն է, ասէր, Սիդոն ճոխն և
առատ 'ի պտղինն
Եւ այրքն պերճ և ընչաւէտ մեծն Արիւբաս հայր է ինձ:
Օր մի եղև զի ես գայի դարձ արարեալ
'ի յանդէն,
Եւ յանկարծոյն հէնք Տափացիք զիս յարձակեալք հափափեցին.
Ածին բերին զիս 'ի վաճառ յայս 'ի տաճար Իշխանի,
Առ զիս 'ի տուն և ժողովեաց՝ ըզգինն
տուեալ զարժանի:
Լուաւ և փորձ փորձեալ յայնժամ այրըն
շամբուշ և ասաց.
Արդ դու ընդ մեզ ո՞չ կամիցիս անդրէն 'ի
տունդ առնել դարձ.
Տեսցես անդէն ըզքոյ ծընողսդ, ըզքո չէն
տունն հայրական,
Քանզի նոքա կեան տակաւին և ընչաւէտք յօրանան.
Զայն կրկնեաց կինն, եկից ընդ ձեզ եթէ
երդնուք ինձ ողջիկ,
Զի զիս ողջամբ և անվըտանգ անդրէն 'ի
տուն դարձուսջիք:

Օայս նա ասաց, նոքա ողջոյն երգուան
երգումն անմեհեր.
Ապա 'ի բանս իւր յաւելեալ կինն առ նո-
սա զայս ասէր.
Դուք լուռ կացէք. երթէք ընդ իս մի ոք
'ի ձէնջ խօսեսցի,
Թէ առ աղբեր թերևս ուրեք և կամ յաւ-
ւոջ դիպեսցի.
Զի մի գուշակ ոք 'ի տան անդ ըղխեթ
ծերոյն զարթուսցէ,
Եւ զիս պրկեալ 'ի խիստ սարիս և ձեզ ըղ-
մահ նիւթեսցէ.
Լիք դուք ուշիմք և ձեր ուղղոյն պատ-
րաստեցէք ըղթօշակ,
Լցէք ընձառդ պարէնիւք, և տուք ինձ
ազդ հրավիրակ.
Ես ձեզ ոսկի առեալ բերեմ՝ որ ինչ յիմ
ձեռն անկանի,
Նաև այլ վարձ նաւուղղութեանդ վարձ
մի տամ ձեզ փարելի.
Սան ես ունիմ ինձ զարքայինն զորդին մա-
նուկ բարեկիր,
Մանուկ առոյգ, շքեղ և ուշիմ, նաև ա-
խոյժ ժիրաժիր.
Ըզնա ես ձեզ առեալ բերեմ և նա ձեզ
գանձ եղիցի,
Երբէք ուրեք թէ 'ի վաճառ հանիջիք ըզնա
յաշխարհի:

Զայս խօսեցեալ երթ կլինն 'ի տուն, իսկ
նորա անդ զամն ողջոյն

Դեգերեցան, ըզցին ըզնաւն շատ կարա-
սեռք ակաղձուն ։

Իբրև այնպէս բեռնաբարձեալ և կազմ էր
նաւն առ 'ի դարձ,

Ցըղէն կըննօղ զայր ազգաբար զայր որք
հրեշտակ խորագգաց ·

Այս այր 'ի տուն հօրն իմ եկեալ, և առ-
եբեր մեզ մանեակ

Մանեակ ոսկի ընդելուզեալ էր 'ի սա-
թից գերունակ ·

Մայր իմ 'ի ձեռս առեալ զմանեակն անդ
և երամք նաժշտաց

Կային յակնձիռս և հրաշանան և խոստա-
նան տալ ըզվարձ ·

Պարապ գտեալ այրն այն կընոջն եւ լու-
նըշան ակնարկի ,.

Եւ փութապէս 'ի նաւըն կոյս ինքն ան-
կանէր 'ի յուղի ·

Իսկ կինն առեալ ըզձեռանես ած զիս
արտաքս առանձին,

Եւ գըտանէր նա անդ բաժակս նաև սե-
ղանս 'ի գաւթին ·

Էին ըսպասք այն հօրն իմոյ սեղանակից
որերոյն,

Սակայն գնացեալ էին ողջոյն յատեանն
յատեան խորհրդոյն ·

Նա ձեպ ընդ ձեպ եդ 'ի ծոցին երիս ըս-
կահս 'ի ծածուկ,
Եւ ես ընդ հետ նորա գնայի խակախոր-
հուրդ զերթ մանուկ :
Ի մուտս արեգն էր լուսատուն, և մութ
պատէր փողոցաց.
Մեք ձեպընթացք եկաք ողջամբ յան-
դոյր դադարըն նաւաց.
Կայր անդանօր նաւ փիւնիկեանց նաւն
այն արագ 'ի ծովին,
Մեք ամբարձեալք 'ի լաստափայտն և հա-
տանեմք լոյծ զուղին.
Հողմ յաջողակ առ 'ի վերուստ Ամպրո-
պայինն առաքէր
Եւ նաւեցաք մեք վեցօրեայք յաջողք ընդ-
տիւ ընդգիշեր.
Իսկ յորժամ մեզ յԱրամազդայ եօթնե-
րորդին օր ծագեաց,
Նետակալքաւըն Արտեմիս հար ըզկինն զայն
և խոցեաց.
Գլեալ անկաւ նա դոփելով 'ի խոր 'ի
գոգն 'ի նաւին.
Եւ անդ մնաց չուառական զերթ խոց
կնիւիւ ծովային 66.
Ըզնա 'ի ծովըն ամնացին 'ի կեր փոկաց և
ձկանց,
Եւ ես լքեալ անդ մնացի յոգւի հարեալ
տրտմազգեաց :

Հողմունք ըզմեզ և ծուփք ալեաց առաջին
արկին յԻթակա,
Գրկոց գրկեաց զիս Լայերտէս, յայն֊
ժամ զերկիր զայս ծանեայ »:

Լուեալ ողջոյն մեծն Ոդիւսէս և ան֊
դրադարձ զայս կրկնէր․
« Լուր քոյ Ճառիցդ, ով Եւմէոս, հայր
զիս խոցեաց կարեվէր․
Դու՝ քանիցս չարչարեցար յոգւոյդ, 'ի
սիրտ ցաւագին,
Այլ Արամազդ առ և խառնեաց քեզ ըզ֊
չարիս ընդ բարին․
Քանզի տանջեալ գըտեր զարդիս զառըն
ձեզոյն ըզմարդակ,
Որ գըթութեամբ տայ և ջամբէ քեզ կե֊
րակուր և բաժակ․
Զի դու աստէն կեանըս վարես բարօ֊
րութեամբք լիուլի,
Իսկ ես ընդ շատ քաղաքս անցեալ թա֊
փառական աստ հասի »:
Զայս անդ զրուցեալք 'ի քուն մըտանէին այլ
ոչ բազում ժամանակ,
Քանզի արագ լուսածագեաց ոսկեգա֊
հիկն Արուսեակ:

Մինչ այս մինչ այն, որ եարն յայնժամ
զոր յինք խմբեաց Տելեմաք,
Փոյթ զառագաստն ամփոփեցին ժաման
եղեալք 'ի ցամաք․

Փոյթ և ըղկայքն իջուցեալք և թիակք
վարեցին
Ըզ լաստափայտն անդ 'ի գագարն, առին
խարխափս ձըգեցին:
Կուռ կառանքըն հաստատեալ, յափըն
ծովուն ելանեն,
Եւ բաժակք անոյշ գինւոյն անդէն ընթ-
րիս պատրաստեն.
Իսկ կերան և ըզգինւոյն զըղձըն բարին
անուշակ,
Զայն քաջուշիմն առ իւրն որեար բար-
բառեցաւ Տելեմաք.
“ Ըզլաստափայտդ առէք դուք արդ և
վարեցէք 'ի յոստան,
Ի յայց հովուացըն ելանել 'ի յագարակն
ես գընամ.
Անդ վըճարեալ և երեկուն 'ի մեր քա-
ղաքն առնեմ դարձ,
Եւ առ վաղիւն ձեզ վարձ քրտանց տաց
ես ընթրիս մեծահաց ”.
“ Իսկ ես ապա, սիրուն որդեակ, Թէ-
ոկլիւմէն ձայն կարդայց,
Ո՞ւր ուղղեցայց, և յո՞յր 'ի տուն Իթակա-
ցւոց իշխանաց.
Գնացի՞ց արդեօք առ մայրդ արգոյ և 'ի
քոյինդ 'ի տաճար ”.
Տելեմաքոսըն քաջուշիմ լուեալ զհար-
ցումն ետ բարբառ.

« Ըստ պատեհի ժամանակին ես ինքն ընդ
քեզ 'ի յիմ տուն
ժողովեցի, և անդ հիւրոյթ չէր քեզ այլ
ինչ լաւագոյն.
Սակայն զարդիս քեզ չէ բարի, զի ես
անդ քեզ մերձ ոչ կամ,
Նա և ոչ մայրն իմ սիրելի տեսցէ ըզքեզ
անդ 'ի տան.
Քանզի և ոչ նա հոմանեացն յաճախա-
գոյնս երևի,
Այլ 'ի յարկին իւր վերնատան նըստի հե-
նու մեկուսի:
Ես քեզ այլ այր հիւրամեծար ցուցից
զարդիս զԵւրիմաք,
Որ դիւցազնին Պողիւբեայ է հոյակապ
նա զաւակ.
Այր լաւ է նա, և շուք ընդ դից Իթակա-
ցիք տան նըմա,
Եւ մեծապէս ըզիմ մայրն արգոյ 'ի կին ա-
ծել նա տարփայ.
Անձկացեալ է նա ժառանգորդ գահոյն
լինել Ոդիսեան,
Բայց Արամազդ գիտէ ճշգրիտ վեհ երկ-
նաբնակն ողիմպեան,
Եթէ արդեօք չար օրահաս ըզհարսանիս
կանխեսցէ »,
Այն ինչ նորա բանքն 'ի բերան, հաւ մի
թռեաւ 'ի յաջմէ.

Նր այն բաղէ արագաթռիչ հրեշտակ
բանբեր փեբոսի ,
Եւ 'ի մազիլս կալեալ ունէր նա՝ըղձըն-
քուշն աղաւնի .
Ըզթեւս զփետուրըս զաղաւնոյն փետէր
բաղէն այն վիրագ ,
Եւ թօթափէր ընդ մէջ նաւուն , և ուր
կայր ինք Տելեմաք .
Թէոկլիւմէն առեալ զաջոյն Տելեմաքեայ
մեկուսի ,
Բարբառեցաւ , « Լո՛ւր ինձ , ասէր , ո՞
Տելեմաք նազելի .
Բա՛ ոչ առանց ինչ աստուծոյ հաւըն
թռեաւ ընդ աջմէն .
Զայն ակներև ես դիտելով քաջ գիտա-
ցի , հըմայք են .
Չէք քան ըզձերն այլ առաւել ձեռ ար-
քունի յԻթակէ ,
Այլ դուք աստէն միշտ զօրաւորք քաջ
պանծասջիք 'ի Թաղէ ».
Կից ընդ բանին և Տելեմաք հաւահմային
ձայն կրկնեաց .
« Իցի՛ւ եթէ , ո՛վ հիւրըդ քաջ , լինէր ըղ-
ձիդ կատարած .
Արագ արագ սէր և պարգև քեզ նաւթ-
ձէի անսահման ,
Զի և տեսողք մեծ երանիս քեզ կար-
դային յանդիման » :

Ըսաց, անդէն բարբառեցաւ ձայն մը-
    տերմին իւր Պիրեայ.
« Ա՛ղէ՛ Պիրէ ո՛վ Կլիւտոուեան դու յիմ
    ընկերս գերակայ.
Որչափ 'ի Պիւղ ինձ միանգամ նիզակա-
    կիցք զհետ եկին,
Դո՛ւ առաւել յամենայնի քաջ դիւրեցեր
    իմ սրտին.
Դու և զարդիս զայս զիմ հիւր մեծ 'ի քոյդ
    ածցես յօթեվան,
Եւ գրգանօք շուք մատուսցես մինչ ես
    դարձայց միւսանգամ:
Ձայն Պիրէոս կրկնեաց անդէն. « Լո՛ւր
    ինձ, արգոյդ Տելեմաք.
Լե՛ր անվեհեր, թէպէտ և աստ դու ձիգ
    կացցես ժամանակ.
Դա անկարօտ լիցի ընաւին, և յիմ վերայ
    հոգն ողջոյն ».
Ասաց և ել անդէն 'ի նաւն, և ձայն կար-
    դաց որերոյն:
Հա՛պա 'նդ նըմա՝ ելին, և դուլ անդէն
    տային կառանաց,
Եւ փութապէս նստան նոքա 'ի բազմոցին
    թիակաց:
Տելեմաքոս կապեաց 'ի յոտս զիւրն ըզ-
    կօշիկ գեղանի,
Եւ Ճեպ 'ի ձեռն առ 'ի նաւէն ըզ տէգն
    ըղկուռ պըղընձի.

Լուծեալք զկապանըս նաւաստիք և շար-
ժէին ըզթիակ,
Ծով հատանէին ուղղեալք յաստանն, որ-
պէս ասաց Տէլէմաք.
Իսկ ինք դիմեալ՝ի յագարակն և առ խոզ-
եանն հասանէր,
Ուրոյ՝ի մօտ ընկողմանեալ ննջէր Եւմէս
տիրասէր:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԶ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Խնդայ յոյժ Եւմէոս ընդ ողջամբ դարձ Տելեմաքեայ. և առաքէ 'ի նմանէ 'ի քաղաքն աւետիս տալ մօրն զդարձին իւրոյ: Աթենաս երևի Ոդիւսեայ և անդրէն փոխէ զնա յառաջին կերպարան իւր. և հրամայէ նմա ծանօթս տալ որդւոյն զանձնէ իւրմէ: Անկարծելի դիպացն հրաշատիպ նկարագրութիւն: Իսկ անդուստ հոմանիքն դարանակալք 'ի դարձն Տելեմաքեայ, 'ի դերևս ելեալ դառնան ամօթով 'ի քաղաքն: Եւմէոս կատարեալ ընդ հրեշտակութիւն, դառնայ անդրէն յագարակն առ Տելեմաք, չճանաչէ տակաւին զՈդիւս զմիւսանգամ փոխակերպեալն յԱթենասայ:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԶ.

ՄԱՂՒՔԱՋ ընդ այգ մեծն Ոդիսեւս և
Եւմէոս առանձին,
Ցարեան և Ճաշ պատրաստէին լուցեալք
ըզհուրն 'ի վրանին.
Ճեպ տան հովուացն և արձակեն ըզմեծ
խոզիցն երամակ,
Մինչդեռ անդուստ բազմահաչեան շուն_
քըն տեսին զՏելեմաք.
Ոչ հաչէին, այլ ըզնովաւ մօտ քծնէին
սիրապէս,
Եւ ըզքըծինս յակն իւր արկեալ դիտեաց
քաջին Ոդիսեւս.

Լըսէր 'ի նոյն միանգամայն և 'ի մօտոյ
    զոտնաձայն,
Անդէն և անդ առ Եւմէոս արագաթև
    կարգաց ձայն.
« Անշուշտ զարդիս, ո՛վ Եւմէոս, գայ
    ոք առ քեզ մըտերիմ
Եւ կամ ծանօթ, քանզի և շուն՝ք ոչինչ
    հաչեն, այլ քծնին.
Դյա և 'ի մօտ ես ականջեմ աստէն զոտից
    ըզշառաչ ».
Այն ինչ ասէր, անդէն առ սեամս Տելե-
    մաքոս եկն եկաց.
Տես Եւմէոս, յապուշ հարեալ, անդէն 'ի
    վեր նա վաղեաց,
Եւ խառնարանքն անօթոյ գինւոյն անկա-
    նէին 'ի ձեռաց:
Եւ ընթացեալ ընդառաջեալ տեառն իւ-
    րոյ դրկալէր,
Նա և համբոյր տայր կրկնակի աչաց նորա
    լուսալէր.
Համբոյր սիրով տայր և գլխոյն, նա և
    ձեռացըն կրկին,
Եւ գերարատօր հեղոյր Եւմէս այն ար-
    տասերն առ խնդին.
Զոր օրինակ հայր սիրասուն փարեալ
    զորդին իւր գրգայ,
Զդարձեալն յերկրէ առ 'ի ծագաց ըղձնի
    աւուրց տասնամեայ.

Զաւակ բազմաց իւրոց յաւուց, և միա-
ծին, ծերածին,

Այսպէս յայնժամ քաջն Եւմէոս ետես
ըզպերճ պատանին.

Նա գիրկ ընդ խառն համբուրելով իբրև
ապրեալ յօրհասէ,

Եւ համբուրիւ ոչինչ յագեալ, յոգւոց
եհան և ասէ.

“ Ողջամբ եկիր, Տելեմաքէ, լոյս մեր
աչաց աննըման.

Ո՞ ինձ ասէր ըզքեզ ողջիկ յակն արկանել
միւսանգամ։

Դու առ ՚ի մէնջ անդր ՚ի Պիւղոս ՚ի չու
անկար յանկարծոյն.

Այլ ա՛ղէ մուտ ՚ի ներքս առ մեզ, ո՛վ դու
որդեակ սիրասուն.

Ընդ քո այցելըդ մեզ ՚ի հեռուստ արդ ՚ի
տես քո բերկրեցայց,

Որ դու յաճախ աստ ոչ գայիր յայց մեր
գաւթիս և հովուաց։

Մնայիր յոստանին, քանզի սիրտ քո բազ-
մատագնապ ոչ ժուժայր,

Եւ գիտէիր ըզհոմանեացն ըզչարաչուք
զայն որեար ”։

“ Այո՛, ո՛վ հայր, բարբառ կրկնէր Տե-
լեմաքոսն արդոյ,

Գամ առաւօտիկ զքեզ տեսանել, նաև լսել
ըզբան քո.

Արդեօք 'ի բոսն յիւր ապարանս մայրն
իմ մընա՞ց տակաւին,
Եթէ արդեօք այր ոք օտար առեալ ըզնա
ած 'ի կին.
Արդեօք այրի ամայացեալ եկա՞ց մահիճն
Ոդիսեան,
Եւ ձըգեցա՞ն սարդխոստայնք և խըլթնա-
ցա՞ւ որսկապան »։
Կրկնեաց Եւմէոս իշխանն հովուաց եւ
քաղջալեր զաւակին.
« Հանդարտ լեր, քաջ. մայր քո արդոյն
կայ 'ի տան քում տակաւին.
Միշտ անսասան կայ 'ի յոգին, սակայն
և միշտ տրտմազգեաց,
Թացեալ ըղտիւ և ըղձիւքեր կայ յորդա-
հոս յարտասուաց »։
Ասաց, էառ նա 'ի ձեռացն ըզպըղընձի
կուռ զաշտէն,
Մուտ Տելեմաք անդէն 'ի ներքս անցեալ
ընդ սեամս քարեղէն.
Ըզնա. յայնժամ հայրն Ոդիսեւս յիւրն
աթոռակ մեծարէր,
Բայց և անդուստ Տելեմաքոս հրաժեշտ
առեալ և ասէր,
« Նիստ դու ով հիւր. մեք այլ աթոռ
'ի յայս 'ի մեր հանդըրուան
Գտցուք անշուշտ. կայ աւադիկ մեզ սպա-
սարկուդ յանդիման »։

Լուաւ զայն հայրն, դարձաւ անդրէն և
    յաթոռակ իւր նստէր.
Իսկ Եւմէոս ջոյլս զոստոց առ և յերկիր
    տարածէր.
Ած 'ի վերայ և ըզմորթ թաւ, և բազմե-
    ցոյց զՏելեմաք,
Եւ եդ նոցա 'ի հանդիպոյ ըզխորովոյն
    ըզպընակ.
Խահք նշխարեալք էին մնացորդք օր մի
    յառաջ կերողաց,
Նաև հապձեալ այրն հիւրասէր 'ի սակա-
    ռիս կուտէր հաց:
Առ և խառնեաց նա յըմպանակն նոցա
    գինի քաղցրութեան,
Եւ ինքն անցեալ էառ բազմոց Ոդիւսեւսին
    յանդիման:
Իբրև վայելըս կշտասպինդ առին զխահից,
    ըզգինւոյն,
Հարցումն առնէր Տելեմաքոս առ Եւ-
    մէոսն այն արգոյն.
« Ասա ինձ, հայր. այդ հիւրդ առ քեզ
    ուստ ուստեք աստ եկեալ է.
Զիարդ ըզդա արք նաւաստիք առեալ ա-
    ծին յԻթակէ.
Եւ ո՞յք ոմանք էին նաւաստիքն. զի նա
    հետի աստ չեհաս ».
Լուար դու զայն, քա՛ջդ Եւմէոս, և ան-
    դրադարձ ետուր զայս.

« Լայնատարածման դաշտ 'ի Կրետայ աղքա-
տոհմիւ սերեալ է,
Թագաւորական ընդ շատ քաղաքս այր
ձըղձըղեալ 'ի Քաջէ.
Զարդիս ըղձա Թեսպրոտացիք Նաւար-
կելով աստ ածեն,
Եւ եկն առիս 'ի յայս փարախ, զոր արդ-
եւս քեզ յանձն առնեմ.
Եւ արասցես դու ըստ կամի, զի քեզ յո-
ղոք անկեալ է »:
Լուաւ ըղբանըն Տելեմաք, բարբառեցաւ,
« Ով Եւմէ.
Յոյժ զըժուարինըս խնդրեցեր. իսկ
զիա՞րդ ես պատանիս
Հիւրընկալու այգ ծերունւոյդ կարեմ ըն-
նել 'ի յարկիս.
Զեմ անմեհեր ես 'ի բազուկս քաջ 'ի դի-
մի հարկանել,
Յորժամ ոք այր ըղծերունիդ յարձակեա-
ցի 'ի գըձձել.
Նաեւ արդոյ մայրն իմ զարդիս յերկուս
վարանս է ծըփեալ,
Եթէ արդեօք մնասցէ՞ առ իս եւ ըղցի՞ տանս
խնամակալ,
Ակն անկողնոյն իւր ամէն ածցէ նաեւ ձայ-
նին խուժանի,
Եթէ քաջի եւ ընչաւէտ նա տարփածուին
կին ըղցի.

Բայց ես հիւրոյդ, զի 'ի տուն քո դա
ընկալաւ իջեւան,
Խըլլայս, բաճկոնս տուատապէն տաց և
չքնաղ պատմուճան .
Տաց և ոտից նորա կօշիկս, տամ և սուր
մի երկսայրի,
Եւ յղեցից ընդ նա ողջամբ ուր միանգամ
փափաքի .
Իսկ թէ կամիս աստէն ունել, դու քոյ
հիւրոյդ ած խընամ,
Եւ ես 'ի հիւղդ ձորձս առաքեմ, նա և
ըղխահ զամենայն .
Զի մի իւիք քեզ ծանրասցի, մի և քոյին
ընկերաց .
Բայց ծերունւոյդ չառնում ես յանձն
գալ յերևան հոմանեաց .
Զի են նոքա արք ապաշնուրք և արք ժըլ-
պիրհք անըմբեր,
Եւ թէ ընդ գա ինչ գրձձեսցեն, ինձ ցաւես-
ցէ կարեվէր .
Մի այր 'ի մէջ արանց բազմաց թէպէտ
և այր զօրաւոր,
Զինչ մարթասցի ինչ առնել, արք են
նոքա յոյժ հզօր »:
Ասաց յայնժամ ընդբերան իւր համբերա-
տարն Ոդիւսէս,
« Իցէ և ինձ արժան, ով քաջ, խօսել ինչ
մի յայս հանդէս .

Զիս օ՛ն և օն տանջէ տապէ այդ լուր ճա-
ռիդ հոմանեաց.

Ո՛վ, քանի՛օն խեռնացեալ են քեզ 'ի տան
քում յակամայս.

Այլ աստ ինձ, եթէ արդեօք դու՛ տեղի
տաս մրտադիւր,

Կամ թէ քաղաքդ առեալ ըզքեզ 'ի
պատգամաց ինչ 'ի լուր.

Կամ թէ լքեալ կաս դու յեղքարց որ
քաջ մեզ են ապաստան,

Եւ լինին մեզ նիզակակից 'ի մարտ սաստիկ
գոռութեան.

Իցէ՛ թէ արդ յայս իմ աշխոյժս ես լինէի
պատանի,

Կամ թէ որդի եղեալ էր իմ մեծ դիւցա-
զինն Ոդիսի.

Եւ կամ թէ ինքն քաջն Ոդիւսէս Թափա-
ռականն գայր այժմիկ,

( Որովհետև 'ի դարձ նորա չէ մեր հա-
տեալ յոյսն ողջին ).

Եւ յայնժամ ինձ սուր սայրասուր ա-
ռեալ անդէն այր օտար

Եւ ըզկառափն իմոյ գլխոյն թող ինքն
հարցէ չարաչար,

Թէ ոչ մխեալ ես ինքն յոխորտ 'ի բռնին
'ի տուն Ոդիսի,

Եւ բոլորեցուն հոմանեաց օրհաս մահու
դուժայի.

Իսկ թէ նըկուն առ 'ի բազմաց ես լինէի
միայնակ,
Բա՛ յիմում տան ես ընտրէի կալ գիտա-
պաստ նըշաւակ,
Քան զօր ամէն ինձ ոգետանջ յակն ար-
կանել գործ դժնի,
Գձձել ըզհիւրս, և զաղախինս բռնաբա-
րել 'ի յարկի,
Քամել զբաժակն արբեցութեան, և ըս-
պառել ըզցորեան,
Եւ անխըրնայ ընդ վայր ծախել, և [illegible]-
գուսս, անվախճան »:
Ընդ էն ուշիմըն Տելեմաք ձայն զայս կար-
դաց անդրադարձ.
« Ես քեզ, ո՛վ հիւր, արդ ճշգրտիւ բան
զամենայն մերկացայց.
Ո՛չ թէ սրտնեալ և կամ ատեայ զիս արդ
քաղաքն իմ ողջոյն,
Եւ չեմ լքեալ և ամայի ես յիմ եղբարց
երամոյն,
Որք և քաջ իսկ մեզ զօրավիգ են մարտա-
կիցք յանձկութեան,
Այլ զի ըզմերն ըզձետն անդուստ առ մե-
նացոյց Ողիմպեանն.
Մեծն Արկիսոս իւր միածին որդի ծը-
նաւ զԼայերտէս,
Եւ սա դարձեալ ո՛րդի միակ 'ի լոյս էած
զՈդիսէս.

Իսկ Ոգբուանս զիս յիւրում տան եԹող
ծընեալ միայնիկ,
Եւ ոչ խնդաց. ուստի 'ի տան իւր խռնե֊
ցան Թշնամիք.
Քանզի ողջոյն իշխանք կղզեաց յաւա֊
զանուոյն 'ի զարմէ,
Ի Դուլիքեոս, և 'ի Սամէ, և յանտառուտ
Զակինթէ,
Նաև որք աստ 'ի յապառաժ մեր յԻԹա֊
կէն են իշխան,
Ողջ զարփածուք են մօրն իմոյ, և են իսկ
ցեցք իմում տան.
Իսկ մայրս արգոյ 'ի յայս վարանս գը֊
ժոխըմբեր հարսանեաց
Տագնապեալ կայ, ո՛չ մերժէ ինչ և ոչ տայ
ինչ կատարած.
Նոքա զիմ տունն վատնեն ծախեն, և զիս
վաղվաղ ծախեսցեն,
Սակայն առ ծունկըս աստուածոց այս
ամենայն կարգեալ են։
Բայց դու ո՛վ հայր 67, առ քաջուշիմ
Պենելոպէն երԹ փուԹա՛,
Տո՛ւր աւետիս եԹէ ողջ կամ ողջամբ դար֊
ձեալ 'ի Պիւղեայ.
Եւ ես աստէն կամ աւաղիկ և գեգերեալ
մընամ քեզ.
Ե՛րԹ դու զայս մօրս ասա՛ միայն, և աստ
դարձի՛ր փուԹապէս.

Ո՛չ լուիցէ ամենեւին ոք յորերոյն Ա-
քայեանց,
Քանզի բազումք իմոյ արեանս են ծարա-
ւիք մարգախանձ »։
Զայն Եւմէոս կրկնեաց անդրէն. « Քաջ
իսկ գիտեմ ես զարդիս,
Եթէ ընդ այր ոք խելամուտ դու զայդո-
սիկ բարբառիս.
Այլ ասա ինձ, գնացի՞ց նոյնպէս աւե-
տաբեր ազդարար
Նաև ծերոյն մեր Լայերտեայ հորդեալ
ընդ նոյն ճանապարհ.
Զի նա՛ ի սակս Ոդիսեւսին թէպէտ յոյժ
էր տրտմազգեաց,
Ուտէր սակայն ընդ ծառայից նաև տե-
սուչ կայր դաշտաց.
Իսկ աւադիկ յետ չուելոյն քո արդ 'ի
Պիւղ գաղտապէս,
Ասեն, թէ նա դեռ չէ կերեալ և չէ ըմ-
պեալ նայապէս.
Ոչ ելանէ նա յագարակ, հաշի մաշի ար-
տասուօք,
Ցանդ հառաչէ, ծնդեալ ծիւրեալ կայ
ցամաքեալ ոսկերօք »։
Յոգւոց եհան Տելեմաքոս. « Ո՛հ ցաւէ
ինձ կարեվէր.
Այլ մեք թողցուք ըղձերունին նաև վայր
մի վշտոմբեր.

Քանզի եթէ իղձ ամենայն էր խնկ 'ի ձեռս մահացուաց,
Նախ առաջին ընծօրն իմոյ ես սադրէի աստ ընդդարձ.
Բայց դու իմ մօրս ազդեալ, դարձիր. և մի' գընար յագարակ.
Ասա ցըմայրս, Նաժիշտ առ Նա զոք յըղեսցէ Նուիրակ.
Տընակալուչ կինըն տացէ զիմ աւետիս գաղտ ծերոյն ".
Զայս պատուիրեալ Տելեմաքոս, 'և ետ Եումեայ ձեպ ուղւոյն:
Որ ընկօշիկս իւր Եումէոս, գընայր յոստանն ձեպընթաց.
Այն ինչ 'ի դուրս ել 'ի դաւթէն և էջ յերկնից Աթենաս.
Էր նա մարմնով համանմանեալ քաջ 'ի կընոջ 'ի տիպար,
Զքնաղագեղ, բարձրահասակ, կին աշալուրջ և ճարտար.
Մօտ առ դրանդիս եկեալ եկաց և երևէր Ոդիսեին,
Տելեմաքոս ոչ ինչ ետես և ոչ ըզգաց գլխովին.
Քանզի աստուածք ամենեցուն ոչ երևին յայտնապէս,
Այլ շունք գամփռանց տեսին ըզնա, տես և միայն Ոդիւսէս.

Շունքն ահաբեկք ոչինչ հաչէին 'ի յանկն
արկեալ զդիցուհին ·

Այլ կաղկանձեալք և սարսափմամբ զօղին
յալուցս 'ի գաւթին ։

Պալլաս յմնիւքըն ակնարկեաց և փոյթ
ըզգաց Ոդիւսևս,

Յարեաւ յարկէ 'ի խորանին, ել նա ըստ
ցանգ փութապէս ·

Ի հանդիպոյ կաց դիցուհւոյն, և Աթէ-
նաս բարբառէր ·

« Ո՜վ Լայերտեանըդ խորագէտ ժամ է,
ըզքեզ հան 'ի վեր ·

Խօսեաց զարդիս դու ընդ որդւոյդ, և
գընացեալ 'ի քաղաք,

Անդ զիտապատ արկէք ըզխեռ ըզհոմա-
նեացըդ դասակ ·

Նիզակակից եմ ես ընդ ձեզ և մարտ
մըղեմ քաջապէս » ։

Այն ինչ ասաց, և ցուպ զոսկին իւր հը-
պեցոյց յՈդիւսևս ·

Շուրջ ըզնորա արկ զերանոց մաքրափայ-
լեալ պատմուճան,

Կորով յորդեաց նա և մարմնոյն, ետ և
հասակ բարձրութեան ·

Առ նա դարձեալ ըզթուխ ըզգոյնն նոյն
և այտք իւր պարզեցան,

Եւ հերք մօրուացն 'ի ծընօտին կապու-
տակեայք ծաղկեցան ։

Զայս Աթենաս հրաշագործեալ և ել
սրացաւ նա արագ.
Եւ Ոդիսևս մնաց 'ի խոկմանն, յապուշ
հարաւ Տելեմաք.
Անդէն զաչս իւր դարձոյց այլուր. զի
խռովեցաւ ոչ հայէր.
Վարանեցաւ թէ աստուած է, բայց և
ձայն ետ անվեհեր.
" Ա՛յլ ոք, ա՛յլ ոք դու ինձ ո՛վ հիւր արդ-
երևիս յանդիման,
Ա՛յլ են քո ձորձքդ, և ա՛յլ մարմինդ, դու
քեզ այժմիկ չես նման.
Անշուշտ ոմն ես դու յաստուածոց, ան-
շուշտ անմահ երկնաբնակ.
Այլ դու յիս, տէր. լեր դու քաւիչ. և
քեզ հանցուք պատարագ,
Քեզ ձօնս ոսկւով հրաշակերտեալս, և
խնայեա՛ դու 'ի մեզ" :
Անդէն ձայն զայս բարբառեցաւ համբե-
րատարն Ոդիսևս.
" Չեմ ես աստուած. և հի՞մ ասես դու
անմահից զիս նման.
Հայր քո եմ ես, որ աղագաւ յոգւոց
հանես յարաժամ.
Գիտեմ, զի շատ ցաւիս, զրկիս դու չա-
րաշուք յորերոյն" :
Զայս ինչ ասաց մեծն Ոդիսևս, 'ի նոյն
համբոյր ետ որդւոյն.

Ողջոյն ընդ այսոս Ոդիսեսին յորդ Թա-
փէին արտասուք,
Զոր նա ցայնվայր ժուժայր սանձէր և
պինդ ունէր 'ի ծածուկ։
Այլ Տելեմաք ծփայր 'ի միտս արդեօք
ըղձա՞յր տեսանէ,
Եւ վարանեալ նա 'ի խորհուրդս հրա-
ժեշտ տուեալ և ասէ.
“ Քա՛ւ չես դու հայր իմ Ոդիսես. այլ
քաջ խաբէ զիս աստուած,
Զի կրկնատանջ ես տակաւին 'ի ցաւ սըր-
տիս հաշեցայց.
Ձէ այս, չէ այս գործ մահացուի, այլ
պէտք են մեզ անմահի,
Որ զծերութի զայրըն փոխէ, և հեշտ գոր-
ծէ պատանի.
Զի մինչև ցարդ դու ծեր էիր, արկեալ
էիր զըրզըլեակ,
Սակայն զարդիս երկնաբնակաց ես աս-
տուածոց հանդունակ ”։
“ Ոչ՛ք, քեզ զարդիս, Տելեմաքէ, կըրկ-
նեաց նմա Ոդիսես,
Ձէք ընդ հայր քո, որ հանդէպ կայ, քեզ
վարանել մեծապէս.
Մէ դու յանչափըս հիանար, և մի սար-
սիր յերկիւղէ,
Ձէք այլ ուրեք, չէք այլ Ոդիսս, որ աստ
առ քեզ եկեսցէ,

Ես նոյն հայրդ եմ, հայր քո սիրուն,
բազմաչարչար վշտակիր,
Են ամք քըսան ահաւասիկ, դարձայ ե կի
յիմ երկիր.
Բայց այս հրաշից է գործ ձեռին Աթե-
նասայ հըզօրի,
Որ զիս գունակ գունակ շրջէ և փոփոխէ
ըստ կամի.
Մերթ ցնցոտեօք զիս ընծայէ իբրև ըղ-
ծեր մուրացիկ,
Մերթ քաջառոյգ և պատանի ըղձորձ
արկեալ գեղեցիկ.
Երկնաբնակաց այս անմահից գործ է
հեշտին անարգել,
Զազգ երկրածին մերթ բառնալ և մերթ
անշուք յարդարել„:
Ըսաց Ոդիւս, և բազմեցան. այլ Տելեմաք
ոչ ժուժեաց,
Ել փարեցաւ ըզհայրն իւրով, լայր և հե-
ղոյր յարտասուաց.
Լան և ողբան զոյգ երկոքեան և կակա-
նին և կոծեն,
Եւ յարկն հնչէր սաստկագոյն ևս յոր-
ժամ թռչունք հեծեծեն,
Եւ կամ արծիւքըն մագլաւորք և կամ
անգեղք 'ի բունին,
Յաւուր յորում ձագքն անփետուրք առ
'ի գեղջկաց հափափին,

Նոյն օրինակ լայն ողորմ. և մինչ 'ի
մուտս արեգին
Բամ կոծայլն, թէ ոչ անդեալ հօրն հար-
ցանէր զայս որդին .
" Իսկ որ նաւաւ ընդ քեզ ով հայր, մար-
դիկ ածին աստ յԻթակ .
Եւ ո՞յք էին այն նաւաստիք . զի աստ չե-
կիր հետևակ ,, :
Զայն կրկնեաց հայրն, " Արդ ճշգրտիւ
քեզ ով որդեակ մերկացայց .
Զիս Փէակեանք առեալ բերին արք քա-
ջահմուտք ծովագնաց .
Նոքա հիւրոց և պանդխտաց են ուղհա-
հորդք բարեմոյն .
Ընծով հատեալք յարագ 'ի նաւ աստ
հասուցին զիս 'ի քուն .
Նաև եդուն ինձ 'ի պարգև ձիրս հոյա-
կապս և արդոյս .
Բազում ոսկի, շատ և պղինձ, և ընդհան-
դերձս անկուածոյս .
Արդ աստուածոցն խորհրդով այս
գանձք պահին 'ի յանձաւս .
Եւ զիս աստէն ած Աթենաս օրհաս ա-
ծել հոմանեաց .
Զարդիս խորհուրդ մեք խորհեսցուք .
դու ինձ թուեա՛ զհոմանիս ,
Ո՞յք այն որեարն իցեն արդեօք, և քա-
նիք են զխտացից .

Զի անվրէպ ես կշռեցից, մեք միայնակ մարտ դիցուք,
Եթէ արդեօք և այլ որեար մեզ 'ի Թիկունս խնդրեսցուք »:
Ձայն քաջուշիմն ետ Տելեմաք. « Ով հայր, ես ցանկ լըսէի
Ըզքոյ համբաւն հզօր 'ի մարտ և ըզհանճարն 'ի սրտի.
Սակայն զարդիս բան կարի մեծ բարբառեցար ինձ զարմանս.
Զի՞արդ երկու այրք ժտեցին երեքք կռուել ընդ բազմաց.
Նոքա բազումք են և հզօրք, չեն նոքա տասն, ոչ քըսան.
Յոգնաթիւք են, և ըզհաշիւն տաց քեզ զարդիս ըզնոցայն.
Յիսուն Թուով են և երկու այրք պատանիք Դուլիքեայ,
Քաջք այրընտիր. և արբանեակք են վեց Թուով ընդ նոսա.
Քաջք ամբարձան և 'ի Սամեայ քըսան և չորս պատանիք,
Քըսանք դարձեալ 'ի Զակիւնթեայ աքայեցւոց այրք մարտիկք.
Իսկ 'ի մերոյն են յԻթակայ այրք փառաւորք երկոտասան.
Այլ և Մեդոնն այն մեծ Քարոզ է ընդ նոսա միաբան.

Է ընդ նոսա և այր երգակ նուագածու
քաջափորձ,
Են և երկու այլ սպասաւորկուք քաջ խոհա-
մոքք կերակրոց.
Թէ ընդ նոսա մեք կքրեսցուք, խունեալ
խուժանն ըզմեր տամբ,
Մեր ելք իրաց վրէժխնդրութեան լի լի-
նիցի դառնութեամբ.
Բայց դու ով հայր, 'ի զօրավիգ ունել
քեզ զոք թէ կարես,
Զայգ խորհեաջիր, որ քաջապէս նիզա-
կակից լիցին մեզ ":
" Ինեզ աւագիկ, կրկնեաց անդէն, համ-
բերատարն Ոդիւսէս,
Ասեմ յայտնի. դու քաջ միտ դիր, և
խորհեսցիս ուշմապէս.
Արդեօք մեզ ասա վեհն Արամազդ և Ա-
թենաս քաջ մարտիկ
Շատ ինչ իցեն, եթէ այլ զոք ես խնդրե-
ցից զօրավիգ ":
Այն ինչ ասաց, և ձայն անդէն ետ քաջ
ուշիմ Տելեմաք.
" Բարէք, ով հայր, քան ըզնոսա մեզ ուր
գտցին օգնականք.
Թէպէտ նոքա կան տարակայք վերա-
բազմեալք բարձր յամբոց,
Սակայն իշխանք են երկրածնաց և անմա-
հից աստուածոց ":

«Եւ արդ նոքա մերձ կացցեն մեզ, կորկնեաց անդրէն Ողիսէս,
Երբ մեք դիմեալք այդ հոմանեաց գուժամք ըղձողըն զԱրէս.
Բայց դու արի և 'ի տուն մեր գնասցես վաղքաջ ընդ այդուն,
Ե՛րթ և խառնեա՛ց ընդ գոռոզեց այդ տարփածուաց ժողովոյն.
Իսկ ըղձհետ քո զիս Եւմէոս առեալ տարցի 'ի քաղաք,
Զիս իբրև այր ոք ծերունի և այր մուրիկ անաւագ.
Եւ թէ 'ի տան վէպք հոմանիքն զիս գձձեսցեն յայպանաց,
Դու անվրդով տա՛ր և ժուժեա՛, թէպէտ և ես վշտացայց.
Եւ թէ նոքա նաև 'ի դուրս զիս քարշեսցեն զոտանէ,
Թէպէտ և նետ ինձ կշռեսցեն, դու մի՛ լիցիս ա՛յլ յայլմէ.
Այլ աղուաբար քոյին բանիւք ցածո՛ զլկնեալսն և սանձեա՛.
Գիտեմ, չանսան. զի մօտալուտ չար օրահաս կայ նոցա:
Մարդ զոր ասեմ, դու քաջ միտ դիր. յորժամ սադրէ ինձ Պալլաս,
Ես քեզ գլխովս անդ ակնարկեմ, և դու լե՛ր ինձ խորազգաց.

Որչափ ինչ կան 'ի տան մերում զէնք և
անօթք արեսեան ,
Բարձ դու ողջոյն , տարեալ դիցես անդ
'ի յարկի վերնատան .
Թէ խնդրեսցեն զայն հօմանիք , դու
հեզաբար զայն ասա .
Ըզզէնսն առեալ ես պահեցի և 'ի ծխոյն
զգուշացայ .
Զի խանձ հըրոյն ողջոյն ըզզէնսն արդ
մրճոտեաց մեծապէս ,
Եւ չեն այնպէս որպէս 'ի չուն եթող աստ
զայնս Ոդիւսէս .
Առ այս դարձեալ և Արամազդ խորհուրդ
ինձ եդ 'ի սրտի ,
Մի՛ դուք յանկարծ լեալ գինեհարք և
կագ 'ի ձեզ յուզեսցի .
Վէրըս դիջիք դուք այր յընկեր , և հար-
սանեաց սեղանոյ
Խըռովհարջիք . քանզի երկաթ չար հրա-
պուրիչ է մարդոյ :
Բայց մեզ Նիզակ թողցես երկու , թո՛ղ
մեզ սուսերս և կրկին .
Նաև ասպարք մեզ կրկնակի իցեն պատ-
րաստք 'ի ձեռին .
Զի մեք դիմեալք առցուք ըզզէնսն , և
ըղնոսա 'ի ժամուն
Մեծն Աթենաս և Արամազդ ենթա-
դրեսցեն մեզ Նըկուն :

Ինչ զօր ասեմ, լռեալ և անսաս թէ իմ ան-
շուշա արիւնն ես ,
Մի՛ և մի՛ ոք մարդ գիտասցէ եթէ մերձ
կայ Ոդիսէս .
Ոչ Լայերտէս , ոչ Եւմէոս , և ոչ այլ ոք
'ի մեր տան ,
Եւ ոչ ինքնին Պենելոպէ , այլ այժմ ընդ իս
դու միայն .
Ի միասին մեք զաղախնեայս և ըղծառայս
փորձեսցուք ,
Ցի՞նչ միտս իցեն և յի՞նչ խորհուրդ ըս-
տուգապէս ծանիցուք .
Ո՞ ոք արդեօք 'ի նոցանէն մեզ շուք ե-
դեալ ակն ածէ ,
Եւ կամ ո՞ ոք զանց արարեալ քեզ պա-
տանւոյդ ունչս առնէ » :
Ձայն քաջուշիմն ետ Տելեմաք . « Քաջ
ծանիցես 'ի մօտոյ
Զիս ինքն , ո՛վ հայր , թէ չեմ ես վատ և
չեմ անկած 'ի յօգուոյ :
Սակայն զարդիս ըղքան քո զայդ մեզ 'ի
յօգուտ ոչ կարծեմ
Եւ ըզդոյն զայդ քեզ միւսանգամ խոր-
հել կշռել ազդ առնեմ .
Զուր 'ի դաշտի դու շուրջ գայցես առ
'ի փորձել ըղծառայս ,
Եւ ըզդոյս տանդ սեղեխքն անդուստ քեզ
վատնեսցեն յանխղճնայս .

Սակայն ըղձաս ըղկանանւայն քաջին զըն-
նեամ 'ի յարկին ,
Ո՞յք ըղձքեզ , հայր , յընչաց քերեն , և ո՞յք
անմեղք գլխովլին .
Իսկ մեր զօրեարն որ յագարակին մեք
փորձեսցուք այլ անդամ ,
Թէ արդ անշուշտ քեզ Արամազդ ետ
ըղնըշանն յաղթութեան »։
Մինչ անդանօր զայս զրուցէին , նաւն
այն եհաս 'ի քաղաք
Որ համախումբ ընդ ընկերացն ած 'ի Պիւ-
ղեայ զՏելեմաք .
Անդէն 'ի խոր նաւահանգիստն արքըն
մտեալ յաջողակ ,
Դատարկեցին ըզկատարափայտն և քարշե-
ցին 'ի ցամաք .
Ըզձօնս չքնաղ զՄենեղաւեայ առ Կը-
ղիւտոս տանէին ,
Նաև Քարոզ զգք արձակեն 'ի յապարանս
Ոդիւսին ,
Պենելոպեայ տրտմազգեցին գոլ աւե-
տեաց հրաւիրակ ,
Եթէ ողջամբ Տելեմաքոս եկն և մընաց
յագարակ .
Ինքն հրամայեաց իւր որերոյն գալ 'ի
քաղաքն ընդ նաւուս ,
Զի մի անդուլ պերճ Թագուհին ըզցիրդն
հեղցէ զարտասուս .

Բայց այն Վարոզն և Եւմէոս հանդիպեա-
ցան իրերաց,
Եւ միահետաք մեծ դշխոյին գնային բան-
բերք աւետեաց:
Ի ներքս 'ի յարկըն նաժշտաց ձայն հնչե-
ցաւ Վարոզին.
« Քեզ տաղիկ, ով Թագուհի, ողջամբ
եհաս քո որդին »:
Բայց Եւմէոս մատեաւ ուրոյն և յուն-
կըն մօր գաղտաբար
Ծանոյց ողջոյն, զոր ինչ նըմա Տելեմա-
քոս ազդ արար.
Բան կատարեալ զհրեշտակութեանն և
դարձ արար նոյնհետայն,
Թողեալ անդէն պերճ զապարանսն,
ինքըն փութայր առ խոզեանն:
Յարեան յայնժամ հոցկատակաց գասք
հոմանեաց Թախծագին,
Եւ ըստ դաւիթն ելեալք յարկէն մերձ
առ դրանդեօք նստէին.
« Բարէ, ով քաջք, բարբառեցաւ ձայն
Պողիւբեանն Եւրիմաք.
Բարէ, գործ մեծ արդ կատարեաց զիւրոյ
ուղևոյն Տելեմաք.
Ձեռս զայս յաջող ո՞ ոք կարծէր. այլ
ա՛ղէ մեք զաւ հանցուք,
Նաւ քաջամուր և նաւաստիս խմբեալ
անդէն յղեսցուք,

Երթալ ազդել մեր որերոյն, զ՚ ՚ի տուն
դարձցին փութապէս ».

Այն ինչ էին բանքն ՚ի բերան, և Ամփի-
նոմ նաւ ետես.

Քանզի դարձոյց զակն իւր ՚ի ծով, և նաւն
՚ի խոր նաւակայս

Անդ զառագաստ զիւր ամփոփէր, ՚ի բաց
բառնայր ըզթիակս.

Անդէն նա մանր ՚ի ժայռ հատեալ բար-
բառեցաւ և ասէ.

« Չեն մեզ այլ պէտք բանբեր յըղել՝ մեր
նաւն ահա ՚ի ներքս է.

Զայն կամ աստուած ազդեաց նոցա, և
կամ տեսին յանդիման

Զի նաւն էանց Տելեմաքեայ, զոր և ու-
նել վերջացան:

Լուան ըզբանն և յարուցեալ ծովափն
՚ի կոյս երթային,

Եւ դատարկեալք ըզլաստափայտն՝ և ՚ի
ցամաք քարշեցին:

Եկին յատեան ժողովեցան, և անդ բազ-
մել թոյլ չետուն

Ոչ պատանւոյ ոչ կրսերոյ և ոչ աւագ
ծերունւոյն:

« Բնաւ, ո՛վ քաջք, Անտինոոս պետն
Եւպիթեան ձայն կարդաց,

Զի՛արդ աստուածք ըզպատանիդ ճողոպ-
րեցին ՚ի չարեաց.

Ո՞չ գտաք ըզտիւն ՚ի ծայրս նաւուն ՚ի
հողմահարս միշտ անքուն
Նստեալ կայիր ժիր պահանորդք մինչեւ
ցըմուտս արեւուն.
Ի ցամաքի երբէք յայնժամ ոչ անցուցաք
ըզ գիշեր,
Այլ յաղէտանիջ ծով ծըփեցաք մեք մինչեւ
ցայգ լուսաբեր.
Դարանամուտք նստեալք մահուան մեք
Տելեմաք պատանւոյն,
Նըմա աստուած հովանացեալ առ և ե-
բեր ողջ ՚ի տուն.
Այլ ոչ զերծցի Տելեմաքոս, մեք աստ
ըզմահ նիւթեսցուք.
Զի ցորչափ դա լոյս տեսանէ, մեք գլխո-
վին վատասցուք.
Ն՚ փոկ ՚ի բնէ դա քաջուշիմ, և չօգնեսցէ
մեզ խուժանն.
Ո՞ն արի՛ք քաջք, մինչչեւ դորա ըզՅոյնս
խմբեալ է յատեան.
Ա՛նշուշտ սրտնեալ նա բոցավառ յոտն
յարիցէ յատենին,
Բողոք բարձցէ ըզմեր դաւոյն ՚ի անավա-
տակ դարանին.
Ըզմեր զոճիրն Հելլենք լուեալ սրտմը-
տեսցին միաբան,
Եւ զմեզ յերկրէս տարաշխարհիկ ար-
տաքսեսցեն յայլ սահման.

Օ՜ն կանխեսցուք 'ի մահ նորա կամ անդ 'ի դաշտ յամայրին
Եւ կամ յուղւոյն, և զդոյս նորա մեզ բաշխեսցուք 'ի բաժին.
Իսկ զապարանս մօր դշխոյին հանցուք մեք մասն 'ի բաժնէ
Եւ փեսային որ ըղդըշխոյն երջանկացեալ կին անցէ.
Այլ՝ եթէ բանս ձեզ չէ հաճոյ, և կեալ դըմա փափաքէք,
Եւ հայրենեացըն ժառանգորդ ըզպատուանիդ հաստատէք,
Հի՛մ աստանօր ըզդոյս նորա մեք ըմբոշխնեմք 'ի յարկի.
Օ՜ն առեալ ձեր, և 'ի տուն իւր այր այր ելեալ մեկնեսցի.
Յիւրմէ տանէն նա տարփացեալ ըզլէհ դշխոյն խնդրեսցէ,
Լեցի նա առն որ բազում տայ և որում բաղդն յաջողէ »:
Լուան ոգւոյն և լըռեցին. մինչև ձայն ետ յատենի
Ամփինոմոս պերճն Արետեան որդին Նիսեայ արքայի.
Սա ինքն իշխան էր հոմանեացն որ յարգաւանդ Դուլիքին,
Էր և միտօք նա քաջուշիմ և էր հաճոյ դշխոյին.

Բարբառեցաւ. « Քաւ ես ընդ մահ չեմ
ինչ հաճեալ պատանւոյն.
Զարքունական ձեռն անձինաել, ո՛վ դը-
ժնդակ է համբուն,
Ա՛րդ, խորհուրդ ո՛ բարեկամք հարց-
ցուք մեք արդ առ 'ի դից.
Թէ այս կամք են Արամազդայ, բա՛ մահ
նըմա ես ածից.
Նա՛ ձայն ինքնին տաց և այլոց 'ի զօրավիգ
ինձ լինել.
Իսկ թէ աստուածք ոչ հաճեսցին, ձեզ
ազդ առնեմ հանդարտել »:
Զայս ինչ ասաց Ամփինոմոս, և հաճե-
ցաւ ողջ ատեանն,
Յարեան մըտին յարկն Ոդիւսեայ և անդ
շըքով բազմեցան:
Բայց քաջուշիմն Պենելոպէ դարձեալ
խորհուրդ հաստատեաց,
Գալ երևել և յանդիման ձայն մի կար-
դալ հոմանեաց.
Քանզի լուաւ նա 'ի յարկին զօրահասին
գոյժ զորդւոյն,
Զոր հան 'ի վեր նըմա Մեդոն լեալ իրազ-
գած խորհրդոյն:
Վերնատանէն էջ նա 'ի յարկն ընդ նա-
ժշտաց իւր դասուն,
Եւ հաս 'ի Ջոկըն հոմանեաց, շուքն այն
և զարդ կանանւոյն.

Եկաց առ սեամս մեծի սրահին զերդ իւր
այտիւք քօղազգեցաց,
Ձայն Թագուհին բարբառեցաւ, զԱն-
տինոոս կշտամբեաց.
« Անտինոէ, մեծ դու դաւող, չար ա-
րուեստիւք ծայրալեր.
Դու յԻթակեան 'ի համատիոդ համբա-
ւեալ ես, բայց նանիր.
Զի համբաւիս իբրև ըզձեհ և 'ի հանճար
և 'ի բան,
Բայց զյաբանեն համբաւաբերըքն, զի համ
բաւոյդ չես նըման.
Վա՜յ քեզ չամբուշ, հիմ դու մանկանս
մենքենայես օրահաս,
Եւ զմեր մաղթանս, ում վկայ է ինքն Ա-
րամազդ, ոչ հոգաս.
Զարիս նիւթել ոչ է բարի. նաև ինքնին
յուշ չածես,
Ցորժամ քո հայրն ահաբեկեալ առ մեզ
փախեաւ հիքաղես.
Ընդ նա խուժանն էր ցասուցեալ, զի նա
ընդ հէնան ընդ Տափեանս
Համախորհուրդ միաբանեալ և չար հա-
սոյց Թեսպրոտեանց.
Մեզ բարեկամք էին սոքա և ըզմահ հայր-
խնդրէին,
Նաև ընաջինջ առնուլ վաստակ ըզգայս
նորա զհայրենին.

Այլ Ոդիւսեւս էանց 'ի մէջ և ըղմոլիդն
սանձեաց,
Զորոյ դու արդ ուսեալ ըղատուածն և ամեւալ
նոյն ցանկանաս,
Որդւոյն նորա ըղմահ նիւթես, ինձ ցաւ-
ատթես կարեվէր.
Լքեալ այր դու, և ըղզրովողաց սանձակո-
ծեալ անձկեհեր ":
Արկանեաց յայնժամ ձայն դշխոյին Եւրի-
մաքոս Պողիւբեան.
" Քաջալերեաց, Պենելոպէ, դուստր
իմաստուն Իկարեան.
Մի խռովեսցիս, չէք արդ այն մարդն, և
ոչ եղև, 'և ոչ լիցի,
Որ յաւակնեալ ըղձեռն հարցէ քում
քաջարոյդ զաւակի.
Ցորչափ ես կեամ 'ի կենցաղումս և լոյս
զարփւոյն տեսանեմ,
Խոստումն անսուտ տամ քեզ այսօր նաև
անշուշտ կատարեմ.
Թուխ ապաժոյժ արիւն մարդոյն ընդ
գեղարդն իմ շաղեսցի,
Քանզի յիշեմ ըզգութ դարձեալ ես զՈդիւ-
սեայ ըղքաջի.
Նա շատ անգամ առ իւր ծնգովք ինձ
խորովեալս տայր ջամբէր
Եւ գինիկ ընդ խառն ինձ անուշակ նաև
գինի կարկառէր.

Ուստի սիրուն ինձ Տելեմաք մեծ է 'ի մէջ
երկրածնաց,
Եւ մահ նորին ոչ անցէ մարդ, բայց թէ
կամի ինքն աստուած »:
Մօր քաղձալէր զայս ես յայտնեմ, բայց
ինքն որդւոյն մահ նիւթէր.
Իսկ եւ դշխոյն 'ի վերնատունն և անդ
զՈդիս արտասուէր.
Նորա աչացն նիրհ ետ Պալլաս 'ի գիւր
լալեացն հեղահոս,
Մինչդեռ անդուստ ընդ երեկոյն եհաս
'ի վայրն Եւմեոս:
Նոր գլոտանէր նա զՈդիսեւս, կայր առ-
ընթեր և որդին.
Խոզ փողոտեալ, խոզ տարեւոր, անոյշ
ընթրիս կազմէին:
Բայց Աթենաս անդ մերձ եկեալ առ
Ոդիսեւս Լայերտեան
Եհար ցըպղովն, անդէն ըզ նա ծեր փո-
փոխեաց միւսանգամ.
Ըզգըլըրգըլըեալն արկ ըզնովաւ, զի մի Եւ-
մէս ծանուցեալ
Բանբեր կընոջն յուսոմն գնասցէ ձեռ
առ խնդլին անծուծկալ:
« Ողջամբ եկիր, քաջդ Եւմէէ. Նախ ձայն
կարդաց Տելեմաք.
Զինչ մեզ զըրոյց բերեր անդուստ, զինչ
ինչ խօսին 'ի քաղաք.

Դարձա՞ն արդեօք յետս հոմանիք զուր
  վաստակեալքն 'ի դարան,
Թէ տակաւին դարանեալ կան սպասեալք
  իմում գալըստեան »։
« Ես 'ի քաղաք մեր ընթացեալ, ձայն
  զայս կրկնեաց անդրադարձ,
Ինչ մի ումեք ոչինչ հարցի և ուշ չեդի ես
  զրուցաց ․
Հոգ փութապէս միայն կալայ ես զիմ
  պաշտօն կատարել,
Երթալ բանբեր մեր դշխոյին և փոյթ
  այսրէն դարձ առնել ․
Բայց այր հրեշտակ ոք ձեպընթաց հան-
  դիպեցաւ ինձ յուղին ,
Նա յընկերացդ էր , և մօր քում նա աւե-
  տեաց առաջին ․
Ա՜յլ ինչ դարձեալ ունիմ ասել զոր ես
  տեսի յանդիման ,
Անդ 'ի վերոյ մեր քաղաքին առ 'ի բլրոյն
  Հերմեսեան ․
Նաւ ես տեսի ձեպով իջեալ 'ի խոր 'ի
  մեր նաւակայս ,
Լի էր զօրեօքն , շատ և ասպար , շատ
  երկսայրի և աշտեայս ․
Զայն նաւ կարծեմ ըզհոմանեացն , այլ
  ինչ ընաւին ոչ գիտեմ »։
Այն ինչ լուեալ Տելեմաքոս և ժպտեցաւ
  նա անդէն ․

Գաղտ ընդ ականջ նա առ հայր իւր հայ-
եացս արար և ժպտէր,
Բայց և 'ի նոյն առ 'ի յաչաց Եւմէոսին
խուսափէր:
Կազմեալք ապա քաջ ըզխորտիկն, ակումբ
առեալ ընթրէին,
Եւ լիաբաշխ և անկարօտ այր այր ուտէր
զիւր բաժին.
Առեալք վայելչս կշտապլինդ առ 'ի խա-
հից, 'ի գինւոյն,
Ընկողմնեցան և զանուշակ առին պարգևն
ըզքընոյն:



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԷ.

## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ.

Հասանէ Տելեմաք նախ 'ի քաղաքն, ապա և Ոդիւս ածեալ յԵւմէոսէ։ Մելանթէս անուն այծարած Նախատէ զՈդիս։ Ծերացեալ շունն Ոդիսի՝ անուն Արգոս, յետ քսանամեայ պանդխտութեան տեառն իւրոյ ճանաչէ զտէրն, և առ խնդին մեռանի։ Մտանէ 'ի սրահ պալատան իւրոյ Ոդիս 'ի կերպարան մուրկի ծերունւոյ, և շուրջ եկեալ մուրանայ 'ի հոմանեացն։ Անտինոոս գոռոզ գլխաւորն հոմանեաց վարէ զնա 'ի բաց, և պատուանդան մի ևս ընդդէմ արձակէ նորա։ Պենելոպէ դշխոյն կին Ոդիւսեայ,'ի ձեռն Եւմէոսի խնդրէ խօսել ընդ նորեկ մուրկին։ Պատասխանին Ոդիսեայ։



# ՈԴԻՍԵՒԷԱ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԷ.

ՄԱԹԴԱԾԸՂԻՆ ծագէր յաշխարհ դայր
առաւօտն այգածին,
Եւ Տելեմաք ըզգեղեցիկ կապէր կօշիկս
'ի յոտին.
Ըզկուռ զաշտէն առեալ 'ի բուռն էլ և
գընայր 'ի յոստանն,
Առ Եւմէոս բարբառեցաւ, « Հայր, 'ի
քաղաքն ես գընամ.
Ի յայց ելից արագ արագ ես մօրն իմում
սըգազգեաց,
Զի մինչև զիս նա ոչ տեսցէ, ոչ լըռեսցէ
յարտասուաց.

Բայց դու զա՛յդ հիւր ծեր հիքացեալ մուած ընդ քեզ 'ի քաղաք.
Թող մուրասցի, և հաց նըմա կարկառեսցեն և բաժակ.
Ոչ ժամանեմ խընամ ածել ես ամենայն պանդխտաց,
Զի եմ իսկ արդ ոգւով մարմնով ես վշտահար և ցաւած.
Թէ հիւրդ ընդ բանս իմ զայրանայ, նա վիշտ բարդէ իւր անձին,
Զի միշտ սիրեմ ճշմարտութեամբ ընդ բան խօսել զարժանին”։
Զայն Ոդիւսէս ետ խորագէտն. “Եւ ես ինքնին աստ ոչ կամ.
Զի այր մուրիկ, քան 'ի դաշտի, հաց գըտանէ 'ի յոստան.
Անդ ինձ պարէն, լո՛ւր բարեկամ, տացէ մարդ ոք ըստ կամի,
Զի չեմ առոյգ աստ տեառն ըսպաս ես հարկանել 'ի գաւթի։
Դու երթ առ այժմ, և այրըս այս, ում հրամայես, զիս ածցէ
Յորժամ արևըն բարձրասցի և տապ նորա ջեռուսցէ.
Զի այս իմ ձորձ է պահ մարմնոյս. զի մի՛ զիս ցուրտ վաղորդայն
Վընասեսցէ, քանզի զօստանն ասէք լինել բացական”։

Օպա Ողիւսես. իսկ Տելեմաք եւ 'ի
դաւաթէն ճեպընթաց.
Անկաւ յուղի, և խոճոճէր չարիս, աղէտս
հոմանեաց.
Եհաս 'ի տունն 'ի բարեշէնն, և եդ զաշ-
տէն առ մեծ սեան,
Իւանց ընդ սեամբն մարմարեայ, և եկն
եմուտ յօթեվան.
Նախ առաջին ետես ըզնա Եւրիւկլիա
իւր դայեակ,
Որ զգատոնեանս արկեալ սփռէր անդ 'ի
յաթոռս երփնոտանակ.
Աչք իւր յարտօսր անդէն վազեաց և ըն-
թացաւ ընդ առաջ,
Ապա և շուրջ վազէն խոնին անդ և այլ-
դասք աղախնեայց.
Գիրկս արկանէին և ըզգըլուխն 'ի նոյն և
զուսն համբուրէին,
Մինչև անդուստ Պենելոպէ գայր ելա-
նէր 'ի յարկէն,
Արտեմիսեայ և Աստղկանն ոսկեղինիկ
կլինն հանգոյն
Արկ ըզբազուկըն գրկալէր արտասուալից
իւր որդւոյն.
Ետ ըզհամբոյր զգլխոյն նորա, ետ և աչաց
լուսալիր,
Եւ 'ձայն կարդաց ձայն աղէկէզ. «Տելե-
մաքէ, ողջ եկիր.

Յոյս իմ 'ի տեսդ ողջ հատեալ էր, ո՜վ
 իմ քաղցրիկ լոյս աչաց,
Յորժամ 'ի Պիւղ դու դաղտագնաց ինձ
 ծով հատեր յակամայս.
Այո՛, սիրուն քոյ ծընողիդ դու 'ի համ-
 բուն ընթացար.
Արդ զի՞նչ զըրոյց, և զի՞նչ տեսեր, մօր
 քում պատմեա՛ կարգաբար »:
Արկանեաց անդէն Տելեմաքոս. « Մի՛ ո՜վ
 մայր իմ, ըղկոծն իմ
Մի՛ նորոգեր, զի մազապուրս յօրահասէն
 ցաւագնիմ.
Բայց դու զարդիս երթ լուացիր և ա՛րկ
 քեզ ջինջ պատմուճան,
Եւ ընդ դասուն քոյ նաժշտաց ելցես 'ի
 յարկ վերնատան.
Անդ աստուածոց հարիւրեզնեան ուխտ
 մի դիցես նուիրաց,
Երբ Արամազդ մերոյ վրիժուն տայ գե-
 ղեցիկ կատարած:
Իսկ ես 'ի մեր 'ի հրապարակն այժմիկ
 գընամ առ հրաւէր
Իմոյ հիւրոյն, որ 'ի յուղւոջ եկն յարե-
 ցաւ ինձ ընկեր.
Ըզնա ընդ իմ համահարզիցն ինձ յառա-
 ջոյ յըղեցի,
Եւ օթեվան առ իմ հիւրոյս Պիրէոսին
 յանձնեցի.

Մինչև ես գամ, նա շուք հարցէ և գութ
 ածցէ ըղձովաւ ».

Զայս պատուիրեաց Տելեմաքոս, և մայրն
 ընդ բանն հաճեցաւ :

Եւ լուացաւ պերճ Թագուհին, և շուրջ
 զանձամբ արկ ջինջ ձորձ,

Եւ յաշտ առնել զհարիւրեզնեանն ուխտ
 մի դնէր աստուածոց,

Թէ վրէժահան մեծի գործոյն ելք յա-
 ջողին յՈրմզդէ.

Այս զաշտէն առ Տելեմաք և ել արտաքս
 'ի տանէ :

Բարակք նորա այն տիրասէրք էին նըմա
 զուգընթաց,

Իսկ աստուածեան շուք և շընորհս հեղոյր
 զնովաւ Աթենաս.

Հիացեալք յակճիւս կան ժողովուրդք
 ընդ քայլս ոտից պատանւոյն,

Եւ հոմանիք բաւ ըղձովաւ յառաջ եկեալ-
 տան ողջոյն.

Ողջոյն տային, բայց 'ի սրտի չարիս նըմա
 նիւթէին,

Այլ քաջուշիմն առ 'ի նոցունց խոյս
 տայր յայնժամ պատանին.

Ուր Անտիփոս և ուր Մենտոր և Ալիթերս
 նստէին

Քաջ համահարզքն իւր հայրենիք, նա
 երթ նստաւ մերձ նոցին :

Նոքա յայնժամ քան մի առ մի կան հարցանեն պատանւոյն,
Մինչև անդուստ և Պիրէոս քաջագօտին
հաս 'ի նոյն.
Նա ընդ քաղաքըն ընթանալով բերէր
ըզհիւրն 'ի յատեան.
Մատեաւ առ նա Տելեմաքոս և ոչ եկաց
բացական:
Զայն Պիրէոս կարդաց յայնժամ. « Արդ
առ յղեա՛, Տելեմաք,
Զի կանանւոյն տացին 'ի ձեռս 'ի յիմ
տանէն քո ընծայք.
Պերճ այն ընծայք, զոր մեծ արքայն Մենեղաւոս քեզ ձօնեաց ».
Կրկնեաց առ նա Տելեմաքոս. « Ո՛վ Պիրէէ, լո՛ւր ինձ, քաջ.
Ելից իրաց չէք հաւաստիք. գուցէ զիս
դաւով հոմանիք
Յօդի հարեալ, և ողջ իմ գոյք 'ի բաշխ
հանցին հայրենիք.
Արդ դու յայնժամ, քան թէ այլ ոք, 'ի
յայն ընծայս վայելեա՛.
Բայց թէ թերևս ես յաջողեալ մահ և
հարուած տաց նոցա.
Եւ դու յայնժամ լի ցնծութեամբ ինձ
դարձուցես զայն ողջոյն ».
Զայս խօսեցաւ, և առ ըզհիւրն ըզհիքացեալ ած 'ի տուն:

Հասնեմք 'ի յարկն և 'ի յաթոռս 'ի բաց
եդեալք ընդհլլայս,
Մըրրին անդէն և լուսացան 'ի մաքրափայլ
լոգարանս.
Լուացին նաժիշտքըն ժիրաժիրք, առեալք
իւղով օծեցին,
Եւ թաւամազ խըլայս, բաճկոնս, պա-
տուածրեալք շուրջ արկին.
Ելեալք նոքա 'ի բաղանեաց և առնուին
բազմականս,
Մատեաւ նաժիշտն և զարծաթին անօթ
ըզկոնք, ջուր ձեռաց.
Հեղոյր ըզջուրն 'ի յամանոյն նա 'ի ջքնաղ
և յոսկի,
Նոյա և ջինջ նոցա սեղան տարածանէր
առաջի.
Տընակալուհի կինն ըզսեղանըն զարդա-
րեաց հացալից,
Եւ լիացոյց 'ի համադամ զայն 'ի պատ-
րաստ 'ի խահից.
Իսկ առ սեմքըն տաճարին մայրըն հան-
դիպող զաւակի
Նառ բազմոց, նուլթէր մանէր ըզլթեւ
բարակ ծիրանի.
Անդ բազմականք խնդամտեալք վայելս
առին զսեղանոյն,
Մինչ կշտացինգք եղեն նոքա առ 'ի խա-
հից, 'ի գինւոյն:

Զայն տայր յայնժամ մայրն առ որդին ,
« Ո՜վ իմ որդեակ , լոյս աչաց ,
Բա՜րբէ , 'ի տանս իմն չիք ինչ այլ , բայց
սոսկալական սրգազգեաց .
Ես 'ի յարկիս 'ի վերնատանս յարտասուր
անդուլ զայն Թանամ ,
Ցօրէ անտի յորում Ոդիւս 'ի մարտ չու_
եաց Տրոյական .
Եւ արդ ժուժամ , մինչև սատէն համա_
խմբեալ հոմանեաց ,
Աչխինչ պատմել ինձ յայտնապէս ըզլուր
ծնողին քո 'ի դարձ » :
« Այո՛ , մայր իմ , անդէն կրկնեաց Տե_
լեմաքոս պատասխան ,
Քեզ ճչգրտիւ ես ճառ արկեալ ողջ
պատմեցից զամենայն .
Մեք 'ի Պիւղոս անդ առ Նեստոր առ
հովուապետ մեծ ազգին
Նաւեալ հասաք . և Նա առ զիս որպէս և
հայր զիւր որդին ,
Ըզդարձաւորն ըզբազմամեայն զայն ինչ
եկեալն 'ի ծագաց ,
Այնպէս և ծերն 'ի պերճ 'ի տանն զիս
ընդ որդւոց իւր գրգուեաց .
Սակայն , ասէր , զՈդիւսէսեայ ըզմչա_
կոր դիւցազնէ ,
Կամ ըզկենաց կամ ըզմահուն ոչինչ լու_
եալ յումեքէ .

Համայն առեալ զիս նա կառօք երկնա-
ւորօք արձակեաց

Առ Աստուածն Մեծնեղաւոս խաղաղեաշ
արքային քաղ արանց .

Ես անդ տեսի ըղՀեղինէն, որ աղաղաւ-
ամս յոլով

Ցոյնք և Տրովեանք շատ մրցեցան անդ-
աստուածոց խորՀրդով 68 ։

Օլիս ինքն ապա այն քաղ արքային առ-
իւր առեալ և եՀարց,

Եթէ 'ի մեծն 'ի Սպարտա ես յինչ եկի
պատճառաց ։

Ես զամենայնըն մերկացայ, և նա « Բա՛-
րէ, ձայն կրկնեաց ;

Զի՛ ընդքաջին զայն որակապան զձեռն զար-
դիս արք անկած .

Այլ որպէս զորթան իւր ըստընդգեաց ժո-
ղովեալ եղն անարի

Առեալ գցէ 'ի կաղաղի զոռ առխածոն
ամեՀի,

Եւ ինքն 'ի սարս և 'ի Հովիտս արածեացի
խոտաբուտ,

Մինչև զազանն զայ Հուսկ ուրեմն և 'ի
յորջ իւր առնէ մուտ .

Անդ նորածնաց, 'ի նոյն և մօրն օրՀաս
զուժայ զիշախանձ,

Այսպէս և քաջն այն Ոդիւսէս մաՀ առ-
թեացէ Հոմանեաց ։

Իջի՛ւ եթէ, ՚ի Արամազդ, ՚ի Աթենաս, և
Փերսս,

Ահայ Ողիս քաղ այնպիսի որպէս երբեմն
՚ի Լեսբոս.

Երբ միացեալ զօտեմարտիկ ընդ քաջոր-
դւոյն Փիլմելեան 69.

Եւ արկանէր ըղձս տապաստ, և Յոյնք
ողջոյն ցնծացան.

Ո՛վ թէ, լինի նոյն ընդ անդէխս արդ
Ողիսէս քաջամարտիկ,

Եւ կարծեցին կեանք հոմանեաց և
դառնացին հարսանիք։

Իսկ զոր բան դու ինձ հարցանես, քեզ
ասացից անսուտ բան,

Զոր ինձ ասաց անկեղծութեամբ այն
ծերունին ծովական.

Քուն, ես ՚ի քեն ոչ քօղարկեալ զոր ինչ
պատմեաց ծերունին,

Քանզի, ասէր, տեսանել զՈդիս ինքն ՚ի
կղզւոջ ցաւագին.

Իսկ էր կղզին այն Կալիփսեայ, ուր կայր
երրու յարգելան,

Եւ դարձ առնել չէ բաւական նա ՚ի յեր-
կիր հայրենեան.

Չիք անդ նորա ոչ լաստանաւայ, և ոչ
քաշողք, ոչ ընկեր,

Նաւապետացի ընդ միկանունս ընդ ծով
կռուել ալեբեր։

Զայս ինձ պատմեաց Մենեղաւոս . լուայ և դարձ արարի .
Եւ ինձ աստուած հողմ յաջողակ ետ դալ յերկիրս հայրենի ”:
Զայս Տելեմաք . և դշխոյին սիրտն աղէկէզ տոչորէր ,
Մինչև յարեաւ Թէոկլիւմոս և ետ պատգամ անվեհեր .
“ Արդ և ինձ լո՛ւր , տիկին արդոյ Ոդիւսէսին լայերտեան .
Ոչ , ոչ գիտաց նա զամենայն . դու արդ անսուտ լո՛ւր պատգամ .
Վկայ է ինձ մեծն Արամազդ , վկայ սեղանս վանատան ,
Վկայ լեցի ինձ և մարդակն մեծն Ոդիւսեայ , յոր եկի .
Քաջն Ոդիւսէս աստ ’ի յերկրիս արդ նստեալ կայ , կամ շուրջ գայ ,
Ըզգործ լսէ ըղհոմանեաց , հնարէ նիւթէ մահ նոցա .
Եւ հաւահմայս տեսի ինքնին ’ի քաջանիստ ’ի նաւուն ,
Եւ զայն անդէն աղդ արարի այս հայակալ պատանւոյն ”:
Բարբառեցաւ Պենելոպէ . “ Իցէ՛ եթէ , հիւր բարի ,
Ինձ քո պատգամն յանդ ելանէր , և ես ձմնիս քեզ տայի ,

Ձմեռս առատ . և լինէիր սէրս բարեկամ
դու ընդ իս ,
Զի և ամառըք բիւրապատիկ տային հիւ-
րոյդ երանիս » :

Մինչդեռ անդէն զայսօրինակ բանք
զրուցէին 'ի Նոսա ,
Եւ համանիքըն ըղբօսնուին տանն յանդի-
ման Ոդիսեայ .
Մականապատըք , դիւլս արկանեն 'ի հրա-
շակերտ յատակին ,
Ուր և որեարն այն խեռուլթեամբք զօր-
հանապաղ լինէին :
Ժամ մերձեցաւ Նոցա ընթրեաց , և անդ
բացուստ 'ի դաշտաց
Գային օդէքն 'ի պատրուճակ , 'ի տուն
վարեալք 'ի հովուաց .
Բարբառ յայնժամ կարդաց Մեդոն ,
այրն հոմանեացն էր սիրուն ,
Որ և Նոցա մէջս ատընկթեր կայր Նա կոչ-
Նոցն 'ի ժամուն .
« Օ՜Ն արդ արիք ո՜ պատանիք , որ սփո-
փեցայք 'ի մրցանս ,
Անիք մըտէք արդ ընդ յարկաւ , և մեք
հարցուք ձեզ ըսպաս .
Լաւ է և չէ ինչ անպարի ըղհաց առնուլ
'ի ժամու » .
Լուան , յարեան փոյթ պատանիքըն հրա-
վիրակին լեալ հըլու .

Հեռանէին 'ի ալերմ՛ 'ի յարկն և մրտանեն
դաստագաս ,
Եւ 'ի գահոյս և 'ի բազմոցս 'ի բանց եղին
ըղձըրլայս ։
Օդեայց հօտեղըն մեծամեծք , գիրապա_
րարքն և յայծից
Ցաղին զենռուն 'ի պատրուճակ , և պա_
րարակքն 'ի խոզից .
Դարձեալ և եզն 'ի յանդէոց փողոտեցին
յայն ընթրիս ,
Մինչդեռ յոստանն առ 'ի դաշտէն գայր
Եւմէոս և Ոդիս ։
Բայց հանդերձեալք ուղղոյ լինել , առեր
ցՈդիս քաջն Եւմէս .
« Այդ դու ուխեմն , հեւր ծերունիդ ,
յոստանն այսօր փափաքեմ .
Այո , ըզնոյն ինձ և տէրն իմ քոյ շուե_
լըյդ եռ հրաման ,
Բայց ես ըզքեզ իմ փարախիս աստ կամէի
պահապան .
Սակայն պատկառ կամ տեառն իմոյ , զի
մի ապա դժնեայց ,
Զի և քաջ իսկ դըժոխալմեբեր կշտամբու_
թիւնք են տերանց .
Օ՛ն արդ առեալ անկցուք յուղի զի օրըս
մեզ կարճառի ,
Եւ յամեղոցս ընդ երեկոյս օդ ցրտագին
հարկանի » ։

Անդէն Ոդիսեւս անդրադարձ. «Գիտեմ
և ես զայդ քաջիկ.

Դու զխորհուրդս ինձ յուշ ածես. զի՞ եւ
այսպ դանդաղիմք.

Սակայն դու ինձ լեր նախընթաց, նաև
ցուպ մի հաստատուն

Հասուցեալ տացես ինձ 'ի նեցուկ, զի է ու-
ղին լպրծուն ».

Ասաց և առ զիւր ըղձնոտին ըզ ծակոտ-
կէնն ըզմախաղ,

Եւ արկ զուսովքն ոլորեալ հաստ չըւա-
նաւն առ 'ի կախ.

Հաս Եւմէոս և ետ նըմա ըզցուպ խընդ-
րեալն 'ի ձեռին,

Անկան յուղի. իսկ փարախին շունք և
հովիւք պահ ունին:

Այնպէս Եւմէոս 'ի քաղաք անդր առեալ
բերէր զիւր արքային

Իբրև մուրիկ և ծերունի 'ի յայն թշուառ-
կերպարան.

Նեցուկ ունէր ցուպ 'ի ձեռին և էր ար-
կեալ զըրըզըլեալ,

Մինչև հասեալք զառապարուաւ և մեր-
ձեցան 'ի քաղաք.

Հաւին 'ի վայրն ուր կայր աղբիւր գե-
ղահոսան հրաշալի,

Ուստի անհատ ջուր առնուին միշտ ժո-
ղովուրդք քաղաքի.

Մեծն Իթակոս և Ներիտոս 70 զաղ-
բիւրն անդէն շինեցին,
Էր ընդ նոսա և Պողիւկտոր. նաև ան-
տառ տնկեցին.
Զբաստան ծառոց կաղամախեաց շուրջ
անդ մայրի բողբոջեն,
Եւ ջուր հոսէր ցուրտ և յստակ առ 'ի
բարձանց 'ի վիմէն.
Նաև կանգնեալ բագին, սեղան էր յա-
ւերժից անդ հարսանց,
Ուր և ուխտաւորք արք ուղևորք ձօն ձօնէին
նուիրաց:
Ընդ Մելանթեւս որդին Տողեայ հանդի-
պեցաւ ընդ առաջ,
Որ 'ի յայծեաց ընտրաջոկեալս ածէր յընթ-
րիս հոմանեաց.
Ընդ Մելանթեայ նաև երկու արք 'ի հո-
վուաց հետևէին.
Այն ինչ 'ի յանկն արկ ըղնոսա, և բան
պարսաւոյ առատկագին.
Յոյժ վիրացաւ և կարի յոյժ բան դժպա-
տեհ բարբառէր,
Եւ զՈդիսեայ քաղջեան զոգի նա սրտնե-
ցոյց կարեվէր.
« Այր առաջնէկ այր վատ արանց ածէ
զայլ այր վատութեան,
Քանզի աստուած միշտ ընդընմանն առնու
յարէ առ նմանն 71.

Ո՞ւր դու առեալ զայդ պտղաբերոյծդ ա-
ծես, մի՛ հեգ խոզարած,
Ըղձեր մուրիկդ զայդ դժպըհի, զայր լափ-
լիզող խրախճանաց.
Անշուշտ առ դուրս դա ընչեղաց առցէ
Թիկանց շատ հարուած
Փշրանս միայն մուրանալով, ո՛չ թէ կաթ-
սայս կամ թէ ամանս.
Եթէ ըզգաս իմ փարախացս դու ինձ
տայիր պահ ունող,
Եւ աւելող իմոյ գաւթիս և դիրդ ուլոց
ջուլ բերող,
Դա օ՞ն և օն է 'ի չինձկէն ըստուարանայր
'ի յերանն,
Այլ դա 'ի մոյր գատարկապորտ ըզգործ
ուսաւ վատութեան.
Աշխատութիւն չասնու նա յանձն, այլ
մուրացիկ ընդ քաղաք
Խնդրէ անգործ ցանդ բուծանել դա զո-
րովայն իւր զանյագ:
Այլ քեզ ահա ասեմ, այր դու, որ և ան-
շուշտ լինիցի.
Թէ դա երբէք 'ի տուն մտցէ մեծ զիւցա-
զին Ոդիւսի,
Շատ պատուանդանք 'ի հոմանեաց 'ի
գլուխ դորա արձակին,
Եւ ջարդեսցին անդ կողք դորա չար հա-
րուածովքն 'ի յարկին »:

Զայս Մելանթէս, և մօտ չոքաւ եհար
 զՈդիս աքացի,
Եհար մոլին յազդեր նորա, այլ ոչ կա-
 ցոյց զարտուղի.
Զոտս իւր 'ի բոյս հարեալ Ոդիւս, և ընդ-
 միտ իւր խոճոճէր.
Արդեօք բըրամն իւր հաստաբռուն հա-
 րուած տայցէ մահաբեր,
Արդեօք 'ի վեր առեալ անդ զայրն և
 պտուտկեալ շուրջ զօդով,
Եւ զարկուացէ թմափ ընդ գետին թաւա-
 լագլոր ըղպլխով.
Այլ ժուժկալեաց համբերատարն. իսկ
 այր արդոյն խոզարած
Կշտամբելով խոժոռ ակամբ, մեծապա-
 ղատ ձեռս ամբարձ.
“ Ով աղբերաց դուք պարք հարսանցըն
 մազդեզանց յաւերժից,
Թէ ձեզ Ոդիս այրեաց երբէք ըղ թամբըս
 յոյլս ճարպալից
Զօդեաց գառանց նաև զուլուց, դուք
 արդ լըցէք զիմ ըղձանս.
Ո՛հ եկեսցէ աստ Ոդիւսէս, ածցէ ըզնա
 մեզ աստուած.
Եւ յայնժամ դու քո սէգ յօխուքդ ան-
 կեալ ա՛յր դու, հիքասցիս,
Որով և միշտ դու սոնքացեալ և ընդ քա-
 ղաք թափառիս.

Սակայն թափառ և յոյլ հոլովեալ վշտա-
սակարգք են խաչանց ».
Այն ինչ լուաւ և արտասուաց յոյժ Մե-
լանթեան այծարած .
Ամբարձ ըզձայնն, ասէր, « Վա՜շ վա՜շ զի՞նչ
չարարուեստդ հաչէ շուն ,
Զոր անդ 'ի սեաւն 'ի նաւ փակեալ 'ի
ձեռս տանեալ որերոյն ,
Ես զայդ ըղշունդ 'ի յԻթակայ տարա-
սահման վարեցից ,
Զի բազմօրեայ շատ պարէնից դա այդ
պատճառք լիցի ինձ .
Ո՜վ թէ այսօր ըզ Տելեմաք մեծն Ապո-
ղոն նետաձիգ
Ըեշտ հարկանէր, կամ թէ ըզնա արդ-ընկ-
ճէին հոմանիք .
Զի չիք այլ մեզ ահ և երկիւղ քաջին Ո-
դիւսեայ 'ի դարձին ».
Ասաց, եթող անդ ըզնոսա, որք և յու-
շիկ գընային :
Իսկ ինքն անցեալ արագ արագ եհաս 'ի
յարկն Ոդիսեան ,
Եմուտ անդէն առ հոմանիս, և առ ան-
ձին բազմական .
Էր բազմականն 'ի հանդիպոյ Եւրիմա-
քեայ մըտերմին ,
Եւ զնա անդէն առ 'ի խահից ըսպասաւոր-
կուք պաշտեցին .

Առեալ և կին տընտակալուհ հաց եդ նոցա 'ի սեղան,
Մինչդեռ Ոդիս և Եւմէոս հասին 'ի մեծ յօթեւան :
Ըղկայ առին, և ձայն հնչէր փոր գոգաւոր կիթառի,
Եւ Փեմիոս անդ առաջնորդ էր նուագացն հանդիսի :
Բայց Ոդիսեւս կալաւ զաջոյն Եւմէոսի և ասէ .
« Անշուշտ այս յարկք են գեղեցիկք Ոդիսեւսեայ, ո՛վ Եւմէ .
Յերեւանի կան ապարանքդ իբրեւ այլոց գերակայ,
Եւ գաւիթկոնք կան բարձրայարկք միմեանց կանգնեալ 'ի վերայ .
Նաև գաւիթ կայ որմնափակ և զարդարեալ ձողաբարձ,
Եւ հրաշակերտ և քաջամուր դուռք երկբացիկք կան դրանդեաց .
Արդ ո՞ ոք այր յաւակնեսցի առ 'ի վանել զայդ տաճար .
Եւ անշուշտ է զի 'ի կոչունս արդ բազմեալ կայ շատ որեար .
Անոյշ բուրէ հոտն 'ի խահից . և ձայն հնչէ կիթառին,
Զոր մեզ աստուածք մեր խրախութեանց զարդ և ընկեր կարգեցին » :

Լուաւ Եւմէս և զարմացաւ. « Բնա՛րէ,
դու հիւր, քաջ ծանեար.
Անշուշտ դու ծեր, նաև յայլ դէպս ոչ
անխորհուրդ ոք ցուցար.
Արդ խորհեսցուք, զի՞նչ մեզ գործել.
կամ մո՛ւտ դու նախ առաջին,
Մո՛ւտ և խառնեա՛ց ընդ որերոյդ և ես
աստ կամ 'ի գաւթին.
Կամ դու կացցես, նթէ կամիս, և ես
մրտից յօթևան.
Այլ անսա՛ ինձ, մի՛ յամենայր և դու գալ
մեզ յերևան.
Մի՛ արտաքոյ տեսեալ զքեզ ոք գործ
գործեսցէ ժպրհութեան,
Կամ վարեսցէ և կամ հարցէ. արդ խոր-
հեսջի՛ր դու զարժանն »:
Արկնեաց դիւցազն ըն Ոդիւսէս. « Զոր
ինչ ասես, քաջ գիտեմ.
Հա՛ դու 'ի ներքս մո՛ւտ առաջին, և թո՛ղ
կացից ես աստէն.
Ես հարուածոց, գանից, վիրաց, ընդե-
լական եմ 'ի բուն,
Համբերատար սիրտ ըստացայ ես 'ի կեն-
ցաղս իմ ողջոյն.
Բազմաչարչար վշտակրեցայ ես և 'ի
մարտս և յալիս,
Թո՛ղ բարդեսցին և այս կարիք 'ի վերայ
իմ և զարդիս:

Սակայն զանխուլ ոչ ժուժայ կալ այս
որովայն սովատանջ,
խուժադուժ է և բազմադէմ ածէ մարդ-
կան 'ի չարեաց.
Սորա 'ի սակս և լաստափայտք շատք քա-
ջազէնք հանդերձին,
Եւ 'ի ծովուն յանբուսաբեր մարտըս մը-
ղեն ահագին »:
Մ՛ինչդեռ նոքա յայսօրինակ բարբառէին
'ի զրուցաց,
Ղուսին ընդդլուխն ուղղեաց կանգուն և
զականջս իւր շականջեաց.
Սա այն շունն էր Արգոս անուն շուն
վշտատեսն Ոդիւսեայ,
Զոր վաղ ուրեմն ինքըն սընոյց, բայց չառ-
վայելս ըզ նորա.
Քանզի կանուխ մեծն Ոդիւսէս էլ և
չուեաց յԻլիոն,
Եւ շունն ապա զորսականին անդ հար-
կանէր ըզպաշտօն.
Առեալ ըզնա և տանէին արք պատանիք
յորս քաջուս,
Եւ ըմբռնէր նա զայծեմնունս, ըզնապաս-
տակս, զեղջերուս.
Սակայն յայնժամ լքեալ Թողեալ յիւրմէ
տեառնէն բացական,
Կայր նա անկեալ ընդ աղբախուզքն որ
էր դրանդեաց յանդիմանն.

Զի զաղբակոյտն անդ չեղջէին նոքա
զջորեաց և զեզանց ,
Եւ բառնային տանել աղբել զՈդիւսեւ-
սին անդաստանս .
Անդ պառակեալ կայր հիքապէս Ար-
գոսն այն շունն քաջարին ,
Հոծեալ յաղբուտ՝, 'ի շանաճանճս , որ
ըզ նովաւ բզզային .
Ծանեաւ իսկոյն տիրասէր շունն ըզտէրն
Ոդիւս որ մերձ գայր ,
Շարժէր ըզձետն իւր առ խնդին և առ-
զականջս իւր 'ի վայր .
Յառնել 'ի մօտ և ըզտէրամբն քծնիլ
գգուել ոչ կարաց ,
Ետես Ոդիւս , և 'ի յԵւմեայ գաղտ զար-
տասուս իւր սրբեաց :
Հիացմամբ անդէն զայս հարցանէր .
" Բա՛բէ , զարմանք են համբուն ,
Ա՛զէ ասա ով Եւմէոս , զի՞ յայս աղբոց
կայ այս շուն .
Շուն է մարմնով դա գեղեցիկ . այլ սա-
կայն չեմ ես տեղեակ
Եթէ արգեօք և ըստ գեղոյն իցէ և յոտս
իւր արագ .
Կամ թէ իցէ հէգ և ունայնէտ իբրև ըզ-
շունս 'ի սեղանս ,
Զորովք գրգեալ տերանց իւրեանց բու-
ծեն միայն 'ի բերկրանս " :

«Սա ինքն է շուն, զոր տեսանես կրկնեաց
Եւմէս ձայնի անդէն ,
Շունն արքային է Ոդիսեայ, այն որ մե֊
ռաւ տարադէմ.
Եթէ այդ շունդ յառոյդ մարմնոյն իւր
և յարդեանցն 'ի հանդէս
Էր այնպիսի, որպիսի ինչ Թող աստ 'ի
չուն Ոդիւսէս ,
Դու ինքն արդեօք ըսքանչացեալ յակ֊
ճիռս կայիր 'ի զընին ,
Զիմրդ այնպէս դա արագոտն էր և աշ֊
խոյժ 'ի յոգին .
Յանտառս 'ի Թաւս առ 'ի սմանէն չէր
անձնապուր ոք գազան ,
Սա ըղհետոցն հասեալ ունէր երբ շա֊
կանջէր միանգամ.
Կայ արդ Թշուառ, զի և տէր իւր Թշուա֊
ռացաւ յօրհասէն
Եւ կանանւոյն դասն յուլացեալ հոգ ինչ
սըմա ոչ ածեն .
Քանզի ծառայք երբ 'ի տերանց իւրեանց
չառնուն ըղհրաման ,
Զեռն ըղմիջովք հարեալ նոքա յիւրեանց
պաշտօն վատանան .
Զի Արամազդ ըղկէս խելացն առնու
բառնայ 'ի մարդոյն ,
Երբ ըղվիճակ նա յանձն առնու ըղ ծա֊
ռայի ըղնըկուն »։

Այն ինչ տեսաց, եմուտ 'ի ներքս 'ի հո-
յակապն 'ի տաճար.
Երթայր ուղիղ ուր հոմանեաց բազմեալ
կային պերճ որեար:
Սակայն Արգոսն 'ի սեաւ մահուն կափոյց
զիւր զաչս յօրհասին,
Երբ միանգամ տես զիւրն Ոդիս 'ի քսա-
ներորդ 'ի յամին:
Բայց Տելեմաքըն քաջուշիմ նախ առա-
ջին տես զԵւմէս,
Եւ ակնարկի կոչեաց առ ինքն յառնել
և գալ փութապէս.
Նա շուրջ դիտեաց, էառ զաթոռն ըղ-
խահարար ծառային,
Յորում նստեալ նա միս բաշխէր կոչնա-
կանաց ակմբին.
Եդ զաթոռակն և բազմեցաւ 'ի հանդի-
պոյ պատանւոյն,
Եւ հաց նըմա առ եդ Քարոզն և ըղ բա-
ժինն 'ի մըսոյն.
Եմուտ ապա և Ոդիւսէս ցուպ 'ի ձեռին
օժանդակ
Իբրև ըղծեր, իբրև մուրիկ զանձամբ ար-
կեալ գըրգըլեակ.
Եմուտ նստաւ նա առ սեմովք փայտա-
կերտեալն 'ի հացի,
Եւ բազմեցաւ ետ ըղթիկունսն 'ի յենա-
րանն 'ի նոճի.

Յայն զոր երբեմն հիւսին Ճարտարար քա-
ջիկ տաշեալ և յղկեալ,
Եւ հիւսնական ճշգրիտ լարիւ կշռե-
գործեալ անդ կանգնեալ:
Բայց զԵւմէոս Տէլեմաքոս կոչեալ յայն
ժամ առանձին,
Իւր ըղձացն որչափ ինչ կայր 'ի գեղե-
ցիկ 'ի խանին,
Առ և 'ի նոյն միս բռնալիր, և հրա-
մայեաց Եւմէայ,
« Երթ տո՛ւր, ասէր, տո՛ւր զայս հիւրոյդ
և առ յինէն պատուիրեա՛.
Թո՛ղ դա 'ի մայր անկցի այժմիկ առ հո-
մանիս մի առ մի,
Զի ամաչելն ո՛չ է բարւք անանկ մարդոյ
և մուրկի »:
Լուաւ Եւմէս, յարեաւ անդէն, մատեաւ
ձայն ետ և ասէ.
« Տէլեմաքոս քեզ զայս, ո՛վ հիւր, յիմ
ձեռս տուեալ, հրամայէ.
Զի դու 'ի մայր երթաս այժմիկ առ հո-
մանիս մի առ մի,
Զի ամաչելն, ասէ, չէ լաւ աղքատ մուր-
կի ունանկի »:
Զայն խորագէտն ետ Ոդիսեւս: « ԸզՏէ-
լեմաք երջանիկ
Արա՛ ո՛վ Զևս. և իւրն ըղձանք միշտ եղև
առցեն գեղեցիկ ».

Նա զայս ասաց, և զառաքեալըն ողջ առ-
ձեռօքն իւր կրկին,
Եդ զայն առ ոտս անդ 'ի վերայ իւր
քրքրեալ մազախին.
Նստաւ ուտէր. և երգահանըն չէր հա-
նէր նուագաց.
Լռեաց Ոդիս 'ի յուտելոյ և երգողին
ձայն լռեաց:
Սակայն ամբոխ յոյժ խառնամբոխ էր
հոմանեաց 'ի սրահին,
Եւ եկն յայնժամ մեծն Աթենաս և մերձ
եկաց Ոդիւսին.
Կայր յորդորէր հաց մուրանալ 'ի յակըմ-
բէն հոմանեաց,
Զի ծանիցէ ո՞յք 'ի նոցունց են ապա-
ռումք, ո՞յք գթած:
Թէպէտ և այր 'ի նոցանէն չէր ապրելոց
յորհասէն,
Սակայն չդքաւ նա մուրանալ 'ի յակըմբէն
'ի յաջմէն.
Շուրջ առ այր այր գայ և զաջ իւր մուրո-
ղաբար կարկառէ,
Որպէս եթէ նա այր մուրիկ լեալ էր ան-
դուստ 'ի բընէ.
Ողորմելով հաց ջամբէին, բայց էր նոցա
սքանչելի.
Այր այր ցընկէր իւր հարցանէր, ո՞ է
մուրիկն, և ուստի՞.

Յարեաւ յայնժամ ձայն Մելանթէս եւ
այծապանն ակըմբին .
« Ինձ ունկըն դիր, ո՛ հոմանիք մեծ քաջ֊
Նափայլ դըլխոյին .
Ըզ հիւրըդ զայդ, տեսի ես ինքն, աստ
խոզապանն ած Եւմէս .
Այլ թէ ուստի՞ ազգըն դորա, ոչինչ գի֊
տեմ յայտնապէս »:
Այն ինչ ասաց, և Անտինոս առեալ զԵւ֊
մէս կշտամբէր ,
« Հի՞մ խոզապանդ զայդ մուրացիկ աստ
դու ածեր անվեհեր ,
Ո՞չ շատ իցեն մեզ աւադիկ արք թափա֊
ռեալք և մուրիկք ,
Արք լափլիզօղք մեր խրախճանաց և պոր֊
տաբոյծք դժպըհիք .
Շատ չիցէ՞ քեզ, զի արդ ընչեանս տեառ֊
նըդ ուտեն կոչնականք ,
Դու և այլուստ զի՞ աստ ածեր զայդ ծե֊
րունիդ և տընանկ ».
« Անտինոէ, անդէն Եւմէս արգոյն ու֊
շիմ ձայն կարդաց ,
Ոչ գեղեցիկս բարբառեցար, թէպէտ և
ես քաջ արանց :
Ո՞վ ոք 'ի մէնջ զայր ոք այլուստ հիւր կո֊
չեսցէ իւր յարկին ,
Բայց թէ իցէ հիւրն այր գործօն և պի֊
տեան քաղաքին ,

Կամ թէ գուշակ, կամ թէ բժիշկ, և կամ
թէ հիւսն այր ճարտար,
Եւ կամ իցէ քաղ երաժիշտ իւր նուա-
գօքն հեշտաբար.
Այժմ 'ի մէջ արք այնպիսիք հիւրք մե-
ծապէս հրաւիրին.
Իսկ աղքատաց չիք ինչ հրաւէր, զի մի ինչ
մեզ ծանրասցին:
Այլ սակայն դու 'ի հոմանիս քան զա-
մենայնսն ես դժնեայ
Մեզ ծառայիցդ Ողիսեայ, և ինձ յաւէտ
'ի նոսա.
Այլ չէ ինձ փոյթ, ցորչափ ինձ կեայ
Պենելոպէն այն ուշիմ,
Ցորչափ շնչէ և դիւցազնանմանն Տելեմաքոս
քաջարին ”:
Արարձեաց ըղքանն Տելեմաքոս, “ Ո՛վ
Եւմէէ, դու լո՛ւռ լեր,
Եւ ընդ մարդոյդ 'ի վէգ բանից մի դու
երբեք ելաներ.
Անտինոոս քաղ իսկ 'ի բանս բնաւորե-
ցաւ անըննդել,
Նա կազ յուզէ, նաև այլոց է նա սադրիչ
'ի կագել ”:
Այն ինչ ասաց, և յԱնտինոոս կոյս դար-
ձաւ ինքն եւ բարբառ.
“ Վա՜շ քեզ, ամիդապէս Անտինոէ դու
զիս հոգաս հայրաբար.

Դու, որ զայդ հիւրն իմ 'ի տանէն այդ-
պէս վարես գահաձաբար.

Այլ մի՛ լիցի, քա՛ւ թէ զայդ բանդ ած-
ցէ աստուած 'ի կատար.

Ա՛ղէ և դու, տո՛ւր ինչ մուրհակիդ, ո՛չ ինչ
խանգամ, նա՛ տոխպեմ.

Մի՛ դու երբէք յերկիդ յայդմիկ մի՛ ամն
ածցես յիմ մօրէն.

Ո՛չ և մի ոք 'ի ծառայից հօրս Ոդիւսեայ
դիւցազին,

Մի՛ ինչ խիթար, ոչ լինիցի խափանարար
քոյ շնորհին.

Սակայն երբէք միւսք քաջամոյն չիք տար-
բացեալ չիք 'ի քեզ.

Զի քան ջամբել ինչ մի այլում, դու ինքն
ուտել միտեալ ես ”:

“ Բարձրաբարբառըդ Տելեմաք, ձայն
Անտինոս ետ հրաժառ,

Դու պատանիդ, անսանձ յոդիդ զի՞նչ
արդ ասել ժրտեցար.

Եթէ մուրկիդ ողջոյն բազմեալքն այնչափ
ինչ շատ ջամբեսցեն,

Անշուշտ ամիսս դա երիս չելցէ արտաքս
'ի տանէն ”:

Ասաց. անդէն և 'ի ներքուստ 'ի սեղա-
նոյն առ եցոյց

Ըզպատուանդանն, յորում հանդչէր շամ
բուշն այն այր պորտաբոյծ.

Սակայն և այլք 'ի միս, 'ի հաց, զմուրհկին
մաղախըն լըցին ․
Եւ Ոդիւսեւս 'ի ճաշակել կամէր դառնալ
յիւր տեղին ։
Սակայն եկաց նա վայրկեն մի Անախնո-
սեայ յանդիման,
Բարբառեցաւ ․ « Ա՛ղէ, տաէր, տո՛ւր և
դու ինձ, բարեկամ․
Այր անաւագ դու չերևիս ինձ 'ի Յու-
նաց յակըմբի ․
Նմ՛ այր աւագ ․ նաև 'ի քեզ պատկեր բե-
րես զարքունի ․
Արժան է քեզ վասն այնորիկ տալ առաւաւ
ևս 'ի հացէն,
Եւ ես ողջոյն ընդ տիեզերս ըզ գովու-
թիւնդ հռչակեմ ։
Էի երբեմն ու ես երջանիկ, և յարկս
պայծառս ունէի,
Եւ ողջ մուրկաց և կարօտից ես հաց ըն-
տէպ ջամբէի ․
Նաև բազում դասք ծառայից 'ի հանդի-
պոյ ինձ կային,
Եւ 'ի վայելըս ճոխութեանց իմ զեղա-
նէր կարասին ։
Սոնհար եղև ինձ Արամազդ, և ըզ պատ-
ճառն ինք գիտաց,
Որ ինձ ընդ հենըս Թափառիկս 'ի յԵգիպ-
տոս ուղ հորդեաց,

Ուղի երկայն և մահագոյժ . և ես ՚ի
գետոն յԵգիպտոս
Ըզնաւատորմն իմ կացուցի ըն Թիակօք
խիտ և հոծ .
Զայն կարգացի իմ նաւաստեաց կալ
անդ նաւուց պահապան ,
Եւ լսեցայ առ ՚ի դիտաց գիտել զընթել
զայն սահման .
Սակայն նոքա խեռք ըստահակք չըհան-
դուրժեալք Թափ յանսանձ ,
Աւարեցին զԵգիպտացւոց ըզգեղեցիկ
զանդաստանս .
Տար վարեցին և զկանանի և զմանկըտոյն
գիրգ զերամ ,
Եւ մըշակաց մահ հասուցին , մինչև շը-
ուինդն հաս յոստան .
Լուեալք ըզգոյժ ըն միագունդ գայր վաղ
ընդ այգն այրուձի ,
Դաշտըն լըցաւ ողջ ՚ի հետիս և ՚ի փայլիւն
պղընձի .
Անգ զարհաւիրս ըզփախստեան արկ զըն-
կերօքս Ամպրոպեանն ,
Եւ շաղեցան առ հասարակ իբրև յան-
զերծ արգելան .
Շատք համհարզէցս սապատ անկան ՚ի
սուր ՚ի սայր սուսերի ,
Կեցքն ՚ի պահակս դըժոխըմբերըս վարե-
ցան կենդանի .

Զիս Ցասոսեան Դխմեաորեայ անդ 'ի
Կիպրոս յանձնէին
Որ հիւր յայնժամ հանդիպեցաւ, և թագ-
կապէր Կիպրոսին.
Անդուստ եկի 'ի յայս երկիր յոյժ մշտա-
կիր չարաստանիջ ”.

Լուաւ ըղձական Անտիոքոս, ձայն դըժ-
պատեհ արձակեաց.
« Բա՛րէ, ո՞ր Քաջ մեզ զայդ ժանտատեսա
յղեաց կոչնոցս Թուլաբեր.
Օ՜ն անդր, այր դու, երթ կա՛ց 'ի մէջ,
յիմ սեղանոյն 'ի բա՛ց լեր.
Զի մի ըղղաւըն զԵգիպտոս և ըզ Կիպ-
րոս մշտակիր
Այտ փորձեսցես դու միւսանգամ, ո՛վ
ծեր մուրիկ լիրբ ժըպիրհ.
Ե՛րթ առ մէն մի 'ի բազմելոցն, երթ և
մուրա՛ կարգաւբար,
Դոքա ահա քեզ յանխորհուրդըս ջամ-
բեսցեն վայրապար.
Զի լիաձեռն առնուլ ջամբել 'ի յօտարի-
նըն գոյից
Ոչ է խնայել, ո՛չ ողորմել. են խսկ ահա
հացալից ”։

Լուաւ Ոդիս, մերջտնեցաւ. այլ բան
պարսեաց խոհական.
« Վա՜յ քեզ, ո՜վ քա՛ջ, որ քո հոգիդ
քում պատկերիդ չէ նըման.

Անշուշտ ուրեմն և ոչ 'ի տանէդ դու աղ
տացես խնդրողին ,
Որ յօտարին 'ի սեղանոյ հաց մի չետուր
մուրողին .
Եւ այն զի աստ 'ի կերակրոց են իսկ առա-
ւելք լիուլի ».
Նա զայս ասաց , և Անտինոոս յոյժ զայ-
րացաւ 'ի յոգի ։
Խեթիւ աչօք ձայն արձակեաց . « Եւ արդ
կարծեմ , ո՛չ ելցես
Դու շաղակրատ քոյին լեզուաւդ ողջ ան-
դամօք 'ի տանէս ».
Ասաց և առ ըզ պատուանդանն ձգեաց
'ի յուսն ընդ աջմէն
Եհար 'ի ծայր Թիկանց նորա . այլ կաց
Ոդիւս իբրու վէմ .
Նա ոչինչ արար իւր հարուածոյն , կաց
անսասան 'ի կայի ,
Եւ լուռ միայն գըլխովն շարժեաց և չար
խոկայր 'ի սրտի .
Դարձաւ անտի և միւսանգամ երթ բազ-
մեցաւ յիւր տեղին .
Եդ ըզմաղախ զիւր լիուլի , ձայն զայս
կարդաց ակըմբին .
« Ինձ ունկըն դիք , զոր ձեզ ասեմ , ո՛ տար-
փածուք դշխոյի .
Անշուշտ յորժամ մարդ 'ի պատճառս իւր
կարասւոյն մարտնչի ,

Կա՛մ թէ երբէք վասն անդէոց և լուսա-
կիզըն օդեաց ,
Ոչինչ ցաւի , ո՛չ և ողբայ եթէ առնու
ըզհարուած .
Սակայն 'ի սակըս բռնաւոր և հեգ պոր-
տոյն չարաչար
Զիս աւաղիկ ըզստովատանջս Անտոնիոսդ
այդ եհար .
Այլ քանզի դիք և Երինինէսք քաջ 'ի
կողմն են աղքատաց ,
Օրհասն առցէ զԱնտոնիոս մինչև եղեալ
հարսանեաց ,, :
Ցասեաւ ընդ բանն Անտոնիոս և անդրա-
դարձ ետ ձայնի .
„Նի՛ստ , կե՛ր լռիկ , ո՛վ ծեր հիւր դու ,
և կամ արի՛ ե՛լ այտի .
Մի՛ զքեզ յանկարծ այս պատանիքս , քան-
զի անսանձ բարբառիս ,
Կամ ըզձեռացդ և կամ զոտից ըզ քար-
շեսցեն 'ի յարկէս .
Անդ արտաքոյ հարեալ մարմնով ջախջա-
խեսցիս դու ողջոյն ,, .
Լուան ըզբանն , և բազմականք ողջ բրդե-
ցան 'ի ցասումն :
Նաև զոռոզ յայն պատանեաց զայս ոք
անդէն բան պարսէր ,
„Անտոնիոսէ , դու ոչ բարւոք ըզ հեգ մու-
րիկ զայդ հարեր .

Ա՜յ չուառական. զի՞նչ, թէ իցէ դա երկնաւոր ոք աստուած.
Քանզի աստուածք առեալ երբեմն ըզտեսիլ հիւրոց զօտարաց,
Այլակերպեալք և այլազգեստք ընդ մեր քաղաքս 'ի շուրջ գան,
Եւ լրտեսեն ըզխեռութիւն, ըզ լաւութիւն ըզ մարդկան »:
Լսէր ըզխրատն Անտինոոս, սակայն քերէր 'ի յընչաց.
Իսկ Տելեմաք գորովեցաւ ընդ ծընողին իւր հարուած.
Աղեկիզէր ընդ ծեր մուրիկն, այլ զարտասուս իւր սանձէր.
Լուռ կաց և նա, գըլուխ շարժեաց, և ըզչարիս խոճոճէր:
Բայց հարուածոյ աղքատ մուրկին առ մեծ դշխոյն լուր եհաս,
Յօգւոց եհան Պենելոպէ և զայս ասէր ցաղախնեայս.
« Երանի՛ թէ, զայնօրինակ և զայն ըզվէսն հոմանի
Արդ դիպաղեղն Ապողոն հարեալ խոցէր շեշտակի »:
Այլ կին անօրէնն Եւրինոմէ յաւել 'ի նոյն և ձայնեաց,
« Երանի՛ թէ ըստ ըղձանացս, և ջոկ ող-
ջոյն հոմանեաց

Զոսկեգահիկըն զարշալուրչ ոչ տեսանէր ըղվաղուեան ».
Ի լուր բանին և Պենելոպ զայս անդ կըրկնեաց միւսանգամ.
« Լո՛ւր ինձ, դայեակ, արք ոխերիմք և չարանիւթք են ողջոյն.
Սակայն դժխեմն Անտինոոս ամպ սևաթոյր է մահուն.
Ահա օտար հէգ այր մուրիկ ընդ տունըս մեր 'ի շուրջ գայ,
Ի խորտկաճաշ յայդ ուրերոյդ ինքըն սովեալ հաց մուրայ.
Այլքն ամենայն սրտով ջամբեն և ըզմուրկին պարկ լընուն,
Իսկ սա ձգեալ ըզպատուանդանըն հարկանէ զուսն աջոյն »:
Դշխոյն 'ի պերճ սրսկապանեին զայս ընդնաժիշտս բարբառի,
Եւ մեծ դիւցազն ըն Ոդիւսէս ընթրէր յայնժամ 'ի գետնի:
Բայց զԵւմէոս կոչեաց առ ինքն արդոյ դշխոյն և ասէ.
« Արի՛ դու երթ և ձայն հիւրոյդ կարդա զի աստ եկեսցէ.
Խօսել կամիմ, բան հարցանել ըզվշտակիրն Ոդիսեայ.
Լուա՛ւ արդեօք, տեա՛ս ինչ արդեօք, քանզի շըրջող այր է դա »:

« Իցի՛ւ եթէ, արգոյդ դշխոյ, ձայն Եւ-
մէոս արձակէր.
Ո՛չ թէ Աքեանքդ այդ լռէին, և դա
միայն բարբառէր.
Քանզի խօսի դա գեղեցիկս և բերկրա-
բարս քում սրտին,
Զի ես ըզդա հիւր վայելուչ ժողովեցի 'ի
հիւղն իմ.
Զերկուս ըզտիւս զերկուս գիշերս դա ինձն
առ իս հիւր եկաց,
Զի 'ի նաւէն իւր փախստեայ նախ առա-
ջինն յիս դիմեաց.
Բայց նա զաւուրս երկուս պատմեալ ըզ-
ձաւ վշտացն յանգ չեհան,
Զոր ինչ 'ի կեանս, դէպք նորանորք, ա-
րաւ կրեաց միանգամ.
Զոր օրինակ մարդ կայ յակնձիռս առ ե-
րաժիշտ դիւցազնգեաց,
Որ չէր, նուագ հանեալ երգէ յոյժ
հեշտալուրս ականջաց,
Մարդիկ անյագ գեղգեղելոյ նորա ձայ-
նին 'ի լուր կան,
Այսպէս նա զիս ուրախ առնէր նստեալ
'ի յիմն հանդըրուան.
Ասէր, եթէ ինքն Ոդիւսեայ հիւր է կա-
ցեալ հայրենի,
Քանզի բնակէր սա 'ի Կրետէ, ուր են
ծընունդք Մինովսի.

Անդուստ այս հիւր բազմաչարչար եհաս
 այժմիկ յայս երկիր ,
Եւ մեզ յողղք անկեալ է արդ խերև ան-
 տուն վշտակիր :
Եւ վերկայէ , եթէ ինքնին համբաւ լուաւ
 զՈդիւսեւն ,
Զի Թեսպրոտեանց 'ի ճոխ յանդգի նա
 կայ ողջամբ տակաւին .
Նաւ ըզպերճ զանձ կարասւոյ առեալ
 'ի տուն իւր ածցէ ,, :
Յորժ ցնծացաւ Պենելոպէ , դարձաւ ան-
 դէն և ասէ :
“ Որ՜ փութով երթ աստ կոչեա՛ , և
 պատմեսցէ յանդիման .
Իսկ այդ որեար , Թո՛ղ կամ առ դուրս
 ըսփոփեսցին միաբան ,
Կամ Թէ 'ի ներքս 'ի մեր յարկին զուար-
 Թասցին 'ի յոգի ,
Դա այդ որեար , որոց զեղեալ է տունն
 իւրեանց 'ի գինի .
Զեղեալ իսկ է նաև 'ի հաց , յորս և ծա-
 ռայք վայելեն ,
Սակայն ինքեանք 'ի տան մերում աստ
 Թարթափին զօր ամէն .
Յաղեն ըզհօտս , յաղեն զանդեայս , յա-
 ղեն և այծ պարարակ ,
Առնուն ըզճաշն և զատրաշէկ քամեն
 գինւոյն ըզբաժակ .

Յօրացեալք են և շուայտքն և մինչ խու-
պառ ցեցք են տան,
Զի չեք մեզ արդ իբրև Ոդիսս մերոյ յար-
կին պահապան.
Իսկ թէ յանկարծ 'ի տուն իւր արդ
դարձցի ողջամբ Ոդիսևս,
Բա՛ ընդ որդւոյն յայդ լրբելոցդ ըզվրէժն
առցէ քաջապէս »:
Այն ինչ ասաց, և Տելեմաք ուժգին
յայնժամ փռնգաց,
Եւ սոսկալի ընդ յարկն ողջոյն 'ի տաճա-
րին ձայնն հնչեաց.
Ծիծաղեցաւ Պենելոպէ, և ձայն կար-
դաց Եւմէեայ.
« Հա՛պա ճեպ տո՛ւր, և փութապէս ըզ-
հիւր մեր զայդ աստ կոչեա՛.
Միտ ո՞չ եդեր, զի իմ որդին արդ առ
բանս իմ փռընգաց 72.
Անշուշտ ուրեմն արդ մօտալուտ մահ կայ
առ դուրս հոմանեաց.
Ոչ մասամբք ինչ, այլ հասարակ օրահա-
սիւ կորասցին.
Բայց ես այլ ինչ քեզ արդ ասեմ, և դու
'ի յուշ ա՛ծ մուրկին.
Եթէ երբէք գըտից ըզդա ճշմարտախօս
յամենայն,
Ես պերճ խլլայս ընդ իւր ձիւձոյն տաց և
չքնաղ պատմուճան »:

Զօրաւ Եւմէս, մատեաւ կարդաց.
“ Ըզքեզ, հիւր հայր, մեծ դշխոյն
Պենելոպէ մայրըն կոչէ Տելեմաքեայ պա-
տանւոյն.
Բան ըստիպաւ խնդրել տեղեկին հարցումն
առնել զփեսայն,
Թէպէտ և ցաւոց լուրըն ամենայն նըմա
ըզցաւ առթեցին.
Բայց թէ երբեք գըտցէ ըզքեզ նա յա-
մենայնն ուղղատես,
Զօրձ և խըլայս արկցէ ըզքև, որոց դու-
արդ կարօտ ես.
Նաև ըզհաց 'ի դիւր քաղցուդ գտցես ա-
ռատ դու ով հիւր,
Զի ընդ քաղաքս անկեալ 'ի մոյր քեզ
ջամբեսցեն մըտադիւր ,,:
Հրաւիրակին կրկնեաց Ոդիս. “ Ես
ճշգրտիւ զամենայն
Բան ճառեցից Պենելոպեայ մեծի դըս-
տերըն Իկարեան.
Զի ես ինքնին, ով Եւմէէ, քաջ իսկ դի-
տեմ զՈդիսեայ,
Եւ բազում ինչ ես ընդ նմա տրտմահա-
ղորդ վշտացայ.
Սակայն ես յայդ լրբեցելոցըդ հոմանեաց
կամ յահի,
Որոց անասանձըն խեռութիւնն եհաս
յերկին երկաթի.

Զի այն ինչ ոմն 'ի սատահակայդ 'ի շրջելն
իմ 'ի սրահին ,
Աղքատ մուրկի ինձ անյանոյիս հարուած
եհար ցաւագին .
Եւ չարգել ոք յինէն զհարուածն և ոչ
ինքնին Տելեմաք .
Վասն այն և դու Պենելոպեայ երթ առ սա
յորդոր կալ յիւրն յարկ .
Անդ նա կացցէ և ժուժկեսցէ մինչև 'ի
մուտս արեգին .
Հարցցէ ապա 'ի յանդորրութ ինձ զօր
դարձի փեսային .
Ինձ առ հրով տացէ բազմոց , զի այս
ձուձձս է իմ ծածկոյթ .
Դու գիտես զխմին , որ աղաչքին առ քեզ
չոքայ ես յանկքոյթ ,,։
Դարձ Եւմէոս արար յայնժամ զօղ զդր-
խոյին 'ի բանակեր ,
Եղջիւր ըղնա մօտ առ սեմոքք , մինչ նա
արտաքս ելանէր .
Բարբառեցաւ Պենելոպէ . ‹‹ Զի՞ ոչ ա-
ծեր , ով Եւմէ .
Զինչ ինչ արգելք այդ հիւր մուրիկդ
արդ 'ի խորհուրդս իւր յածէ .
Մի՛ թէ յերայ ինչ խիթացեալ և յեր-
կիւղէն զանգիտէ ,
Կամ թէ 'ի մեծ 'ի յամօթոյն նա թաք-
թաքուր խուսափէ .

Սակայն մուրիկ, որ ամաչէ, ինքն ընդ
անձին ոգորի ,,։
" Ո՜վ, այդ մուրիկդ, անդէն Եւմէս ձայն
զայս կրկնեաց դշխոյի.
Անշուշտ ուշիմ բան բարբառի խրոու ըզ-
մարդ ուղղատես,
Քանզի խուսէ լըբեցելոցն յանդիմանել
'ի հանդէս.
Նաև ըզքեզ ինքն յորդորէ, մինչև մնացէ
արևակ,
Կալ ժուժկալել և միայնիկ տալ և առ-
նուլ համարձակ ,,։
" Բա՛րէ, մուրիկդ այդ անծանօթ, Պե-
նելոպէ զայս կրկնեաց,
Քաջուշիմ է. զի և են իսկ այդ հոմանիքդ
լիրբք անսանձ ,,։
Դարձաւ Եւմէս առ բազմականսըն կա-
տարեալ զամենայն,
Եւ մատուցեալ առ Տելեմաք 'ի յուն-
կանէն ասէր բան.
" Լո՛ւր ինձ, սիրուն, ես փարախին ըզ-
պահն ունել արդ գընամ.
Քոյ են և իմ որ անդ պարէնքն. իսկ դու
աստէն կա՛լ խընամ.
Բայց առաջին լե՛ր դու ուշիմ և անձնա-
պահ 'ի չարեաց,
Քանզի 'ի մէջ արդ Թարթափիս մենքե-
նագործ Թշնամեաց.

Ո՛վ թէ, մինչև մեզ վընասեալ, Ձե-
ռըն նոցա շանթեսցէ »։
Կրկնեաց 'ի նոյն ,Տելեմաքոս ձայն ըղձա-
կան և ասէ.
« Օ՛շ թէ այդպէս լիցի ո՛վ հայր. բայց
դու հաց ա՛ռ զերեկոյն.
Գնասցես ապա, գիրգ պատրուճակս
ածցես առ մեզ ընդ այգուն.
Իսկ ինձ աստէն և անմահից յանձն եղի-
ցի ամենայն ».
Զայս նա ասաց, և Եւմէոս առ միւսան-
գամ բազմական։
Զընթրիսն էառ և արբ բաժակ, և ել
գընալ յագարակ,
Եթող ըղջյարկ զայն խառնամբոխ 'ի շամբ-
շելոցն 'ի դաստակ.
Որք յափրացեալք պատկառ կային յայն-
ժամ երգոց և պարուն,
Քանզի և օրըն կարճատեալ պահն հասա-
նէր երեկուն։



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱՔՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԲ·

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ի սրահին հոմանեաց ըմբշամարտք կռուին, Ոդիւսէս կեղծեալ մուրիկ և բուն մուրիկ քաղաքին Իրոս անուն՝ յաղթանդամ. նկուն լինի Իրոս։ Պենե- լոպէ գայ յանդիման երևի հոմանեաց. քանքարտայ, զի զլուեն նոքա զհիւրս. և տարփածուք իւր փոխանակ ընծայա- բերութեանց առ ինքն, ուտեն և վատնեն զդոյս նորա 'ի տան նորա։ Ընծայաբե- րութիւնք հոմանեաց առ Պենելոպէ։ Ի գալ հասանել գիշերոյն, միւսանգամ նշաւակեն զՈդիս. Նախ՝ յաղախնեայց ոք Մելանթիա անուն՝ բանիւք, ապա և ար- դեամբք 'ի հոմանեաց անտի Եւրիմաքոսն, արձակելով ընդդէմ Ոդիսեայ պատու- անդան մի իբրու զԱնտինոսն։



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԸ.

ՀԱՍ անդ մուրիկն հասարակաց, մեծ մուրացիկն Իթակայ,
Այր գինեճան, մուրիկ անյագ, այր աննըման որկորեայ.
Էր տեսողաց նա հրաշացեալ 'ի յաղթանդամն իւր հասակ,
Այլ 'ի սրտին այր անարի էր և 'ի յուժն անաւագ.
Ի ծննդենէն իւր Արնէոս մայրն իւր անուն եդ նըմա,
Սակայն Իրոս զնա կարդային ողջ պատանիքն Իթակայ 73.

Քանզի ըղձա 'ի պէտս իւրեանց առաքէին
'ի բանբեր․

Արդ սա յայնժամ եկն և զՈդիւս յիւրմէ
տանէն արտաքսէր․

Մատեաւ եկաց հանդէպ նորա և բան
պարսեաց նըշաւակ․

« Ե՛լ ե՛լ 'ի բաց, ո՛վ ծերունիդ, առ 'ի
գաւթէդ ե՛լ արտաք․

Զի մի՛ յանկարծ իբրև առակ դու քար-
շեսցիս զոտանէն․

Ո՞չ իսկ տեսեր․ քարշել ըղձեն ինձ բազ-
մականքն ակնարկեն․

Այլ քաւ լիցի, չառնում զայդ յանձն
և ակնածեմ․ համայն ել․

Մի՛ կագեսցուք, և զայրասցուք մինչ մուր-
ցացի 'ի կռուել։ »

Տեսօք աչաց խաղաց 'ի նա, բարբառեցաւ
Ոդիւսէս․

« Քեզ, ո՛վ չուառ, ոչ 'ի գործ ինչ և ոչ
'ի բան վնասեմ ես․

Ոչ և խանդամ, թէպէտ և մեծ ոք ջամ-
բեսցէ քեզ զեղուն,

Ո՞չ աւագիկ մեզ երկոցուն բաւական է
սեամս ողջոյն․

Սակայն և դու մի՛ զատարկին ինչ մի՛ երբեք
խանդասցիս,

Քանզի և դու, որպէս կարծեմ, այր ես
մուրիկ իբրև զիս․

Թո՛ղ, մեծն աստուած զընչեղութիւն
Թո՛ղ տեղացի, ում կամի,
Սակայն ինձ վէգ դու մուրցաչի ձայն մի
տացես 'ի կուսի.
Զի մի յանկարծ 'ի հուր ցասմանս ես
ծերունիս զքեզ կալայց,
Եւ ապաժոյժ արեամբ զչքթունս ողջ
գունեցից և ըզ լանջ.
Իսկ ինձ յայնժամ դիւր առ վաղիւն դիւր
առաւել եղիցի,
Զի դու դարձ այլ ոչ մարթասցիս առնել
'ի տուն Ոդիսի ":

Ի մեծ ցասումըն բորբեցաւ Իրոս մուրիկն
հարըստի.
" Վա՜չ վա՜չ, զխա՛րդ պորտաբուծիդ լե-
զուն արագ հոլովի.
Կարկաչուն է իբրև պառաւ կին ցանդ
կծկեալ առ կրակի,
Որում չատ է եթէ յանկարծ տաց հա-
րուած մի բռունցի.
Անդէն ըզչարըս զատամանց 'ի ծնօտելեաց
Թափեցից
Իբրև զխոզի բոհբոհելոյ ագարակին ո-
րայից.
Հա՛պա, ծեր դու, ա՛ծ ըզգօտի. տեսցեն
մարդիկ կազմ ըզմեզ.
Բայց դու զիա՛րդ ընդ քաջառոյգ ընդ
պատանւոյ մարտ դիցես ":

Զայս ինչ մուրիկքըն յանդիման բար-
ձըր դրանդեաց տաճարին,
Առ քաղցրօրէն բարաւորջքըն ջերմագոյնս
կադէին:
Դիտեաց անդուստ զայն Անտինոս, և
ծիծաղեալ հեշտաբար,
Ասէր. « Բան մի, ո՛ բարեկամք, դիտեմ
ահա բերկրաբար.
Յարդ մեզ տատուած 'ի խրախուսութեանս
չետ այնպիսի ըզբօսանս.
Իրոս մուրիկն և հիւրդ այդ ծեր արդ
պայքարին ընդ միմեանս.
Ջեռեալ են յոյժ մինչև 'ի վէգ արդ
մրցացի ելանել,
Ա՛ղէ մեք ամք, ըզբոց կռուոյն բորբոքեա-
ցուք առաւել »:
Այն ինչ լուան, և հոմանիք քըքիջ բար-
ձին, ողջ յարեան.
Եկին և շուրջ ըզբորդոզեալ անդ ըզ
մուրկօք պատեցան.
Բարբառեցաւ Անտինոոս. « Ինձ արդ ո՛վ
քաջք, ունկըն դիք.
Ահա այծեաց գիրգ փորոտին մերոց ընթ-
րեաց մեծ խորտիկ
Արդ 'ի վերայ կայ խարուկին, է ճար-
պալից արեամբ լի.
Զայն ջամբեսցուք 'ի մըցանակ մեջ յաղ-
թողին 'ի կռուի.

Զո՛ր և կամի, ինքն ընտրեսցէ, առ 'ի մա-
    սանց փորոտւոյն,
Եւ բաժանորդ նա ցանգ լիցի մեր խրա-
    խուլթեան սեղանոյն.
Իսկ այլ մուրիկ և այլ աղքատ մի՛ մուտ
    գացէ յայս տաճար ».
Զայս խօսեցաւ Անտինոոս, և հաճեցան
    հաւասար:
Բայց Ոդիւսեւս բազմահնարն և խո[illegible]
    գէտ զայս ասէր.
« Ինձ չէ՛ արժան ո՞ բարեկամք մրզել ընդ
    մարտ անվեհեր.
Բա՛րէ, զիա՛րդ ծեր վշտակիր և պարտա-
    սեալ 'ի յոգւոյ
Յաւակնեսցի 'ի վէգ մրցել ընդ քաջա-
    ւոյգ պատանւոյ.
Սակայն զարդիս ինձ բուռն առնէ այս ո-
    րովայնս սովատանջ,
Զի յանդգնեալ ինձէն յիս վէրս ես յա-
    ւելից և հարուած.
Բայց ա՛ղէ դուք անխաբ լեզուաւ լերո՛ւք
    ինձ արդ երդմնի,
Եթէ 'ի շնորհըս Իրոսին մի՛ ոք աստ յիս
    բռնասցի.
Զի չէ՛ արդար թէ 'ի մրցանս ոք դործեա-
    ցէ զիս նրկուն ».
Լուան զխնդիրն և հաստատուն երդումն
    անսուտ սան ողջոյն:

Նաև անդուստ Տելեմաքոս « Քաջ լեր,
Հզաւր դու, ձայն կարդաց.
Եթէ վանել դու զախոյեանդ վստահ ես յանձն, յաջողեաց.
Մե՛կ ինչ ուսուցք մի խիթայցիս. թէ ով յանկարծ զքեզ հարցէ,
Ընդդէմ նորա 'ի մարտ կռուիւ բաղխում որեւար յարիցէ.
Ես ինքն եմ աստ հիւրընկալու, և ինձ հա-ւան են արքայք,
Այս հանճարեղ ամոլք քաջաց Անտի-նոոս, Եւրիմաք »:
Նա զայս ասաց. և բանն հաճոյ եղև ող-ջոյն յատենին.
Իսկ անդ Ոդիս զիւր հնոտիսն ամփոփեալ զմիջովքն ած գօտի.
Նա զգեղեցիկ, յաղթահասակ զիւր կողսն եբեր յերեւան,
Ի նոյն և զուսս իւր թիկնաւէտ անդ հո-լանեաց յանդիման.
Ըզհաստ բազուկսն ըզքաջամուր ցոյց ա-տենին և ըզլանջ,
Նա և յերկնից 'ի զօրավիգ մեծն Աթե-նաս մերձ եկաց.
Շուք բարգաւաճ յաւել յօրդեաց յաղթ իրանաց արքային,
Ցանկծիւս սեղեխք և յոտնխմաստըն հայե-ցան, սարսեցին.

Առ փառաւորակ ըսքանչացեալ այր բարբա-
ռէր ընկերի ,

« Արդ չէ՞ք Քրիստս , չէ՞ք արդ Նորա , նա բըռ-
նամահ քարշեցա՛ւ .

Ո՞չ իսկ տեսէք . երբ ծերունիդ այդ մեր-
կացաւ 'ի հնոտեաց ,

Զխո՛րդ եցոյց ըղքաջակուռն ըղ պնդու-
թիւնն իրանաց »:

Բայն ինչ Նորա լուսու ըղբաման , ահիւ-
խուսէր կորակոր ,

Սակայն բանի զնա պաշտօնեայք 'ի մէջ
ածեն զօտևոր .

Յապուշ Նորա էր Թալացեալ , մկրտինք
սարսին 'ի յանդամս ,

Ցես Անտոնիոս և կշտամբեաց , պարսաքա-
րեաց երդիծանս .

« Արդ պայթեցջի՛ս , դու պոռոտեալդ ,
մեռի՛ր այժմէն . զի՞ ծընար ,

Որ արդ այդչափ 'ի ծերունոյդ ահաբե-
կեալ դողացար .

Ո՞չ աւաղիկ ծեր մշտահար է դա վա-
տեալ ալևոր .

Այլ քեզ ահա ես բան անսուտ ձայնի-
կարդամ ահաւոր .

Թէ քեզ յաղթող մրցանաւոր այդ ծերդ
ելցէ 'ի մարտէն ,

Նա 'ի նաւ սեաւ արկեալ ըղքեզ 'ի յՆե-
ղինոս արձակեմ .

Թաւալագլոր անկեալ իջոյ , մեծաբա-
ռաչ պոռոտէր ,
Ի նոյն կրճեալ և զատամունս , և ընդ
գետոյն աքացէր .
Անդ ձեռնամբարձք ազգ համանիքըն այս-
Թէյին ՚ի ծաղուէն ,
Ոգիս ընդ սեաւն առեալ զինքոս քողքէր
տանէր զոտանէն .
Մինչև եբեր նա ՚ի զաւեթն և ՚ի դրան
դիս սրահակին ,
Նստոյց յեցոյց ընդ նա ՚ի յորձն անդ ար-
տաքոյ ՚ի զաւեթին .
Առ և ցուպ մի եդ ՚ի ձեռըն , և այսպիսի
ձայն կարդայ .
« Ասա նիստ դու այժմ ՚ի բարձրայն ,
լեր շանց վանիչ և խոզաց ,
Մի՛ , վասն արանց , դու ՚ի մուրճիկս և մի ՚ի
հիւրս ճոխանար ,
Զի մի յանկարծ և այլ կարիք քեզ դի-
պեսցին չարաչար »:
Ասաց Ոգիս , և ընդլայնական խոր ծակոտ-
կէն արկ զուսով ,
Եւ մուրհակաւոր կախեաց ընդ նա քաղցրա-
ղեալ չուանով .
Դարձաւ և եկն և առ սեմովքըն բազմե-
ցաւ իւրքն անդրէն .
Անդ հեշտաբար և հոմանիքն ՚ի ծաղր հա-
տեալք դարձ առնեն .

Մըտօքն 'ի ներքս և աղուաւոր ձայն յՈ-
դիւսէս կարգայքն ·

« Քեզ, ով հիւր դու, Զեւս և անմահք
լցցեն ողջոյն զերգ սրտին ·

Զի դու զանյագ զայդ որկորուստ և ըզ-
մուրէկդ վաղանգոյն

Դիւր մեծապէս մեր քաղաքիս ըռւեցու-
ցեր 'ի մուրոյն ·

Արդ մեք ըզդա արագ արագ արձակեսցուք յԵպիրոս,

Առ պատուհասըն աշխարհի առ Թագաւորն Եքետոս »:

Զայս ասացին, և մեծապէս հրճուէր
դիւցազն Ոդիւսէս,

Զի և զըղձին իւր մաղթեցին նոքա ըզմանն
ըզհանդէս:

Էառ յայնժամ Անտինոոս ըզմեծ խոր-
տիկն, փորոտի ·

Ըզ ճարպալիցն, ըզլին արեամբ; և եդ նը-
մա առաջի ·

Էառ ապա Ամփինոմոս և հաց կրկին 'ի
խանէն,

Եդ առաջի · նաև գինի տայր 'ի բաժակ
յոսկեղէն ·

« Ո՛վ հիւր, ասէր, խնդա՛ ով հայր · դու
երջանիկ եղիցիս

Գոնեա յապայս · քանզի այժմիկ բազմա-
պատիկ չարչարիս »:

Լսնդաց 'ի բանն և պատասխան զայս
բազմիմաստն ետ Ոդիս.
« Դու ինձ անշուշտ, Ամփինոմէ, համ֊
ճարիմաստ երևիս.
Համանմանեալ ես ծընողըն քոյ Նիսոսին
Դուլիքեան,
Զորոյ հռչակն ես քաջ գիտեմ ըզ մե֊
ծութեան, զբարութեան.
Դու այր ինքնին ես մըտացի քանզի ձեռ
ես յայն քաջէն,
Վասն այնորիկ քեզ բարբառիմ. դու
քաջ միտ դիր, զոր ասեմ.
Բան քան ըզմարդ ոչինչ տըկար մեզ այս
երկիր բուծանէ,
Որչափ գոյակ աստ 'ի յերկրի շրջի, զե֊
ռայ, և շնչէ.
Կանխագածինն երբեք չասէ, եթէ յա֊
պայս տանջեսցի,
Ցորչափ 'ի դէց կեայ երջանիկ և ցորչափ
ծունկքն են յուժի.
Իսկ և յորժամ նորքն անմահքն յըղեն
ինչ կիրս դըժնդակ,
Այն, բերէ նաև ճշտաց, տոկայն տըւամ
դժկամակ.
Զի երկրածնաց միտ և խորհուրդ է իսկ
անշուշտ այնպիսի,
Որպիսի օր ածէ աստուած հայրըն խնա֊
մող աշխարհի.

Էր զի երբեմն և ես ինքնին կեանս երջա-
նիկ վարէի,
Նա և յոյժս իմ ես ապաստան ապախրատ
ինչ գործեցի.
Յաւակնեցայ, լեալ 'ի հայրն իմ և յեղ-
բայրս իմ ապաստան,
Սակայն երբեք անխրատ ինչ գործել մար-
դոյ չէ արժան.
Թող մարդ ըղձիկ զայն կերիցէ զոր ինչ
նըմա տայ աստուած,
Եւ ոչ որպէս անխրատացդ այդ ժողո-
վուրդ հոմանեաց.
Որ զօտարքն ըղձողս վաստնեն և զօտարքն
կին գըձձեն,
Զոր ոչ կարծեմ թէ յամեսցէ նա . 74
տարաձիդ 'ի ամնէն.
Նա մնասաւանդ և յոյժ մերձ կայ. սակայն
մաղթեմ քեզ բարի,
Զի և 'ի տանն ինքնին աստուած քեզ
լինիցի հովանի.
Յորժամ դարձցի այդն 'ի տուն իւր, մի
ասա ըզքեզ յանցն արկցէ,
Քանզի անչուշտ մարտն հոմանեաց ոչ
անարիւն ինչ ելցէ »:
Ըսաց Ոդիս, և հան նուէր, և արբ յա-
նոյշ 'ի գինւոյն,
Եւ ըղբաժակն անդրէն դարձոյց Ամփի-
նոմեայ պատանւոյն:

Բայց նա խաւարեալ յոյժ 'ի սրտի, եւ 'ի
սրահէն և ձեմէր

Եւ ընդդիմութիւն իւր տառապանեալ յօրհա-
սէն տագնապէր •

Այլ ոչ զերծաւ. զի և ընդ նա կարթեաց
յայնժամ Աթենաս,

Եւ 'ի նիզակ Տելեմաքեայ ընկուն եղեալ
առ զօրհաս :

Զայս օրինակ Ամփինոմոս անձնախեցաւ
անդ յայնժամ,

Բայց և դարձաւ և յաթոռ իւր եկաց:
բազմոց միւսանգամ:

Սպառեաց յայնժամ մեծն Աթենաս
Պենելոպեայ զչարեացն,

Գալ յերեւան առ հարսնախօսն և արծար-
ծել զյոյս նոցին •

Նա և արգոյ եւս ընծայել զինքըն որդւոյն
և ամուսնոյն,

Խնդաց յայնժամ Պենելոպէ, և ձայն
եբարձ նա 'ի նոյն •

« Ցանկամ զարդարիլ, Եւրինոմէ, ես հո-
մանեաց երեւել

Եւ անդամանօք բան ախտական իմոյ որդւոյս
բարբառել •

Մի՛ նա շատ ինչ կենցաղակից լիցի լկտիրշ
հոմանեաց,

Այն որք ազու բան բարբառին, և նենգ
լարեն 'ի թիկանց »:

Լուաւ զայն կինն տնակալուչ և զայս
կրկնեաց փոյթ ընդ փոյթ,
« Քաղց են քո բանքդ, արի՛ ով դուստր,
և ճո՛րթ խրատտու լեր որդւոյդ.
Բայց լոդարան տացես մարմնոյդ, և յայ-
սըս քո օծեսցիս,
Մի՛ դու գնասցես յայդ կերպարան, դեմք
խորթնացեալք 'ի լալիս.
Լալիք անդուլք չեն ինչ բարի, և կիրք են
այդ դըժնդակ,
Ո՞չ աւադիկ և Տելեմաքդ էառ զառոյգն
իւր հասակ,
Զխո՞րդ քաղի քոյ պատանւոյն արդ ամէգ
մօրուաց ծաղկեալ է,
Զոր և ուխտիւք դու խնդրեիր 'ի յան-
մահիցն 'ի դասէ »:
« Քաւ, ինձ մի դու, Եւրինոմէ, Պենե-
լոպէ ձայն կարդաց,
Մի՛ խօսեսցիս, մի յիշեսցես ըղձաղանեաց
և զօծմանց.
Աստուածքն անմահք ողջոյն ըղձեղն իմ
կապտեցին առ յինէն
Յորժամ գնացաղն իմ ամուսին էլ նա-
ւադնաց տարադէմ.
Սակայն դու ինձ զԱստոնոէ, զԻպպո-
տամէ աստ կոչեա,
Գայցեն փութով և յեղանեալ կայցեն
ընթեր ինձ նոքա.

Զի պատկառեմ ես միայնիկ գալ յե-
րեւան հոմանեաց ».
Լուսաւ աւսարդն և ձեալ ոտիցն ետ և
ձեալեաց ըղկանայս ։
Բայց և այլ ինչ հնարեաց յայնժամ
մեծն Աթենաս դիցուհին .
Քուն անուշակ արտեւանանց հեղ ծնգա-
սէր դշխոյին .
Մինչդեռ անդէն կայր 'ի բազմոց, նինջ
մի էառ խորութեան,
Եւ յօդք մարմնոյն առ հասարակ առ 'ի
հանգիստ դրդեցան .
Յայնժամ նորա մեծ դիցանոյշն ըղշուքըն
տայր զանմահից,
Զի Աքայեանք յաձինս կացցեն տեսոյն
նորա բերկրալից .
Յառաջ գեղով մաքրագործեաց 'ի գեղ
անմահ աստուածեան,
Տիպ շնորհաշուք երևեցոյց 'ի պատկերին
անմըման .
Յոր և Աստղիկն գեղապսակ զինքն հա-
սարակ օծանէ,
Յորժամ Շնորհաց նա 'ի պարուն նազա-
քայլեալ մըտանէ .
Եդ առաւել մեծ ըզնա հասակաւ, եդ և
կայտառ 'ի դիտակ,
Քան ըզփղոսկր այն ինչ կարեալ եդ
ձիւնափայլ ըղամփատակ .

Զայս դիցանոյշըն կատարեալ Թռեալ 'ի
ծայրն Ողիմպեայ.
Եւ զերգ Նաժիշտըն յայնժամ տրտմեալք
առ 'ի յարկէն զան առ նա.
Քունն անուշակ եթող ըզնա, և սթա-
փեցաւ կաց 'ի վեր,
Եւ զայսոսն առեալ սրբեաց ձեռօքն և
զայս բարբառ արձակէր.
« Բոբէ, զի՞արդ քուն անուշակ 'ի Թախ-
ծութեանս էառ զիս.
Երանի՛ թէ մեծ դիցանոյշըն այժմ ողջախոհն
Արտեմիս,
Զայս օրհնակ մահ անուշակ տայաղ տայաղ
արդ տայր ինձ,
Զի ոչ այլ ևս 'ի գերարարութ ես հիւծէի
վշտալից.
Լեալ անձկալըյեաց իմ փեսայիս իմ սար-
փալի դիւցազին
Համբաւաւորենչ այն քաջարւոյն յՆԵա-
դացւոց աշխարհին »։
Օ՛այս ինչ ասաց, և 'ի յարկէ իւր վեր-
նատանն իջանէր.
Ձէր միայնակ. այլ և Նաժիշտք կային
կրկին առընթեր.
Հասեալ 'ի դասըն հոմանեաց Պենելոպեէն
գերափառ,
Եկաց առ դուռըն տաճարին, այտք քօղ-
արկեալք 'ի գեղեց շար.

Նաժիշտքն անդէն կային չքնաղ մին յա-
հեկէն, մին յաջմէ,
Ցեալքն բազմեալքն և սրտառուչք եղեն
ողջոյն այլ յայլմէ.
Այր այր խնդրէր անձին իւրոյ ընդրակա-
պանին հարսանեաց,
Սակայն պչխոյն զայս ասէ որդին Տեղեմա-
քոս ձայն կարդաց.
« Ձեզ այլ 'ի քեզ, Տեղեմաքէ, խորհուրդ
ողջիկ, չէք համբուռն.
Դու որ 'ի տիս քո մանկութեանդ էիր
ուշիմ և խոհեմ.
Իսկ այժմ հասեալ քո 'ի յարբունս և
եղեալ քո այր կատար,
Եւ այր արդար տեսեալ ընկերդ 'ի գեղ քո
յայտ և հաստատ,
Բամ ասասցէ, զայս լինքն անշուշտ ձեռս է
մարդոյ երջանկի.
Բայց չէք 'ի քեզ միտք քաջախոհ և ոչ
հանճար 'ի սրտի.
Զի՞ դու ընդդործըղ դրժայրհի գործեալ
աստէն 'ի տան մեր,
Ըղձեր հիւրոյդ զձձանս ասեմ, անսեր և
զանց արարեր.
Բամբէ չարբեացս. եթէ հիւր ոք 'ի տանդ
այսպէս դրժեսցի,
Ո՞չ և համբուռն դու նըշաւակ ու առակ
լիցիս յաշխարհի »:

Կրկնեսցեն անդէն Ցեղեմայքըս ձայն քա-
ջուշիմն, « Ո՛վ մայր իմ,
« Քաւ մի՛ լիցի, թէ ընդ սրտներդ ես 'ի
ցասումն ինչ բրդիմ.
Թո՛ղ դու ըղձիս իմ մանկութեանս, զար-
դիս եմ ես խորազգաց,
Եւ խնկամուտ առ հասարակ եմ ես չա-
րեաց և բարեաց.
Բայց և ընաւից քաջ միտ դնել անշուշտ
չեմ ինչ բաւական.
Կամ միայնիկ. և չարամտութիւնք բազումք
զինև պատեալ կան.
Սակայն հիւրոյն և Իրուքին մարտըն կըռ-
ւոյն դըժընդակ
Չէր այն խորհուրդ գործ հոմաննեաց. և
հիւրն էառ մրցանակ.
Այլ ո՞վ եթէ, քաջդ Ազորմն, և Աթե-
նաս, 'ւ Արամազդ.
Ըղձոյն զուծնակ և հոմանիք առ ըննէին
արդ տապաստ,
Դանդաչելով 'ի գլուխս ուրեանց կէսքըն
նոցուն 'ի գաւթին,
Եւ հաշմանդամք և խեղանդամք կէսքըն
'ի ներքս 'ի յարկին.
Որպէս զարդիս հէգ այն Իրուն 'ի մեր
գաւթին նստեալ է,
Եւ առ դրանդեօք նա 'ի գլուխն երրև ար-
բեալ դանդաչէ.

Ոչ ինչ կարէ կալ 'ի յոտին և ոչ 'ի տուն
առնել դարձ,
Քանզի գոգցես անդադրն ողջոյնիւն քայ-
քայեալք յերանաց ”:
Մ՛ինչ յպատասխանեաց անդ 'ի զբուցաց
մայր բարբառէր և որդին,
Ձայն յանկարծոյն Եւրիմաքոս զայս ար-
ձակեաց գլխոյին.
“ Եթէ յԱրգոսն յայն Յասոնեան 75,
ո՞ դուստր ուշիմ Իկարեան,
Դու բոլորից Աքայեցւոց գայիր այսպէս
յերևան,
Յայգուց աստէն բա՛ տարփածուաց դաս
մի խուռներ բազմագոյն,
Այնչափ հանձարդ, գեղդ, և հասակ է
իսկ կանանց վեհագոյն ”:
Կրկնեաց անդէն Պենելոպէ. “ Ո՛վ, զիմն
ողջոյն, Եւրիմաք,
Ըզշուքն, ըզգեղն, և ըզկարն իմ առին
բարձին դիքն անմահք.
Յաւուր յորում Յոյնք յԻլիոն 'ի չու-
անկան յարշաւան
Եւ Ոդիւսէս Նիզակակցօք այն քաջարին
իմ փեսայն.
Թէ նա աստ դառնայր ինձ այցելու իմ մեծ
լինէր շուք փառաց,
Սակայն զարդիս թախծեալ եմ ես, քան-
զի դձձեաց զիս աստուած:

Զայս քնեմ ասէր. և արդ բանից նորա
եհաս ժամանակ.

Եւ այս գիշեր ընծայեսցէ զիս հարսնա-
նալ դժկամակ.

Եղուկ եմ ես. զերջանկութեան զօրն իմ
Դիոս բարձ յինէն.

Սակայն զարդիս սրտացաւութեամբ ես մե-
ծապէս թախծեալ եմ.

Զի տարփացեալքդն զերդ կընոջ նորին և
դատեր ընչեղին,

Եթէ երբէք ընդ իրերաց 'ի մէջ տար-
փողքըն գային,

Այս վաղնջուց էր սովորոյթ զայն օրինակ
տարփածուաց,

Զի յանդէոց յոյլս ածէին, նաև պա-
րարտս 'ի յօղեաց.

Եւ ընկենողին ընծարեկամս 'ի խրախու-
թեան կարգային,

Եւ հոյակապ ձօնս ընծայից կընոջն այն-
միկ ձօնէին.

Սակայն զարդիս համարձակեալք և զօ-
տարին տուն ծախեն »:

Ասաց սորինն, և Ոդիսեւս յոյժ ցընծայաւ
'ի բանէն.

Զի զիրդ բանիւք 'ի հանճանաց կորզէր
քաղէր ընծուէր.

Սակայն այլ ինչ կըն քաղցրութեամբ յիւրում
սրտին խոստանէր:

Անտինոոս յառաջաղէմն առ նա յայն-
ժամ զայս կրկնեաց.
« Քեզ, ո՛վ դշխոյ, ձօնք և ընծայք փառ-
թով ածցին յԱքայեանց.
Դու ա՛ռ ընկալ, ո՛վ քաղցրաշնորհ, քեզ
զընծայեալսն ըստ ըղձի.
Քանզի հրաժեշտ տալ յընծայից՝ է ինչ
արդեօք դժպըհի.
Մեք կամք մընամք աստ 'ի յարկիս աստի
'ի բաց ոչ գընամք
Մինչև դշխոյդ 'ի հարսն ածեալ առըն
քաջի և աւագ »:
Զայս անդ ասաց Անտինոոս, և ընդ խոր-
հուրդն հաճեցան.
Այր այր յայնժամ վասն ընծայից զիւրն
առաքէր պաշտօնեայն:
Ընծայն ձօնեալն Անտինոսին էր հոյա-
կապ ձօն պայծառ,
Շըղաշատեալն երփնազարդ գործած
չքնաղ, լայնատարր.
Ի նմա համակ կուռ ոսկեղէնք էին ճար-
մանդք երկոտասան,
Եւ կարթաւոր էին ամփոփք քաջ յերիւ-
րեալք անմըման:
Եւրիմաքոս հրաշակերտեալ ձօն պար-
գևէր ոսկի քայս,
Որ ընդ սաթի ընդելուզեալ իբրև արփի
բոցանայր:

Գետըս ազնիւըս եռանկիւնեայս Եփրատա֊
    մոս ընծայէր,
Որոց և շուքըն շնորհաշուք լուսանըշոյլ
    փայլակէր.
Պիսանդրոսին Պողիւկտորեան քաջին ա֊
    ռանց պերճ ընծայն
Մանեակ ձօնեալ գեղգեղափայլ էր յոյժ
    չքնաղ զարդ ուլան.
Ըզնոյն և որք անդ համախմբէին Յու֊
    նաց արք աւագք,
Զընծայս նոցա ձօնս գեղեցիկըս աճէին
    պաշտօնեայք:
Յարեաւ ապա եւ Պենելոպ 'ի յարկ
    իւրոյ վերնատան,
Նաժիշտքն ըզհետ բարձեալ զընծայսն
    զուգահետք ընթացան:
Իսկ հոմանիքն 'ի ախոփութիւն յերգ֊
    նուագաց և պարուն
Դարձ արարեալ անդ մընացին մինչև 'ի
    պահ երեկոյն.
Խնծղուք այնպէս պարապելոյն մինչ երե֊
    կին մութն եհաս,
Ի լոյս յարկէն եդին արագ անդէն ե[illegible]ս
    կրակարանս.
Պատրաստեցին չոր վառն[illegible] այն ինչ
    հերձեալ փայտ անթառ[illegible]
Առեալ կուտեն շուրջանակի ճարակ բո֊
    ցոյն անխոնաւ.

Ձեր աղախնեայքըն Ողիմպեայ լուսոյն և
Ջահն և պաշտօն ,
Մինչև նոցա բան Ողիմպէս բարբառեցաւ
'ի վայրէն .
« Դուք Ողիմպեայ , ո՛ աղախնեայք , Թա-
փառական արքային ,
Արդ գնացէք դուք 'ի տաճարն ուր Պե-
նելոպ կայ տխրալինն .
Նըմա սփոփանս ընծայեցէք , անդ աղէ-
կատ շարժեցէք ,
Եւ վկամ ասուխս նստեալք անդէն ձե-
ռամբք ձերովք սանդրեցէք .
Ես աստ կրակին խոնաւ ածեալ , ողջոյն
յարկին տամ ըզլոյս ,
Թէպէտ նոքա աստ յամեսցեն մինչ յոս-
կեգահն արշալոյս ,
Ոչ իսկ խոնջիմ , համբերատար եմ բնա-
ւորեալ անդադին » .
Լուեալ ըզ[illegible]ըն կանանւոյն , այր ընդ-
ընկեր ծիծաղին :
Բայց անարգոււ եկաց նըմա Մելանթիա
գեղանին ,
Զոր Դոլիոս ծընաւ իւր դուստր , այլ էր
նըա սան գըշխոյին ,
Գորգանս նըմա տայր մեծապէս և իբրև
դուստր սըա սընոյց ,
Համայնն այնպէս նա ըզգըշխոյն 'ի յոգին
իւր վշտացոյց .

Քանզի տարփայր նա յՆուրխմայք, որ 'ի
դաստէն հոմաննեաց.
Արդ սա յայնժամ ըզմեծն Ոդիս շատ զըզ-
ուանօք նախատեաց.
“ Հէգ դու, ասէր, մուրիկ օտար և ծեր
Թափեալ 'ի խելաց,
Զի՞ դու չերթաս ընկողմանիլ 'ի պղընձին
յարկ դարբնաց.
Զի՞ և չերթաս դու յիջեվանս, այլ աստ
կացեալ կարկաջես
Եւ յակմբի այս աւագաց դու ձոխանաս
լըբապէս.
Աւաստ գինին քաջ քո զակամբ եկեալ
է արդ չարաչար,
Կամ դու արբշիռ ես հանապազ, քանզի
խօսիս վայրապար.
Խայտա՞ս Թե՞րեւս, զի դու զԻրոս զայրըն
մուրիկ պարտեցեր,
Այլ զի՞նչ, եթէ քեզ դառնայցի այր քան
զԻրոս անվեհեր.
Որ բըռընցի ըզքեզ ջախեալ, և հէգ գըլ-
խոյդ տայցէ գոյժ,
Վարեալ 'ի դուրս և շաղեսցէ ըզքեզ
յարիւն ապաժոյժ ”։
Խոժոռ 'ի նա ակնարկելով ահաբեկեաց
Ոդիւսէս.
“ Ըզքէն, ո՛վ շուն, ես արդ դուշակ գնա-
ցից մատնել փութապէս։

Տելեմաքեայ քաջ պատանւոյն ըղձքս լու-
տանսդ մերկացայց ,
Նա տատ ըղձքեզ արագ արագ յօշատեսցէ
'ի յանդամս " :
Զայս Ոդիւսէս . և հասարակ տարատոփե-
ցաւ կանանցն .
Ծունկքն 'ի ներքոյ լուծան նոցա , ահա-
բեկեալք խուճապին .
Համարեցան իբրև ըստոյգ ըղձատ բանին
զոր ասաց ,
Բայց Ոդիւսէս չոքաւ յառաջ առ կրա-
կարանս մերձ եկաց .
Կայր արծարծէր , և անքըթթիթ շուրջ
ակնարկէր յայն տեսան .
Եւ 'ի խորհուրդսն յուզէր այրունս , որ և
չեղեն անվախճան :
Բայց Աթենաս ոչ հանդուրժէր նախա-
տանաց դուլ առնել ,
Զի Ոդիւսէս զատ քան ըղձատ բորբո-
քեսցի 'ի սրտնել .
Նախ առաջին Եւրիմաքոս բանն սպառնա-
քար արձակեաց ,
Եւ զՈդիւսէս 'ի հենգն արկեալ եռ ծի-
ծաղել հոմանեաց .
« Արդ ունկըն դիք , զոր ես ասեմ ձեզ ,
տարփածուք դշխոյին ,
Այս հիւր մուրիկ տատ առանց դից ոչ
եկն 'ի տուն Ոդիսին .

Բամբէ, զխամբոզ ինքն և գըլուխն խորև ըղձ-
ջահ ջինջ փայլի.
Ջինջ է համակ. զի և 'ի նմա 'ւ ոչ արատա-
մազ երևի ":
Զայս ինչ հետզհետայ. ապա ցՈդիս բան
հարցանէր անարգու.
« Անսա ինձ, հիւր. կամիս լինել ինձ 'ի
մըշակ 'ի վարձու.
Յիմ ագարակն յըղեմ ըղքեզ, նաև շատ
ինչ վարձ տամ քեզ.
Անդ քաղեսցես դու փուշ ցանգոցս և
ծառըս յաղթ անկեսցես.
Եւ ես պարէն օրապահիկ քեզ համա-
պազ առաքեմ,
Տամ և կօշիկ ոտիցդ քոց, և ձորձ ըզքև
արկանեմ:
Այլ վա՜շ, դու կեանըս պարապորդս ու-
սեալ ես միշտ 'ի վարել,
Եւ ոչ կամիս ըղհաց զաւուրն աշխատու-
թեամբ ճաշակել.
Սիրես 'ի մոյր զորհանապազ յառնել
շրջել ընդ քաղաք,
Դատարկ անգործ 'ի բուծանել զայդ
որովայն քո զանյագ ":
Ուշիմն յայնժամ ձայն ետ Ոդիս, " Թէ
մեզ 'ի վէճ, Եւրիմաք,
Մըշակութեան կայր 'ի դաշտի 'ի գար-
նայնոյն յեղանակ,

Յորժամ ատուրք երկայնաձիգ են մըշակաց սիրելի,
Եւ ինձ յայժամ էր 'ի ձեռին սուր քաջաթեք գերանդի,
Նոյնպէս և քեզ. և ծոմք երկուքս 'ի խոտաւէտ 'ի դաշտի
Փորձ փորձէաք հնձել կոտրել մինչև 'ի մութ գիշերի,
Կամ թէ հարկիք էին եղանց մեզ 'ի վարել, յաղթ եզինք,
Խարտեաշք կարմիր, և համաղօրք, և կշտապինդք, համատիք,
Եւ յարօրել էր առաջի չորս արտավար կոչտաբեր.
Տեսանէիր, զի՞նչ յիմ ձեռաց յայնժամ ակօս պատառէր.
Կամ թէ այսօր մեզ յանկարծոյն գումարտ դրդէր Զրուանեանն,
Եւ տէգ կրկին էր յիմ բըռին, նաև տայր ոք ինձ վահան,
Եւ արգընձի համակ 'ի քունս իմ դընէին սաղաւարտ,
Տեսանէիր դու զիս յայնժամ քաջ նահատակ առ 'ի մարտ.
Ոչ պարսէիր նախատանօք զիս պորտաբոյծ զերթ մուրիկ.
Բայց սիրտ է քո անագորոյն, և այր ես դու եղջերիկ.

Իսկ թէ այժմիկ դու այր լուսոյ և այր
հզօր երևիս,
Քանզի արանց դու սակաւուց և անա-
րեաց կենակցիս:
Բայց երբ դայցէ քաղէն Ոդիսէս առ 'ի
տուն իւր հայրենին,
Այս դուռքդ յայնժամ, թէպէտ և լայնք,
քեզ կարի յոյժ անձկասցին.
Յորժամ արտաքս ընդ այս դրանդիս
խուճապեսցիս տագնապաւ ».
Այն ինչ լուաւ Եւրիմաքոս իբրև ըզհուր
վառեցաւ:
Տեղւոջ անչաց ընդ Ոդիւսէս ձայն զայրա-
գին արձակեաց.
« Հէգ, ով չուառ. անշուշտ այսօր ես
քեզ չարաւ դիպեցայց.
Զի՞ դու այդչափ առատ յառաջագաց բան-
դագուշես յատենի,
Եւ անվեհեր մեզ ըզբանս իբր աներկիւղ
'ի սրտի.
Անչափ գինիդ զակամբդ անշուշտ եկեալ
է արդ չարաչար,
Եւ կամ թէ ցանդ արբեալ ես դու, զի
կարկաչես վայրապար.
Զի՞ շըփացեր, իբր Իրոսին թէ դու զը-
տար յաղթական ».
Ասաց անդէն ըշտապեցաւ, առ և կալաւ
պատուանդան.

Իսկոյն Ոդիսեւս եւ կծկեցաւ անդ առ-
ծնգովք բազմելոյն .

Էր սա քաջն այն Ամփինոմոս , այր խոր-
հրդովք բարեբուն :

Եւրիմաքոս ըզմատռուակն եհար յաջոյ
'ի ձեռինն

Եւ ըսկահակըն շառաչմամբ վայրհոսե-
ցաւ 'ի գետինն .

Վայ կարդաց այրն անդէն ապալաստ առ-
բածեցաւ 'ի յորսայս ,

Եւ խռովեցան ընդ մութ ընդ յարկն այն
բազմամբոխն հոմանեաց :

Այր ընդ ընկեր իւր հայեցեալ զնայս բար-
բառէր զայրագին .

« Ո՛ այր եթէ հեղդ այդ մուրիկ էր
մեռան եղեալ օրհասին ,

Մինչչև գայր սա երևեալ 'ի մեր կո-
չունս 'ի չար ժամ ,

Եւ մեզ չէր արդ այս դըժպըհի յուզեալ
աղմուկ դառնութեան .

Արդ պայքարմամբ մեք ըղձութէ , մեք արք
աւագք հոմանիք .

Եւ զինչ վայելք իցեն կոչնոց , յորժամ
յաղթող են յոռիք » :

Յարեաւ անդուստ Տելեմաքոս ձայն ար-
ձակեաց ախրարար .

« Անշուշտ , ով արք , ձեր խոլացեալ են
միտք ողջոյն և համեմար .

Ձեզ առաջիմէ՞ ո՛չ քաղցրանայ արդ ոչ խոր-
 տիկ, ոչ գինի.

Անշուշտ ուրեմն խելթ լինքն աստուած
 յուզեալ է ձեր ակըմբի.

Եւ արդ կերեալք, դուք 'ի ձեր տան գնա-
 ցէ՛ք առէք քուն ամոք,

Ցորժամ և կամք ձեր լինիցին. քանզի վա-
 րեմ և ոչ զոք":

Լուան ըղձայնն. մղձկեալք 'ի սիրտ ափ 'ի
 բերան համրացան.

Յապուշ հարան, զի Տելեմաք ձայն ար-
 ձակեաց իբր իշխան:

Բայց խորհուրդ քաջ Ամփինոմոս կար-
 ղաց յայնժամ յատենի

Վեհն այն զաւակըն Նիսոսի Արետոսեան
 արքայի.

"Իսկ ո՞վ իցէ, ո՞ բարեկամք, որ խոչ ընդ-
 դէմ կարդեսցէ

Ի վէգ ելեալ քաջ խորհրդոյ, և կամ
 լուտանս ժայթքեսցէ.

Ա՛զէ, ոչ հիւր և ո՛չ մուրիկ և ոչ ծառայ
 գրձձեսցի,

Որ միանգամ աստ օթանան 'ի տան մե-
 ծին Ոդիսի:

Այլ ո՞ն առեալ արդ մատըռուակըն բա-
 ժակաց կարգ տացէ,

Եւ նուիրեալ այր այր 'ի մէնջ գնացեալ
 'ի տուն նինջ առցէ.

Մեք աստ ըղձիւրն Թողցուք, նըմա խը-
նամ ածցէ Տէլէմաք,

Զի, հիւր չըքաւ այդ ծերունիդ աստ
յՈդիսեան 'ի մարզակ »:

Ձեռըն ետուն հաւանութեան. և զխառ-
նարանն Մուլիոս

Խառնեաց նոցա այրն հօյակապ Դու-
լիքոսեանըն քարոզ.

Էր ժիրաժիր սա պաշտօնեայ Ամփինո-
մեայ իշխանին,

Որ կարգ առեալ շուրջանակի մատը-
ռուակէր ակըմբին.

Հանին նուէր, և 'ի գինւոյն առին բա-
ժակ քաղցրութեան.

Յարեան չըքան առնուլ ըզնինջ այր այր
յանցնիւր օթեվան:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Յետ մեկնելոյ հոմանեացն 'ի տանէ խնճոյիցն, Ոդիս և Տելեմաք փոխադրեն զզէնսն 'ի վերին դստիկոնս ։ Տելեմաք դնայ 'ի ննջել. Պենելոպէ իջանէ 'ի վերնայարկէն իւրմէ խօսել ընդ Ոդիւսեայ միայնացելոյ ։ Ոդիւսևս կեղծէ նմա պատմութիւն մի, և 'ի գերարտօսր հատանէ զպշխոյն ։ Դայեակն Ոդիւսեայ հինօրեայն աւսարդ Եւրիկլէ Ճանաչէ զՈդիս 'ի սպեացն՝ 'ի ժամու լուանալոյն զնա. և խստիւ արգելանի յՈդիսեայ մի 'ի վեր հանել ։ Պենելոպէ պատմէ զերազն իւր, և զհնարս վտանգաւոր դաշին իւրոյ ընդ հոմանեացն 'ի հարսնախօսութիւն. և ձեռն հաւանութեան տայ այնմ Ոդիւսևս ։



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԺԹ.

Մ՛ԸՆԱՑ անդէն Ոդիւս միայն, և ժողո-
վոյն հոմանեաց
խոկայր ըզմահն, և հովանի ունէր անձին
զԱթենաս.
Բարբառ կարդաց որդւոյն իւրոյ. « Տե-
լեմաքէ, ժամ է արդ
Բառնալ ողջոյն 'ի տաճարէս զպարեա-
կանն զէն և զարդ.
Թէ հոմանիք զայն խնդրեսցեն, աղու-
բանիւք դու ասա,
Բարձի ըզզէնսն և պահեցի, և 'ի ծըխոյն
զգուշացայ.

Զի խանձահոտն հրոյն ըղձենան ողջ
 մրճոտեաց սաստկապէս ,
Եւ չէն նշմանք յորժամ 'ի չուն եԹող
 աստ զայնս Ոդիսեւս ։
Առ այս և ինձ խորհուրդ մի քաջ հարկ
 աստուած 'ի սրտի ,
Զի մի 'ի ձեզ , երբ գինեաջիք , կագ դառ-
 նուԹեան յուզեսցի ·
Դուք այր զընկեր վիրաւորեալ , և հար-
 սանեաց սեղանոյ
Խըռովհարջիք · քանզի երկաԹ չար հրա-
 պուրիչ է մարդոյ ” ։
Լուաւ ըղխրատըն Տելեմաք , և հնա-
 զանդեալ ծընողին ,
Զայն փուԹապէս բարբառեցաւ Եւրիկ-
 լեայ դայեկին ·
“ Ած , մայրիկ , ըղկանանին 'ի ներքս 'ի
 յարկս արգելցես ,
Մինչև ես հօրս 'ի յառագաստ զետեղեցից
 ըղպերճ զէնս ։
Հայրն իմ չուեաց , և անխընամ Թողան
 աստ զէնքն և անշուք ,
Մրճոտեցան զէնքն 'ի ծըխոյն · զի ես էի
 դեռ մանուկ ·
Եւ արդ եդից 'ի պահեստի , և խանձ հը-
 րոյն ոչ դրժէ ” ·
Կրկնեաց անդէն Տելեմաքեայ սիրուն
 դայեակն Եւրիկլէ ·

«Լե՛ր բարգաւաճ որդեակ սիրուն, և յաւ-ելցի քեզ հանճար.
Լիցիս դու տան քում պահապան և կա-րասւոյդ հոգատար.
Աւս՝ վլեսցի քեզ ճրագակիր և գործա-կից այդ գործոյ,
Չի՛ ոչ ներես եթէ նաժիշտք քեզ լոյս տացեն յառաջոյ»:
Կրկնեաց առ նա Տելեմաքոս. «Ինձ դա-այդ հիւրդ ընկերէ,
Քանզի անդործ ես ոչ թողում զայր որ ըզ հացն իմ ուտէ,
Թէպէտ և այր է եկաւոր դա յաշխարհէ բացական».
Նա զայս ասաց, և փութապէս բանքն 'ի յարդիւնս փոխեցան:
Սաղեաց դայեակն, արդէն փակեաց պնդեալ ըզդուրս կանանւոյն,
Եւ Ոդիւսէս յարեաւ. եկաց գօտէպըն-դեալ ընդ որդւոյն.
Ըզսաղաւարտս բառնային և զկմբաւո-րըն զասպար,
Ըզսուր աշտեայս. և Աթենաս անդ յա-ռաջոյ ընթանայր,
Լոյս իմն հորդէր արփիահրաշ, ճրագն ոսկի 'ի ձեռին,
Ըսքանչացաւ Տելեմաքոս, ձայն արձա-կեաց ծընողին.

«Զի՞նչ տեսանեմ ես, ով հայր իմ. և զի՞նչ այս մեծ սքանչելիք,
Զի լինձ որմունք մեր տաճարիս և մեհենատունք գեղեցիկ,
Նաև մարգակք մեր եղևինք և այս սիւնք մեր օդապար
Փայլատակեն աչացս խմոց իբրև ըղհաւր բոցավառ.
Անշուշտ, ով հայր, աստ մուտ 'ի ներքս յերկնաձեմից ումն աստուած».
«Կա՛ց դու լռիկ. Ոգիս անդէն զորդւոյն ըղձայնըն կարճեաց.
Կապեա՛ յուշիկ զօր արդ տեսեր. և մի այլ ինձ դու հարցցես.
Այս աստուածոցն երկնաձեմից բայս է բարուցն և հանդէս.
Բայց դու արդ՛ երթ 'ի ննջել. և ես մնամ 'ի յարկին,
Լռեա քաջիկ կալ նաժշտաց, կալ և մօր քո 'ի գլխին.
Ոչքս 'ի բերան առեալ անշուշտ սա մի առ մի ինձ հարցցէ».
Ասաց Ոգիս և Տելեմաք եւ մեկնեցաւ 'ի յարկէ:
Ի լոյս ջահիցըն լուցելոց եմուտ ննջել 'ի սենեակ,
Յորում և միշտն ընկողմանէր ըզքունն առնուլ անուշակ.

Ա՛նդ հանգարտեալ մընայր պահածն արե-
գական լուսաբեր ,
Մինչդեռ Ոդիւս ընդ Պալլասայ միահ հո-
մանեացըն նիւթէր ։
Գնայր եղանէր Պենելոպէ զիւրըն թո-
ղեալ սրսկապան ,
Զծրատեմիսեայն բերեալ ըղտափ և փղո-
սկեղէնն Ասողըղկան ։
Նըմա ըղդահն իւր 'սեպհական զետեղե-
ցին առ հըրոյն ․
Էր 'ի փըղոսկր էր և յարծաթ այն գահ
նորա զարդարուն ․
Զայն Իկմալոս հիւսնեաց նըման ճարտար-
արուեստն անձըման
Եւ անդաստին 'ի գահոյիցն եդ և ոտից պա-
տուանդան ․
Մորթ պատուական 'ի ձեռս առեալ
զայն 'ի վերայ սփռեցին ,
Եւ բազմեցաւ դշխոյն ուշիմ Պենելոպէն
խնկելին ։
Եկին նաժիշտքըն առ 'ի յարկէն , ընդնշխա-
րեալըն բառնան հաց ,
Բառնան զսեղանս և ըզ բաժակս ըզգինե-
լոցն հոմանեաց ․
Ի կայծականցն առկայծելոց ըզ կրակա-
րանս մաքրեցին ,
Եւ կուտեցին այլ փայտակոյտ լոյս և ըզ-
ջեր տալ յարկին ։

Բայց զՈդիսէս Մելանթիա առ միւսան-
գամ և զզուէր.
«Մեզ մի տաղտուկ, դու ով հիւր ծեր,
լեցնե՞ս դարձեալ զայս գիշեր.
Ջի՞ քեզ յածել աստ 'ի յարկիս. մի
թէ կանայս լրտեսես.
Ե՛լ արտաքս, ո՛վ չուառական. ո՞չ, զոր
կերար, շատ է քեզ.
Ապա, կամ թէ այդ խանձողիւդ հարկեալ
արտաքս վարեսցիս».
Ի նմա խոժոռ ակնարկելով, ձայն զայս ու-
շիմն ետ Ոդիս,
«Անի՛նչ այդպէս, դու լրբենիդ, մի
յարձակիս զայրագին.
Ջի չեմ պայծառ, և գըրդըլեանկս այս հը-
նոտի է ձորձն իմ.
Եւ զի մուրամ ես ընդ քաղաքս բռնադա-
տեալ 'ի քաղցոյն,
Համանմանեցալ սինլքորաց մուրիկ նըժ-
դեհ որերոյն.
Բայց էր երբեմն, ու ես երջանիկ 'ի տուն
պայծառ բնակէի
Եւ ողջ մուրկաց և աղքատաց ես ձիր ա-
ռատ ջամբէի.
Ամբաւ յայնժամ էր կարասիս, ծառայքս
էին բազմերամ,
Որովք 'ի կեանս պերճ բարեկեացք և աղք
ընչեղք պերճանան.

Մերկեաց գըձձեաց զիս Արամազդ, և ինք
գիտէ ըզպատճառ.
Երկի՜ր ո՛վ կին զի մի՛ և դու թշուառասցիս
մինչ իսպառ.
Մի՛ ՚ի պայծառ ՚ի քո գեղոյն կողոպտես-
ցիս դու ողջոյն,
Որով զարդիս ճոխացեալ ես ՚ի նաժշտաց
՚ի դասուն.
Կամ թէ դուցէ մի քեզ չարաւ զայրագ-
նեսցի և տիկինն,
Եւ կամ դարձցի քաջն Ողիսէս. քանզի
դոյ դեռ յոյս դարձին.
Այ՛ եթէ նա կորեաւ անդարձ, մահուն
եղեալ նըշաւակ,
Բայց արդ շնորհօք Ապողոնին յարբուն
եհաս Տելեմաք.
Ուշիմ է նա. կին ոք ՚ի տան թէ գործես-
ցէ ինչ մի չար,
Ոչ ծածկեսցի առ ՚ի նմանէ, զի չէ տիօք
անկատար ”:

Պեննելոպէն լուաւ ողջոյն զոր ինչ ասէր
Ողիսէս.
Անդէն դարձաւ նա ՚ի նաժիշտն և ընդ-
հարաւ սաստկապէս.
“ Այ՜ կին յանդուգն, ա՜յ դու լիրբ շուն,
և անպատկառ ՚ի լեզուի.
Ըզժպիրհութիւնդ գիտեմ ըզքո. զլուխ
քո զայն տուժեսցի.

Գիտէիր քաջ, եթէ կամիմ ես 'ի հիւրոյդ յայդմանէ
Ես թախծագին բան հարցանել զնորին թշուառ փեսայէ »։
Ասաց տիկինն, անդէն և ձայն առ կին տնօրէն արձակեաց.
« Եւրինոմէ, ա՛ծ մեզ աթոռ, և 'ի վերայ մորթ սփռեա՛ց.
Հիւր ծերունիդ նստեալ առիս բարբառեսցի անարգել,
Լուիցէ յինէն և կրկնեսցէ. շատ ինչ կամիմ հարցանել ».
Վազեաց արագ, բերեալ զաթոռն և յարդարուն մորթ սփռեաց.
Նստաւ անդէն համբերատարըն Ոդիւսևս վշտազդեաց:
Եւ առ յայնժամ 'ի հարցանել Պենելոպէն քաջուշիմ.
« Ա՛ղէ, ո՛ հիւր, ասա՛ ինձ դու, զոր հարցանեմ առաջին.
Ո՞ւր է քաղաքդ, ո՞ւր են ծընողքդ, և ուստի՞ ես, և ո՞ ես ».
Ի լուր հարցմանն այր պատասխան ետ խորագէտն Ոդիսևս.
« Անշուշտ, ով կին, քեզ բիծ գըտնել ո՞ ժըտեսցի յերկրածնաց.
Քանզի մինչև յերկին անդորր է համբաւ քոյին շուք փառաց.

Որպէս ուրուք աստուածանման Թագա-
ւորական արքայի ,
Որ ամբոխիցն քաղաքաց միշտ իրաւունս
խօսեսցի ,
Նորմա երկիրըն բուսուսցէ զառատ ցո-
րեանն , ըզգարին ,
Եւ ակաղձուն տունկք մրգաբերք և ծառք
պտղովք ծանրասցին ,
Հօտք խայտասցեն և ոչխարաց , լեալք
անսըխալք 'ի ծընունդս ,
Եւ ծով նորմա ընծայեսցէ կայտառս բա-
զումս և ձըկունս .
Քանզի վարիչ իմաստութեամբ 'ի ձեռն
ունի գաւազան ,
Եւ ընդ նովաւ ազգք ժողովրդք երջան-
կութեամբ յօրանան :
Եւ արդ դու ինձ ասա 'ի քում տան հարց-
ցես ո՛չ ինչ զոր կամիս ,
Բայց ինձ զազգն իմ մի հարցաներ , մի
ինձ և զիմ հայրենիս .
Յաւ 'ի ցաւս իմ բարդես կուտես զայն
բերելով ինձ 'ի յուշ ,
Զի այր եմ ես տարաշխարհիկ և վշտա-
տես կարի յոյժ .
Չէ ինձ արժան 'ի տուն օտար զիմն աշ-
խարել երաշխեալ ,
Քանզի ողբալ անխտրաբար ուր և իցէ ,
չէ 'ի դէպ .

Զի թէ դու ոչ, սակայն դուցէ ոք նա-
    ժշտացդ 'ի դասուն
Համարեսցի զիմ արտասուսն հեղուլ 'ի
    շատ 'ի գինւոյն »։
Պատասխանի զայս ինչ յայնժամ ետ
    հանճարեղ Թագուհին.
« Անսա՛, ով հեր. զարդիս զիմ փառս
    աստուածքն անմահ կապտեցին,
Ոչ շուք, ոչ գեղ մնաց ինձ արդ, յոր-
    ժամ նաւեաց յԵղիոն
Իմն Ոդիսեւս ընդ հելլենաց անդր 'ի մար-
    տին 'ի պաշտօն.
Թէ սա դառնայր ինձ խնամածու այն
    բազմիմաստն իմ փեսայն,
Ո՜վ, հռչակեայր իմ շուքն յայնժամ, 'ի
    նոյն և փառքն իմոյ տան.
Բայց ես զարդիս թախծագին եմ, քան-
    զի դժնեաց զիս աստուած.
Նաև ողջոյն նեղեալ եմ ես յաւագանւոյն
    մեր կղզեաց.
Զի 'ի Դուլիք, և 'ի Սամոս, և յանտա-
    ռուտ Զակինթէ,
Որչափ աւագք կան անդանօր, 'ի նոյն և
    աստ յԻթակէ,
Են ինձ նոքա ողջ տարփածուք. թէպէտ
    և ես կամ ընդդէմ,
Ոչինչ անսան. և ցանգ խռնեալք. տան
    զարքունիս իմ ծախեն ։

Ես ոչ յողղք ինձ անկելոց եմ ինչ զարդիս պխտեան,
Եւ ոչ հիւրաց, և ոչ տրանց՝ այն որ Քարոզքն են մարդկան.
Ոդիւսեսին եմ անձկայրեաց և 'ի սիրտ իմ հիւծեալ եմ.
Բուռն հարսանեաց առնեն նոքա, բայց ես նոցա նենգ լարեմ.
Ինչ մի՛ 'ի միտս էարկ աստուած, ինձ անկանել մեծ ոստայն,
Ոստայն բարակ. և հոմանեաց ձայն մի ապա զայս կարդամ.
Լուարուք ինձ զայս, ո՜ տարփածուք. անշուշտ մեռեալ է Ոդիս.
Բուռն ինձ ապա դուք մի՛ առնէք, և մի՛ ծեպէք հարսանիս.
Ժուժկալեցէք մինչև լըրումն ես տաց մեծի պատանին,
Զի մի՛ նանիր Թելք առիչոյն ինձ վատնեսցին ոստայնին.
Ես արդ մարմնոյն ծեր Լայերտեայ ձորձ 'ի պատան զայն հենում,
Յորժամ դիւցազն այն զանյարիր քուն ննջեսցէ ըզմահուն.
Զի մի Թերևս ոք հեգնեսցէ զիս 'ի Յունաց բամբըշաց,
Թէ անպատան ահա Թաղեալ կայ ծերունին բազմագանձն.

Եւ իմ ծընողք ինձ յորդորակ տան հարսանեաց հանդիսին ,

Իսկ և որդիս յոյժ է սրտմնեալ , զի ողջ գոյք մեր ըսպառին .

Քաղցրուշիմ է , գեղեցկապէս է խնամակալ իւրում տան ,

Որում և Ջևալըն հովանի արդ շուք յորդէ յարաժամ :

Բայց դու ուսած՞ ես , ծերունիդ , ա՛սէ սա ինձ զայդ քո ,

Զի չես անշուշտ դու 'ի քարէ , ոչ հնախօսեալ 'ի կաղնւոյ " 76 :

“ Ո՛վ կին արդոյ մեծն Ոդիսեայ , դու տակաւին ո՞չ կասիս

Զազգէն իմմէ ինձ հարցանել , ձայն քաջ ուշիմն եւ Ոդիս .

Բայց հանձնեցից ըզքեզ , տիկին . Թէպէտ և ինձ ցաւ բարդես .

Զի եմ իսկ ես այր բազմամեայ տարագիմեալ 'ի յերկրէս .

Այր Թափառեալ ընդ շատ քաղաքս և վշտակիր անսաւաղ .

Այր դք անշուշտ յոյժ ցաւեսցի այր ինձ եղեալն հանդուձակ .

Համայն այնպէս յանձնառութեամբ քեզ հետախոյզ դշխոյի

Հանդերձեցայց զիմոյ ազգէն բան ճառել կարգ ըստ կարգի :

Լայնատարածանն երկիր Կրետէ կայ 'ի
ծովուն կապուտակ,
Ճէն, գեղեցիկ, և արգաւանդ, ողջոյն
յալեաց շրջափակ.
Բազմամարդ և մարդաշատ, են անդ
քաղաքք իննըսուն.
Այլազգաձայն և բազմադէմ է անդ բար-
բառն և լեզուն.
Զի են անդէն Աքայեցիք և բնակասուն
Կրետացիք,
Նաև Կիդոնք, և Պեղազգեանք, և եռա-
բաշխք Տորեցիք 77.
Կնոսսոս անուն է քաղաք մեծ, ուր և
Մինովս Թագ. կալեաց,
Եւ իննամեայ էր նա Զևսայ կենցաղակից
խորադգաց.
Նա հայր եկաց իմոյն քաջ հօր Տեւկալիոն
դիւցազին.
Եկաց ծընող Տեւկալիոն ինձ 'ւ Իդոմենի
արքային.
Սա եւ չուեաց 'ի Տրոյիա ընդ քաջազանց
Ատրեսեանց.
Ես եմ կրսեր Եթոն անուն, նա էր
աւագն և այր քաջ.
Անդ ես ինքնին տեսի զՈդիս և ձիրս
ետու ես հիւրոյն,
Քանզի ըզնա 'ի մեր Կրետէն մերձեցաց
հողմոյն բռնութիւն։

Եղեալ զինայր նա յԵղիոն, և վարեցաւ 'ի Մալեայ,
Մինչև եկեալ հաս յԱմնիսոս, ուր է քարայր Իլիթեայ.
Այս քարանձաւ անգ 'ի դադարըս դըժուարինս էր նաւաց,
Եւ Ողիսսէս հազիւ և հազ ճողոպրեցաւ 'ի յալեաց:
Այն ինչ եմուտ նա 'ի քաղաքն, և զԻդոմէն հարցանէր.
Քանզի ըզնա իւր սիրելի և հիւր արգոյ ճանաչէր:
Սակայն յայնժամ քաջ տասներորդ կամ մետասանին այգ ծագեաց,
Յորժամ արդէն նա յԵղիոն չուեալ իսկ էր նաւագնաց.
Բայց զՈդիսսէս ես հիւր առեալ ածի սիրով յիմ տաճար,
Եւ գրգեցի զնա յարդանօք, ըսպաս հարեալ ճոխաբար.
Ետու նըմա և համհարզից նորա պաշար 'ի յուղի
Մեր յոստանէն ալիւր առատ, ետու հրաշէկ և գինի.
Նաև յեզանց մեծ պատրուճակըս յաղեցի 'ի խրախճան,
Յորչափ հիւրքն իմ անդ արգելան առ իս աւուրս երկոտասան.

Քանզի ըղձուան հողմ հեւանին յայն-
ժամ Քաջ ոք ոխերիմ
Ցուրտ դիւաշունչ մրրկէր Թափով, և ոչ
Թողոյր կալ յոտին։
Այն ինչ ծագեաց երկոտասան մեզ
աստուստ լուսաբեր,
Հողմըն լռեաց. հիւղըն իմ եկին ծովա-
գնացիկք անմեհեր »։
Սուտ բազմադէմ յօդեաց Ոդիս, հիւ-
սեաց նմանս ճշմարտին,
Լուաւ տիկինն և արտասուօք ողջոյն [illegible]-
նայր ըղձարմինն.
Զոր օրինակ ձիւն տեղացեալ զեփիւռո-
սին 'ի շնչմանց,
Եւ յԵւրոսէն հարեալ հալեալ Թանայ
ըղծայրըս լերանց,
Իսկ 'ի յուղխիցըն հալելոց գետքըն յոր-
դեն դիզանեան,
Նոյնօրինակ այտք գեղեցիկքն 'ի յարտա-
սուս հալեցան։
Նստեալ և լայր անդ. կինըն զայրն՝ որ մերձ
առ իւր նստեալ էր,
Եւ զայն տեսեալ Ոդիսևսին աղէտ սիրոյն
տոչորէր.
Այլ անԹարԹափ աչքըն կացին իբրև
եղջիւր կամ երկաԹ.
Զի խորագէտն 'ի ներքս առեալ ծածկէր
զարտօսրն յորդառատ։

Մինչ յագեցաւ Պենելոպէ 'ի գերարտասուր 'ի կոծոյն,
Կրկնեաց անդրէն և առ 'ի փորձ նա հարցանէր ծերունւոյն.
« Եթէ անշուշտ ընդ համհարզիցն հիւր դու առեր զՈդիւսէս,
Կամիմ փորձել, ով ծերունիդ, արդ ըզքանիցըդ հանդէս.
Ասէ, ասա, զի՞նչ էր զգեստուն նորա յայնժամ հանդերձանք,
Նաև նորայն և ընկերացն որպիսի՞ ինչ հանգամանք »:
Ձայն խորագէտն ետ անդրադարձ,
« Բա՛րդ է ով կին, զիա՞րդ ես
Ըզքսանամեայ ձաւ զանցելոցն ճշգըրտիւ պատմեմ քեզ.
Ամք են քսան, զի Ոդիսէս եւ մեկնեցաւ 'ի Կրետեայ.
Համայն այնպէս քեզ պատմեցից զոր միանգամ 'ի յուշ գայ.
Նորա խըլայն էր Թաւամազ և կրկնատակ ծիրանի,
Եւ ուղղաձիգ և կրկնակի ագոյ ճարմանդին էր ոսկի.
Ի յառաջոյ հրաշակերտեալ ասղնեգործեալ գոյր զիմակ,
Եւ զորթ եղջն կալեալ ունէր անդ բարակ մի քաջորսակ.

Սա սնդապակես երեսովք լուսովք զորթըն
    ունէր խայտաբղէտ,
Զահեղ ժանխան արձակելով որոյն գո-
    ղայր ահափետ.
Տիպ դիմակին յոյժ հիացքանչ տեսանո-
    ղացն երևէր,
Զի էր յուսկւոյ համակ գործածն, այլ
    ճշգրտիւ տիպ բերէր.
Բարակն որթուն խեղդ արկանէր արձա-
    կելով ըղժանիս,
Որթըն ճգնէր առ 'ի փախուստ 'ի գող-
    գոջուն իւր յոտից:
Տեսի զարձեալ, բաճկոն զիւրև արկեալ
    էր նա լուսազգեաց,
Եւ հանդուանակ էր այն սոխոյն չոր և
    ցամաք մըզանաց,
Այնչափ էր դիրդ և յոյժ քնքուշ և փայ-
    լակէր իբր արև,
Զի և բազումք'ի կանանւոյն հրաշանայքն
    ակներև:
Ջանիմ ասել, եթէ 'ի տան այն էր հան-
    դերձն Ոդիսեայ,
Եթէ արդեօք ըզ համհարզէցն յարշաւա-
    նին ետ նըմա,
Կամ թէ ուրեք ոք'ի հիւրոցն. զի Ոդիսևս
    էր սիրուն,
Եւ վեհ էր նա 'ի մէջ բազմաց յԱքայե-
    ցւոց 'ի դասուն:

Ես ձորձ կրկին Ոգխուսեսեայ եառ չըք-
նաղ, ծիրանի,
Եւ պատմուճան մի պճղնաւոր, և սուսեր
մի պըղընձի.
Շըքով ըզնա մեծարեցի մինչև 'ի նաւն
իւր արագ.
Էր ընդ նըմա և այր Քարոզ, էր այր ալիւք
խուռն աւագ.
Ասացից քեզ և զհանդամանս ըզՔարո-
զին զոր ունէր.
Այր էր նա կոր և Թիկնաւէտ, և Թըխա-
մորթ, գանգրահեր,
Եւրիքատէս անուն նորա. և էր յարգոյ
Ոգխուսեայ,
Զի առաւել քան ըզհամհարզսն էր հա-
մախոհ ընդ նըմա ”։

Լըռեաց Ոգխս. 'ի լուր բանիցն Պենե-
լոպեայ կոծն յորդէր.
Քանզի ծանեաւ նա ըզնըշանս, զոր Ոգխու-
սէս ճշգրտէր։
Իբրև յագուրդ էառ դշխոյն 'ի բազմա-
կոծն արտասուաց,
Զայս փոխարէն հիւր ծերունւոյն ձայն
շըքադիր արձակեաց.
“ Ցարդ դու, ով հիւր, 'ի տան իմում
իբր հիքացեալ այր մուրիկ,
Սակայն զարդիս շուք մըտերիմ առցես 'ի
մէնջ գեղեցիկ.

Այդ պատմուճանք, զոր տեսցեր, 'ի
 սրսկապանին իմ կայծին,
կայծն ծաւալեալ և ես առեալ ետու՝ խնում
 փեսային .
Ի զարդ նըմա յերիւրեցի ես ըղձարմանդն
 լուսալիր .
Այլ եղուկ եմ, զի գալատեան մընաս
 նորա 'ի նանիր .
Աւա՜ղ, զՈդիսն իմ միւսանգամ չառեց
 ես յիմ սրսկապան .
Ոչ այլ դարձցի դիւցազն արքայն 'ի տուն
 յերկիր հայրենեան .
Զիա՞րդ չոքաւ նա յԻղիոն, զիա՞րդ անկաւ
 անդ տապաստ .
Ո՜վ անանուն, անուն նըշմեալ, ո՛վ չԻ-
 ղիոն չարաբաստ »:
Արգահատեաց, և քաջալեր յայնժամ
 Ոդիս տայր նըմա ,
« Մի՛ դու ըղձեր, մի՛ հիւծեսցես, ո՛վ կին
 արդոյ Ոդիւսեայ .
Փափուկ մարմնոյդ մի՛ դըժնեսցես քոյն
 փեսային անձկանօք .
Քա՜ւ, չայպանեմ ըղձումն սրտին, զոր
 ցուցանես արտասուօք .
Այո՛, ողբայ կին ամենայն, որ որբացեալ
 է յառնէն
Որում նա կոյս 'ի հարսն անձաւ և ետ
 պըտուղ յարգանդէն .

Ա՛րդ քանզի՞ս և զՈդիսևս, զոր այր դիւ-
ցազն համբաւեն.
Բայց դու զարդիս ձեմ դիր լալեացդ, և
քաջ միտ դիր զոր ասեմ։
Անտուտ անխաբ է պատմութիւնս. կեայ
Ոդիսևս տակաւին.
Զայս ես խնդիրն 'ի Թեսպրոտեանց լուայ
հարուստ 'ի յազգին.
Ինքն դարձցի ստացուածովք գանձ ժո-
ղովեալ բազում յոյժ,
Սակայն զընկերսն ողջոյն կորոյս և նաւն
եղև ծովասոյզ.
Յորժամ ծովեալ նա ընդ մրկանսն գայր
'ի կղզւոյն Թրինակեայ,
Ծովքն փլուզեալ 'ի յանդնդոց ողջոյն ե-
կուլ ըզնոսա.
Քանզի ցասեաւ վէհն Արամազդ, ցա-
սեաւ Արեգ գերարփին,
Քանզի զնորա ջոկ զանդէոց մորդեկն 'ի
սպանդ վարեցին 78.
Իսկ զՈդիսևս տաշտըն նաւուն եհան յա-
լեացն 'ի ցամաք,
Յերկիր Փեակեանց, որ աստուածոցըն մեր-
ձաւորք են զաւակք.
Սոքա նըմա իբր աստուծոյ շուքք և բա-
զում գանձ ետուն,
Պատրաստեցան 'ի յանդորրու յղել զՈ-
դիս ողջ 'ի տուն։

Էր իսկ Ովդիս 'ի վաղնջուց հասեալ ող-
ջամբ յիւր տաճար,
Այլ նա խնդրեաց զանձն ժողովել թա-
փառեալ ընդ աշխարհ։
Այր խորագէտ յոյժ 'ի մարդիկ ընդան-
չացաւ Ովդիսէս,
Եւ 'ի կերչիս ոչ գայր նորին մարդ համ-
ճարոյն 'ի հանդէս։
Ձայս ինձ Փիդոն պատմէր ոճով քես-
պրոտացւոց քաջ արքային.
Պատ. երդումն երդնոյր անսուտ նուէր
հանեալ յիւրումն տան,
Եթէ անդէն քարշեալ է նաւն, կազմ են
և իւր նաւաստիք,
Որ զՈդիսէս 'ի յանդորրու տարցեն յաշ-
խարհն իւր ողջին։
Սակայն Փիդոն զիս կանխագոյն յերկրէն
իւրմէ արձակեաց,
Զի 'ի Դուլիքն յայն հացաւէտ նաւ մի
գընայր Թեսպրոտեանց.
Բայց նա կանխեաց ցոյց ինձ ընդգանձըն
ամբարեալ յՈդիսէն,
Որ մինչև յազգ 'ի տասներորդ էր բաւա-
կան 'ի պարէն.
Նաև ասաց, թէ Ովդիսէս 'ի Դոդոնա
ուղղորդեաց,
Յամբարձուղէշ անդ 'ի կաղնւոյն գոլ 'ի
Ձևսայ խորհրդեաց.

Խորհուրդ առնուլ եթէ զիարդ ինքն 'ի
յաշխարհ իւր դարձցի,
Զի բազմամեայ տարապայսւ. արդեօք ծա-
ծուկ, թէ յայտնի:
Անշուշտ ուրեմն արդ ողջանդամ կեայ
Ոդիսէս, և գայցէ.
Քաջ, մերձ ընդ մերձ, և ոչ յերկար ինչ
դեգերեալ 'ի բացէ:
Առ այս ես քեզ նաև երդումն անսուտ
կրկնել պատրաստ եմ,
Եւ նախ ըզմեհեան զաստուածոց ըզԶևս
վըկայ ինձ կոչեմ.
Երկրորդ անգամ, ուր ես եկի, յարկ զՈ-
դիսեայ դիւցազին.
Եթէ ողջոյն զոր ասացի, անվրէպ 'ի գը-
լուխ յանգեսցին:
Անշուշտ յայս ամ գայցէ Ոդիս, լեր դու
'ի միտս հաստատուն.
Ի կատարել ամսոյս այսմիկ և կամ 'ի
մուտս 'ի նորոյն »:
Լուաւ ողջոյն Պենելոպէ և առ խնդին
ձայն եբարձ.
« Բարէ, ո՞ տայր արդիւնաւոր բանից
հիւրոյդ աւետեաց.
Յինէն յայնժամ ընդունէիր շատ ձիր և
սէր մըտերիմ,
Եւ երջանիկ նախանձելի առ ողջն ըզքեզ
կարդային.

Սակայն զոր ես ինքնին կարծեմ, որ և
լիցի ճշմարիտ,
Նաև Ոդիսեւս ոչ ևս դարձցէ գոլ յուղար-
կիչ նժդեհիդ։
Աւա՜ղ բախտին. տուն մեր այսօր կայ 'ի
վարչաց ամայի.
Ո՞ւր է Ոդիս, որ աստ նստէր. և արդ ե-
րազ ինձ թուի.
Եւ ո՞ւր արդեօք պանդխտանայ արդ
մեր դիւցազն հիւրասէր,
Որ ժողովեալ զարդոյ ըզ հիւրսն 'ի տուն
իւրեանց յուղարկէր։
Բայց արդ արի՛ք, ո՞ աղախնեայք, և զոտս
հիւրոյդ լուացէք.
Տո՛ւք և մահիճ, գորգ և խըլլայս, նաև վէր-
մակ ջինջ արկէք.
Ջի ջեռնուցու մեր ծերունին մինչ յար-
շալուրջն արևուն.
Եւ լուացէք և տո՛ւք օծումն հիւրոյն վաղ-
քաջ ընդ այգուն.
Բազմոց առեալ ինքն առ որդւոյս և ճաշ-
առցէ 'ի յարկին.
Իսկ թէ ծերոյն ոք դըժեսցէ, վա՜յ է այն-
միկ ծառային.
Մ՛եք առ յապայս գըտեսցուք ըզնա առ
արս ումպէտս անաւագ,
Թէպէտ և յոյժ ընդ անարգանս խոժո-
ռեսցի դժկամակ։

Բայց դու զարդիս դիտեսցես, հէր, թէ
իցե՞մ ինչ վեհագոյն
Եւ ՚ի խորհուրդըս քաջութեան ՚ի դաս
այլոց կանանւոյն.
Ջի Ճաշ առ մեզ առնուս ՚ի տան դու
բրդդրղեալըդ մուրիկ.
Բայց ես դիտեմ, զի ծաղկընկէցք և կար-
Ճակեացք են մարդիկ.
Որ ոք ՚ի բնէ է անձնուէր, և որ խորհի
զանձնուէրս,
Նա ըղձմարդկան առնու զանէծս անշուշտ
անձին իւր ՚ի վէրս.
Ի կեանս նորա արանցն ընդ նա և ՚ի թի-
կանց չար մաղթեն,
Իսկ ՚ի մահուն տանհար եղեալ, յոյժ
դառնապէս բամբասեն:
Այլ որ ՚ի բնէ ինքն է բարի և որ խորհի
ըղբարիս,
Նա ՚ի հիւրոցն իւր ժողովէ զիւրոց բա-
րեաց զարգասիս.
Ջի յընդհանուրս առեալ տանին հիւրքն
ըղնորայն ըղպարծանս,
Եւ շուք և փառքն յորդեն նորա ՚ի բե-
րանոց ՚ի բերանս”:

Վասն կրկնեաց ուշիմն Որդիս. “Լո՛ւր
ինձ, ախկին Որդիսի.
Ես խըլըայից և վերմակաց երես երբէք
չարարի,

Յորժամ Թողեալ ընկերակցուաց կուսոյն
    դեղձենիս ձիւնեդէն,
Նաւապահանջիկ ընդ ծովըն մեծ չաւ անձնէի
    տարաղէմ։
Ընկողմնեցայց որպէս և միշտն 'ի տա-
    ռապանս իմ ուղղոյն.
Ո՜վ, քանի՜ցն յայնժամ գիշերս անցու-
    ցեալ եմ ես անքուն.
Զի ընկողմնեալ բազում անգամ'ի գար-
    շահոտ 'ի մահիճ,
Մնայի անձնիրհ ես այգածինն արեգական
    նըշուլից։
Նաև չէ ինձ լուացումն ասից ընաւին
    երբէք սիրելի,
Եւ չառնում յանձն, յայդ նաժշտացդ
    մի որ յոտս իմ մերձեցի.
Բայց թէ լուացումն է կին ասաւրդ և կին
    համեստ հինաւուրց,
Որ խրախ զիս տառապանաց տարեալ էցէ
    նա բիւրուց.
Թէ այնպիսին յոտս իմ մերձի, երբէք
    ոչինչ դըժուարիմ ”.
“ Բայց է, ո՜վ հեր. հրացեալ անդէն
    ձայն արձակեաց կինն ուշիմ։
Ցարդ զայր օտար խրախ ըղջեղ առ 'ի,
    վայրաց բացական,
Համձայրիմաստ և սիրելի չառի ես հեր
    յիմուա տան.

Եւ զի այնչափ խմաստութեամբ բարբա-
ռեցար դու ինձ արդ,
Քեզ աւաղելիկ կլին մի ուշիմ ունիմ առ իս,
կլին աւսարդ.
Սա ինքն է կլինն այն հինաւուրց որ զիմ
զՈդիսն ողբալին
Ար և երարձ յիւր 'ի բազուկս 'ի յարւ
զանդէ Նորածին.
Խընամ էած մինչև յարբունս Նաև ազնուագ
գրգաբար.
Արդ զօրըս քո առեալ լուացէ կլինն այն
պատուաւ ապիկար ։
Ադէ արդ, Եւրիկլիա, ով կլին արգայ և
ուշիմ,
Ըղհամանակք ըղաեաուքն քո ազի՜ լուա
ոծերումնին.
Անշուշտ զարգդիս և Ոդիսէս ուրեք յաշ-
խարհ բացակայ
Ունի հասակուն ըղնոյն ըղձեռս ըղնոյն և
զոտս ըղգորս ։
Քանզի մարդիկ բազմաչարչարըք սարա-
ժամու ծերանան ».
Զայս ինչ ասաց Պենելոպէ, և կլինն աւ-
սարդ յօգուց հան ։
Սէ հանդուրժեաց, և իւր ձեռօքն առ-
զիւր զերեսս և ծածկեաց,
Ձեռմ արտասուս հեղոյր յաչացն և ձայն
ողորմ արձակեաց.

ւս. Ի գուԹ գորովւ քո, ով որդեակ, զանձն
իմ կոծեմ աւաղիկ,

Եղուկ եմ ես, զի Արամազդ առեաց ըզ-
քեզ 'ի մարդիկ.

Իբրև ըզքեզ ո՞ որ եկաց այր կրօնաւոր
երկիւղած,

Եւ Թամբուս յոյրս այնչափ 'ի դուռ Արա-
մազդայ ո՞ այրեաց.

Ո՞ որ այնչափ հարիւրեղնեան եհան նը-
մա 'ի նուէր,

Որչափ ինքնին դու ձօնեցիր, նաև ուխտիւք
մաղԹեցեր.

Զի մաղԹէիր, որ յանդորրու ինքնին
հասցես յաղԹոյԹ,

Եւ քո զորդին ըղհօյակապն դու հասուս-
ցես յաւագոյԹ.

Եւ արդ 'ի քէն մեհն Արամազդ զոր նա-
հանջեաց ըղդարձիդ.

Բայց դու, ով հիւր, զոր քեզ ասեմ,
լո՛ւր ինձ վայր մի, ծերունիդ.

Բա՛ ո՞ գիտէ, եԹէ ուրեք նաև զՈդիս
տարադէմ

Ի սուտ պայծառ մնեալ զերԹ հիւր անդ-
կանանին դըձձեսցեն.

Որպէս և այդ շունք լըբենիք շատ գձձե-
ցին ասա ըզքեզ,

Ցոյց և 'ի կրից դու խուսափեալ արդ-
լուանալ ոչ ներես.

Վասն այնորիկ և զայդ բաղաս ինձ մեր
տիկինն յանձն առաք.

Հարկեց բաղաս և զոտըս քո ես լուացից
կամակար.

Զի մեծարանս գընեմ ըզքով պերճ երե-
սաց Թագուհւոյ,

Նաև ՚ի գութ քո հարեալ եմ, քեզ ճշտա-
կիր ծերունւոյ.

Բոմբէ, զիս մի, ո՛վ սքանչելեացս, ո՛ր կերբք
սիրոյն տոչորեն.

Արդ լո՛ւր ինձ դու, ո՛վ հիւր բարի, և քաջ
միտ դիր, զոր ասեմ.

Ասա հիւղք բաղդուածք տարաշխարհիկք
առս օթեվան ընկալան,

Եւ ցարդ այսպէս ոչ զըզք ուեալ Ոդիսեայն
համանման,

Որպէս ըզքեզ, որ հրաշապէս դու և
մարմնով և ձայնիւ

Նաև ոտիւք զՈդիսևսեայն ըզտեսիլ բե-
րես ճըշգրտիւ »:

« Լո՛ւր և ինձ դու, զայս Ոդիսէս ձայն
՝խօրագէտն ես անդէն.

Նաև նոքա, որ զմեզ զերկուս ՚ի յաչս
արկին, զայդ ասեն.

Քաջիկ գիտեալ, որպէս և դու կորովա-
բիբ դիտեցեր,

Զայս կնքեցին եթէ դոքա ատ ՚ի միմեանց
չեն տարբեր »:

Նաւ ապա Եւրիկլեա կոնք մի փայլուն
'ի ձեռին,
Առեալ ջուր ցուրտ արկ անդ բաղում,
Էարկ 'ի նոյն և ջերմին.
Կայր Ոդիսեւս նստեալ յաթոռ 'ի հան_
դիպոյ առ կրակին,
Եւ փութապէս առեալ շրջեաց զանձն
իւր 'ի կողմն ըստուերին.
Քանզի երկեաւ եթէ պառաւան 'ի շօշա_
փելն 'ի բարձի
Ըղձին զբասալին 'ի յանկն արկցէ, և իւր
խաբանքն յայտնեսցին:
Մատեաւ պառաւան և ջուր ոտից տայր
անդ իւրոյ արքային,
Այն ինչ լուանայր, եահես ծանեաւ ան_
դէն զխոցեալ հին զբասալին:
Զի էր երբեմն, ուր կինճ վայրի յանհեդ
տախտակ 'ի ժանեաց,
Նորա 'ի լեառն 'ի Պառնասոս յորժ կա_
րեվէր եա հարուած,
Երբ նա որդւոց յայց եղանէր Աւտողիկեայ_
արքայի,
Սա իսկզն էր հայր մօրն Ոդիսեայ, և էր
այր նա պանծալի,
Յաւ և յապուռ և 'ի յերգուածս իւրն
յաղթողէր մեծապէս,
Եւ հովանի և ձեռնտու նորա իսկզբան էր
Հերմէս.

Քանզի և նա սրտիւ ըղձմամբ ըղձէր զու-
լուց և զգառանց
Ի զոհ յարգէր, և սա նըման էր հանապազ
զուգընթաց։
Իբր զի երբեմն Աւտոլիկոս եկն 'ի հա-
րուստն Իթակէ,
Եւ անդ եգիտ այն ինչ ծնեալ մանուկ
յիւրմէ դստերէ.
Առեալ զմանուկն Եւրիկլէա էած առ-
պապն յետ ընթրեաց,
Եդ 'ի ծերայ ծնգաց նորա և զայս բար-
բառ արձակեաց.
« Աւտոլիկէ, սիրուն մանկանս դու գտի՛ր
զանուն, զոր դիցես.
Զի զսա աղաւթաւք քոց աղօթից քո դուստ-
րըն ահա ծընաւ քեզ »։
Լուաւ յայնժամ Աւտոլիկոս և պատաս-
խան ետ անդէն.
« Լո՛ւք արդ, փեսայդ, լո՛ւր և դուստր
իմ. դի՛ք դուք զանունն զոր ասեմ.
Ես շատ արանց, շատ և կանանց, որ
բնականեան 'ի յերկրի,
Ի բարկութիւն 'ի մեծ բրդեալ, և արդ
աստ գամ ցասմամբ լի.
Եւ արդ սիրուն այս իմ մանկանս ես
Ոդիւսէս տամ անուն 79.
Եւ երբ հասցէ յարբունս անց դա յայց
եկեսցէ տուն իմում.

Գայցէ առ իս , տեսցէ աչօքն ըղձեծ տա-
 ճար մայրենին
Անդ 'ի լերին 'ի Պառնասոս ուր կայ իմ
 շատ կարասին .
Եւ խնդալից առնեմ ըղջա և տամ նորմա
 ձիրս պէսպէս ».
Եւ արդ ձըրից այս ապագաւ չորքաւ յայց .
 եւ Ողիւսէս :
Նաոլիկոս և իւր որդիքն հիւրընկալուք
 բարեզգեաց ,
Ալ կարկառեալ ողջունէին , բան[illegible]ոսէին
 գըրգանաց .
Գիրկս արկանէր Ողիւսեսեայ Ամփիթէա
 մայրն իւր մօր ,
Եւ գեղեցիկ աչաց նորա նաև գլխոյն
 տայր համբոյր :
Անդէն ընթրեաց ձայն ժիր որդւոյն Աւ-
 տոլիկոս եա արագ .
Եւ փութացան , ըղհնգամեայ զեզն անդ-
 ածին պատրուճակ ,
Զերծին ըղմորթն 'և կազմեցին . առեալ
 ողջոյն յօշատեն ,
Եւ 'ի խորտակ մանրահատուկ փոյթ 'ի
 շամփուրս հարկանեն .
Տակաւ քաջիկ խորովելով , բաժինս հա-
 նին բաշխեցին ,
Եւ զօրն ողջոյն 'ի հացկերոյթ նստան ցը-
 մուտս արեգին .

Անդ 'ի խաւհեցըն նոյնաբաշխ որք կարօ-
տեալ ոչ մընաց,
Դարձաւ արեւն եմուտ 'ի մայրն և գիշե-
րոյն մութն եհաս։
Ընկողմանեալք և առնուին զանոյշ քը-
նոյն ըզպարգև,
Մինչև նոցա վարդածըղլին այգ ծագեցաւ
ակներև.
Յարեան յայնժամ արքայորդիք, և բա-
րակօք 'ի յորս մեծ
Ի չու անկան, էր խմբակից նոցա ինքնին
Ոդիւսէս.
Գնացին ելին 'ի լեառն 'ի մեծ և յանտա-
ռուտ բարձրածայր,
Մինչև հասին 'ի Պառնասեայ 'ի յար-
տևանան հողմահար.
Նորէկ արփին 'ի խոր յանդորր ովկիա-
նոսն հոսանաց
Ի վեր ելեալ խոցէր շանթեօքն ըզցօղալից
դաշտ մարգաց,
Առքն 'ի հովիտ իջեալք 'ի յորս, և շուտ
բարակքն այն սրավար
Ի յառաջոյ հետախուզեն առա անդ 'ի
վեր և 'ի վայր.
Յետախաղացք գային որդիքն Աւտոլի-
կեայ արքային,
Այլ բարակաց մերձ կայր Ոդիս և տէգ
ձօձէր անարի։

Սարսաղ ժանեալ և ամեհի բուռնէր 'ի Թաւ-
 անտառէն ,
Անտառ , ուր ոչ հողմունք բռունք և
 Թօնընկեցք չնչէին ,
Ոչ արեգակըն ճաճանչիւքն 'ի նմա լինէր
 Թափանցանց ,
Եւ ոչ ամպուռք զայն Թանայքն տեղա-
 տարափ անձրևաց .
Այնչափ անտառն անձուռնաձիւղ էր խիտ
 առ խիտ Թաւացեալ ,
Եւ յամպաւէց 'ի սաղարթուց Թանձրա-
 մայրին էր հոծեալ ։
Այն ինչ 'ի մօտ եկին որսորդքն ընդ բա-
 րակացն անհլկուն ,
Եւ վարազուն յունկն հարկանէր տրո-
 փեալ ոտից շառաչիւն ,
Դիմեաց յորջոյն և ըղԹիկանցն ըզքառ-
 ժանափուշ բաշ լարեաց ,
Եւ լերկն բոց աչքըն հրաժառ հայեացս
 արար և եկաց .
Նահատակեալ քաջն Ոդիւսեւս յարձա-
 կեցաւ անվեհեր ,
Տեգ զանարին առ և ամբարձ տալ ըղհա-
 րուած կարեվէր .
Աճապարեաց կինձն ահագին եա սու-
 կալէս Թափ ահեղ ,
Եւ 'ի վերոյ ծընգաց նորա հար ըղժանեաւն
 առ 'ի շէղ .

Շատ ինչ մարմնին 'ի յազդերէն սա. ա-
մեհին եւ կործեաց,
Այլ ոչ 'ի խոր մինչեւ 'ի յոսկր հատոյց
զհարուածն ըղձանեաց.
Վարանեալ 'ի նա ըղձալեզն Ոդիսս հար
զուսն աջոյ կշռակի,
Եւ թափ ընդ թափ հրափայլ ըղձայրն
անցուցանէր նիզակի.
Խանչեաց վարազն ահագնաձայն անկաւ
տապաստ շնչասպառ,
Դիմեն համհարզքն եւ Ոդիսեայ խնամ
ածեն գրգաբար.
Շուրջ բակ առին եւ գինամպէս ըզնէր
նորա պատեցին,
Եւ զապաժոյժս ըղսեալ արեանըն թավ
չաբար 80 սանձեցին:
Աւեալ ապա արքայորդիքն յանձանձէին
փութապէս,
Եւ 'ի տաճար հօրն արքայի խնամով ա-
ծեն զՈդիւսէս.
Անդէն եւ անդ հայրն եւ որդիք դարմանս
տարան հմտաբար,
Եւ բուժեցին. եւ շատ նըման պարգեւեցին
ձիր պայծառ.
Ի ցնծութիւն հասաւ Ոդիս, եւ ցնծա-
ցան եւ նոքա,
Եւ խնդագին արձակեցին ըղնա 'ի տուն
յԻթակա:

Անդ հայրն և մայրն ուրախութեամբ ա-
ռեալ զՈդիսևս ողջանգամ,
Հարցանէին ըղհարուածոյն զոր ինչ կը-
րեաց նա յայնժամ.
Եկաց պատմեաց զիա̃րդ ըղնա ժանեղ վա-
րազն 'ի յորսին
Յարձակեցաւ եդ վիրաւորեց 'ի Պառնասոս
'ի լերին:
Սորդ զայն զբօսալին վիրաց նորա յորժամ
կրքեալ անդ պառաւ
Եւ լուանայր և շօշափէր նա 'ի բարձին,
քաջ ծանեաւ.
Ճուարեցաւ, թող 'ի ձեռացն անդէն
անդ զոտն Ոդիսևին,
Անկաւ սրունքն 'ի մէջ կոնքին և ձայն
հնչեաց պղընձին.
Թաւալեցաւ և ողջ ամանն, և ջուրն հե-
ղաւ 'ի գետին,
Եւրիկլիա յապուշ հարեալ կայր առ ցա-
ւոյն, առ խնդին.
Աչքն արտասուօք լըցան նորա, և հառ-
կըլեալ ձայն կարդայր,
ԶՈդիսևսեայ առ ըզծընօտն, յոգւոց
եհան սիրաբար.
« Բա̃րէ, բա̃րէ, դու Ոդիսևն ես, ով իմ
որդեակ սիրային,
Մինչև ոտքոյն զքեզ շօշափեալ, ես ոչ
ծանեայ ըզտէրդ իմ »:

Այն ինչ տեսաց, անդէն և անդ զաչս իւր
դարձոյց առ դշխոյն.
Իբրու ազդել, եթէ ահա մերձ կայ փե-
սայն սիրասուն.
Սակայն չետես Պենելոպէ և ոչ ուշ եդ
'ի ժամուն,
Զի այլ ուրեք մեծն Աթենաս առ յածե-
ցոյց զուշն ոգւոյն:
Բայց Ոդիսևս ըզպառաւոյն կալաւ ա-
ջովն զհագագէն,
Եւ ահեկաւ յինքըն ձգեալ ասէր նըմա
յունկանէն.
« Զի՞նչ, 'ի կորուստ, ո՞վ իմ դայեակ, զիս
արդ մատնել կամիցիս,
Զիս որ մանկիկ մատամբ 'ի գիրկդ ես դիե-
ցի զքո զըստինս.
Իսկ և զարդ իս բազմաչարչար Թափառա-
կան ամ քըսան,
Եւ հուսկ ուրեմն աստ 'ի տուն իմ հասի
ահա ողջանդամ.
Եւ արդ դու ինքն որ զայս ծանեար,
զայն քեզ աստուած կամեցաւ.
Ուշիմ լեր արդ. կա՛ց ողջ լըռիկ. մի՛ ոք
լուիցէ զայս համբաւ.
Զի քեզ ահա ես բան կնքեմ, որ և ան-
շուշտ լինիցի.
Լո՛ւր. ո՛չ և քեզ ես ներեցից, քեզ' իմ
սնուցն դայեկի.

Յորժամ յարիւն ես աստուծով շաղա-
խեցից զհոմանիս
Եւ կանանւոյն մահ գուժեցից, և ոչ դու
ինքն ապրեսցիս »:

Սարսափեցաւ Եւրիկլիա. ձայն արձա-
կեաց, « Ո՛վ Որդեակ,
Զի՞նչ բան զարդիս 'ի քոց շրթանց զի՞նչ
բան սրացաւ դըժնդակ.
Դու իսկ գիտես, յիս քանի՞ծն սիրտ
տարրացաւ անվըկանդ.
Լուռ կամ ողջոյն, և անսասան կամ իբրև
սալ կամ երկաթ:
Սակայն դու ինձ կա՛լ 'ի յուշի, զոր ես
զարդիս ասեմ քեզ.
Երբ աստուծով դու հոմանեաց զարժա-
նահաս մահ ածցես,
Ես քեզ յայնժամ կարգ 'ի կարգէ տաց
ըզհաշիւն ըզկանանց,
Ո՞յք 'ի յընչաց քերեն ըզքեզ, և ո՞յք ի-
ցեն երկիւղած »:
« Զի՞նչ պէտք իցեն, ո՛վ իմ դայեակ,
կրկնեաց առ նա Ոդիսեւս,
Զի դու հաշիւ ըզկանանւոյն տացես
յայնժամ կարգապէս.
Լրտես ինքնին ես դարանիմ, և ես զննեմ
ըզնոսա,
Դու լո՛ւռ համբուն կա՛ց և ողջոյն 'զայն
աստուծոյ յանձն արա »:

Ըսաց Ոդիս, և ել արտաքս Եւրիկլէա
ընդ բանին,
Եւ ջուր բերել 'ի լուանալ, քանզի հեղաւ
առաջինն։
Ի յիւղ պարարտ օծ ըզնա կինն, լուաց
սրբեաց մաքրապէս,
Եւ մերձ կրակին առ 'ի ջեռնուլ էառ զա-
թոռն Ոդիւսէս.
Ըզգուշացաւ, և հանդերձիւք զսպին
վիրացըն ծածկէր,
Մինչև անդուստ Պենելոպէ ձայն վեր-
ըստին արձակէր.
«Վայր մի ընդ քեզ եւ միւսանգամ, հիւր,
խօսեցայց տակաւին.
Թէպէտ և ժամն հասեալ իցէ հանգիստ
առնուլ ըզմահճին։
Քուն անուշակ ննջէ և մարդ, թէպէտ
իցէ այր ցաւած,
Սակայն ինձ ցաւ յոյժ մորմոքիչ և ողբե-
տանջ ետ աստուած.
Ինձ մխիթար 'ի տուընջեան են այս ան-
դուլ լալիքն իմ,
Գործոց իմոց ես հոգ տարեալ և աղախ-
նեայց 'ի յարկին.
Գայ մեզ գիշեր, այլքն ըղհանգիստ առ-
նուն զանդորր անկողնոց,
Ես 'ի մահճի բազմաշարչար մղձկիմ տա-
պիմ 'ի հոգոց.

Իբր օրիորդըն Պանդարեայ 81, գալա-
  րասէրըն այն սոխակ
Ընդ գայլայլիկըն գեղգեղէ 'ի գարնայնոյն
  յեղանակ,
Բազմասաղարթ 'ի մէջ ծառոց նստեալ
  յանդորր 'ի յոստ Թաւ,
Ճապուկ ըղձելով ընդհատագին արծար-
  ծանէ յերգ ամբաւ,
Ընդ տարափեալքն նա լայ զխողխեալ 82 զորդին
  Զեթեայ արքային,
Զոր էր երբեմն՝ անմտաբար առ և մատ-
  նեաց օրհասին.
Նոյն օրինակ ցանդ հեծեծեմ ես 'ի կըր-
  կին տարակոյս.
Եթէ արդեօք կամ առ որդւոյս և ողջ պա-
  հել մեզ ըզգոյս,
Զիմ զստացուածն և ընտանիքս և մեզ
  զայս տուն գեղանի,
Ակն ածելով իմ փեսային նաև ձայնին
  խուժանի,
Եթէ միանգամ յայլը ոք 'ի լաւ յիմ տար-
  փածուաց հոյակապ,
Որ հարսանեացս խնդրէ 'ի շուք պըրգւոյ
  տացէ ինձ անչափ ։
Մինչդեռ որդեակս իմ խակամիտ էր 'ի
  տիս իւր մանկութեան,
Թոյլ ինձ ոչ տայր 'ի հարսնանալ և զիմ
  Թողուլ ապարան.

Իսկ զի այժմիկ զարդուն աչօք և 'ի յար-
թուն հասեալ է,
Ինքնին և նա անձուկ բերէ խմոց երկեան 'ի
տանէ.
Քանզի սրտին վասն դողիցն զոր ցանդ-
վաստնեն հոմանիք,
Բայց դու, ով հիւր, լո՛ւր ինձ երազ, և
զայն մեկնեա ինձ ողջիկ։
Ամպք են քրտան յիմում դաւթի, և անդ-
ուստեն ըղձորեան.
Նոքա 'ի ջրոյ մինչ հասս քաղեն, ես 'ի
զընկին կամ խնդամ.
Յանկարծակի եկին 'ի լեռնէ անդ արծը-
ւոունկն յաղթ արծուի,
Ար և երեկ զուլս ըղձադուցն և գիտա-
պաստ արկ յերկրի.
Նոքա այնպէս անդ չնչասպառք մի ըղձ-
միով կուռեցան,
Եւ ել արծուին և սրաթևեաց 'ի վերյե-
թերն սատուածեան։
Ըղձահ սագուցն ես ողբայի բարձեալ
ըղձիչ յերազի,
Եւ բակ զինե եկին ոսկին մեր գեղազէս
կանանի.
Սակայն արծուին վերաթևեալն էջ եկն
անդրէն 'ի բարձանց,
Եւ անց նստաւ նա 'ի վերայ այս քըլա-
ւոր մեր տանեաց.

Ձայն արձակեաց նա մարդկեղէն՝, սանձեր զողբն իմ և ըղձուդ,
Քաջալերեա՛ց ո՛ գուսան, ասէր, դու Իկարեանդ գեղաշուք.
Չէ այդ երազ. այլ ճշմարիտ տեսիլ իրացն, որ լեցի.
Սագքն են սեղեխք, և յառաջմէ արծիւ թռչուն ես էի.
Արդ գամ փեսայդ, և ողջ նոցա զօրհասն ածից զդժնդակ.
Նա զայս ասաց, և իսկ և իսկ թող զիս քունն իմ անուշակ՝։
Շուրջ հայեցայ ես 'ի գաւիթն և սագքն իմ անդ ողջ կային,
Կայր անդ և կուրղն առաջի և ըզցորեանն ուտէին ”։
“Ո՛րպէ, կին դու, ձայն արձակեաց հանճարիմաստն Ոդիսէս,
Զայդ քո երազ ինձ չէ արժան քեզ թարգմանել այլապէս.
Ինքնին Ոդիս քեզ ցոյց ահա զոր ինչ ինքն է գործելոց.
Ահա առ դուրս կան հոմանեաց անշուշտ աղէտք բազմակոծ.
Ո՛չ ապրեսցի և ոչ մի ոք. մահ դուժաւցէ բոլորից ”։
Կրկնեաց անդրէն Պենելոպէ. ” Քաջ ես, ո՛վ հիւր. բայց լո՛ւր ինձ.

Անշուշտ երազք են անքըննինք, և բազմա-
դէմ Թակարդեն,
Եւ ո՛չ տեսեալքըն ամենայն յանդ ճըշ-
գրտիւ ելանեն.
Զի անկայուն մեր երազոց դուռք կըրկ-
նակի են դրանդեաց,
Մին է գործած 'ի փըղոսկրէ, և մին գոր-
ծեալ յեղջերաց.
Որ միանգամ 'ի փղոսկրեայ հարթեալ
դըրանց յառաջ գան,
Բազմապատիկ են խաբուսիկք և են իսկ
բանք ուրուական.
Իսկ որ արտաքս յառաջ խաղան 'ի քաջ
յղկեալ եղջերաց,
Ճշմարտապէս են հանդուցիչք սըրտից
իւրեանց տեսողաց.
Այլ ոչ կարծեմ զիմ մեծ երազն 'ի սոյն
լինել 'ի հանդէս,
Այլ ո՛չ, լինէր. և խնդայայք ես և ոգւիս
մեծապէս:
Այլ դու միտ դիր, զոր արդ ասեմ. այդ
ձախողակ գալով գայ,
Եւ հարկ է ինձ, եղուկ եմ ես, ըղտան
Թողուլ զՈդիսեայ:
Սակայն մրցանս ինչ փորձ արկից ես
հոմանեաց առաջի,
Զայն իսկ մրցանս, զոր Ոդիսէս ինքըն
փորձէր 'ի յարկի.

Քանզի նա ցիցեր հաստատեր կարգ առ 'ի
 կարգ երկնաստան ,
Ցեցքըն էին ողջ օդաւորք խորև ըղձիւթս
 նաւակեան .
Ա[illegible]եալ կայր ինքն առ 'ի բացեայ և քաջ
 նշուեալ անմեհեր ,
Թափանց ընդ օդոյն անցուցեալ չեշտ ըզ
 փրքինն արձակէր ։
Եւ առդ ըզ նոյն փորձ ըղձիցմանըն համա-
 նեաց ես արկից ,
Ցեսից ո՞ ոք քաջ պնդաստկես լարեալ քար-
 չէ զլայնալիծ .
Թէ նշուականս չեշտ ըղձիւքինն 'ի քաջաձիգ
 'ի բաղկէն
Թափի անց ընդ օդոյն երկնատասան չեշտ ան-
 ցուցէ համօրէն ,
Նա ինքը լիցի ինձ 'ի փետրոյ , և ես ըզ տուն
 զայս Թողից ,
Ցուն կուսակաւն իմ հարմնութեանս ,
 տուն գեղեցիկ , հացարից .
Տուն որ անշուշտ և յերկարի անդամ 'ի
 յուշ ինձ գայցէ ».
Այն ինչ լուաւ զայս Ոդիսևս , անդէն
 ձեռնէաց և ասէ .
« Անամ ինձ առդ ով կին առդոյ , զու-
 զայդ մրցանս , զոր ասես ,
Համայս ձեռն տուր , մի զանդադեալ ժամէ
 'ի ժամ ձըգեցես .

Քանզի մինչև ըղձայնալիճըն զաղեղան
    փորձ փորձեալ,
Եւ մինչև լարըն հաստատամուր առ 'ի
    պտղանց ալինդ քարշեալ,
Եւ մինչև նետն ընդ օդըն շեշտ թռչի
    անցուցեալ կշռապէս,
Քոյին փետրայն այն խորադէտն աստ ե-
    կեսցէ Ողիսէս »:

«Աշ վաշ, ով հիւր, եթէ այդչափ,
    Պենելոպէն ձայն կարդաց.
Գրգեռ դու զիս, անշուշտ և իմ ողջ քունն
    հատցի 'ի յաչաց.
Սակայն և այն չէ հնարաւոր անդուլ
    անքուն գոլ մարդկան,
Զի այս օրէնք 'ի յանմահից մահկանա-
    ցուաց կարգեցան.
Վասն այն և արդ ես վերելեալ 'ի վեր-
    նայարկն իմ դահլիճ,
Ընկողմանիմ վայր մի հանգչել յիմ ար-
    տասուացն 'ի մահիճ.
Զի լամ անդուլ, յորմէ հետէ եւ իմ Ո-
    դիսն 'ի գնալ
Ի յԻլիոն քաղաք անյուշ, ո՛յ չԻլիոն նը-
    զովեալ։
Իսկ դու հանգի՛ր աստ 'ի յարկիս խշտի
    առեալ 'ի գետին,
Եւ կամ յոր վայր մեր սպասաւորք քեզ
    անկողնարկք լինիցին »:

Ասաց ափկէնն, և ինքն 'ի յարկ իւր վեր-
նատանն եւ անդրէն .
Չէր միայնակ . նա և նաժիշտք շուք դըշ-
խոյին հարկանեն :
Անդ եւ եմուտ, լայր և ողբայր ըղձաւոր
փայլին զիւր փեսայն ,
Մինչև ուրեմն արտեւանանց Պալլաս քուն
արկ քաղցրութեան :



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ի․

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ոդիւսէս 'ի գաւթին ընկողմանեալ իբրև 'ի ննջել, զննէ և դիտէ զլրբութիւն զաղախնեայց պալատանն: Խնդրէ յԱրամազդայ նշան բարեգուշակ, և ընդունի: Ցանդուգն լրբութիւն այծարածին Մելանթէս անուն, և սիրալիր հիւրընկալութիւն Փիլետեայ քաջի հովուապետին: Կտեսիպպոս սեղեխ ընդդէմ Ոդիւսեայ արձակէ զկճղակ մի եզին 'ի հացկերութին: Գուշակութիւն մահադոյժ հոմանեաց 'ի Թէոկլիմենեայ յըղձէն. Ծաղր առնեն զայն հոմանիք, և կատակեալ այպանեն զՈդիւսէս և զՏելեմաք:



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ Ի.

Մինչ Ոդիւսէս անդ 'ի դաւթին ընկող-
մանէր իբր 'ի քուն,
Եւ 'ի ներքոյ էր տարածեալ ըզ կարծըր
մորթ զարջառոյն,
Արկ 'ի վերայ և զօգենիսն ըզյազելոցն
հոմանեաց,
Իսկ և վերմակ Եւրինոմէ էարկ նմա և
ծածկեաց:
Խորհէր ըզմահըն հոմանեաց ընկողմա-
նեալ նա անքուն,
Եւ 'ի յարկաց ելին յայնժամ դասք ըզբ-
բենի կանանւայն.

Այն սովորեալքըն լըրբենիք ընդ հոմանիս 'ի լինել,
Եւ առնէին անդ ըզմիմեամբք նոքա խընծղիւք ելեւել.
Դիտէր զըննէր ըզխեղկատակ ըզլինելոյն զայն հանդէս,
Եւ 'ի սրտին հաչէր մաչէր ուշիմն արթունն Ոդիսէս.
Կայր վարանեալ, արդեօք յանկարծ մա՞հ տալ պագշոտ երամին,
Եթէ թողուլ դեռ ըզլինելըն զայն ըզնուագ ըզվերջին։
Այնպէս դիւցազըն ցասուագին գոգցես հաչէր 'ի սրտի,
Որպէս ըզշուն յորժամ մատաղ խուրոց կորեանց պահ ունի,
Կայ եւ հաչէ ընդ այր օտար, ձայն մըղեգին տայ մարտին,
Սապէս ընդ գործըն լինելոց սիրտըն մըղձկէր դիւցազին։
Առեալ ըզլանջն ինքնին կոծէր եւ ընդ անձին ոգորէր,
Խրախոյս սրտին տայր համբերուն. «Ժուժեա, սիրտ իմ, անվեհեր.
Ո՞չ դու չարեաւս մըղձկեցար եւ ժուժացեր 'ի յոգին,
Յորժամ Կիկղոպն այն ամեհի ուտէր զընկերսդ 'ի յայրին.

Ո՞չ քո հանճարդ եհան ըզքեզ 'ի մահա-
հոտ յանձաւէն,
Եւ քո ժուժալըրդ խնդացոյց լեալ մազա-
պուր յորհանէն »:
Օ այս նա ասէր, զանձըն խրատէր և
քաջալէր տայր սրտին,
Մինչև խսպառ կալ համբերել իբր անըն-
կուն 'ի յոգին.
Բայց նա անդուլ յայսկոյս յայնկոյս
դառնայր շըջէր յանկողնի,
Որպէս թէ ոք ըզլի արեամբ ըզճարպալից
փորոտի
Առեալ դիցէ, և 'ի վերայ բորբոքելոց
կայծականց
Շըջշըջեսցէ հաստուցանել փութանակի
խորոված.
Նոյնպէս Ոդիս զինքն անդադար 'ի վեր
'ի վայր տարբերէր,
Զիա՞րդ ածել մահ հոմանեաց 'ի խոր սըր-
տին խոստանէր.
Զիա՞րդ, ասէր, մին ընդ բազմաց տալ
կըքրեսցի օրահաս,
Այն ինչ 'ի նոյն կայր 'ի վարանս, էջ 'ի
յերկնից Աթենաս.
Էր նա մարմնով համանմանեալ 'ի կա-
նացի 'ի պատկեր,
Կաց 'ի վերոյ գլխոյն նորա, ձայն արձա-
կեաց և ասէր.

« Հի՞մ դու հսկես, ո՜վ հիքացեալդ. ո՞չ
այդ իսկ է քոյդ տաճար.
Եւ այդ ախկլին անշուշտ ո՞չ քո է ամու-
սինն այն պայծառ.
Եւ ո՞չ մերձ կայ քոյին զաւակ, բազմաց
կանանց տարփալի ».
Լուաւ Ոգխս ուշիմն, անդէն զայս անդրա-
դարձ ետ ձայնի:
« Քա՜ղ է, ո՜վ տէր, և գեղեցիկ են բանք
ողջոյն դիցուհւոյդ.
Այլ իմ զարդիս միտք վարանեն, իբրու
ընաւին չեմ անքոյթ.
Զխա՞րդ զիմ ձեռն ես միայնակ արկից 'ի
դասն հոմանեաց,
Քանզի խուժան բազմածողով աստէն
խռնի ըրբեննեաց.
Վարձեալ և ինձ մեծ են վարանքս, յո՞ր
վայր փախուստ ես առից,
Ցործամ Զևսաւ, և քև, ո՜վ տէր, ընդմեծ
Նախնձիրդ յանգ հանից.
Եւ արդ այժմէն զայս զիմ վարանս քեզ,
տէր, խորհել յանձն առնեմ ».
« Ա՜յ չուառական ո՞չ աւադիկ, ձայն
Աթենաս ետ անդէն.
Ո՞չ աւադիկ, այր մահացու հաւատա շնոր-
հէ մահացուի,
Թէպէտ և այր քան զինքն անկած և ան-
խորհուրդ 'ի սրտի.

Իսկ դու դարձիր ինձ քանիցօն, որ ես աստուած եմ համբուն,
Եւ յանձկութեան քեզ հովանի և պահապան եմ անքուն.
Եւ արդ միտ դիր, Թէպէտ յիսուն գունդք խուժեսցեն քաջարեաց,
Եւ բաւ ըզմեօք պաշարեսցեն արք կորովիք արք արեանց
Լեր անվեհեր, ո՛ Ոդիսեւս, Թէ պարտեսցես ըզնոսա,
Նաև զանդեայս և զհօտ նոցա դու վարեսցես 'ի բացեայ.
Բայց դու դարձիր հանգի՛ր, նինջ ա՛ռ, քանզի կիրք են դըժնդակ
Զողջոյն գիշերըն տքնաբար դու պահակեր մինչև ցայգ.
Քաջալերեա՛ց. դու մերձ ընդ մերձ յանդորր ելցես 'ի վշտաց».
Զայս դիցուհին, և Ոդիսեայ արկ հրակողին քուն աչաց։
Անդորրաւէտ նինջ 'ի հոգոց էառ Ոդիս և հանգչէր,
Եւ դիցուհեաց արդոյն Պալլաս 'ի յՈղիմպոս ել 'ի վեր։
Օարթեաւ յայնժամ Պենելոպէ 'ի քնոյն խորմէ 'ի յարկին,
Եւ լայր անդուլ նստեալ այնպէս յիւր 'ի փափուկն անկողին.

Աստղեկն յայնժամ եւ յՈղիմպոս առ․
մեծ արքայն Ամպրոպեան,
Եւ և խնդրէր օրիորդաց տալ ըղձալեալ
սրսկապան ։
Սակայն քաջինկ ամենայնեին խելամուտ է
Արամազդ,
Եւ ճանաչէ զճիճակ մարդկան ըղ բարե․
բախտն և զանբաստ ․
Յասպուրակն այն օրիորդք հափափեցան
՚ի յԱրպեայց
Եւ գրաւեցան նոքա ՚ի սպաս անագորոյն
Երինեանց ։
Ո՛վ թէ այսպէս դեքն երկնածնեալք յօր․
հաս ՚ի մահ տարցին զիս ․
Կամ թէ այսօր իսկ վարսագեղն զիս հար․
կանէր Արտեմիս ․
Թո՛ղ ես տեսից զմին Ոդիսեւս խաւարար․
գեղն ՚ի վըհի,
Քան թէ փեսայ ոք անաւագ իմ հարսա․
նեօք բերկրեսցի ։
Մարդ ցաւագին և վշտահար, որ ըղ ցե․
րեկն ՚ի յողբ կայ,
Գտանէ ըղձալին ՚ի քնոյ եւրում նա վայ․
րեկ մի դիւրանայ ․
Զի քուն անդորր երբ ըղմարդոյ ըղկոպն
առեալ քօղարկէ,
Բարեաց, չարեաց միանգամայն նա մո․
ռացօնք արկանէ ․

Բայց ինձ երազըս խաբուսիկս անըրջա֊
    կանս տայ տատուած ,
Զի 'ի յանուրջս և զայս գիշեր ինձ առ֊
    ընթեր կայր փեսայս ,
Այն իմ դիւցազըն Ոդիսէս ճշգրտատիպ
    յայն պատկեր ,
Յորում ելեալ նա ընդ զօրուն 'ի յԻղիոն
    արշաւէր :
Բա՛բէ , 'ի քուն քանի՞ յայնժամ ես հըր֊
    ճուէի խնդամիտ ,
Զի ոչ երազ ինչ կարծէի , այլ բուն տե֊
    սիլ ճշմարիտ » :
Այն ինչ լռեաց , 'ի նոյն անդէն և ոսկե֊
    գահն այգ ծագեաց .
Սակայն անդուստ մեծն Ոդիւսէս լսէր
    ըզձայնն ըզլալեաց .
Վարանեցաւ նա մեծապէս , եթէ ծա֊
    նեաւ զնա դշխոյն ,
Թուէր նըմա իբր ակներև եթէ մերձ կայ
    իւր գլխոյն .
Առեալ ըզմորթն և ըզվերմակն , եդ 'ի
    վերայ աթոռոյ ,
Սակայն ըզկարծր արջառենին առ և տա֊
    րաւ արտաքոյ :
Ամբարձ ըզձեռս իւր յԱրամազդ և պա֊
    ղատէր . « Լո՛ւր ինձ հայր ,
Եթէ ընդ ծով և ընդ ցամաք դու զիս
    ածեր սիրաբար ,

Թէ դու 'ի տուն իմ հասուցեր զիս ընդ քոյով հովանեաւ,
Տարաշխարհիկ Թափառելով և կրրելով վիշտ ամբաւ,
Արդ ոք գուշակ անքուն արթուն ինձ լինիցի աստ 'ի տան,
Իսկ արտաքոյ հրաշից նշան ցուցցէ յերկնից մեծ արքայն ».
Զայս ինչ Ոդիս մաղթեաց յայնժամ, և խնամածուն Զևսն անսաց,
Անդէն 'ի ջինջ յՈղիւմպոսէն իբր 'ի յամպոց որոտաց.
Խնդաց յայնժամ մեծն Ոդիսէս, ըղձայն լուեալ զաստուածեան.
Իսկ և գուշակ եկաց նըմա կինն որ աղայր անդ 'ի տան ։
Զի աղօրիք բազումք էին Ոդիւսևսեայ արքային,
Եւ անդ կանայք երկոտասան զօտեպնդեալք աղային.
Անդուղ շրջեալ փոխարկէին յալիւր զգարին, ըզցորեան,
Զաղբիւր կենացն անհատահոս կանացածնաց պահապան ։
Այլք մետասանքըն աղացեալ և դադարեալք կան 'ի քուն,
Մին կայր անքուն և դեռ աղայր, և էր տըկար 'ի յուժոյն ։

Նկաց և սա 'ի յաղաւթս, և Ոդիսևսայ 'ի
նըշան
Գուշակելով, զայս աղօթէր. « Լո՛ւր ինձ,
ո՛վ հայր Ամպրոպեան.
Դու Թագ մարդկան և աստուածոց ար-
դէն կապես բոլորից,
Ըզքո զօրութն ես ինք լուայ յաստեղա-
զարդն 'ի յերկնից.
Կամ հրաշացեալ ես աւադիկ, զի չէք ինչ
ամպ 'ի յերկնին,
Դու հրաշ ուրեմն յերևանի տաս զայս
ումեք 'ի վշտին.
Արդ յիս, ո՛վ տէր. լի՛ց դու զուխտն իմ
զոր ես առ քեզ պաղատիմ,
Դատուն խեռից այդ հոմանեաց այս լի-
նիցի օր վերջին.
Ձի այդ սեղեխքըդ պորտաբոյծք յՈ-
դիսևսեան յայս պերճ տուն
Ըզհաց յետին տացեն դոքա քըմապա-
րար սեզանոյն.
Նշեղեալ եմ յոյժ 'ի յաղաւթս, և խոնջ
եմ ես և վաստակ.
Ցե՛ռ դու, ո՛վ հայր. ընթրիս վերջին առ-
ցեն դոքա զայս նուագ »:
Լուաւ Ոդիս և ցնծացաւ նաև յայս ձայն
բերկրալի,
Մահ շամբշելոցն ածել անդէն էր ան-
վեհեր 'ի յոգի:

Սակայն յայնժամ և այլ նաժիշտք ըսպասա-
հարեալք տաճարին,
Առեալ ածին ըզկրակարանն և բորբոքեալ
հուր լուցին:
Զարեաւ եկաց 'ի յանկողնոյն Տելեմա-
քոս դիւցազգեաց,
Արկաւ ըզձորձն և ըզսուսերն ըզսուր
յուսոյն իւր կախեաց:
Առ ըզկօշիկսն ըզգեղեցիկ, կապեաց 'ի
յոտս մաքրափայլ,
Կալաւ տէգ յաղթ, տէգ 'ի պըղինձ 'ի
սայրասուր ագուցեալ.
Եւ չոգաւ եկաց առ սեամն, առ Եւ-
րիկլէն ձայն կարդաց.
« Լո՛ւր ինձ, դայեակ. զի՞նչ ինչ հիւրոյն
դուք արարէք մեծարանս.
Ետո՞ւք ըզհացն, ետո՞ւք մահիճ ըզվայե-
լուչն 'ի յարկի;
Եթէ արդեօք լքեալ թողիք, և նա մընաց
ամայի.
Ո՛հ, զի՞նչ զարդիս ես ասացից. բա՛ն սը-
խալէ և մայրն իմ,
Միտս ոչ եդեալ թէպէտ և է հիւրընկալու
քաջուշիմ.
Է՛ զի երբեմն առն անարգի շնորհ յան-
խորհուրդս հարկանէ.
Է՛ զի դարձեալ զայր ոք արգոյ նա ան-
պատիւ արձակէ »:

“Մի՛ դու այդպէս, անդէն բարբառ
Եւրիկղիա զայս կրկնեաց.
Քաւ քեզ որդեակ, մի անյանցին դու
բարդեսցես բամբասանս.
Քանզի այդ հիւրդ բազմեալ աստէն արբ
'ի գինւոյն ըստ ըղձին,
Բայց կերակուր ոչ ախորժեաց յորժամ
եհարց զայն տիկինն.
Իսկ մինչ եհաս ժամն յերեկոյն ըղջուն
առնուլ քաղցրութեան,
Յայնժամ հիւրոյն գոլ անկողնարկ իւր
նաժշտաց ետ հրաման.
Այլ հիւրն իբրև այր վշտատես տար-
աշխարհիկ և անտուն,
Յանձըն չառնոյր 'ի յանկողնի 'ի մէջ
գորգոց առնուլ քուն.
Ջարջառեննեն և զօղեննիւն առ տարա-
ծեաց իւր խշտեակ,
Ընկողմնեցաւ նա 'ի սրահին, սակայն
վերմակ մեք արկաք ”:
Ննջաց դայեակն, և Տելեմաք եւ յաղթ
աշտէն 'ի ձեռին,
Եւ բարակաց ամոլքն արագ ըզհետ նորա
երթային.
Ել և չոգաւ նա 'ի քաղաք Աքայեցւոցն
'ի յատեան,
Մինչդեռ 'ի տան աւսարդն արդոյ անդ
աղախնեայց տայր հրաման.

Սա Եղերերգէ էր դուստրն արգոյ Պիսե-նորեան Ոպոսին.
«Օ՜ն արդ, ասէր, կէսք ժիրաժիր ա-ւել ածէք 'ի յարկին.
Առէք ջուր սուրբ և սրսկեցէք. և 'ի գա-հոյս գեղանիս
Արկէք սփռոց անդ 'ի վերայ ըղպերճ ըղձորդս ծիրանիս.
Կէսք 'ի ջնջան առէք զըսպունգս և սրբե-ցէք ըղսեղանս,
Եւ մաքրեցէք ջինջ և պայծառ ըղհրաշա-կերտ սարկարանս.
Կէսք դուք վաղեալ անդ 'ի յաղբիւրն մեզ ջուր բերէք վաղագոյն,
Զի հոմանիք 'ի յայսմ աւուր ոչ յամես-ցեն գալ 'ի տուն.
Վաղ եկեսցեն, քանզի նոցա այս օրս է օր տօնական».
Զայս հրամայեաց. մեն մի նոքա 'ի պաշ-տամունս փութացան:
Ի յաղախնեայց քըսանք ըղջրոյ անդ 'ի յաղբիւր վազեցին,
Իսկ և մնացեալքըն ժիրաժիրք գործ պաշտէին 'ի յարկին:
Եկին մրտին և սպասաւորք և փայտ ճար-տար պատառեն,
Գան և կանայքն 'ի յաղբերաց, և Եւ-մէոս գայր անդէն.

Նյա խօսէր երկիս տանեալ ընդ՝ իւր ած սե
զեխաց պարարակ,
Այլ 'ի ժամուն թող ընդնոսա ճարակ ու-
տել անդ 'ի բակ.
Մատեաւ ապա առ Ոդիւսէս, առ դըր-
դաբար հարցանել,
« Ասա ինձ, հիւրդ. ուստի՞ն ինչ այդքդ
քեզ վայրիկ մի ակն ածել.
Արգեօք նոքա, որպէս յառաջին, զքեզ
լբաբար անկուշե՞ն ».
Լուաւ Ոդիւս, և արձակեաց ձայն 'ի խո-
րոց 'ի սրտէն:
« Ո՛հ, այդ արանց, քա՛ջդ Եւմէէ, թո՛ղ
քինահանք դէք լեցին.
Արք որ այնչափ արդ կընձայեալք և են
տանհար աղքատին.
Անզգամ են համբուն, և ամօթոյ չիք 'ի նո-
սա կայծ անդամ,
Եւ զանպատեհս մինքեննայեալ յարկ օ-
տարին աղուամնան »:
Այն ինչ այսպէս ընդ Եւմէեայ զայս
բարբառէր Ոդիսէս,
Ի ներքս 'ի յարկ մուտ առ նոսա և այ-
ծապանն Մելանթէս.
Ըղքաջաստոյգս 'ի հօրանէն այծըս յընթ-
րիս հոմանեաց .
Եբեր ընդ իւր. զայծն ըղհետ նաև եր-
կուք 'ի հովուաց.

Առ ըղձերերալըն կապեաց առ ժամն 'ի
ձայնատու 'ի գաւթին,

Ետես զՈդիս այն լըքեններն, երգիծեցոյց
վերստին.

« Դու միւսանգամ 'ի մայր եկեալ աստ
դառնացիս մեզ 'ի տան.

Եւ 'ի յարկէս երբեք արտաքս ոչ ելանես
միանգամ.

Անշուշտ ուրեմն այր 'ի յառնէ մեք ոչ
արդեօք մեկնեսցուք,

Մինչև միմեանց բուռն ըղբաղկաց աստ
ըղձաշակն ոչ առցուք.

Զի դու ժըստեալ, ոչ վայելուչս աստ
մուրանաս քեզ պարէն,

Միթէ խրախճանք նաև այլուր 'ի քաղա-
քիս ոչ կայցեն »:

Լուաւ ըղաստան համբերատարըն Ոդի-
սէս, կաց լըռին.

Եւ լուռ այնպէս գըլուխս շարժեալ չարիս
խորհէր 'ի սրտին:

Եկն անդ երրորդ Փիլիտիոս, և էր հո-
վուաց սա աւագ.

Ած հօտանեաց կով մի անմուլ և այծս ե-
բեր պարարակ.

(Առին զնոսա և անցուցին ծովագնացիկ
նաւաստիք,

Որ և զմարդիկ առնուն տանին միշտ 'ի
կղզւոյ 'ի կղզի).

Առ զյաղեղինն և 'ի դաւթին ած և կա-
պեաց պնդապէս .

Ետես զՈգլիս Փիլիտիոս , մատեաւ անդէն
հարց ցԵւմէս .

«Ո՛վ է այդ հիւրդ նորոդ եկեալդ աստ
'ի տուն մեր , ո՛վ Եւմէ .

Եւ ո՞յք իցեն ծընողք դորա , և դա վասն
իւր զի՞նչ ասէ .

Ազգն ուրանօր իցէ դորա , և ո՞ւր երկիրն
հայրենեան .

Վա՜շ ծերունւոյն . իշխանապանծ դա
արքայի է նըման :

Սակայն աստուածք ըզթափառաշրջահս
սաստիկ գործեն վշտահար ,

Յորժամ նոքա և արքայից կնքեն վարել-
կեանս Թափառ » :

Զայս նա ասաց , մատեաւ առ հիւրն ,
առեալ աջոյն ընդգրկէր ,

Եւ ողջունեալ ըզծերունին , զայս տայր
նըմա քաղցալէր .

«Ո՛ղջ լեր , ո՛վ հայր . խնդա՛ դու հիւր .
դի՛նեա յաւուրս քո վերջին

Երջանկացիս անդորրաւէտ , որ եսդ
այժմիկ վշտագին :

Զի՞ք 'ի յաստուածս , հայր Արամազդ ,
չի՞ք քան ըզքեզ մահաբեր .

Ոչ և խնայես դու 'ի մարդիկ , որոց դու
կեանս շնորհեցեր .

Զարիս բարդեալ դու 'ի չարիս, և վա-
րակես մեծ ցաւովք,
Տեսի, սիրտ իմ գորովեցաւ, և աչք լը-
ցան արտասուօք.
Յուշ ինձ անդէն եկն Ոդիսեւս. մի՛, մի՛
արդեօք և իմ տէրս
Արկեալ ըղձումնձն իբրև ըղձա արդ Թա-
փառի վշտատես.
Սակայն եթէ կեայ տակաւին և լոյս
զարփւոյն տեսանէ,
Կամ թէ մեռեալ արդ խաւարին 'ի
ստուեր մահու նա բնակէ.
Եղո՛ւկ եմ ես, եթէ դիւցազն իմ Ոդիսեւս
չէք զարդիս,
Որ անդէոց իւրոց դէտ եդ 'ի մանկու-
թեան զիս 'ի տիս:
Նա արձակեաց զիս 'ի պառակն անդ 'ի
կղզին Կեփաղեանց,
Ուր և անդեայքն իւր բազմացան այսօր 'ի
թիւ բարգաւաճ.
Յաղթամամարտին լայնաձակատ ձեռք ան-
դէոց սերեցան,
Զոր արդ ածել ես հրամայիմ աստ յօ-
տարաց 'ի սեղան.
Վա՜յ ինձ. Նոքա և ոչ որդւոյն ակն ինչ
ածեն դիւցազին
Ոչ յաստուածոցն յերկնասաստ պա-
տուհասէն երկնչին.

Այլ անդեալ են բաշխել յիւրեանս զիմ
արքայէն կարօտ ·
Եւ ես վարանիմ 'ի կրկնակի մղձկեալ եմ
արդ 'ի սրտի ·
Ո՜վ զարմանք է ինձ · յորչափ կեայ ինձ Տե-
լեմաքոս քաջորդին,
Երթեալ աշխարհս տար հարկանել ընդ
անդէոցըս ջոկին ·
Դառն է դարձեալ տառ կալ հսկել երբ
անդէոց օտարաց,
Որ ես վաղուց ելեալ գնայի կալ առ ու-
մեք յաւազաց ·
Գնայի անշուշտ պանդխտացեալ յօտար
աշխարհ տարադէմ,
Զի կերք են ինձ այս դժնդակք, ես այլ
ժուժալ ոչ բաւեմ ·
Սակայն մնացից դարձեալ վայր մի ես 'ի
գալուստ դիւցազին,
Որ շամբշելոցըն համանեաց զօրհասն
ածցէ 'ի յարկիս »:
« Ինձ ունկըն դիր, քա՛ջդ անդէորդ,
պատասխանի ետ Ոդիւս ·
Չես դու անշուշտ այր ոք ումպէտ նա
ինձ ուշիմ երեւիս,
Բան անպատիր ասեմ քեզ արդ, նաեւ
երդնում մեծապէս,
Վըկայ ինձ Զեւս, վըկայ սեղանս այս վա-
նատրի լիցի քեզ ·

Վերկայ և յարկքս Ոդիսեայ, ուր արդ-
աւի էջեւման,

Մեծն Ոդիսեւս դարձցէ 'ի տուն քո իսկ ա-
չաց յանդիման․

Դու տեսցես ըղձա, եթէ կամիս, քոյին ա-
չօք տեսցես զնա,

Յորժամ լքեալ այդ հանդուգնք անկանի-
ցին դիտապաստ »։

Փիլիտիոս անդ մըլլ յայլմէ ձայն առ խըն-
դին արձակէր․

« Օ՛հ թէ զայդ բանդ աւետաւորաց քաջին
Արամազդ կատարէր,

Քաջ իսկ յայնժամ տեսանէիր, զօրդ
և ես նաւհաստակ

Ընդ անձկացեալն իմ արքայի անդ շար-
ժէի և նիզակ »։

Ի նոյն հանդէս և Եւմէոս անդ անձանձէց
ողջ դասուն

Ուխտիւք մաղթէր և փափաքէր զՈդիսեւ-
սին դարձն 'ի տուն ։

Զայս մինչ նոքա արդահատեն յանձնուկ
բերեալ Ոդիւսին,

Մինչդեռ անդուստ արձնափանձքն մահ
զաւակին Նիւթէին ։

Բայց յահեկէ սրացեալ նոցա գայր
բարձրաթռիչ մեծ արծուի,

Յանդեղ մագլըն ունէր կալեալ քընքուշ
փափուկ աղաւնի ։

Զհմայսն 'ի յանկն արկ Ամփինոմ. « Ո՞ բա-
րեկամք, ձայն կարդայր.

Տելեմաքեայ մահուն խորհուրդն խապառ-
մնասցէ անկատար.

Թո՛յլ տուք, ո՛վ քաջք. և դուք այժմէն
ընթրեաց միտ դիք 'ի յարկէն »:

Զայս ետ խորհուրդ Ամփինոմոս, և հա-
սարակ անսացին:

Ցարեան անդէն, 'ի հոյակապ յարկն
Ոդիսեայ մտանէն.

Զերծուն զլօդիկսն, առեալ 'ի գահս և 'ի
բազմոցս արկանէն:

Ցազեն յայնժամ օդիս պարարտս և մե-
ծամեծս և յոյր այծս,

Խոզ պարարակ փողոտէին նաև արջառ 'ի
յանդեայց.

Խորովէին ըզ փորոտին և 'ի խորտիկ բաշ-
խէին,

Եւ խառնէին 'ի խառնարանըս մեծամեծս
ըզգինին.

Էր Եւմէոս 'ի տաճարին կարգաւ բաշխող
բաժակաց,

Իսկ և 'ի խանըս գեղեցիկս Փիլիտիոս բաշ-
խէր հաց.

Իսկ ատրաշէկ անոյշ գինւոյն էր Մելան-
թէս մատռուակ,

Եւ բազմականքն ըմբոշխնէին 'ի յայնց
խահիցն անուշակ:

Տելեմաքոս խորհուրդ նուիրեալ տայր
Ոդիւսեայ բազմակամն

Անդ առ 'ի ներքս 'ի տաճարին մօտ մե-
սեմոլք մարմարեան .

Նըման գըձուձ եդ աթոռակ, եդ և սեղան
դուզնաքեայ,

Եւ 'ի խահկիցըն փոքրուոյն եհան բաժին
և Նըմա .

Նման գինի հեղ 'ի բաժակին 'ի յոսկեղէն
և ասէր .

« Բազմեաց դու այդր ընդ կոչնականսն
և կեր և արբ անվեհեր .

Ըզքեզ ոչ ոք 'ի հոմանեաց ոչ զըձձեսցէ .
ես սանձ տամ.

Ոչ պանդոկի է այս տաճարս և ոչ մուր-
կաց իշխան .

Տաճար է այս և սարսուռ մեծ դիւցա-
զին Ոդիսեայ,

Եւ տաճարիս այս հոյակապ զիս ժառան-
գորդ եթող Նա ։

Ուստի և դուք, ո՛ հոմանիք, մետ դիք
սանձել ձեր զոգիս .

Սանձել ըզձեռս և մի խանդար առնել մե-
ծի տաճարիս »։

Լուան ըզպատուէրն հոմանիք . ա՛տ 'ի բե-
րան համրացան,

Յապուշ հարեալք ընդ արատամնւոյ բար-
բառ ձայնին տերրակեան ։

Մինչդ, յայնժամ Անտինոոս զայս խնչ
ասաց յատենին ·
«Լուսաֆիքրզասաստ Տեղեմաքեայ · սակայն
ժուժալ մեզ պիտի ·
Թէ Արամազդ ոչ կայր գլխա հովանա-
ցեալ 'ի բարձանց,
Քաջ իսկ անշուշտ մեք սանձէաք արդ-
ըզլեզուն ճոխապանծ »:
Լուաւ ըզբանըն Տելեմաք և սպառնա-
ցեացն ոչինչ արար ·
Մինչ ընդ քաղաքն անդուստ Քարոզք
զոհ ածէին զոհ պայծառ:
Նուէր արդեայ ձօն աստուածոց էր հա-
րիւրոց զոհն եզանց ·
Եւ յաշտ առնել համախմբէր ազգ գէխա-
ւոր Աքայեանց ·
Ժողովեցան առ ճասարակ հովանաւոր
յանտառն,
Էր այն ձօնիքն Ապողոնի դիպաղեղանն
արքայի:
Սակայն 'ի ներքս հոմանիքն 'ի խորո-
վեալ 'ի խորտկաց
Հանեալ 'ի բաշխ վայելէին անդ 'ի յընթ-
րիս մեծահաց ·
Մեծն Ոդիւսեայ սպասահարկուքն ընդ-
բաժանկանս հաւասար
Հանեն բաժին · քանզի այնպէս Տելեմա-
քոս յանձն արար:

Բայց Աթենաս թոյլ և յայնժամ ոչ տայր
ժուժալ գոռոզից,
Զի ուժգնակի 'ի բոց ցասմանըն վառես-
ցի մեծն Ոդիս:
Եր 'ի սեղեխս այր ոք յայնժամ այր ան-
ըզգամ և վատթար,
Անուն նորա էր Կտեսիպպոս և 'ի Սամոս
բնականայր.
Սա վստացեալ 'ի գանձ իւր հօրն 'ի մըրթե-
րեալ կարասին,
Եմուտ և ինքն 'ի յերախանըն տարփա-
ծուաց դշխոյին.
Եւ սա յայնժամ ձայն զայս կարդաց 'ի
յակմբին գոռոզաց.
“Վայր մի, ասէր, ինձ ունկըն դիք, ո՛
հոմանիք դեղապանծ,
Պատո և արժան է և հիւրոյս բաժին
առնուլ հաւասար,
Քանզի զրկել մեզ աստ ըզհիւրս Տելեմա-
քեայ չէ արդար.
Եւ արդ աղէ այդ ծերունւոյդ ձիր տաց
և ես հիւրական,
Զի և նա ինքն ընծայեսցէ և առ այր ոք
բաղնապան.
Կամ թէ ումեք 'ի ծառայից Ոդիսեւսեայ
դիւցազին”.
Այն ինչ ասաց, և առ երարձ նա 'ի խա-
նէն զոտն եզին.

Հարուստ բռնութեանն առ զկճղակն ձգեաց
 յՈդիս ուժգնակի․
Նա խուստովանեաց 'ի կողմն զգլուխ իւր
 Թեքելով վայրիկ մի․
Յայնժամ ժպիտ զՍարդոնեանն 83 մեծն
 Ոդիսէս արձակէր,
Կճղակն եղին եւ 'ի ձեռացն և կուռ ընդ-
 որմն հարկանէր։
Սրտմտեցաւ Տելեմաքոս և կշտամբէր
 սաստկապէս․
« Դու բախտացի ո՞ Կտեսիպպէ եղեր
 այսօր 'ի դերևս․
Ո՛չ կշռեալն հարեր 'ի հիւրն, զի նա
 խոյս ետ անվեհեր․
Ապա թէ ոչ, իմ սուր նիզակ արդ 'ի սիրտ
 քո վարսեալ էր․
Աստէն թաղումն առնէր քո հայրդ քեզ
 հարսանեաց փոխանակ․
Շատ է արդ շատ․ մի խեռեացէք ոք յՈ-
 դիսեան յայս մարդակ․
Յարբունս տիոց հասեալ եմ, չեմ արդ
 մանուկ անկատար․
Խելամուտ եմ և ճանաչեմ և զբարի և
 զչար։
Բայց է, զիա՞րդ մեք ժուժկացուք ձեր այդ-
 կերից դժնդակ․
Դուք հօտս յաղէք, զհաց ծախէք, 'ի
 սպառ քամէք զբաժակ․

Զի՛ մարդ կերքրեալ մին ընդ բազմաց սան-
ձակոծել ժըլատեսցի.
Եւ արդ շատ է, զիս այլ դըժել մի ոք 'ի
ձէնջ խեռուասցի.
Ա՛յ եթէ ձեր տապլին խորհուրդք ա-
րեան խմոյ ծարաւիք,
Լաւ ևս է ինձ արդ մեռանել. կամ յան-
դիման աւաղիկ.
Զի ոչ տեսից ես զանապատեհս, զարդոյ
հիւրոյն հարուածել,
Եւ ոչ տեսից ընդանաժշտաց ընդ քունապարին
աստ քարշել":
Այսպէս յայնժամ աղիեղերան լռեալք
նուագ ընդ երկար,
Մինչև ուրեմն Ադեղայոս Դամասսա-
րեանն եւ բարբառ.
« Ա՛ղէ, ով քաջք, մի ոք զարդխս այս
գեղեցիկ խորհրդոյն
Ընդդիմամարտ պայքարեալով ձայն ինչ
տացէ ապառում.
Մի՛ և մի ոք աստ հիւր հարցէ, մի ոք և
զայր ըղձաւոյ,
Որ միանգամ բնակեն 'ի տան մեծ գիւղա-
զին Ողիւսեայ:
Բայց ես արդ՝ բան Տելեմաքեայ և մօր
նորա դըշխոյի
Բան մի հեշտին բարբառեցայց, թէ հեշ-
տալուր լինիցի.

Ցորչափ ինչ դարձն էր յուսալի քաջին
այնմիկ դիւցազանց,
Չէր դանդաղելն ինչ անպատեհ, չէր այս
և ծանր հոմանեաց.
Քանզի խորհուրդ էր քաջամիտ կալ ըս-
պասել Ոդիւսեայ,
Եթէ ողջամբ նա յանկարծոյն գուցէ 'ի
տուն իւր դառնայ.
Սակայն զարդիս տռանց կարծեաց յոյ-
սըն հատեալ է դարձին.
Աղէ դու ե՛րթ, և Թելադիր լե՛ր արդ մօր
քում դշխոյին.
Թո՛ղ հարսնասցի այժմէն այսօր նա քաջի
առն աւագի,
Որ միանգամ շատ օժտաբեր առ 'ի վար-
ձանս լինիցի:
Իսկ դու 'ի գոյսըդ հայրենիս նմա վայե-
լեա՛ խնդագին.
Եւ Թո՛ղ քո մայրըն հրճուեսցի առ իւր
նորոգ փեսային »:
Զայն արձակեաց Տելեմաքոս. « Վեհն
Արամազդ ինձ վըկայ,
Վըկայ ադէտք և հօրն իմոյ, որ արդ 'ի
տար յիԹակայ, —
Թերևս կորեաւ, Թերևս շըջի Թափա-
ռական տարադէմ,
Ես ըզմօրն իմ, Ագէլայէ, ըզհարսանիսն
ոչ յամեմ.

Նա՛ տամ՛ նըրմա և յորդորակ , ուր և կամի
հարմնացի ,
Եւ յի՛նքն առցէ զառատ վարձանս զիւր
օժտագանձ փեսայի .
Աւլէինձ այժմիկ քա՛ւ յաստուծոյ . մա՛յր
զակամայն 'ի տանէն ,
Իբրև որդի ես զըժպըհի քա՛ւ բռնաբար
ո՛չ վարեմ ” :
Ասաց , և անդէն Պօղոսն ահեղ նիշ մա-
հագոյժ հոմանեաց ,
Յորդեաց ծիծաղ իմն անպայման , յու-
զեաց ծըփումն և խելաց .
Նդա 'ի յայտս իբր յօտարինս խեղկա-
տակեալք ծիծաղին ,
Եւ 'ի սպանդիցըն յաղելոց ըղձիս ար-
եամբ ուռէին .
Նաև արտօսրը դառնապէս աչք ձնշկին
եղկելեաց ,
Ոգին ըղկած դառն օրհասին գոյժ գու-
շակէր նախազգաց :
Պ՛ուժեաց յայնժամ բարձրաբարբառ
Թէոկլիմէնն այն գուշակ .
“ Բա՛բէ , զի՞նչ այդ , ո՞ խոլացեալք , ձեզ
կիրք իցէն զըժընդակ .
Գիշեր ահա ըստուերամած ձեզ ըզգըլ-
խովք ծածանի ,
Ծունկք 'ի ներքոյ ձեր բաբախեն , և լեալ
գիմաց մըլթա՛գնի .

Կոծ և զանչիւն զառըն զուժեանց, և ար-
տասուօք այսպէս լընուն,

Որմունք չքնաղք և միջնատունք արդ ցօյ-
տեցան 'ի յարիւն.

Այս է գաւիթն, ուր է և բանկն արդ 'ի խօլից
ուրուական,

Ուր հօյ ձեւպ տան և խըջանեն անդ 'ի խա-
ւարն Երեբեան.

Հայն եւ արաբին եւ տարապարհեմ երթող զերե-
նիցն ըղկայեան,

Եւ յանհողչալ 'ի մէջ, 'ի բաղ, ուղ ափե-
զերըք պատեցան »:

Ջայս նա գուժէր, և 'ի քըքին շառե-
շեալքն ողջոյն հասանէին,

Եւ զայս յայնժամ ձայն արձակեաց Եւ-
րիմաքոս յատենին.

« Ընչուշըւ, ով քաջք, հիւրդ այդ նորեկ
բանդագուշեալ ցընորի.

Աղէ ըղդա, ո՛ պատանիք, առեք տարայք
դուք առտի.

Թողէք 'ի մէր 'ի հրապարակն ելցէ դա
արդ ապառաքըդ,

Որ ըղչյաքեխս միրոյ ըղձաւիան օրհնակեաց
գիշերոյ »:

Կըկնեաց անդրէն Թէոկլիւմէն զուշակն
ասէր գիւցազնեաց.

« Զեմ ես կարօտ, Եւրիմաքէ, չէն ինչ
խնձ պէտք ուղեկցաց.

Են իսկ իմ աչք, են և ականջք, և ոտք Նորին հաստատուն,
Եւ ողջ համբոյն են իմ զարդիս միտք և խորհուրդք քաղցրոյն.
Արտաքս ահա ես ելանեմ, այլ գաւան հասցէ ձեզ արկած.
Եւ տարերցայ 'ի զրմբաղէն և ոչ մի ոք հոմանեաց.
Որք ըրբաբար էք կընճացեալք մեծն Ոդիսեայ 'ի յարկիս,
Եւ զարս ստարրս անկուշեալք և սատակէք ըղչարիս »:
Ասաց գուշակն, և 'ի շքեղ յարկէն արտաքս ելանէր,
Եւ երթ անկաւ առ Պիրէոս այր վանատուր հիւրասէր:
Բայց հոմանիքն այր ընդ ընկեր աչակաքաք անառակ,
Ծաղրածանակք նոքա զհիւրովք, կըծանէին զՏելեմաք.
« Չիք ոք և չիք, Տելեմաքէ, անդ զայս պարսէր ոմն այսպէս.
Չիք ոք յոռի և անաւագ ոք հիւրընկալ քան ըզքեզ.
Մին 'ի հիւրոյդ այր է անկած, թափառական և մուրիկ,
Ցոփառանջեալ և ծարաւի, և ցանդ ժըտի պարէնիկ.

Այր անճարատար և այր անգործ և պա-
կասեալ 'ի յուժի,
Եւ աստ նստեալ կայ աւազին իբր անպի-
տան բեռն երկրի ։
Իսկ է և միայն այր խելացնոր և կոկո-
զեալ վատ գուշակ ·
Քեզ արդ խորհուրդ տամ ես քաջին, և
ինձ անսա, Տելեմաք ·
Մեք ըղձոսա նաւազնացիկս 'ի Սիկի-
լեանց 'ի սահման
Առաքեսցուք անդ 'ի վաճառ և գլին տա-
ցեն բաւական ״ ։
Ըղբանս լըսէր Տելեմաքոս, յընչաց քե-
ռեալ զանց առնէր,
Եւ ըռուելեայն 'ի կողմն 'ի հայրն իւր
անքըրթիրթ ակնարկէր ·
Կազմ և պատրաստ սպասեալ մընայր քա-
ջադիպող հօր ժամուն,
Յորում գխմեալ 'ի հոմաննիս նա գուժա-
ցի զօր մահուն ։
Բայց տաճարին 'ի հանդիպոյ յիւրմէ
դահէն Թագուհին
Կայր 'ի գընին ոտնկըն դընէր ողջոյն բա-
նից ակըմբին ։
Իսկ հոմանիքըն յայժ խնծղալեցք ճաշ առ-
նուին համահամ,
Ճաշ մեծահաց, զի շատ զայն օր անդ-
պատրուճակք յաղեցան ·

Աւուր դառն ընթրիսնոցա յայնժամ քան
    ըղձըղժոխս դառնագոյն ,
Եւ ճաշ լեղի պորտաբուծիցն այն պագ-
    շոտից երամոյն ,
Գօտէպնդեալք և ժիրաժիրք պատրաս-
    տէին 'ի յարկին
Մեծ Դիցուհին այն ահաւոր և Ոդիսէս
    կորովին :



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԱ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Պենելոպէ ազդեալ յԱթենասայ, դաշն գնէ հոմանեաց հարսնախօսել ընդ այնմ՝ որ միանգամ բաւական իցէ քարշել զլայնալիճ հաստ զաղեղն Ոդիւսեայ, և զփքինն անցուցանել ընդ սահմանադրեալ օղսն կշխու : Տելեմաք յարդարէ զխաղն . և ինքն առաջին փորձ փորձէ զաղեղան և արգելանի 'ի հօրէն : Փորձ զայն փորձեն ապա և կէսք 'ի հոմանեացն, այլ վայրապար : Եւմէոս և Փիլետէս հաւատարիմք Ոդիսեայ ելանեն արտաքս 'ի սրահէն, զհետ նոցա ելեալ և Ոդիս, ծանօթս զանձնէն տայ նոցա . և ուսուցանէ նոցա զինչ առնել պարտ իցէ : Միւսանգամ փորձ 'ի նանիր զաղեղանն փորձեն հոմանիք . Անտինոոս յերկարաձգէ զդաշնաւոր խաղն 'ի վաղուեան օրն : Մտանէ 'ի ներքս Ոդիս, կամի և ինքն փորձել զփորձ մրցանացն, զդէմ ունին վայրապար հոմանիքն : Առնու զաղեղն, զննէ քաջ քաջ, լարէ հեշտաբար կորովի բազկաւն, և ընդ պայմանադրեալ օղամանեակսն թափ անցուցանէ առ հասարակ կշռանի, և սարսին հոմանիքն :



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԱ.

ԻՆԵՑՑ Թեւադէր Պենելոպեայ լինէր
յայնժամ Աթենաս ,
Հաստ զաղեղանն և զերկաթեաց կարգել
զօղիցն ըմբրցանս .
Մահահրաւէր խաղ հոմաննեաց ետ զայն
մրցանս զառնութեան ,
Եւ նախասկիզբն օրահասին նոցա 'ի տան
Ոդիւսեան :
Եւ ընդ սանդուղս Պենելոպէ բարձր-
աստիճանս իւր յարկին ,
Եւ գիրգ ձեռօքն առ զքաղջաթէք և զամ-
րակուռ բանալին .

Էր գեղեցիկ և ճարտարեալ էր 'ի նիւթոյ
պղնձեայ ,
Նաև դաստակ 'ի փղոսկրէ էր ագուցեալ
'ի նմա ․
Եւ և չոքաւ ընդ նաժշտաց 'ի յառա–
գաստն 'ի ներքին ,
Ուր մրթերեալ կային 'ի պահ գանձք
Ոդիւսեայ արքային ․
Ոսկի , պղինձ բազմապատիկ , և գործք
ճարտարք երկաթի ,
Եւ լայնալիճ կայր անդ աղեղն և կուռ
կապարճ փքնօք լի ․
Զայն հաստ զաղեղն և ըզփրքինսն ըզմա–
հահոտս 'ի Սպարտա
Վեհն Իփիտոս Եւրիտոսեան ձիր ըն–
ծայեաց Ոդիւսեայ ,
Երբ 'ի քաղաքն 'ի Մեսսենա այս դիւցա–
զունք քաջք կրկին
Հանդիպեցան 'ի տաճարի Որսիլոքեայ
քաջազին ․
Զի անդ չոքաւ մեծն Ոդիսէս , առ 'ի
բնակչաց Մեսսենայ
Ի պահանջել ըզսակ տուժին զոր հասու–
ցին Իթակայ ․
Քանզի ոչխարս երեքարիւր 'ի միասին
ընդ հովուաց
Հափափեցին 'ի յԻթակայ Մեսսենացիք
նաւադնաց ․

Արդ 'ի խնդիր այն վընասուն յերկայնաձիգն յայն ուղի
Հայրըն և ծերըքն յըղէն դեսպան զՈդիսն յայնժամ պատանի.
Սակայն խնդրէր և Իփիտոս անդ ըղձայիկս երկտասան,
Ոյց գտեցյիկք նաև Ջորիք կայծն ներքոյ, և կորեան.
Այլ մահառիթք եղեն նըմա երկտասան այն մատակք,
Յորժամ երթ նա առ մեծագործ քաջն Հերակլէս նահատակ.
Սա անդ ըղհիւրն, ո՜յ ապառում, ըսպան յայնժամ յիւրում տան,
Զոր ոչ աստուածքըն ահեցյին, և ո՛չ սեղանն հիւրական.
Իսկ ըղձայիկս սալատմբակս յինքըն տարաւ Հերակլէս.
Արդ Իփիտոս 'ի յայն խնդիր ետես յայնժամ զՈդիւսևս.
ԶԵւրիտոսին ըղհօրն իւրոյ շնորհեալ զաղեղըն հաստաբուն,
Զոր հայրըն ապա ձիր սեպհական եթող նըմա 'ի մահուն.
Իսկ Ոդիւսևս ետ սուր սուսեր, ետ և ըղտէգ զանարքն,
Եւ նոյա հիւրոյթք եղեն նոցա անդ առաջին և վերջին.

Բացան հանգիստ դուռք գեղեցիկք ըղ-
Թափին առեալ բանակութեան,
Եւ յառաջեալ 'ի վերնայարկն 'ի հրդա-
կայն եւ դղեկոյն.
Ուր և տապարք ամրածածուկք պատ-
մուճանաց 'ի գարուն.
Եւ ամփոփեալ 'ի մէջ նոցա կոյսն չքնաղ
ծորձք բուրեան:
Ձեռս կարկառեալ Պենելոպէ և զերծ
ղաղեղն 'ի սեպոյն,
Առ ընդ նմին ըզկուսաքոյլ և ըզպա-
տեանն ըզնորուն.
Նստաւ անդէն և առ ըղնա եդ 'ի վերայ
իւր ծնգաց,
Լայր. զառնապէս, և զլայնալիճն հառա
զարքայէն հոլանեաց:
Իբրև յագուրդ էառ դշխոյն 'ի գերաք-
սոսր 'ի կոծոյն,
Ցերևանին զալ հանմանեաց քայլեաց յա-
ռաջ, էջ 'ի տուն.
Նա 'ի ձեռին իւրում կալեալ զաղեղն ու-
նէր լայնալիճ,
Ունէր 'ի նոյն զաղատակամնգապարանդն մահա-
կէր փքնալից.
Ընդ հետ նորա ժիր աղախնեայք անդ բառա-
նայէն սակառի,
Ուր էր յերկաթ և 'ի պղինձ. այս են
մրցանք արքային:

Յորժամ ՚ի սրահըն հոմանեաց եհաս
   տիկնացըն տիկինն,
Եկաց այնպէս վայր մի առ սեամս հրաշ-
   շակերտեալ սրահակին.
Քօղազարդեալըն դշխոյին այտքըն ծած-
   կեալ ՚ի շարի,
Նորա շըքով նաժիշտք երկու կային աստ
   և անտի:
Ձայն արձակեաց Պենելոպէ. «Լուա-
   րուք ինձ արդ, հոմանիք.
Որ յայս տաճար զօր ամենայն մըխեալ դուք
   բուռն արարիք.
Հանապազօր ՚ի գինեըբուած պարապե-
   լով ՚ի հանդէս,
Ճոխացարուք ՚ի մեր յարկին, քանզի չէ
   մերձ Ոդիւսէս.
Իսկ բանութեանդ չիք առ ՚ի ձէնջ այլ
   պատրուակ գեղեցիկ,
Բայց զի տարփայք այր ըստ առնէ դուք
   զինն ունել հարսանիք.
Եւ արդ աղէ որ ձեր ըղձին ձեր մրցանաց
   հասեալ կայ,
Եա ՚ի մրցանս զաղեղն եդէց ըղլայնալիճն
   Ոդիսեայ.
Ո՛ դք ՚ի ձէնջ զայդ լայնալիճըն հեշտա-
   բար լարեսցէ,
Եւ ըղփըքինան կշռակի ՚ի քաջածիգ ՚ի
   բաղկէ,

Շնչառեալ ընդ օդսն երկոտասան թափ
համօրէն անցուցէ,
Ըզնա առեալ ինձ 'ի փեսայ մեկնիմ ես
յայս 'ի տանէ.
Տուն օթեվան ինձ կոյս հարսինս, տուն
հոյակապ հացալից,
Ձոր և անշուշտ 'ի քուն անդամ ես յե-
րազի յիշեցից »:

Ասաց դշխոյն և ետ 'ի նոյն հրաման քա-
ջին Եւմէի,
Տալ հոմանեաց ըղձայնալիճն, 'ի նոյն և
զօղսն երկաթի:
Առ Եւմէոս և ետ նոցա, սակայն ա՛ռք
իւր թանայլին,
Լայր անդամոր և փխլիտոս, ըղձէն առ-
սեալ զարբքայլին:
Ձայն յակն հարկ Անտինոոս և սրտմտեալ
ձայն կարդաց.
« Ա՛յ դուք գեղջուկք և անխմաստք խոր-
հիք միայն զաւօրեայս.
Ա՛յ չուառականք. զի՞ արտասուս արդ 'ի
յարկիս թափել ձեզ,
Եւ սրտաթունդ ըղդշխոյին զոգին շար-
ժել աղէկեզ.
Ո՞չ շատ արդեօք դա կարեվէր խացեալ
խոց է 'ի սրտին,
Իբրև անդարձ կորոյս դշխոյդ ըղատարփա-
լին զամուսին.

Բայց անդանօր Տելեմաքոս. « Ո՜վ քաջք,
զիս Արամազդ,
Զայն արձակեաց, քանզի է, անշուշտ եդ զիս
այսօր անիմաստ.
Մայրն իմ ուշիմ, ասէ, մեկնիլ և յօտա-
րին չուել տուն,
Եւ ես ամէն զծաղու եկեալ կերպ մա-
նուկ ըզբօսնում.
Արդ ածէ դուք, ո՛ հոմանիք ոչ ձեզ մըր-
ցանք այս եղան
Վասն կնոջ, ում չիք նըման 'ի սահմանին
Աքայեան,
Ոչ 'ի յԱրգոս և ոչ 'ի Պիւղ և ոչ յեր-
կիր Միւկենեա,
Ոչ յԵպիրոս 'ի սևահողն, և ոչ 'ի մէջ
Իթակա.
Քա՛ջ իսկ գիտէք. զի՞նչ պէտք իցեն ինձ
ներբողել ըզմայրն իմ.
Բայց ածէ դուք. մի պատրուակ մեզ զան-
դաղանք լինիցին.
Եւ մի լարել հասար աղեղանն արդ յամենա-
ցէ վատապես.
Օ՜ն ներքեցէք և ինձ փորձել ըզ լայնալիճն
յայս կրկէս.
Եթէ լարեմ, և ըզերկաթին Թափ ընդ եր-
կաթն արձակեմ,
Ոչ զիս ամէն մայրն իմ թողեալ և իւրն
ելցէ տարադէմ.

Մի՛ ամայի թողցէ զայս տուն, և մի՛ զոր-
    դին ցաւագին,
Որ 'ի մրցանաւն հայրենին ուժէ թերևս
    'ի բազկին »:
Բայն ինչ լռեաց, և յոտն եկաց և 'ի յու-
    սոյն զծիրանին
Առ եդ 'ի վայր, 'ի նոյն ըղսուր զիւր ըզ
    սուսերն առ նըմին.
Կարգ ըստ կարգէ առ նա ըզցեցալըն զօղա-
    ւորս 'ի ծայրի
Եւ նախ փորեալ փոս մի երկայն եդ հար-
    ըստեաց կշռակն.
Առեալ և հող կոխեաց զնոքօք. յակձկուս
    կայլին հոմանիք,
Զիա՞րդ քաջիկ զործ զայն գործեաց,
    զոր ընաւ տեսեալ չէր կանխիկ:
Զոքաւ ապա ինքն առ սեմովք, և անդ
    'ի բոյս զոտն եհար,
Եառ 'ի վեր ըղլայնալիճն և փորձ փոր-
    ձէր, և յուսայր
Քարշել ըղլարըն ալընդապէս հասա զա-
    ղեղանն հայրենի,
Եւ արձակել շեշտ ըզփըքինն անդ թափ
    ընդ օդսն երկաթի.
Երիցս անգամ ձիգըն թափեաց, և ընդ
    գիրկ իւր մըտանէր,
Երիցս անգամ և 'ի թափոյն նա 'ի դերևս
    ելանէր.

Իսկ *'ի նուագն 'ի չորրորդում երբ պինդ-
քարշեաց 'ի լարել,
Ի ձիգն որդւոյն անդուստ Ոգիս ակնար-
կելով զայն արգել։
Ընկաց ապա Տելեմաքոս, ձայն զայս կար-
դաց առեննին.
« Բամբէ, բամբէ. ես կամ անկած ողջոյն
եղէց 'ի կեանս իմ,
Կամ թէ գոլով դեռ պատանի եմ անվրա-
տահ յուժ բազկի,
Ես վերջացայց ես 'ի վանել զիմ ախոյեանն
'ի կռուի.
Արիք դուք, քաջք, որ էք քան զիս յա-
ւէտ հուժկուք 'ի բազկէ,
Փորձ փորձեցէք մեծ զաղեղանն և այս
մրցանքս յանդ ելցէ »։
Նա զայս ասաց, և զլայնալիճն առեալ
'ի վայր 'ի գետին
Եդ 'ի վերայ տախտակամած կուռ յա-
տակի տաճարին.
Արկ և ըզնետն 'ի գեղեցիկ մանեակն 'ի
ծայրին աղեղան,
Զոքաւ ապա ուստի յարեաւ և առ անդ-
րէն բազմական։
Հրաւէր յայնժամ ետ Անտինոս. « Արդ-
օ՛ն արի՛ք, դուք աջեայք.
Ըսկիզբն առեալ 'ի տեղւոջէն, ուր կայ
բաշխէ մատռուակ »։

Բան քո սաստիկ զոր ժայթքեցեր , բոց
'ի սիրտ իմ բորբոքէ ·
Զո՞ր օրահաս մեզ կործանեցս այդ լայնա֊
լիճդ աւաթեացէ ·
Թէ դու լարել ըղհաստ աղեղն յայս 'ի
մրցանս վերջացար ,
Նա՛ դու մօր քում գընա՛ մեզ դէ՛ր , որ
զքեզ երկնեաց հեքաբար ·
Եթէ յաղեղն , եթէ 'ի նետ քաջ ոչ ծնար
յարգանդէն ,
Բայց հոմանիքս այս հոյակապք արդ քա֊
ջաբար լարեսցեն ։։
Ասաց և ձայն տայր հրամանի այծապա֊
նին Մելանթեայ ·
« Արի՛ դու արդ , ո՞ Մելանթէ , և մեզ 'ի
տան հուր վառեա՛ ·
Ա՛ռ դի՛ր զաթոռ քո առ ընթեր և 'ի
վերայ ըզմորթ ա՛րկ ,
Եւ 'ի տանէ բե՛ր աստ փութով մեզ ըզ֊
ճարպոյն մեծ գնդակ ·
Թո՛ղ ջերասցի մեծ լայնալիճդ և կակ֊
ղասցի յօծմանէն ,
Փորձ փորձեսցուք առ 'ի լարել և մեզ
մրցանքս յանդ ելցեն ։։
Նոյն ինչ լուաւ Մելանթիոս , հուր բո֊
ցավառ բորբոքեաց ,
Եւ եդ զաթոռըն առ ընթեր և 'ի վերայ
ըզմորթն ած ·

Ընդ մեծ գնդակ առ ընդ ճարպոյն և երեր
անդ 'ի տանէն,

Եւ պատանիքն ընդայնալիճքն ջեռու-
ցեալ, փորձ փորձեն.

Անդ զաղեղամբքն հաստաձիգ առնեն
նոքա ելևել,

Այլ նուաղեալք 'ի յուժ բազկին դերևա-
ցան 'ի լարել:

Բայց չև 'ի փորձ մատեան մրցմանն Ան-
տինոոս, և Եւրիմաք,

Այք նախաթոռք 'ի հօմանիս, և 'ի յուժի
արք աւագք:

Պնէպք ինչ յայնժամ եառուն արանց Փի-
լիտոսի և Եւմեայ,

Եւ 'ի արահէն ելին արտաքս, ել և Ոդիս
ընդ նոսա.

Իբրև արտաքս քան ընդդրանդին և քան
ըղքակըն ելին,

Բան հեզաբար յայնժամ Ոդիս խօսէր
նոցա առանձին.

« Լո՛ւր Փիլիտէ, լո՛ւր Եւմէոս, խօսել
ինչ բան պատրաստ իցէ,

Եթէ լռել. սակայն խօսել ինձ արդ ոգիս
բուռն առնէ.

Եթէ յանկարծ աստ Ոդիսէս աստուած-
առաք գայր առ ձեզ,

Դուք զի՞նչ նորա 'ի զօրավիգ տայիք ար-
դեօք մեծապէս.

Թէ ոչ Ոդիս զայն հանդարտէր. «Սանձ
դուք լալեաց դի՛ք ձայնի.
Զի մի՛ ոք արդ ելեալ արտաքս, 'ի ներքս
ըզմէնջ լուր տարցի.
Արդ մտէ մեք մտցուք 'ի ներքս մի զհետ
միոյ, ես նախկին,
Դուք հետեւեալք կարգ և պատրաստ կա-
ցէք խմբում ներշանին։
Թէ համանկք ինձ զըլասցին զիմ լայնա-
լիճն և զկապարճ,
Արդ յայնժամ դու քաջդ, Եւմէ. ա՛ռ ըզ-
նոսա առ իս ա՛ծ.
Գնացեալ ապա փութանակի պատուէր
տաջիր կանանւոյն,
Զի փակեսցեն նոքա ըզդուրսն անձնե-
կաց պնդագոյն.
Թէ կոծ երբեք, և կամ ժխոր, ձայն 'ի
սրահէն լուիցեն,
Մի՛ և մի՛ ոք ելցէ արտաքս, այլ լուռ 'ի
ներքս գործեսցեն.
Իսկ ըզբակին ըզդրանցն ըզհող, քաջ
Փիլիտէ, յանձնեմ քեզ.
Աղխիւք փակօք կուռ փակեսցես նաև
սարեօք պնդեսցես »:
Ասաց Ոդիս և մուտ 'ի յարկն. և յիւ-
րոյինն աթոռակ
Ձգեաց անդրէն և բազմեցաւ. ըզհետ մը-
տին և ծառայք:

Գիտես խիկ քաջ. է մեզ այս օրս որ տօ-
նական քաղաքի,
Ապողոնին նուիրական արծաթաղեղն
արքայի.
Ո՞ր երբէք արդ ժըտեսցի առ 'ի լարումն
աղեղան.
Հապա առեալ դուք ըզզէն զայդ և դիք 'ի
վայր միաբան.
Դի՛ք նաև զօղսն զերկաթիս, և յա-
պահովս պահեսցին.
Քանզի ոչ ոք ինչ շոպեսցէ 'ի տուն մը-
տեալ Ոդիսին:
Բայց արդ աղէ, մեզ մատռուակ բաժա-
կակալ շուրջ ելցէ,
Մեք հասարակ հանցուք նուէր, խոկ լայ-
նալիձն աստ կացցէ:
Բայց Մելանթեայ պատուէր տաջիք.
ելցէ այգուն նա վաղըքալ
Եւ այծս ածցէ մեզ պատրուճակս ըզքալ-
ընտիրս հօրանաց.
Ըզթանձ զըստերցն 'ի ձօն հանցուք մեք
հաստաղեղն արքայի,
Առցուք ապա փորձ զաղեղանն, և մըցա-
նաց յանդ լիցի":
Հաւանեցան. առին Քարոզքն և ջուր
ձեռաց արկանեն,
Եւ պատանարանն անոյշ գինւով շուրջ
պատանիք ըմպակեն.

ժիր մատռուակք կարգ ըստ կարգէ
տան և բաշխեն ըմբաժակ,
Նոքա ձօնեալք նուէր հանեն և ճաշակեն
մինչ ցայգ:
Յամ առ Ոգիս բազմահնարն եա ձայն
յայնժամ ակըմբին.
«Արդ վայրիկ մի ինձ ունկըն դիք, ո՛ հո-
մանիք դշխոյին.
Զեւրիմաքոս ես աղաչեմ և զԱնտինոոս
դիւցազնեաց,
Որ ըզխորհուրդ զայս քաջադէպ ձեզ և
այսօր ճարտարեաց.
Դուք սաս զաղեղն ա՛ղէ թողէք, և բանն
յաստուած յանձնեսցի.
Եւ առ վաղիւն ինքնին աստուած կորով
տացէ, ում կամի.
Այլ տուք ինձ, քաջք, զայդ լայնալիճ,
և ես 'ի փորձ ինչ մտանեայց,
Ի փորձ տեսոց իմ ծերունւոյս, 'ի փորձ
ուժոյն իմ բազկաց.
Նոյն եմ արդեօք զինչ և երբեմն 'ի քաջ
առոյգն իմ յերան,
Եթէ արդեօք վատեաց զիս արդ կեանք
իմ թափառ և անդադարման»:
Ի բոց հատման և սրտմտեալք ողջ հոմա-
նիք սարսեցին.
Բա՛, մի՛ զուցէ ըզլայնալիճ զայն լարեսցէ
ծերունին.

Ձայն մեծաստան եւ Անտոնինոս. «Ո՜վ
հեգ այր դու և թախծած,
Ա՜յ հեծեծեցեալդ 'ի մէջ հիւրոց, ո՜յ ծեր
թափեալ 'ի խելաց.
Այդ ո՛չ է շատ, զի դու ճաշես ընդ ա-
ւաղակացն երամից,
Եւ՛ բաժանորդ ես անդամոյն, նաև ընդ
մեզ խոստակից.
Հիւր ոք աղքատ ո՞ կայ երբեք մեր բազ-
մակից ակումբի.
Անդուշտ ըզ ծերդ այդ վիճաստեալ հրա-
շէկ անողջդ այդ գինի.
Դուս և այլոց զեան մեծապէս շատից դար-
ձեալ 'ի յոգին,
Որք միաբանեալ յայն մոլեցան և կշտապակնդ-
քամեցին.
Դու այդ գինի և ըղձալիկն Նաւրիտոնի
խանդակարեաց,
Ցորժամ 'ի տուն Պերիթոսին եկն 'ի կո-
չունս Ղափիթեայց.
Զի նա անողջն գինեհարեալ և 'ի չարիս
շամբշեցաւ,
Արտաքսեցան դասք դիւցազանց ընդ Պե-
րիթեանն ընդ յարկաւ.
Յարձակեցան յՆաւրիտոն և 'ի յարկէն
վարեցին,
Եւ զքթունսն, նաև զականջսն 'ի սուր
յերկաթ կարեցին.

Նա խեղանդամ չուառացաւ և Թափե-
ցաւ 'ի խելաց,
Եւ կորակոր զարժանահատն յանձին տա-
նէր պատուհաս.
Յայնժամ Պարկաց և Ղամփթեայց բոր-
բոքեցաւ գոռ մարտին.
Սակայն կանուխ տուգանեցաւ թանգա-
գուշեալն 'ի գինին:
Ընդնայնն և քեզ աղէտ գուժամ, եթէ լա-
րես զլայնալիճ,
Եւ զօրավիգ 'ի քաղաքիս գտցես անձինդ
և ոչ ինչ.
Ի նաւս 'ի սեաւ յղեմք ըզքեզ մեք յԱ-
քեռոս 'ի յարքայն,
Այն որ հարուածն է աշխարհի. և դու
չելցես ողջանդամ.
Նիստ, արբ, ով ծեր, և մի 'ի մէգ պայ-
քարեսցիս պատանեաց ".
Գեննելոալէն լուաւ ըզ սասան, և զՆոմփ-
նոս կշտամբեաց:
" Ընտխնոէ, այդ ծերունիդ հիւր է որ-
դւոյս, այլ օտար.
Եւ բուռն առնել մերոց հիւրոցն ոչ է ար-
ժան և արդար.
Կարծես Թերևս, եթէ այդ ծերդ 'ի քա՛նզ
ամուրն 'ի բազկէ
Ըզլայնալիճըդ լարելով առեալ 'ի կին զիս
ածցէ.

Բայց և ոչ ինքն յայն ինչ խորհի, քանզի
  գործ է դժպրհի.
Եւ որք 'ի ձէնջ 'ի յայդ պատճառս մի
  Թախծեսցի 'ի սրտի»:
Եւրիմաքոս կրկնեաց առ Նա. «Լո՛ւր
  ինձ, դշխոյդ քաջուշիմ.
Ոչինչ խիթամք, եթէ այդ հիւրդ ըղջեղ
  ածցէ ամուսին.
Եւ ոչ անգամ ինչ յերազել ըղ բանդ ար-
  դեօք արժան է.
Այլ մեք խիթամք 'ի մարդկանէ և կանա-
  նւոյն 'ի լեզուէ.
Թերևս յոյն մարդ մեզ պարսեսցէ ոք
  վայրախօս 'ի լեզուէն,
Ա՛հ արք անկածք մեծ դիւցազին պերճ
  ամուսնոյն տարփացին.
Եւ այդ անկածքդ ըղլայնալիճն առ 'ի
  լարել յետնեցան,
Իսկ հիւր աղքատ ոք եկամուտ դիմա-
  դրաւեաց 'ի մրցման,
Լարեաց հեշտին, և թափ կըշիռ անցոյց
  ընդ օղան երկաթի.
Զայս պարսեսցեն, և մեզ յապայս առակ
  լիցուք խուժանի»:
Ընդդէն դշխոյն կրկնեաց ուշիմն. «Իմ
  ո՛ւնկըն դիր, Եւրիմաք.
Աւա՛, զո՞ր շուք 'ի խուժանէն առցէ այր
  ոք հացկատակ.

Ո՞չ դուք ըղձուն զառըն քաջի անտ՛ վայ-
րապար ըսպառէք,
Եւ նըշաւակ անձամբք զանձինս ո՞չ դուք
արդէն առաւէք.
Ո՞չ և այդ հիւրդ այր է աւագ, այր քաջ-
ամուր 'ի յանձին,
Նաև պանծայ հայր իւր ունել զոք 'ի զար-
մէ քաջածին.
Օ՞ն արդ առեալ, թողէք տեսցուք. ըղ-
լայնալիճ՞ն տուք ծերոյդ,
Եւ ես խոստումըն հաստատուն կռեցից
դըմա, բան անսուտ.
Եթէ լարէ, և շուք նըմա փառօք նաւթ-
ճէ Ապողոն,
Ես ձորձ զանձամբն արկից նըմա և տեբճ
խըլայ և բաձկոն.
Տաց սուր սըլաք նըմա 'ի զէն վանել ըզ-
շուն, ըզմարդիկ,
Նաև սուսեր տամ երկսայրի, կապեմ ո-
տիցն և կօշիկ,
Եւ առաքեմ ըզդա յերկիր, ուր միան-
դամ փափաքէ ».
Այն ինչ ասաց, Տելեմաքոս ձայնեաց պա-
մայրին և ասէ.
« Զայդ լայնալիճ, անուն մայր իմ, յԱ-
քայեցիս ես միայն
Ո՛մ և կամիմ տամ զայն 'ի ձեռն ; ում
և կամիմ զըլանամ.

Ոմն 'ի դասէն 'ի դառողիցն ամբարձ ըղ-
ձայնն և լռեաց․

«Ո՞ւր դու տանիս ըղձայնականդ ո՛ւր, ո՜յ
ապուշ խոզարած․

Ընկեց շարք շանց, զոր առ խոզեանըն
սընուցեր, դեշադեշ

Ա՜յ սինլքոր և այր անկած, արդ գոշեա-
ցեն դառնապէս․

Եթէ արդեօք մեծն Ապողոն է մեզ դար-
դիս աջակից,

Եւ հովանի ամպածածուկ կան մեզ դա-
սակք անմահից»:

Սարսափեցաւ անդ Եւմէոս, և եդ զա-
ղեղն 'ի տեղին,

Լռեալ զբազմաց 'ի համանեաց ձայն մե-
ծաստաստ 'ի յարկին:

Յարեաւ անդուստ Տելեմաքոս, և սպառ-
նալեօք ձայն կարդայր․

«Քեզ, ո՛մն և է հնազանդ լինել չէ լաւ
Ե՛ւմէս, յառաջ տար․

Երնէր մի զքեզ քարկոծելով ես վարե-
ցից յագարակ․

Այո՛ քան զքեզ եմ մանկագոյն, սակայն
ուժով եմ աւագ․

Աւա՜ղ ո՞ տայր ինձ, թէ ուժաւոր ես արդ-
այնչափ լինէի,

Որչափ ինչ աստ դասք համանեաց համա-
խըմբեալք 'ի յարկի․

Օ՛ն և ա՛ռ գինք. ես ճոխաբար յայնժամ
'ի մեր տաճարէն
Զոր կորակոր արտաքսէի. քանզի չարիս
հայթայթէին »:
Լուան ըղբանն, և ընդ Եւմէս անդ 'ի
քըրքջանըս հատան.
Իսկ ակն ածեալ Տելեմաքեայ, հանդար-
տեցին 'ի ցասման:
Ողայնալիճն յայնժամ Եւմէս բարձեալ
տանէր 'ի յարկին,
Եկաց հանդէպ Ոդիսևսեայ, եդ զայն 'ի
ձեռս դիւցազին:
Գնացեալ ապա կոչեաց առ ինքն և ըղ-
դայեակն Եւրիկլէ.
« Քեզ, քաջուշիմըդ Եւրիկլէ, Տելեմա-
քոս պատուիրէ.
Արէ՛ փութով և քաջամուր փակեա՛ ըզ
դուրս ըղյարկի,
Եւ թէ կանանց կոծ 'ի սրահէն կամ աղա-
ղակ յունկն հարցի,
Մի՛ և մի՛ ոք ելցէ արտաքս, այլ լուռ 'ի
ներքս գործեսցեն ».
Նա զայս ասաց. և հայ ընդ ճեպ ար-
գիլնք ողջոյն բանքն եղեն:
Վազեաց պառաւն ողջոյն փակեաց ըղ-
դուրս արձակ սենեկաց.
Իսկ Փիլիտոս սրացաւ անդէն և լռե-
լեայն ել արտաքս:

Զօքաւ և նա փակեաց ըզդուռս զամրա֊
ծածուկ ըզդաւթի ,
Եգիտ պարան ըզնաւականն անդէն ՚ձը֊
գեալ ՚ի բացի •
Էր այն պարանն հիւս բիբղոսեան , նո֊
վաւ պրկեաց պնդապէս •
Եմուտ ՚ի ներքս , էառ զաԹոռն , հայէր
անքԹիԹ ՚յՈդիսէս ։
Զաղեղն յայնժամ առեալ Ոդիս զննէր
՚ի վեր և ՚ի վայր ,
Եւ շրջշրջէր զայն ՚ի ձեռին և տայր շօշափ
մանրաբար •
ԵԹէ արդեօք կուռ այն եղջիւրք ճարակ
որդանց լեա՞լ իցեն ,
Երբ գեգերեալ տէրն աղեղան կայր ՚ի
բացեայ ՚ի տանէն ։
Յայնժամ մի ոմն ՚ի հոմանեաց ակնար֊
կելով առ ընկեր ,
« Անշուշտ , ասէր , դա աղեղանց է քաջ
ներկուռ անվեհեր •
Այդ ծերունւոյդ կամ առ տընին հաստ
աղեղունք դոն նըման ,
Եւ կամ Թէ ինքն ՚ի յայդպիսեաց ճար֊
տարեսցէ առ յապայն •
Տեսէք իսկ քաջ , զինա՞րդ այդ հիւր բազ֊
մաչարչար այր Թափառ
Էառ ՚ի ձեռն ըզլայնալիճն , մանըր զըն֊
նեաց վեր ՚ի վայր » ։

Իսկ և այլ ումն 'ի բազմելոց բան բարբա-
ռէր այսպիսի․

« Թող լարելովն այդ ծերունիդ, Թող
մեծապէս օգտեսցի »:

Բայց խորագէտըն Ոդիսեւս յորժամ զա-
ղեղըն հաստատաձիգ

Առ և կշռեաց և վեր 'ի վայր ետես զըն-
նեաց զայն քաջիկ,

Զոր օրինակ այր երաժիշտ, և այր ներ-
հուն քընարին

Դաշնակելովնա երկուստեք ըղկուռ զա-
ղիս ոչխարին,

Նորոգ սեպոյն 'ի պըտուտակաց հեշտին
ձգտէ նա ըզլար,

Նոյնպէս լարեաց և Ոդիսեւս ըզլայնալիճն
հեշտաբար․

Ապա և փորձ ըղկուռ լարին փորձէր
ձեռամբըն իւր աջեան,

Լարըն ճայթեաց և զիւր հնչէր, ձայնի
ծիծռան հանգունակ:

Լուան սեղեխքն, յապուշ հարան և Թախ-
ծեցան մեծապէս,

Գոյնք երեսացն առհասարակ գոյն շըրջե-
ցան 'ի պէսպէս․

Որոտընդոստ ձայն ետ Դիոս, և էր
հրաշից այն նըշան․

Լուաւ Ոդիս յոյժ ցնծացաւ, զի ձայն
ազդեաց Զըրուանեանն:

Նա փըքին մի երեքթեւեան, որ անդ զատ
կայր 'ի սեղան.
Իսկ այլ փըքինք կային ամփոփ զօդ կա-
պարձին 'ի դարան.
Այն են փըքինքըն դառնութեան, զորոց
ընդ փոյթ ըզճաշակ
Էր հանդերձեալ 'ի ճաշակել խեռ հո-
մանեացն այն դասակ:
Ընդ գիրկն եմուտ Ոգիս փըքնամն յիւր
աթոռոյն բազմոցէն,
Ընդ խաղն ըզլարըն պինդ քարշեաց 'ի զօ-
րաւոր պըտղանէն.
Ընդ առաջին շեշտեալ ընդ ծակն, և հետ
ընդ հետ կշռակի
Թափ արձակեաց նա ըզփըքինն ողջոյն
ընդ օղսն երկաթի.
Ձայն ետ յորդին. « Տեղեմաքէ, արդ ոչ
յամօթ զքեզ արար
Այս հիւրդ 'ի քում նստեալ 'ի տան իբրև
ըզհիւր վայրապար:
Թափ 'ի Թիրախն ես աւադիկ կըշիռ
անշուշտ գործեցի,
Եւ 'ի լարել ըզլայնալիճն ես ձիգն ոչինչ
թափեցի:
Կորով բազկիս է տակաւին 'ի պընդու-
թեան իւր ողջին,
Մի՛ զիս ուրեմն այլ ծոխաբար այդ դըժ-
ձեսցեն հոմանիք:

*Եւ արդ ժամ է, մինչ աւուր կայ, աւա֊
գանւոյդ ընթրելոյն,*

*Հա՛պա առցին երգք և քնարք. զի այս է
զարդ սեղանոյն »:*

*Այն ինչ ասաց, և խորագէտն յօնիւքն
որդւոյն ակնարկեաց.*

*Արագ անդէն և Տելեմաք ըզսայրասուր
սուրն էած:*

*Առեալ 'ի բուռն այն քաջորդին և զհաս֊
տակուռըն զաշտէն,*

*Մօտ յաթոռ հօրն եկն և եկաց 'ի զարդ
հրափայլ և 'ի զէն:*



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԲ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Սկսանի Ոդիւսէս անհեղաղօր զմեծ կոտորածն հոմանեաց, յԱնտինոսէ արարեալ զսկիզբն. և ծանօթս տայ զանձնէն. Եւրիմաքոս հնարի 'ի հաշտ ածել զնա. խուժեն հոմանիք յՈդիւս. սպանանի և Եւրիմաք աղեղնահար յՈդիսեայ: Տելեմաք տապաստ արկանէ զԱմփինոմ: Ոդիս զինավառի, և զինավառէ զերկուս 'ի հովուաց իւրոց: Կոտորած շեղջաշեղջ հոմանեացն: Աթենաս 'ի կերպարան Մենտորի քաջալերէ զՈդիս, և Եգեան վահանաւն խուճապեցուցանէ զհոմանիսն: Ապրին միայն Փեմիոս քերթող, և Մեդոն քարոզ: Մեղանչական կանանին կրեն արտաքս զդիակունսն, ապա պատուհասին և նոքա: Ոդիս հրով և ծծմբով մաքրէ զտունն. և զպարկեշտ կանանին կոչէ առ ինքն, և կատարեն տօն ցնծութեան:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԲ.

ՅԱՐԵԱՒ յայնժամ զերծ Ոդիսեւս ըզցըն֊ցոտեան 'ի յանձնէն,
Ապա հանդէպ 'ի մեծ 'ի սեամն ել և վա֊զեաց 'ի վայրէն.
Ունէր զաղեղն և ըզկապարճ ըզփքնալից 'ի ձեռին,
Անդ առ ոտիւքն արկ ըզփըքինան և ձայն կարդաց ամբոխին.
“ Բազմամբռանդ մրցանքդ, ո՜վ քաջք, ահա աւին ըզկատար,
Արդ նըպատակ ես զայլ փորձեմ, զոր այլ ոք այր ցարդ չեհար.

-Եթէ ինձ փառս տայցէ Փերոս քաջ դիւ-
ցազն այն արքայն »։

Ասաց, անդէն և յԱնտինոս փրքին կըշ-
ռեաց դառնութեան.

Նա ընդ ըղձքնաղ ըղձաշխուրանն առնոյր
յայնժամ 'ի ձեռին,

Էր այն ոսկի և երկանկնեան, խնդրէր
ըմպել ըղձկինին.

Ընդ միտ երբէք նա զդառնութեան զիւր
օրահասն ոչ յածէր,

Քանզի և յայն 'ի բազմախուռն յերախա-
նին ո՞ կարծէր,

Եթէ մի ոք թէպէտ և այր հաստատահա-
րուստ 'ի բազկի

Ցաւանկնելով յանձնապաստան մահ խա-
ւարին դուժասցի։

Կըշռեաց ըմպերոյն Ոդիսէս, եհար ընդ
դուռն ըմբանին,

Եւ ընդ փողոտւկ ընդ պարանոցն 'ի թափ
անցոյց ըղփրքին.

Խորտակեալ 'ի կողմն և դաշխուրանն անդ
անկանէր 'ի ձեռաց,

Ցայտեաց անդէն և ընդ ռնգունս յոր-
դահոսան բուղխ արեանց.

Դոփեաց ոտիւքն հար ըղձեղանն թա-
փեաց ըղխահան 'ի գետին,

Եւ հացն և միսք խորովածոյք ընդ առա-
ժոյժ զանգէին։

Ընկաւ անդ այրըն դիտապաշտ, զահի
հարեալք խռովեցան.
Ցոլըն կացին առհասարակ, ձայնք և աղ-
մուկք յուզեցան.
Խուճապեցան. ընդ կուռ որմոցն
շուրջ հայէին հասարակ.
Ոչ գոյր կախեալ անդ ոչ տապար, և ոչ
գեղարդն, ոչ նիզակ.
Զայրագնեցան, և լի ցասմամբ կշտամ-
բէին զՈդիսեա.
« Հիւր, քո արարդ է քարուական. դու
նետ 'ի մարդ արձակես.
Ընդ մեզ, չար ծեր, չէք յայլ մրցանս
այլ չէք քո մասն և բաժին,
Նա՛ քեզ առ դուրս կայ աւադիկ ժամ
դառնութեան օրհասին.
Զայր դու հարեր, զայր քաջ աւագ
յԻթակացւոց պատանեաց,
Արդ ձեպ ընդ ձեպ կուր գիշատանց
արկցիս դու աստ անդեղաց »։
Զայն մեծասաստ կարդան նոքա. քանզի
ակահք չէին բանին,
Գործ վրիպական և ակամայ զառն ըն-
հարուած կարծէին.
Զայն ինչ չամբշեալքըն մրտախաբք չէին
տակաւին խելամուտ,
Եթէ ըմպաւից զառն օրահաս դուժայր
նոցա մօտալուտ։

Յայնժամ Ոդիս զանձն իւր անհեղ ցոլա-
ցուցեալ 'ի Նոսա.

«Ա՛յ շունք, ասէր. կարծէիք զիս խոպա-
անդարձ 'ի Տրոյեայ.

Պատեալ ըզտուն իմ ծախէիք, և զաղախ-
նեայս քարշէիք,

Եւ առ իմով կենդանութեամբս իմ ա-
մուսնոյս տարփայիք.

Դուք ոչ ցասման ինչ անմահից ո՛չ
ժանտք, երբէք ակն ածէք.

Եւ ոչ մարդկան ինչ բասրանաց ո՛չ
լըրբք, երբես արարէք.

Արդ ձեզ անշուշտ առ դուրս հասեալ
կայ օրահաս դառնութեան».

Նա զայս գուժեաց. և հասարակ 'ի գոյն
դարձան 'ի դալկան։

Ա՛յր այր 'ի շուրջ տագնապեցաւ իւր
փախստեան վայր խնդրէր.

Միայն յայնժամ Եւրիմաքոս եկաց միջ-
նորդ և ասէր.

«Եթէ Ոդիսևս Իթակացի աստ արդարև
հասեալ կաս,

Իրաւացի են ողջոյն բանքդ և արդար է
պատուհաս.

Քանզի և շատ խոհեմականք եթէ 'ի քոյ
յայս տաճար,

Եւ թէ 'ի քոյ 'ի յագարակս գործք գոր-
ծեցան անպատկառ.

Սակայն բնաւից այդ խոհերից, այր որ
եկաց 'ի պատճառ,
Անափինոս, կայ աւադիկ աստ դիտա-
պաստ նետահար.
Նա էր սադրիչն, և չէր այնչափ նա հար
սանեացն 'ի տարփման.
Նա յոյլ խորհուրդ մըտաբերէր, սակայն
արգել Զըրուանեանն.
Թագ յԻթակէ խնդրէր կապել աստ 'ի
յերկրիս քաղաքէր,
Եւ զա 'ի մահ քոյ զաւակին զաղտնորդա-
դայթ դարանէր.
Արդ նա այժմէն զարժանահասն առեալ
ըզմահ տապաստ կայ,
Դու արդ 'ի քոյ 'ի ժողովուրդ խնայեա՛
ո՛վ քաջ, և գըթա՛.
Ըզքեզ ահա համաշխարհաւ մեք հաճես
ցուք 'ի տուժի,
Որչափ ինչ աստ շուայտեցաք վնասեալ
'ի քում 'ի յարկի.
Քսանից եզանց տոյժն եղիցի զոր քեզ
այր այր տուժեսցուք,
Նաև ոսկի նաև պղինձ քեզ, քաջ, կըշ-
ռով չափեսցուք.
Մինչև խաղաղ սիրտ դիւցազինդ զըւար
թացեալ բերկրեսցի,
Որ բոցավառ ցասմամբ յառաջ բորբոքե-
ցաւ յիրաւի »:

Տեղդք աչաց խաղաց Ոդիս ․ « Եւրիմա-քէ, ձայն կրկնեաց,

Թէ և ողջոյն տայցէք ինձ ասա ընդ հայրե-նին ձեր ընդ գանձ,

Ուրչափ ինչ արդ կայ 'ի ձեռին, և կամ այլուստ բարդիցէք,

Ոչ և այնպէս ես դըլլացայց 'ի հարուա-ծոյն, ոչ երբէք ․

Մինչև ողջոյն, մինչև խապաւ ընդ վրէժ լուծցեն հոմանիք ․

Բայց երկու ինչ ձեզ աւաղիկ ․ հա՛ ընտ-րեցէք զոր կամիք ․

Կամ մարտ ընդ իս եդեալ կռուել, և կամ խոյս տալ յորհասէն ․

Բայց և ոչ զոք 'ի հոմանեացդ արդ անձ-նապուր ոչ կարծեմ »։

Ընդդոդանի հարան նոքա, և սրտատռուչք ծունկք լուծան ․

Բայց և յայնժամ Եւրիմաքոս ձայն ար-ձակեաց միւսանգամ ․

« Բա՛րէ անշուշտ, ո՛ բարեկամք, զա յաղթ բազկին դուռ ոչ տայ,

Քանզի առեալ ընդլայնալիճն յանքայթ առ սեամս անցեալ կայ ․

Ար է փըքենդք ստատկանդարանն, և մինչև ոչ դատարկէ,

Ոչինչ դըլլայ, և զխտատատատ ողջոյն ընդ մեզ արկանէ ․

Հօտաղս 'ի մարգս, 'ի մայրս, ուր քաղցր 'ի
պատենից սուր ածէք.
Ընդդէմ փըրփրենայրդ մահահոտ ձեղ ընդ-
սեղանս Թումբ տուէք.
Հրասակ Թափով բուռն 'ի վերայ յար-
ձակեսցուք մեք ողջոյն,
Եւ 'ի դրանդեաց վանեալ ընդդա դրդուե-
ցուսցուք 'ի սեմոյն.
Վաղեալք ապա մեք ընդ տառանն, գոյժ
անդ հարցուք և շըշուկ,
Եւ ընթեացին մինչև խապառ դորա փըր-
քինքն և բաղուկ »։
Այն էինչ ասաց, և սայրասուր սուսեր
ձգեաց երկսայրի,
Եւ յՈդիսևս Թափ յարձակեալ ձայ-
նիւ դոչէր սոսկալի.
Ձգեալ էառ Ոդիս, և առ ըստեռանիցըն փըք-
նաձիդ հար 'ի լանջ,
Եւ կըշռակի չեչեալ 'ի լեարդն երիք-
Թեւեան նետ մխեաց.
Զօրհասականն էառ ըղլերն և 'ի ձեռաց
սուրն անկաւ,
Ի գլխ 'ի գլխ ընդսեղանով գըլձեալ յերկիր
հոսեցաւ.
Ոտքոյն ընկղաշխան և ընդ բաժակս անդ 'ի
գետին արկանէր,
Ինքն ընդ կառափն իւր ընդգետնեալ և 'ի
յոգնոցըն պարզէր,

Եհար զաթոռըն սատակապէս, հար տա-
պալեաց աքացի,
Եւ պատեցաւ աչաց Նորա մէգ յաւէ-
ժեան խաւարի:
Ցնայս անդուստ Ամփինոմոս ըղձաւք
մերկեալ դիւցազըն,
Վազեաց արձակ առ 'ի սեմոյն վանել
ըղձա մոլեգին:
Ախապարեաց Տելեմաքոս, եհար ըղձա
ընդ քամակ,
Եւ առ 'ի լանջըն յայնկոյս Թափով ան-
ցուցանէր ըզ Նիզակ.
Նա հար շըռինդըն, անկաւ տապաստ,
զարկ ըզգըլուխն ըզգետնի,
Վերջանեցաւ Տելեմաքոս եԹող ըզ-
տէգըն 'ի մարմնի.
Քանզի երկեաւ, գուցէ կըքեալ Թե[illegible]
Նիզակ քարշեսցէ,
Գուցէ 'ի Թիկանց հարցէ ոք տէգ և կամ
յայտնի սուր ածցէ.
Վազեաց և եկն ինքն հաւասըրեալ և ձայն
առ հայր իւր կարդայր.
« Եա քեզ, ով հայր, Նիզակ կըրկին ածից
փութով և ասպար.
Ածեալ ամուր և սաղաւարտ քեզ քաջ
'ի քունս յարմարեմ,
Նաև զիրանս իմ վառեցից ձեպով 'ի զրահ
և 'ի զէն.

Զինավառեմն և զՓիլիպոս, զինուորեցից և զՆումեա,
Զի զէն առնուլ 'ի շատայ ժամուս մեզ արդ պէտք են մեծապէս”:

Զայն ձեւով ընդ ձեւով կրկնեաց Ոդիս.
“Հա՛, օ՛ն արի՛ և փութա՛,
Ցորչափ կապարճս իմ փքնալից ամրապահեստ պաշտպան կայ:
Գուցէ դողքս ընդմնացեալս զիս վանեացեն 'ի սեմոյն”.
Ասաց. ձեւով ետ Տելեմաքոս 'ի լուր ծնողին բարբառոյն:
Գրնայր սուրհայր 'ի յառաջասան հարուստ զինուցն 'ի գարան.
Առ ոսկ նիզակս, նաև քառեակ երարձ անտի ընդվահան.
Եդաւ անտի և սաղաւարտ չորս զինապանծ պղընձի.
Ցարեաւ վաղէր, և առ հայր իւր արացեալ եհաս շեշտակի:
Անդ ինքն յառաջ պղնձավառ ծածկեաց ողջոյն զիւր իրանն,
Ըստ նմանէն և պաշտօնեայքն 'ի զէն 'ի վարդ վառեցան.
Բաղկ ընդդիւցազըն Ոդիսեաւ եկին նոքա և կային,
Մինչ նա անդուլ գոռայր շեշտէր զերկքթեւեանս կապարճին.

Ցանդ ըղձի ոք 'ի համանեաց տապաստ
ձգէր յիւրում տան ,
Մինչև սեղանիք մի ըղձիւ անդ գետա-
պաստ չեղջեցան :
Իսկ փոքրիկք բազմաւեցան աղեղնաւոր
որքային ,
Ըղձայնակիցն առ և յեցոյց նա առ ոտ-
մովք տաճարին .
Այսպ վահան քառասնակեան առ ըղձիւ
կամբքն և երբարձ ,
Եւ յաղթ 'ի գլուխն առեալ գրնէր կառ
սաղաւարտ գխսապանծ .
Վերջքն 'ի ծայրէն փողփողեալ տատա-
նէին ահագին .
Նաև կրկին ուէգ պղընձի առ և կալաւ 'ի
բռունն :
Ի հոյակապ սրահին 'ի ծայր անդ նրբու-
ղի կայր դռնակ
Բացեալ ընդ որմըն համատամուր կառ-
տախտակօք ամրափակ .
Ի յայն դռնակ կարգեաց Ոդիս ըղբօրն
Եւմէս պահապան .
Զի նա մօտ կայր , և 'ի վայրի անդ մի մի-
այն էր կածան :
Դիմեաց անդուստ Ագելայոս և ձայն
կարդաց ժողովին ,
« Ա՛ղէ , ով քաջք , գնացեալ 'ի մէնջ ոք
տիրեսցէ դռնակին .

Գոյժ արտաքոյ տայցէ անդուստ առ ժողովուրդն ուժգնակի,
Եւ նետաձիգ այդ վերադիր բաղուկն 'ի մէնջ կարճեսցի »:
« Չէ մարթ, ով քաջդ Աղեղայէ, Մելանթիոս բարբառէր,
Չիք ինչ հընար, զի դուռք դաւթին կան անդ կարի առընթեր:
Նեղ և անձուկ է յոյժ կածանն. և թէ կացցէ անդ այր մի,
Նա ըզհազարըս վանեսցէ, թէ այր իցէ կորովի.
Բայց ա՛ղէ քաջք դուք ա՛նդ կայցէք, և ես մտեալ անարգել
Ի յառագաստն, անդուստ զէն զարդ ածեմ ես ձեզ 'ի վառել.
Քանզի անշուշտ ոչ այլ ուրեք ըզզէն և զարդ ըզյարկին,
Այլ անդանօր ժողովեցին մեծն Ոդիսեւս և որդին »:
Ասաց, վաղեաց Մելանթիոս 'ի յառագաստն Ոդիսեան,
Ել ընդ սանդուղսն աշտարակաց և առ վահանս երկոտասան,
Նոյնչափ և տէգ, նոյնչափ և կուռ բարձ սաղաւարտ գիսապանծ.
Առեալ վաղէր, և հապ ընդ հապ ետ զայն 'ի ձեռս հոմանեաց:

Ետես Ոգիս եւ խռովեցաւ, եւ ծունկք
    լուծան դիւցազին.
Ետես զքնեալս, որք ընդնովաւ տեգղս եր-
    կայնս ճօճէին.
Յայնժամ զձեռնարկ զիւրոյ մարտին նա
    տեսանէր դժնդակ.
Դարձաւ կարդաց ձայն առ որդին. «Ա՛ղէ
    դու լո՛ւր, Տելեմաք,
Անշուշտ ոք մեզ 'ի մեր յարկէն 'ի կանա-
    նւոյն 'ի դաւէ
Ընդդիմամարտ մեզ մարտ դոռայ կամ
    թէ ինքնին Մելանթէ »:
« Ես ինքն, ո՛վ հայր, ես ինքն յանցեայ,
    Տելեմաքոս խօսեցաւ.
Ինձ մեղ դիցես, ես վրիպեցայ. գիտեա՛,
    այլ ոք ոչ մեղաւ.
Զառագաստին թողի ընդդուռն անհո-
    գացեալ թերաբաց,
Եւ վրիպակիս իմում եկաց անդ ոք լրտես
    իրազգաց:
Այլ օ՛ն արի, ընդդուրս յարկէն փութա՛
    փակեա՛, քաջդ Եւմէ.
Եւ կա՛ց անդ դէտ, եթէ արդեօք ոք 'ի
    կանա՛նց զայդ սադրէ,
Եթէ արդեօք, զոր ես խիթամ, Մելան-
    թիոսն է պատճառ ».
Զայս ինչ այսպէս 'ի շառաչ ժամուն անդ
    զրուցէին այր ընդ այր:

Բայց Մելանթոս 'ի նոյն 'ի յարկին եւ
միասանգամ փութալէս ,
Զէն զարդ առնուլ, տանել անդրէն .
դիտեաց յայնժամ զայն Եւմէս .
Նա անդ մօտ կայր առ մեծն Ոդիս , և
արձակեաց ձայն անդէն ,
« Լո՛ւր , ո՛վ դիւցազն . այդ աւագիկ այր
չարագլուխ եւ անդրէն .
Դա ինքն է. այր , զոր խիթացաք , որ արդ
ձեպէ յառագաստ .
Այլ դու այժմէն ինձ պարզ ասա՛ , ո՞ Լայ-
երտեանդ բազմիմաստ .
Արդեօք 'ի մահ մատնեմ՞ ես զայրն , թէ
նմա երբէք տիրանամ,
Եթէ արդեօք քարշեալ ըզնա աստ քեզ
ածի՞ց յանդիման .
Լուծցէ ըզվրէժ նա զմատնութեան , զոր
հնարեցաւ 'ի յարկիս » .
« Ի ձեզ արդ զայրն ես յանձն առնեմ,
պատասխանի ետ Ոդիս .
Մեք աւագիկ ըզհոմանիսն , ես ինքն և
իմս Տելեմաք
Աստ սանձեսցուք . Թէպէտ և բոց մեզ
բորբոքեն դըժնդակ .
Դու քաջդ Եւմէ և Փիլիտէ , արկեալ
ըզնա անդ տապաստ ,
Եւ պրկեցէք ըզձեռս և զոտս , և փակե-
ցէք զառագաստ .

Ի սիւնն 'ի մեծ քարշեալ ըղնա, կաշկան-
 դեցէք պնդագոյն,
Եւ չարատանջ անդ յառաստաղն այն-
 պէս կացցէ կենդանւոյն »:
Անդէն 'ի լուրն աճապարեալ 'ի յառա-
 գաստ վերելին,
Անդ ծածկեցան. էր Մելանթոս յայն-
 ժամ 'ի ներքս 'ի յարկին.
Նա աստ և անդ զէնս որոնէր յառագա-
 ստին 'ի դարանս,
Սոքա երկուք աստի անտի առ մեծ դրան-
 դեօք կան արտաքս:
Այն ինչ ըստ սեամս եւ Մելանթոս էր
 անվեհեր 'ի յոգին,
(Գերճ սաղաւարտ բարձեալ տանէր նա
 'ի միում 'ի ձեռին,
Իսկ 'ի միւսում ունէր վահան յաղթ և
 հնացեալ ժանգահար,
Զոր Լայերտէս քաջն այն դիւցազն 'ի
 տիսն յառոյգ իւր բառնայր,
Լքեալ յայնժամ կայր 'ի յարկին և կարք
 փոկոցն աղարտեալ,)
Թափ յանկարծոյն տուեալ 'ի նա, զայլն
 արարին ձերբակալ.
Հապ ըղհերացն առեալ 'ի ներքս 'ի յա-
 ռագաստ քարշեցին,
Մինչդեռ վայէր անդ Մելանթոս, տա-
 պաստ արկին ընդ գետին.

Արագ արագ ըղձեաս և զառաս ալինդ անդր-
կեցին ըղնորա ,

Անեալ կապանօքս ուժգնապնդօքս ըստ
հրամանին Ռզիւանեայ .

Այլս ողջոյն կաշկանդեալով զերանն յան-
լոյծ 'ի սարեաց ,

Եւ քարշեցին ընդ սխմնն ընդ մեծ մա-
աւընթեր մարգակաց ։

Իսկ դու յայնժամ , քաջդ Նուկեաս . զայս
հեգնեցեր զաւանալէս .

« Դու այդր անշուշտ , ո՛վ Մելանթէ , դու
ողջ ըզցայդն հանեսցես .

Ո՛նքս արդ դու քեզ փափկացոյն այդր
անկողին 'ստ արժանոյն ,

Եւ 'ի բարձունքդ ամ՛ս զայդն ելեալ 'ի հո-
սանաց Ովկիանոսն .

Երբ ոսկեդահն 'ի վեր ծագեալ և քեզ
լեցի ազդարար ,

Զի այծս յընթրիս ածցես կամնուս դու
հոմանեացն 'ի տաճար » ։

Մ՛ընաց այնպէս Մելանթիոս անդ կաշ-
կանդեալ 'ի սարխս .

Ապա զէն զարդ արկեալ զանձամբքն , ալենդ
փակեցին ըղդրանդիս .

Այլս հապճեպ առ մեծն Ոդիս 'ի զօ-
րավիգ հասանեն ,

Եւ զոսութիւնս փորատեալ , բայց ըղ-
նովաւ կան անդէն .

Սոքա ասաց առ կուռ սեմօքն արք քաջք
Թուով կան քառեակ,
Իսկ և անդուստ Ճակատ մարտի տան բազ-
մահոյլ արք աւագք։
Լըքեկն յայնժամ վեհ մազդեղանց մեծն
Աթենաս յերևան,
Նա Մենտորին էր Ճշգրտեալ 'ի բուն
մարմինն և 'ի ձայն.
Ետես Ոդիս և այլ յայլմէ յոյժ ցնծա-
ցաւ, ձայն կարդաց.
« Ինձ դու, Մենտոր, արդ 'ի յօգն հաս.
ըղձամահարդդ 'ի յուշ ած.
Քեզ անձնանուէր ցանգ լեալ է իմ. և
եմք 'ի տիս հաւասար ».
Ասաց այսպէս, սակայն զՊալլաս խորև
տեսեալ նա խնդայր։
Բայց հոմանիքն երևելոյն ըսպառնալիս
կալէին,
Եւ նախ այսպէս Ագելայոս սաստեաց նը-
մա յատենին.
« Քաւ քեզ, Մենտոր, մի արդ հրապոյր
քեզ արբուսցէ Ոդիսէս,
Զի զօրավիգ տացես նըմա, և մարտ ընդ
մեզ մըղեսցես.
Անշուշտ ահա մեք մահ ածեալ հօրն Ո-
դիսեայ և որդւոյն,
Նա և 'ի քեզ ոչ խնայեսցուք, ածցուք
օրհաս դառնագոյն.

Լուծցես ըղձակէզ քոյ կատարմամբ, զոր
 ինչ աստ մեզ խոճոճես,
Մինչև յածխուն և 'ի մոխիր ողջ դարձու-
 ցուք մեզ ըղձեղ.
Յայնժամ ըղձագոյն, որ 'ի բացի, և որ 'ի
 քոյդ 'ի տաճար,
Ընդ Ոդիւսեանցըն խառնեսցուք մեզ 'ի
 յապուռ և յաւար.
Ո՛չ քո զօտասերս, ոչ ըղձաստերս Թողա-
 ցուսցուք 'ի յարկին,
Եւ ոչ զպարկեշտ քո զամուսինդ յիթա-
 կացւոց յոստանին „:
Լուաւ ըղձասանն, և Աթենաս սրտամտա-
 ցաւ մեծապէս,
Դարձաւ անդէն և զայրագին յանդիման-
 նեաց զՈդիսեւս.
„ Չիք քո այլ ես, ո՛ Ոդիւսես ոյժ և կո-
 րով չիք բազկաց,
Որպէս յորժամ վասն Հեղինեայ անդ զու-
 ռայիր դու յաւաչ.
Լուսածրղին այն հօրամոյն դըրստերն այն-
 չափ շուք հարեր,
Եւ ինն ամեայ ընդ Տրովացւոց դու մարտ
 անդուլ մըղեցեր.
Շատ քաջորեար տապաստ արկեր բըզգա-
 վառեալ 'ի գոտին,
Եւ քո առաւ Պրիամոսին մեծ շահաստանն
 լայնուղին.

Եւ արդ զեմարդ յորժամ ողջամբ աստ 'ի
տուն քո հասեալ կաս ,
Դու մարտ մղել ընդ հոմանեաց այնչափ
այսօր վատանեաս ·
Բայց ա՛ղէ դու , արի՛ ա՛ռ քաջ , և՛կ առ ըն-
թեր կա՛ց առ իս ,
Եւ թշնամեաց քոց 'ի գլուխ արդ զինս տես-
ցես ըզնախանձիւս ·
Եւ քեզ Մենտորս Աղքիմոսեան տաց
քոց բարեացդ փոխադարձ » ·
Ասաց այսպէս · բայց գլխովին ըզյաղթու-
թիւնն ոչ կնքեաց :
Քանզի խնդրէր մեծ դիցուհին փորձ անձ-
փորձել տակաւին
Ըզքաջութեանըն · զՈդիսեայ և զհոյա-
կապ զաւակին ·
Ինքն յանկարծոյն վերամբարձեալ 'ի յա-
ռաստաղ մեծի տան ,
Նստաւ անդէն սիպ ճչգրտիւ յանձին
բերեալ ըզծիծռան :
Բայց հոմանեաց խրախոյս յորդէր Ագե-
ղայոս առաջին ,
Եւրինոմոս , Պողոմէոս , 'ւ Ամփիմեդոն 'ի
կարգին ·
Եր ընդ Նոսա և Պիսանդրոս , և Պոլիբոս
խորագգաց ,
Սոքա աւագք արք 'ի [illegible]եխս և զօրու-
թեամբ գերազանց ·

Սոքա անդ դեռ յոտին կային և վառն
ոգւոց կըռուէին.

Այլք վիրահարք տապաստ անկան՝ ի լայնալիճն Ոդիւսին։

Ձայն ետ ապա Աղեղայտս առ հասարակ ակըմբի.

“Լուարուք, ով քաջք. արդ ձեռն անշուշտ այդ վիրադիդ կարճեսցի.

Քանզի Մենտոր ել և գընաց այն մեծապանծ վայրաբան,

Եւ արդ միայն դոքա քառեակքդ անդ
առ սեմովքն անցեալ կան.

Դուք մի հաղոյն, այլ վեցք միայն նախ
ըննիցին արդնրնկէց,

Եւ փառս տացէ մեզ Արամազդ եթէ հարցուք զՈդիւսէս.

Ո՛չ հոգամ զայլս, և շատ է մեզ, եթէ
տապաստ նա անկցի”.

Հաւանեցան. և տէգընկէցք արք վեցք
եղէն կշռակի.

Այլ՝ ի դերևս առ հասարակ եհան ըղձեգան Աթենաս.

Մին զարտուղի արձակեցաւ ել կուռ յարկին հար ըղձեամն.

Իսկ մին Թռուցեալ և շեշտակի բախէր
ընդ դուռն ամրափակ.

Իսկ Թմափ ընդ որմն ել և անկաւ մին՝ ի
հայցուոյն կուռ նիզակ.

Այսպէս յաղթանակդ Հոմանեաց յան֊
գոռք ելեալք անվեհեր,
Դիւցազն ապա մեծն Ոգլիսէս ձայն համ֊
հարզիցն արձակէր։
«Վամ աւաղիկ է, բարեկամք, արդ
տեղընկէց զոլ և մեզ,
Այդ զոռոզիցըդ բաղմամբոխ լերբ հոմա֊
նեացդ 'ի հանդէս.
Այսք լըրբենիքդ ոչ ասեն շատ մեզ զա֊
ռաջին ըղձաձանս,
Նաև զարդիս յաւակնեցան զոլ կենա֊
խուզ մեր անձանց ».
Այն ինչ էին բանքն 'ի բերան, և միաբան
շարժեցին
Եւ ըմբիշակս ապրասուրս Թափ կշռա֊
կի ձըգեցին.
Մեծն Ոգլիսէս հար առաջին զՊողոմէոս
զայր աւագ,
Քաջն Եւմէոս հար զԵլատոս, զԵւրիա֊
դէս Տելեմաք.
Փիղինտոս ըզՊիսանդրոս չեչտ հարկանէր
'ի յոգի,
Ողջ զխտապատ անդ 'ի յորսայս զարկան
նոքա ըզ գետնի.
Ի խորս յայնժամ մեծի սրահին վերջոտ֊
նելով Հոմանեաց,
Սոքա Թափով քարշեն ըզտեգս 'ի յան֊
կելոց դիականց։

Բայց և անդուստ մարտ ատեղընկէց յաւ-
ղէն կրկին հոմանիք,
Եւ միասանգամ Պալլաս ըղձակէզս հան 'ի
գերև գող ողջէկ.
Մ'ին հար ըղձեաւն, և մին բախեաց Թա-
փով ընդ դուռն ամբարտակ,
Եւ շեշտ ընդ որմն եւ և անկաւ մին 'ի հա-
ցող կուռ Նիզակ:
Ամփիմեդոս ըզ Տելեմաք եհար 'ի ձեռն
'ի պտողն,
Այլ կեղևեաց սայր Նիզակին միայն ըզ-
մորթն ըզվերին.
Տէգ Կտեսիպպոս ձըգեաց յԵւմէս և ընդ
վահանն հար անդուստ,
Զուսըն խաղեաց. իսկ տէգն անգէն
Թռուցեալ անկաւ 'ի վերուստ:
Այլքն դարձեալ և զՈդիսեաւ բոլորեցան
միասանգամ,
Եւ 'ի յամբոխըն համնեաց շեշտ աղաղ-
ընկէցք ցոլացան.
Զեւրիդամաս մեծն Ոդիսևս եհար 'ի
սայր դըժընդակ.
Ըզ Գողիբոս քաջն Եւմէոս, զԱմփիմեդոս
Տելեմաք.
Ըզ Կտեսիպպոս Փիլետիոս քաջ ան-
դէորդն հար 'ի լանջ,
Ոռնհար եղև, և լինկելոյն ձայն զայս
կարդաց մեծապանծ.

« Ա՜յ հեգնասէր Պողիւթերսեանդ, ա՜յ
դու անմիտ մեծաբան,
Արդ ուշիմ լե՛ր, և հզօրաց դու աստուա-
ծոց լե՛ր հաւան.
Ես զայս հիւրոյթ քեզ փոխանակ այն
կճղակին տամ զարդիս,
Զոր դու ետուր մեծն Ոդիւսեայ որ մու-
րանայր 'ի յարկիս ».
Հեգնեաց այսպէս քաջն անդէորդ. աս-
կայն Ոդիս մօտ հասեալ
ԶԱգեղայոս եհար խոցեալ կշռեալ ըղ
տէգ իւր հրաժայլ.
Տելեմաքոս ձգեալ նիզակ զԼիոկրիտոս
զԵւնորեան
Հարեալ խոցէր և թափ ընդ մէջ անցու-
ցանէր յորովայն.
Անկաւ յորսայս, և ընդ գետին սասանիկ
ըղձլուփն իւր եհար.
Եւարձ յայնժամ մեծն Աթենաս ըղմա-
հացուն զիւր զասպար.
Ըղձկենն ըղզարդ իւր զայն ահեղն առ ցո-
լացոյց 'ի բարձանց
Եւ ափշութեամբ արկ արհաւիրս շամբ-
շեալ դասուն հոմանեաց:
Ընդոստուցեալք 'ի վեր վազեն և խու-
ճապին 'ի յարկին,
Ճշգրիտ որպէս ջոկք անդէոց ջոլարելոց
'ի դաշտին,

Յորժամ վայրագ բուռք և գոռեղք խայ-
 թահարեալ ճնճղերան
Ի յեղանակին ամարայնոյն, յորժամ ա-
 ւուրքն են երկայն.
Զոր օրինակ և յաղթ անգեղք լիամա-
 գիլք կորակտուց
Թափ սրաթևեալք առ 'ի լերանց շեշտ
 խոյանան 'ի թըռչունս,
Մղեա յայնժամ 'ի գող հարեալք 'ի
 յամպս 'ի վեր խուճապին,
Նղեա ըղկնի հետամըտեալք և շեշտակի
 սաւառնին,
Չիք ապաւէն, չիք և փախուստ. Թըռչ-
 նոց ամեն կոտորած,
Եւ 'ի գլխին ոտոյն նոցա կան և խնդան
 արք դաշտաց,
Ըզնոյն Ոգիւս և համահարգք Թափ յար-
 ձակեալ 'ի յարկսն,
Ցայսկոյս յայնկոյս տիգահարեալ մահ
 հոմանեաց ածէին.
Մնչիւնք և գոյժք անդ դառնաղէտք, անդ
 և ջարդոցք կառափանց,
Եւ Թանային յատակք սրահին յապա-
 ժուժիցն 'ի յարեանց:
Ըճապարեաց անդ զՈգիւսեայ ոտիւք
 փարէր Լիովդէս,
Կայր սրտառուչ մեծապաղատ ձայն ար-
 ձակեաց դառնապէս.

Ինքըն դիմեաց և փարեցաւ զՈդիսևսին ըղձնդօք,
Ձայն արձակեալ և պաղատէր. « Քեզ, Ոդիսևս, կամ յողջը.
Յետ դու ոչ՛ եկր. բայց տարրջացյա եթէ հարցես զայր երգակ,
Որ ես մարդկան և աստուածոց երգ հար-կանեմ և նուագ.
Եմ ինքնուսայց ես երաժիշտ. և 'ի ընծէ ինքն աստուած
Ետս անկանկից առ ներմանեաց ազգ ազգ երգոց նուագաց.
Նուագեցից ես ցնծալից և քեզ իբրև աստուծոյ.
Արդ խնդրեցէս և յիմ արիւն անմուղ չա-ղել ըղձուր քո.
Թող, ինձ որդին քո սիրաստուն վկայես-ցէ Տելեմաք,
Զի ոչ՛րդ ես առա, ես անկարօտս քար-շեալ դայլի դժկամակ
Ի տաշ, յընթրիս խեռ հոմանեացն երգ հարկանել քընարի.
Բազում որեար և շատ հզօրք ասա ա-ծէին զիս բռնի »։
Այն ինչ լուաւ Տելեմաքոս, և հօրն ան-դէն ձայն աղդեաց.
« Պարձեայ ոչ՛ հայր, և մի մխեր ըղ-ձեռն քո յայր անյանց.

Նաև 'ի կեանս մեք խնայեսցուք մեծ քարոզին Մեղոնի,
Որ ինձ գարման 'ի մանկութեանս նա ցանգ տարաւ 'ի յարկի.
Թէ ոչ յանկարծ նա փլլուսեայ և կամ յՆեմեայ ձեռս անկցի,
Կամ թէ ինքնին քեզ 'ի գուալց յանկարծակի դիպեսցի »։
Զայս նա ասաց, և զայն անդուստ լուաւ Մեղոն այրն արդոյ,
Որ առ ահլին կայր պառակեալ անդ 'ի ներքոյ աթոռոյ.
Շուրջ պարուրեալ էր նա զանձամբ այն ինչ քերթեալ մորթ զեղջն,
Աճապարեաց ել 'ի ներքուստ, էարկ ըզ մորթն 'ի գետին.
Դիմեաց անկաւ յայնժամ 'ի գուճս և զՏելեմաք աղերսէր.
« Այս եմ, ասէր, ես ով սիրուն. դու արդ փրկեա զիս ով տէր.
Ասա հօր քում. մի ընդ սեղեխս և զիս հարցէ դառնապէս,
Որք ըզ նորա կերան ըղկեանս, և գըձձեցին և ըզքեզ »։
Լուաւ Ողիս և ժպտեցաւ, և ձայն կարդաց առ Մեղոն.
« Քաջ լեր, Մեղոն. Տելեմաքոս քեզ արդ ըղկեանս ետ 'ի ձօն։

Գիտեմ զու ինքն, նա և այլոց քո իսկ
    բերան պատմեսցէ,
Քան զկար գործել բարի առնել քանզի
    արդեօք լաւ իցէ.
Եւ արդ զերծեալք գուք ստրկաքոյ անդ-
    նատարունք 'ի գաւթի,
Դու Մեգանէ, և գու 'նդ նըմա այր ե-
    րաժիշտդ անուանի.
Մինչև տանէն ես 'ի յարկիս մեծարեցից
    զոր պարտն է ».
Նա զայս ասաց, յարեան նոքա ելին ար-
    տաքս 'ի տանէ:
Նստեալք անդէն, ահաբեկեալք վեհին
    Դիւայ առ բագին,
Շուրջ հայելին ժամէ 'ի ժամ սպասեալք
    իւրեանց օրհասին:
Բայց Ողիսևս 'ի վեր 'ի վայր զննէր ըզ-
    յարկ իւր ողջոյն,
Կացցէ՞ արդեօք ոք կենդանի և անձնա-
    պուր 'ի մահուն.
Սեղեխըն ողջոյն 'ի յապաւառա և յապա-
    ժոյժ 'ի յարեանց
Անկեալ կայըն անդ բազմահոյլ իբրև վը-
    տառս ըղձկանց,
Զոր առք ձկնորսք 'ի յափնածէրին 'ի կա-
    պուտակ 'ի ծովէն
Ի ցամաքս, յուռկանըս ծակոտկէնս պար-
    փակելով և քարշեն,

Լուղակքն անձուկ բերեալ ջերոյն կան
յաւազուտն անդ թշուառ,
Մինչև զխոնաւ տապոյն արեւուն ողջ ծնդեա-
ցէ շնչասպառ.
Այնպէս անկեալ կայր խիտ առ խիտ մեծ
շեղջակոյտ հոմանեաց.
Բայց Ոդիսեւս բարբառ յայնժամ առ Տե-
լեմաք արձակեաց:
« Ե՛րթ դ[illegible]ղարդիս, կոչեա՛ առ իս զԵւ-
րիկղիան ըզ դայեակ,
Բան մի ասել ունիմ նմա. արդ փութա՛
Տելեմաք ».
Ի ձայն ծնողին Տելեմաքոս անձապարեալ
փութապէս,
Զոքաւ բախեաց ըզդուռն յարկին, կո-
չէր արտաքս զԵւրիկղէս.
« Արի՛ դայեակ դու մեր աւատրդ և ա-
ղախնեայց դէտ 'ի տան,
Հայրն իմ ըզքեզ կոչէ, արի՛. ունի ինչ
քեզ ասել բան »:
Լուաւ, անդէն յարեաւ պառաւն և ըզ-
յարկին դուրս եբաց,
Ճեպէր յընթացս, և էր նորա Տելեմա-
քոս նախընթաց.
Եկն և եգիտ նա զՈդիսեւս 'ի դիականց 'ի
միջի.
Էր շաղախեալ նա ընդ արիւն, ընդ ա-
պաժոյժ, ընդ փոշի.

Իբրև առիւծ որ դարձ առնէ կերեւալ ընդ-
ցուլն 'ի դաշտին,
Եւ ծամելիքն, և լանջք, կըղակքն իւր
ողջ յարեան Թաթաւին,
Դէմքն իւր ահեղ, և 'ի տեսիլն է սոսկա-
լի անողոք,
Այսպէս Ոդիս էր շաղախեալ ողջոյն
ոտիւք և ձեռօք:
Ետես պառաւն ընդփակ[illegible] և շապա-
ժոյժ զայն անբառ,
Ետես և զայն ընդմեծ նախճիրն, և ա՛յլ
յայլմէ ցնծացաւ.
Սանձ Ոդիսեւս տայր պառաւոյն Թէպէտ
և կինն ոչ ժուժայր.
« Լուռ, կին, աէր, խնդա՛ յոգիդ. և ա՛յլ
յայլմէ մի՛ ցնծար.
Ոչ է արժան պերճ ճոխանալ մեզ մե-
ռելոցն 'ի վերայ.
Օրհասն իւրեանց, ոճիրն իւրեանց նը-
կուռն արար ընդդոսա.
Զի անսն երբէք դոքա հիւրոյն ոչ ածէին
յաշխարհի,
Ոչ բարւոյ առն և ոչ չարի. և արդ կո-
րեան յիրաւի.
Բայց դու ա՛ղէ տուր ինձ ասաէն ճշգրիտ
համար ընկանանց,
Ո՞յք յանցաւորք են 'ի դոսա, ո՞յք անա-
րատք և անյանց »:

Կրկնեաց անդէն Եւրիկլէա. „ Արդ
ճշգրտեմ քեզ, որդեակ.
Յիսուն Թուով 'ի մեր յարկին են արդ-
կանայք աղախնեայք.
Զդոսա ոճոյն ես վարժեցի, գործ վաս-
տակել 'ի յոստայն,
Նստել սանտրել նաև զասուխս, կալ և
յայլ գործ պաշտաման.
Յորոց 'ի նոսա երկոտասանք լիրբք լկնե-
ցան գլխովին,
Եւ զիս ինքնին և ըզդշխոյն յընչաց իւ-
րեանց քերեցին:
Տելեմաքոս այն ինչ զարգուն էր 'ի յար-
բունս իւր հասեալ,
Եւ Թոյլ նըմա ոչ տայր տիկինն այնց ա-
ղախնեայց տիրանալ:
Բայց ես արագ ելից զարդիս ազդել 'ի
յարկ դշխոյին,
Ում անոյշ քուն ումն յաստուածոց հե-
ղեալ է արդ 'ի մահճին „:
“ Թող նընջեսցէ նա տակաւին, նըմա Ո-
դիս ձայն կրկնեաց.
Եւ դու արդ, սամ զալ աստ յանցաւո-
րացդ այդ կանանց „:
Չոգաւ պառաւն, և տայր կանանցն
յառնել երթալ փութապէս.
Իսկ ընդ հովուացն ըզՏելեմաք կարդաց
յայնժամ Ոդիսէս.

« Ըզգիտակումն, առէր նոցա, դուք տուք
բառնալ կանանւոյն․
Հրամայեցէք ողջ և ըզկահոսըն յարդարել
մաքրագոյն․
Ածցեն ըզջուր, 'ի նոյն և ապուռնգըս ծա-
կոտկէնս 'ի ձեռին,
Եւ սրբեսցեն նոքա զսեղանս և ըզգահոյս
տաճարին․
Այսպէս համբուն մաքրեալ ըզտունն,
դուք ըզկանայսն 'ի դաւթի
Քարշեալ տարայք 'ի վայրն ուր կայ
ցանգն և դարան բոլորշի․
Անդ ըզնոսա երկայն սըրովք խոցոտեցէք
դառնագին,
Մինչև ողջոյն առ 'ի մարմնոցն ոգիք նո-
ցա քաղեսցին․
Այնպէս զԱստղիկըն մոռասցին այդ-
պագշոտեալքըդ յաւէժ,
Որով տարփմամբ 'ընդ հոմանիս ստա
խառնէին գաղտապէս »։
Նոյն ինչ ասաց․ և կանանին անդէն հա-
սին միաբան
Կողկողելով յորդ արտասուս հեղունյա-
չաց և ծըչան․
Մխեանք միմեանց լեալ փորավիգըն ըզ-
գիտակումս բառնային,
Բարձեալ եղին անդ 'ի բակի 'ի ցանկ[illegible]
պատն 'ի դաւթին։

Կայր 'ի վերայ ահեղակերպ հրամանա-
տար Ոդիսէս,
Եւ կանանին յանդերձ 'ի հարկ վատա-
կէին դառնապէս.
Բերին ըզջուր և ծակոտկէն սպունգս ա-
ռեալ մաքրեցին
Ողջ ըզսեղանս և ըզգահոյս ըզգեղեցիկս
տաճարին:
Տելեմաքոս, զնոյն և հովիւքն ըզյարկ
պայծառն աւելէին,
Եւ կանանին զաղբիւսն առեալ բառնային
տանին 'ի յարկէն.
Այնպէս ողջոյն զտունն յարդարեալ, նո-
քա զկանայսն 'ի գաւթի
Քարշեալ տարան 'ի վայրն ուր կայր
ցանգն և դարան բոլորշի.
Պնդեն նեղեն զնոսա յանձուկն, ուր և
վայր չէր փախըստեան.
Ապա եկաց Տելեմաքոս, ձայն զայս հո-
վուաց ետ յայնժամ.
« Անշուշտ այսօր ես մահ շըքով չածեմ
յորհաս կանանւոյն,
Որ անարգութ կացին լըբեալք արդոյ իմ
մօրս և իմ գլխոյն.
Նա և 'ի սէր այդ լըբենիքդ ընդ հոմա-
նեաց խառնեցան »:
Ասաց այսպէս, և զսեամբ պատեանն էառ
նաւուն ըզպարան.

Առ և ձգեաց և պատատեաց շուրջ ըզ-
գարանն 'ի բարձանց,

Զի մի զգետինըն կոխեսցեն ոտք յանցաւ-
որ այնց կանանց.

Զոր օրինակ մոււս արարեալ 'ի ցանցն 'ի
թաւ անտառին

Կամ աղամնիք և կամ տորդիկք հոլա-
թևեանք ըմբռնին,

Եւ թըրթռեալք 'ի ծողոպրել անզերծ
շաղին 'ի վարմէն,

Եւ անդ մահիճ մահահամբոյր անձանց
իւրեանց գըտանեն,

Այսպէս յայնժամ գըլուխք նոցա կարգ
ըստ կարգէ դասեցան,

Եւ պարանոցք անցնիւր նոցա շաղեալ
կային 'ի խեղդան.

Հեզ կանանցն առեալք յանձինս մահ
դառնութեան յօրհասի,

Վայրիկ մի զոտս տատանէին, չէին ապա
'ի միջի:

Ըզմեղանձնութեան յետ այնորիկ ածեալ
'ի բակն 'ի գաւթին,

Զականջս նորա և ըզդընդուլս 'ի սուր
յերկաթ կտրեցին.

Կորզեալ յառնէն և զամօթոյն շանց
արկանել առ 'ի գէշ,

Ըզձեռսն և զոտս կոճոպեցին, որանեալք
յոգիս սոսկալէս:

Ապա ըղձեալ լուացեալք և զոտս հա֊
սեալ յամբոկ 'ի գործոյն,
Այնպէս մաքրեալք, առ մեծն Ոդիս
դարձ արարեալ գան 'ի տուն ։
Զայն Եւրիկլեայ տայր Ոդիսէս. « Ինձ
արդ ծըծումբ ած, դայեակ,
Դեղթափ բնաւին է դա ժահից. ած ինձ
'ի նոյն և կըրակ.
Նովաւ ըզտունն ես ծըխեցից. իսկ դու
արդ երթ առ դշխոյն,
Աղջ արաջիր, նա աստ գայցէ ընդ նա֊
ժըշտաց իւր ողջոյն ».
« Քաջ են, կրկնեաց Եւրիկլիա, քաջ են
քո բանք, որդեակ իմ.
Այլ պատմուճանս ես նախ ածից արդ 'ի
ծածկոյթ քում անձին.
Մի դու զըծուծ կացցես այդպէս զան֊
ձամբ արկեալ ցնցոտի,
Զի տարադէպ է կերպարանդ յորժամ
'ի քում կաս յարկի »։
« Բայց դու ած ինձ նախ զասացեալս.
կրկնեաց անդէն Ոդիսէս.
Անսաց պառաւն, յարեաւ եբեր հուր և
ծըծումբ փութապէս.
Առեալ Ոդիս ծուխ ետ գաւթին, ծուխ
և սրահին ետ և տան.
Իսկ ել պառաւն և հրաւիրակ տայր կա֊
նանւոյն գալըստեան.

Ջահ 'ի ձեռին դասք կանանւոյն ելին ե-
կին 'ի յարկէն ,
Շուրջանակի հեղան կացին և զՈգխուէս
ողջունեն .
Խնդամտեալք զերգս ածէին 'ի սիրտ
բերկրեալ և յանդորր ,
Կալան զաջոյն և տարփանօք զգլխոյն , ու-
սոց , տան համբոյր .
Ետես Ոգխս ըզկանանսն և քաջ ծանեաւ
մի առ մի ,
Գորովեցաւ 'ի գութ սրտին և յարտա-
սուս հատանի ։



# ՈՊԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԳ.

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Եւրիկլէ պառաւ դայեակն Ոդիսեայ վաղէ աւետաբեր լինել Պենելոպեայ՝ գալստեան փեսային և կոտորածի հոմանեացն: Ա՛յլ յայլմէ Պենելոպէ, խելայեղեալ կարծէ զպառաւն: Ի վերայ այսր՝ իջանէ 'ի վերնայարկէն. կայ 'ի բացեայ յՈդիսեայ. չկամի ճանաչել. սրտմտի Տելեմաք ընդ մայրն: Ոդիս տօն զընծութեան կաքաւուց հրամայէ 'ի տանն, իբրու վասն նորոգ հարսանեաց դշխոյին 'ի լուր դրացեացն, զի առ ժամն զանխուլ կացցէ բան կոտորածին: Ապա մտեալ 'ի բաղանիս, և յառաջին կերպարան իւր փոխակերպեալ յԱթենասայ, միւսանգամ մօտի առ Պենելոպէ. որ և ոչ յայնժամ կամի ճանաչել զայրն: Ապա հուսկ ուրեմն լուեալ յՈդիսեայ զճառ պատմութեան ամուսնական մահճին՝ զոր ամուսնացն միայն էր գիտել, 'ի բաց դնէ զամենայն խէթ և գրկախառնի: Աթենաս յերկարաձգէ զգիշերն զայն: Զրուցատրութիւնք Ոդիսեայ և Պենելոպեայ: Ընդ առաւօտն յարուցեալ գընայ Ոդիս ընդ որդւոյն առ հայրն իւր Լայերտէս ծերունին յագարակն՝ ամրածածուկք յԱթենասայ:



# ՈԴԻՍԱԿԱՆ

## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԳ.

Յայնժամ պառաւըն խայտալով ել 'ի
սենեակն 'ի վերին,
Աւետաբեր լինել տիկնոջըն գալստեան
փեսային.
Առ մեծ խնդրին արագ արագ ծունկք
շարժէին պառաւոյն,
Վազեաց անդէն և մօտ կացեալ ձայն ար-
ձակեաց առ դշխոյն.
« Զարթի՛ր, զարթի՛ր, Պենելոպէ, ե՛կ
սիրուն դուստր, ե՛ն զարթի՛ր.
Զի դու քոյին տեսցես աչօք, ում և ան-
դուլ ցանկայիր.

Եկն Ոդիսէս, դարձ տառապեալ թէպէտ
և յոյժ անագան,
Ընդհամանման եարկ տապաստ ընկերու-
վինչ իւրում տան.
Որք ընդորս կերան ընկեանս, Նաև զոր-
դին դըձձեցին ».
Այն ինչ լուաւ, և ձայն անդէն կրկնեաց
դշխոյն քաղցրուշիմ.
«Մոլիս, մոլիս, դու ով դայեակ ան-
շուշտ մոլիս առ 'ի դից,
Նզքա է զի և իմաստնոց տան խելս իբրև
մորոսից,
Եւ է դարձեալ զի և զանմիտս իբր իմաս-
տունս առաջրեն,
Որպէս դու ցարդ ուշիմ էիր, և արդ բար-
ձին զուշդ 'ի քէն.
Զի՞մ դու այդպէս զիս խաղ առնես, որ
ցաւալին եմ հանճուն,
Եւ առասպելս ինձ կըցկցեալ խոչընդոտն
ես իմ քընոյն.
Զարթիս աչացս անդորրաւէտ քունն էր
տիրեալ անուշակ,
Ոչ Ոդիսեայ յետ չուելոյն չեմ ես առեալ
զայս ճաշակ,
Յորժամ դիւցազն իմ չու արար անդ 'ի
յանյուշն Եղիոն.
Ա՛զէ, դայեակ, ե՛րթ էջ 'ի տուն, դարձի՛ր
'ի քոյ 'ի պաշտօն.

Եթէ այլ ոք եկեալ զարգևս 'ի նաւաժշտացս
որ առ իս ,
Եւ 'ի քընոյս զիս զարթուցեալ բերէր ինձ
զայդ աւետիս ,
Անշուշտ ըզնա յետս 'ի յարկէս արձա-
կէի դառնապէս .
Սակայն 'ի քոյ 'ի յաւելոյթդ ես ակն ա-
ծեմ մեծապէս ” :
Այլ և ողբէր պառաւ դայեակն . “ Ըզ-
քեզ , ինձ քա՛ւ , խաղ առնել .
Այժ՛ 'ի տուն եկն Ոդիսեւս , և չէ բանն
իմ առասպել :
Լո՛ւր արդ , դուստր իմ , դա այդ մեր
հիւրն և այդ մուրիկ նըշաւակ
Դա ինքնին է տէրն Ոդիսեւս , և զայն
գիտէր Տելեմաք .
Սակայն ըզհօրն խորոց զխորհուրդ ծած-
կեաց իբրև խորագգաց ,
Զի անարգել ըզվրէժն առցէն ըզ գոռո-
զից հոմանեաց ” :
Ծնծայր , խայտայր Պենելոպէ , և յա-
րուցեալ յանկողնոյն
Եւ փարեցաւ ըզդայեկաւն և արտա-
սուէր յորդագոյն .
Զայն արձակեաց . “ Ինձ , ո՛վ դայեակ ,
դու արդ անսուտ ասա՛ բան ,
Թէ արդարև եկն Ոդիսեւս , բա՛րէ զի՛արդ-
նա միայն

Ի մէջ խմբից խուռն հոմանեաց եղեալ
 այնչափ նահատակ
Ինքնին ողջոյն արկ դիտապաստ զայնչափ
 խօլացն երամակ »։
Պատասխանի կրկնեաց դայեակն. «Ոչ
 դիտացի, ոչ տեսի,
Ըղձայն միայն և ըզմռնչիւն ես զանկելոց
 լըսէի.
Ահարեկեալք մեք նստէաք՚ի խորս՚ի մեր
 ՚ի յարկին,
Եւ քաջակուռ դղրդանդիք դըռրանց մեզ անդ
 ողջոյն փակ կային.
Աւ ես նախ հայրն ըզՏելեմաք զորդին՚ի
 կոչ առաքեաց.
Զոքայ դըրան ես զՈդիսեւս, կայր նա ՚ի
 մէջ դիականց.
Շուրջ ըզնովաւ ընդ ապաժոյժ անդ հո_
 մանիքն հատարակ
Կային տապաստ և չնչասպառք և չեղջա_
 չեղջ ընդ յատակ.
Բա՛րէ, քեզ անդ էր տեսանել իբրև ա_
 ռիւծ զՈդիսևս
Շաղեալ յարիւն և ընդ շաղաւ, և ցըն_
 ծայիր հրաշապէս.
Արդ կան նոքա կուտեալ՚ի բակին. և նա
 հուր մեծ բորբոքեալ
Ծըխէ ըզտունն. և զիս յղեաց քեզ հրա_
 ւիրակ առ՚ի գալ։

Արդ և՛ եկ, և երկոցուն ձեր սիրտ 'ի սպառ
բերկրեսցի՛,
Որ ընդերկար բազմաչարչար դուք տան-
ջեցայք յաշխարհի․
Անձուկն ահա ձեր բազմամեայն այսօր
լըցաւ պատարումն․
Եգիտ ըզքեզ, եգիտ զորդին և ինք դար-
ձաւ ողջ 'ի տուն․
Դաւ ըզվրէժ առ ըզչարաց ըզհոմփ-
նեացն 'ի յարկին ”։
Լուաւ ողջոյն, և անդրադարձ զայս առայր
դշխոյն քաջուշիմ․
“Մի, ո՛վ դայեակ, մի դու այդչափ
արդ ցնծալից ձօխանար․
Այո՛ անշուշտ գալուստ դորա էր մեզ
ընաւից բերկրարար,
Եւ ինձ յաւէտ և մեծապէս նաև որդւոյս
զոր ծընաք,
Բայց քո այդ բանդ, զոր աւետես, չէ
անպատիր, ո՛վ դայեակ։
Գիտեմ դու քաջ, ոմն յանմահից զայդ
հոմանիս չարաբաստ,
Ի մեծ ցասումն բրդեցաւ, և արկ ողջոյն
դիտապաստ․
Զի ակն հիւրոց գոզա երբեք ոչ ածէին
յաշխարհի,
Ոչ չարի առն և ոչ բարւոյ, և արդ կորեան
յիրաւի․

Բայց Ոգխսեայ չէք յոյս դարձին, չէք և, նորա յոյս կենաց »։
Այն ինչ էին բանքն 'ի բերան, ցասուեալ պառաւն և կարմնեաց.
« Իսկ ո՞ր բան, գուսար, արդ 'ի ցանգէ քոց ատամանցդ ել արագաւ,
Ո՞չ աւագիկ փեսայդ քո ողջ կայ ընդ իւրով մարդակաւ.
Դու զնա անդարձ նաև հատեալ 'ի յարենէն ինձ գուժես,
Սիրտ անհաւատ զրաւեալ ուրեմն ունի ընքեղ անդապէս.
Բայց ես այժմիկ տաց և զըսպին քեզ 'ի նըշան 'ի յայտնի,
Զոր անդ երբեմն եհար 'ի նա սպիտակ ժանեղ կինճ վայրի.
Տեսի զըսպին ես 'ի լուանալն և կամեի քեզ յայտնել,
Բայց խորագէտն իմ ծածկելեացս սանձ եդ զիւր ափն, և արգել.
Ո՞ն արդ արի, քեզ աւագիկ ես գրաւական տամ զանձն իմ։
Տո՛ւր ինձ յորհաս մահ դառնութեան եթէ քեզ սուտ բարբառիմ »։
Կրկնեաց դշխոյն 'ի հիացման. « Ո՞ ընդ ծածուկս աստուածոց
Ո՞ 'ի քընին ազցէ երբէք, թէպէտ և մարդ քաջափորձ.

Ա՛ղէ ուրեմն առ իմ որդին արդ իջանեմ ես ահա,
Ըզմահ տեսից ըզհոմանեացն և որ ըզմահն ած նոցա »։

Լսաց և էջ վերնատանէն, սակայն ծը-փայր 'ի յոդին.
Արդեօք կացեալ ինքն 'ի բացուստ ինչ մի հարցցէ՞ ցամուսինն,
Եթէ մատեալ զմի՞ն ունիցի, համբոյր տա-ցէ՞ և գլխոյն.
Յայսկոյս յայնկոյս ծըփայր 'ի միտս, մին-չև 'ի՛ վայրն հաս դշխոյն։
Անց նա ընդ սեամս ընդ մարմարեայ, և հանդիպոյ Ոդիսին
Առ ըզքաղմոցն 'ի միւս անդ կողմն նստաւ առ լոյս խարուկին.
Նստէր Ոդիս առ մեծի սեանն, աչքն իւր յերկիր, և մնայր
Զի՞նչ ինչ արդեօք վեհ ամուսինն տե-սեալ ըզնա տայ բարբառ.
Բայց Պենելոպ լուռ հարուստ ժամ և անբարբառ կայ այնպէս,
Զի յափշութիւն միտքն և խորհուրդքն էին գրաւեալ մեծապէս.
Մերթ նա անքթիթ զաչս իւր յառեալ գոգցես զՈդի՞ս ճանաչէր,
Մերթ և սարտնոյր յակն իւր արկեալ ըզպընցոտին զոր ունէր.

Ոչ հանդուրժեաց Տէլեմաքոս, և ձայն
սաստիւ ետ անդէն.

« Բաւէ՛, ո՛վ մայր չուառական. իցէ՛ քո
սիրտ քարեղէն.

Հէ՛մ'ի հօրէս կաս մեկուսի. զի՛ դու չեր-
թաս առընթեր.

Զի՛ ոչ նստեալ և հարցանես հարկ ըղկէն
անվեհեր.

Իսկ ո՞ այնչափ կին սառառ[illegible]ր սարտ-
նուցու 'ի յառնէ,

Որ քսանամեայ տարաշխարհիկ և դարձ
ապա արասցէ

Բազմաչարչար ողջամբ 'ի տունն և առ
կին իւր սիրասուն.

Բայց արդ քո սիրտըն սալացաւ և քան
ըզվէմ կարծրագոյն »։

Յոդւոց եհան Պենելոպէ. « Ես յափ-
շութիւն, որդեակ իմ,

Ես յափշութիւն կրթեալ եմ արդ, և
խօսել ինչ չըմարթիմ.

Հարցումն առնել չեմ բաւական և ոչ
յերեսն ակնարկել,

Մինչև Ճշգրիտ ես հաւաստեօք ոչ Ճանա-
չեմ անարգել.

Թէ արդարև դա Ոդիսն է, և 'ի տունն
իւր եկն այժմիկ,

Եմ հեշտաբար սաստ այր զընկեր արդ
ծանիցուք մեք քաջիկ.

Գտան մեղմնըշանք գաղտնածածուկք , զոր
    և մարգիկ ոչ գիտեն » .
Նա զայս ասաց և Ոդիւսևս անդ ժպտե-
    ցաւ 'ի բանէն .
« Թո՛յլ տուր մօր քում, Տելեմաքէ , գար-
    ձաւ խօսէր ընդ որդւոյն .
Թո՛յլ տուր մօր քում , փորձել զիս արդ ,
    և ծանիցէ վաղագոյն .
Անշուշտ , քանզի ձունձ բորդդղեալ իմ
    արդ զանձամբ արկեալ է ,
Վասն այն զինև նա զանց առնէ , և զիս
    Ոդիս ոչ կարծէ ։
Բայց Թողցուք զայդ . իսկ քաջապէս
    մեզ խորհրդոյ արդ պէտք են .
Ա՛զէ Թէ ոք զայր մի միայն յոգի հարցէ
    յաստանէն ,
Թէպէտ և զայր ոք սինլըքոր , զայր անա-
    ւագ , անաստար ,
Ո՞չ 'ի փախուստ ձեպի արդեօք ըղտուն
    Թողեալ և զաշխարհ .
Իսկ մեք քաջաց և աւագաց մարդախո-
    շոյք եմք զարդիս ,
Սիւնք Իթակայ էին նոքա . դու , արդ ա-
    սա , զինչ խորհիս » ։
Ուշիմն յայնժամ Տելեմաքոս զայս ան-
    դրադարձ ետ ձայնի .
« Բա՛ քեզ անշուշտ , հայր իմ սիրուն , քեզ
    զայդ խորհել անկանի .

Իմաստասիրաց ընդ տիեզերս զգոյդ համ_
բաւէն ըղհանճար,
Եւ յերկրածնաց և ոչ մի որ ընդ քեզ մըր_
ցէ 'ի պայքար.
Դու ինքն տես. և մեք ըղձեմք փոյթ ըն_
թացուք քոց շաւղաց,
Եւ ըստ ձեռին բաւականին եւս արու_
թեամբ քաջացայց":
"Խորհուրդ քաջիկ թուի ինձ այս, եռ
Ոդիսէս պատասխան.
Դուք արդ լուացեալք առէք ըղձորդ,
արկէք ըղձեօք պատմուճան:
Թող և կանայք 'ի տաճարիս հանդեր_
ձաւորք սնձնեսցին,
Եւ աստուածեան մեր երաժիշտն երգէ
քընարն 'ի ձեռին,
Հարցէ նուագ և կայթահարք պար պա_
րեսցեն 'ի յարկիս,
Եւ արտաքոյ կացեալքն յարկին զայն
կարծեսցեն հարսանիս,
Եթէ լըսողք, թէ անցաւորք, և թէ որ
մեզ էն դրացիք,
Զի մի այժմէն ինչ գիտասցեն եթէ կո_
րեան հոմանիք.
Մի կանխագոյն այս կոտորած հռչակ
հարցի ընդ քաղաք,
Մինչև ապա մեք անկանխիտն ելցուք 'ի
մերն յագարակ.

Անդ մեք քաջիկ առացուք խորհուրդ զոր
մեզ տացէ Ողիւմպեանն ».
Լուան նոքա, և հրամանին 'ի գործն ան-
դէն փութացան.
Յարեան լուացան, արկին ըզձորձ, զար-
դարեցան և կանայք,
Եւ 'ի ձեռին առ զիւր ըզքնարն աստուա-
ծայինն այն երգակ.
Խանդ 'ի նոսա վառ բորբոքեաց 'ի գեղ-
գեղել քընարին
Ըզգերապանծ պարերգութեանն և զա-
նուշակ նուագին.
Յարկ լայնատարր հնչէր գանգիւն 'ի
կայթս ոտից 'ի յարանց,
Նոյն և 'ի պերճ քաջագօտի գեղապարի-
ցըն կանանց:
Որ արտաքոյ լըսէր ըզձայնն, զայս 'ինչ ա-
սէր առանձին.
« Եւ արդ անշուշտ ած ոք 'ի կին ըզտար-
փացեալ թագուհին.
Ա՛յ հէգ, չուառ. որ 'ի գալըստ իւր
փեսային ոչ ժուժեաց,
Ո՛ւմ կուսութեամբն իւր հարսնացաւ,
և զտունն նորա ոչ պահեաց ».
Զայսօրինակ բարբառէին որ արտաքոյ
անդ կային,
Ոչ գիտացեալ զինչ ինչ 'ի ներքս գործք
գործեցան 'ի յարկին:

Թո՛ղ վայրիկ մի ընկղմեալ անդոր-
րացայց յանկողնի․

Քանզի անշուշտ սիրտ այդ կրծողդ սիրտ
է համբուն երկաթի ››։

‹‹ Լո՛ւր ինձ, ով քաջ, ձայն քաջուշիմ
Պենելոպէն եւ անդէն․

Զեմ ինչ գոռոզ, և ոչ ստահակ եղեալ ըզ-
քեզ անարգեմ․

Եւ ոչ դարձեալ յոյժ հրաշանամ, որպէս
ըզքեզ քաջ ծանեայ

Երբ նաւապնաց դու ամբարձեալ չու ա-
րարեր յԻթակայ․

Այլ ո՛ն դայեակ, հանգո՛ ըզնա այլ մի՛ 'ի
յիմ սրսկապան․

Ուրմա ըզթանձրն ա՛րկ զանկողին զոր ինք
գործեաց աստ 'ի տան․

Դըրմա հանգիստ տո՛ւր արտաքոյ, և ա՛րկ
վերայ յանկողնոյն

Մորթըս քնքուշս նաև խըլայս, և պերճ
վերմակս ա՛րկ 'ի նոյն ››․

Ասաց այսպէս տիկինն ուշիմ, քանզի
փորձէր զՈդիսեւս․

Այլ նա անդէն կրկնեաց առ կինն, 'ւ էր
զայրացեալ մեծապէս․

‹‹ Ո՛վ, դառնապէս յոյժ ապառուածս
խօսեցար դու ով կին․

Իսկ ինձ ո՞ ոք ուրեք յայլ վայր էարկ եր-
բէք զանկողին․

Ձեռակերտ է այդ դըժնդակ նաև մար-
դոյ Ճարտարի ,
Միայն աստուած տեղափոխէ զայն հեշ-
տաբար , թէ կամի .
Սակայն մարդ ոք , թէպէտ և քաջ , ոչ
շարժեսցէ զայն հեշտին ,
Քանզի նշան մեծ գործեցաւ յայն քաջ-
արուեստ յանկողին .
Ես միայնակ զայն գործեցի 'ի կուռ փայ-
տէ ձիթենւոյն ,
Որ էր բուսեալ 'ի մեր բակին տունկ քաջ-
առոյգ սաղարթուն .
Մեծ էր և յաղթ իբրև ըզսիւն ամբարձ-
ուղէշ ամրոստեան
Եւ բոլորեալ շուրջ ըզնովաւ ես հիւսնեցի
սրսկապան .
Վ խմօք կանգնեալ զայն քաջակուռ , և 'ի
վերուստ ծածկեցի ,
Նաև դրանդիս ես վայելուչս և մեծա-
մուրս հաստեցի .
Ի գեղեցիկ զերծեալ վարսից ըզձիթե-
նին զայն զարդուն
Եւ յղկեցի 'ի սուր յերկաթ ըզբունն
կորեալ յարմատոյն .
Քաջիկ այնպէս յղկեալ ուղղորդ և կըշ-
ռակի գործեցի ,
Նաև գչրաւ արուեստակեալ ես անկող-
նոյն մոյթ եդի .

Այսպէս գործեալ ես զանկողինն և հա-
ստուցեալ զայն յաւարտ,
Զարդարեցի յեռեալ փղոսկր, 'ի նոյն
ոսկի և արծաթ.
Տարածեցի և մորթ գոմնեան փայլեալ
կարմիր 'ի յորդան,
Եւ զայս ահա ճշգրտեցի քեզ արդ ով
կին, 'ի նշան.
Այլ ոչ գիտեմ, եթէ նոյնպէս կայցէ
անդ իմս անկողին,
Եթէ այլ ոք փոխեաց այլուր մօտ կտրե-
լով զձիթենին ":
Լուաւ տիկինն, ծունկքն լուծան,
նուաղեցաւ սիրտ նորա.
Ծանեաւ ողջոյն նա ըզնշանսըն ճշգրր-
տեալ յՈդիսեայ.
Ոչ ցնդեցաւ 'ի յարտասուս, յարեաւ
դիմեաց անվեհեր
Եւ զՈդիսեայ պարանոցան շուրջ ըզբա-
զուկսն արկանէր.
Համբոյր գլխոյն ետ խանդակաթ, յո-
գւոց եհան և ասէ.
« Դու ինձ զարդիս մի ցասնուցուս մի
իմ դիւցազն Ոդիսէ.
Ցանգ 'ի մարդիկ երևեցար դու հանճա-
րեղ մեծապէս.
Սակայն աստուածքն առ 'ի վերուստ քաջ
խոչընդոտն եղեն մեզ.

Ըղձեր վայելչա խանդաղատին , զինող ընդ-
աւան յառաւօտ տիս ,
Եւ յաղեւոյթ յենուլ ապա միմեանց զօ-
րով յարկակից ·
Եւ արդ ընդ իս մի սրտնեցիս , և մի ցաւ-
նուր , նազելի ,
Զի յետ ատեայն ոչ փոյթ ընդ փոյթ քեզ
տարփանօք գիրկս արկի ·
Քանզի ՚ի ծուփըս խորհրդոց ցանգ խի-
թայի ես սաստիկ ,
Գուցէ զիս ոք ՚ի հաղբս արկցէ , զի շատք
գոն արք խաբուսիկ ·
Եւ ոչ ինքնին այն վարսաւորըն Հեղինէ
մտանէր
Ընդ օտարին այն փեսայի առ ՚ի հանճարոյ
և ՚ի սէր ,
Եթէ գիտէր , զի մարտ մղեալ Հելլենա-
ցիք ահագին ,
Դարձ միւսանգամ տաղըց էին նորա յեր-
կիրն հայրենին ·
Ո՞ն յաստուածոց զօրեաց ըղձեա ՚ի յայն
ձեռնարկ գուժաբեր ,
Ոչինչ գիտաց նախահայեաց ըղձեշան
Յունաց և ըղձեր ·
Իսկ զի նշան ինձ անհրաժեշտ դու քա-
ջայայտ եսուր արդ ,
Զայն քաջարուեստ մեր զանկողնոյն զոր
ոչ գիտաց այլ ոք մարդ ,

Բայց դու միայն և ես միայն, ընդ մեզ 'ւ
 այլ ոք աղախին
Այն Անտորիան, զոր ինձ հարսնես լինել
 Նաժիշտ եւ հայրն իմ,
Զի սա զծածուկ մեր սրակապանըն պաշտ-
 պաներ մինչ անգուն,
Վասն այն սիրոյ իմ առք ընկճեցաւ թէ-
 պէտ և սիրտ ապառուժ»:
Իբր զայս ասաց, և արտասուօք աչքըն
 լըցան Ողիսին,
Լայր և գրկէր ըզծնզատէր ըզախրաստուն
 զամուսինն.
Որպէս ցամաքըն աղէտանջեալ է որերոյն
 փարելի,
Զորոց ըզնաւըն Պոսիդոն կործոյս 'ի ծովն
 ամէհի,
Այն ինչ կուռ նաւն հողմահածեալ և ըն-
 կլուզեալ 'ի կոհակ,
Եւ անձնապուր ոքք նըւաղունք յալեաց
 ելեն կապուտակ,
Ի լեռ անկեալք և թաթաղունք ողջոյն
 յաղին 'ի փրփուր,
Սակայն զուարթք յերկիր ցամաք անդր
 ելանեն մազապուր.
Նոյնպէս ախորժելին էր Ողիսէս յայնժամ
 վայելք գերունակ,
Եւ յուլանկէն չառնոյր 'ի բաց զճերմակ
 բազուկն ըզպիկանակ:

Անշուշտ անդ այգ վարդածըղըն զըալիս
Նոցա տեսանէր,
Թէ դիցուհին մեծն Աթենաս գործ նո-
րաքանչ չըհնարէր․
Դրա 'ի վախճան զհասեալն յայնժամ
պահ գիշերոյն երկայնեաց
Եւ զառաւօտըն զոսկեգաւոհն յՈվկիանոս
առ սանձեաց․
Եկաց չեթող ըզ լուսաբեր լըծել ըզձիան
արագուն,
Զլամպոսն ասեմ և ըզ Փեթոն, որ քաջ
մտրուկքն են այգուն ։
Բայց Ոդիսեւս զայս բանս յայնժամ բար-
բառեցաւ․ «Լո՛ւր, ո՛վ կին,
Մեք մրցանաց մերոց 'ի վերջըն ո՛չ եմք հա-
սեալ տակաւին․
Դեռ ձիգն աշխատ հանդերձեալ կայ
'ինձ ընդ առաջ ելանել,
Գործ բազմադէմ և դըժուարին զոր ես
պարտիմ պըսակել․
Զոր միանգամ ինձ Տիրեսեայ անդ գու-
շակեաց մեծ հոգին,
Յորժամ ինքնին ես գժոխոցն իջի 'ի
տունն 'ի ներքին․
Իջի ես անդ զողջամք ըզդարձն իմ և զը-
մոցն 'ի գիտել․
Բայց մեք զարդիս քուն անուշակ ա՛ղէ
առցուք 'ի հանգչել»։

«Մահիճ պատրաստ, կրկնեաց տիկինն,
քեզ ցանգ կազմ է ըստ կամի,
Ցորժամ աստուածք եառուն քեզ արդ-
դառնալ՚ի տուն հայրենի.
Այլ ըզմրցանսդ զոր յիշեցեր, այժմէն
ասա՛ ինձ ողջիկ.
Անշուշտ լուայց ես զայն յապայս, և առ-
՚ի մէ՞ ո՛չ այժմիկ».
«Հի՞մ դու այնպէս, կին հետախոյզ,
կրկնեաց անդէն Ոդիսեւս,
Հի՞մ դու այժմէն լսել ողջոյն զիս արդ-
այնչափ Թախանձես:
Այլ ես ՚ի քէն ոչ ծածկեցից, այժմէն
ողջոյն ճառեցից,
Սակայն և ոչ քեզ հեշտալուր է պատմու-
Թիւնս և ոչ ինձ:
Ինձ ընդ բազում քաղաքս մարդկան,
հրաման յայնժամ ետ հոգին,
Ուղի հորդել, Թիակ մի կուռ ես ունե-
լով՚ի ձեռին,
Մինչև հասից առ այն մարդիկն որ ծով
երբէք ո՛չ ծանեան,
Եւ կերակուր աղիւ երբէք ըզհամեմեալն
ո՛չ կերան,
Եւ լաստափայտս նոքա կարմրայտս եր-
բէք տեսին և ոչինչ,
Եւ ոչ քաշտիս ինչ ամրակուռս, այն որ
Թեւք են նաւաթուիչ.

Ո՞ր դու տապս, ո՞ր քաղցրայոյս, Թէ զերծ
լիցիս 'ի կարեաց ».

Այր ընդ ընկեր խօսէին յայնժամ նոքա 'ի
յայս 'ի զրուցաց:

Իսկ և անդուստ գողտրիկ գորգոմք 'ի
լոյս ջահեալ ճըրագին

Եւրինոմէ և Եւրիկլէ նոցա մանկին կազ-
մէին.

Թանձր անկողին տանեալք 'ի ձեռն և
փութապէս արկանէին,

Եւ 'ի յարկ իւր անդորրանայ դառնայր
անդրէն Եւրիկլէն.

Եւրինոմէ ենեկապանին կաղեալ ըղջահն
'ի ձեռին

Էր նախընթաց Ոդիսեւսեայ և հոյակապ
դշխոյին.

Եած 'ի պերճ 'ի սրահապատն և միւսան-
գամ դարձ արար,

Եւ սրբութեան հին անկողնոյն իւրեանց
նոքա կան պատկառ:

Մինչ այս մինչ այն, և Տելեմաք և Փիլի-
տոս և Եումէս

Դուլ տարաքին 'ի կայթս ոտից, դուլ և
կանանցն 'ի հանդէս:

Ընկողմանեալք մնային 'ի քուն անդ 'ի
յանլոյսն 'ի դահլիճ,

Մինչդեռ անդուստ և ամուսինքն հանգ-
չէին ատոնոյն ըղձահէն.

Զրուցեալք անդէն ընփոփէին, այր
պատմելով ընկերին.
Պատմէր ընդվեշտ իւր Գենելոպ, զոր ինչ
կրեաց 'ի յարկին.
Ըղձոմանիաղն յուշ ածէր ընդպադշոտից
զայն երամ,
Որ 'ի պատճառս տարփանաց միշտ ցեցք
եղեն պալատան,
Քանի՞ ոչխարս յոյլս 'ի հօտէն, քանի՞ ար-
ջառս յաղեցին,
Իսկ քանի՞ծն և Թակուկաց նոքա զգինին
քամեցին:
Տայր անդրադարձ և Ոդիսևս, և ինք քա-
նի՞ Թշնամեաց
Ճասոյց ընդվեշտ, և քանի՞ծն ադէտս և ին-
քըն կրեաց:
Ոդիս պատմէր, Գենելոպէն զուարճա-
նայր 'ի լսել.
Եւ չանկաւ քուն աչաց նորա մինչև 'ի
սպառ 'ի պատմել:
Պատմեաց յառաջ, եթէ զիարդ նա ընդ
Կիկոնս եդ նըկուն.
Ապա արանց Լոտոսակեր եհաս յերկիր
բարեբուն.
Զիարդ Կիկլոպն այն ամեհին, զինչ
ինչ գործեաց և կրեաց,
Լուծեալ ընդվրէժ ընդհամհարզեցն, զորս
նա ուտէր մարդախանձ.

Զիա՛րդ նա եկն առ Նողոս առ Թագա-
ւորն հիւրընկալ,
Եւ տակաւին օրն անձկացեալ դարձին
իւրոյ չէր ծագեալ.
Զի միւսանգամ յափշտակեաց ըզնա մըր-
րիկ ահագին,
Եւ տայր 'ի ծովն 'ի ձկնաւէտ ծըփալ նըր-
մա ցա[illegible]ին.
Եւ զիա՛րդ[illegible]ւր ընակաւնան Լեստրի-
գոնայ[illegible] դաժան,
Եհաս յերկիրն և մուտ յոստանն Տելե-
պիւղոս լայնդռնեան.
Անդ նաւախումբն ողջոյն կորեաւ, կոր-
եան համհարզքն հասարակ,
Եւ ինքն 'ի նաւն իւր անձնապուր ճողոպ-
րեցաւ միայնակ:
Պատմեաց նըմա նաև ըզնենգ բազմահըր-
նարն ըզԿիրկեայ.
Եւ թէ զիա՛րդ 'ի դըժոխոց 'ի տունն ան-
լոյս չոքաւ նա,
Նաւ մի առեալ բազմապաշտի և քաջա-
կուռ հաստ զուղին
Ի հարցանել զԹեբայեցւոյն Տիրեսիայ
ըզհոգին.
Ուր ետես նա ողջոյն զընկերս, և ըզմայր
իւր ետես նա,
Որ զնա ծընաւ նաև սընոյց յորժամ ինքն
էր երախայ:

Եւ թէ զիմա՞րդ ըղձային լուսու նա զխմբե-
լոց համբարուաց,
Եւ զիմա՞րդ նա եհաս 'ի վայրն ահեղափո-
խիկն այն վիմաց.
Ուր Իովկիւղէ, ուր Քարիւրդէ ժայռք
անդամնօր սոսկալէք,
Եւ ոսկաւէն 'ի յայն յանձուկս ոչ ապրե-
ցան նաւաստիք։
Եւ թէ զիմա՞րդ զանդեայս[illegible]րիւային ըն-
կերքն 'ի սպանդ վարեցին,
Եւ զինչ գուժակ եհար ըղնաւն շանթ
հրաբորբոք Դիոսին.
Քաշ համահարզըն առ հասարակ կո-
րեան անդէն ծովակուր,
Եւ մահադոյժ յօրահասէն նա ինքն եւս
անձնապուր։
Եւ թէ զիմա՞րդ նա յՈվգիւգեայ 'ի սար
կղզին հասանէ,
Ուր յարգելան յաւերժահարսն ունէր
ըզնա Կալիփսէ.
Ի քարանձաւս իւր կերակրէր և զնա փե-
սայ իւր խնդրէր,
Եւ խոստանայր շնորհել նըմա զանմահ
ըղկեանս և զանծեր.
Սակայն և ինքն 'ի հրապուրիցն յայն դից-
ուհւոյն ոչ յանկչէր,
Եւ բազմաստանջ մեկնեալ անտի յօտար
երկիր հասանէր։

Էր այն երկրին Փէակեցւոց հիւրընկալու-
մեծ ազգին ,
Որք ժողովեալ ընծա սիրով իբրև աս-
տուած պատուեցին .
Տուեալ և շատ 'ի պատարագ ձորձ , և
պղինձ , և ոսկի ,
Եդին 'ի նաւ և 'ի յերկիրն արձակեցին հայ-
րենի :
Այն էինչ Ոդիս 'ի պատմութեանն առաջ
ըզբան զայս վերջին ,
Քուն անուշակ էառ ընդ նա անդորրաւէտ
'ի մահճին :
Նման Պալլաս կայր հովանի և պահ ու-
նէր գիշերոյն ,
Մինչև հանգեաւ անոյշ քընով նա ընդ
պարկեշտ ամուսնոյն .
Ածեալ ապա զայգն ոսկեդահ յՈվկիա-
նուն հոսանաց ,
Ի լուսաբեր համաշխարհին նա զիւցաբար
'ի վեր ած :
Զարթեաւ յայնժամ մեծն Ոդիսեւս յան-
դորրաւէտ յանկողնոյն ,
Եւ 'ի կին կողմն անդէն դարձեալ բար-
բառեցաւ առ դշխոյն :
« Շատ ինչ մրցանս , բարեկ , ով կին , մեք
մրցեցաք երկոքին ,
Դու իմքն 'ի տան յարտօսր անդուլ լեալ
անձկայրեաց իմ դարձին ,

Իսկ զիս ինքնին մեծն Արամազդ նաև
այլ դասք անմահից
Ի տար աշխարհըս արգելլին զիրկ 'ի տա-
նէս ցաւալից.
Բայց զի զարդիս մեք զանձկացեալըն
մեր գըրտաք սրսկապան,
Դու ինքն իմոց ըստացուածոց ցանդ պա-
հապան լեր 'ի տան.
Ես ըղձօան իմ բազմացուցից, զոր հոմա-
նիք վասնեցին,
Նաև տացեն ինձ Աքայեանք մինչև լըց-
ցին փարախք իմ:
Սակայն զարդիս 'ի տնկախիտ մեր յագա-
րակն ես աստ
Յայցելութիւն գընամ անդ հօրս, որ
ցանդ վասն իմ տառապի.
Բայց և ունիմ քեզ պատուիրան, թէ-
պէտ կին ես խորագգաց.
Դ 'արևածայրս վաղ հնչեսցի գոյժ օրհա-
սին հոմանեաց.
Արդ դու էլ նիստ 'ի վերնատանն, և զա-
ղախնեայս առ ընդ քեզ,
Անդ մեկուսի մի զոք տեսցես և մի ումեք
ինչ հարցցես »:
Լուաց Ոդիս, և զէն ըղձարդն իւր գեղե-
ցիկ արկ ուսոյն,
Ձայն ետ Եւմեայ և Փիլիտեայ, ձայն ար-
ձակեաց և որդւոյն.

Կազմ և պատրաստ առ հասարակ զին֊
ուորութեան եւ հրաման,
Ճեպէին նոքա և ժիրաժիրք 'ի զէն 'ի զարդ
վառեցան.
Բացին ըզդուրս, ելին արտաքս յանձնա֊
պաստանք քաջապէս.
Էր նախընթաց ուղղոյն նոցա ինքնին դիւ֊
ցազն Ոդիսէս.
Այն ինչ երկիրն էր լուսացեալ, և ըզ֊
նոսա Աթենաս
Ամբով, միգով քօղածածուկ 'ի քաղաքէն
հան արտաքս:



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Հոգւոց հոմանեացն կոտորելոց հորդան 'ի դժոխս տայ Հերմէս ։ Ջրուցատրութիւն հոգւոյ Ագամեմնոնին ընդ հոգւոյ Աքիլլէսին, և ընդ հոգւոյ հոմանեացն, այլովքն հանդերձ ։ Բայց յայնժամ Ոդիւս ընդ իւրոցն հասանէ յագարակն ծերունւոյն Լայերտեայ իւրոյ հօրն. ծանօթս տայ զանձնէն. անպատում խնդութիւն ծերունւոյն ։ Դողիոն հաւատարիմ ծառայ Լայերտեայ ընդ վեցից որդւոցն խնգայ մեծապէս 'ի գալուստ Ոդիսեայ ։ Գոյժ 'ի քաղաքին վասն կոտորածի հոմանեացն ։ Եւպիթէս հայր Անտինոսեայ գրգռէ զժողովուրդն 'ի վրէժխնդրութիւն. ընդդէմ դառնան նմա Մեդոն քարոզ և Ալիթերսէս ծերունին ։ Խմբին 'ի մարտ ընդդէմ Ոդիսեայ, յաղթանակէ Ոդիս. Լայերտէս ծերունին սպանանէ զԵւպիթէս ։ Հանդարտէ մարտըն 'ի շանթելոյն Արամազդայ. և խաղաղութիւն հաստէ 'ի քաղաքին Աթենաս զկերպարան առեալ զՄենտորին ։



# ՈԴԻՍԱԿԱՆ



## ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ ԻԴ.

ՅԱՅՆԺԱՄ հոգւոցըն հոմանեաց ձայն
տայր Հերմէս Կիլլենեան 85.
Բարձեալ՚ի ձեռն իւր գեղեցիկ և ոսկե-
ղէն գաւազան.
Նովաւ նա տայ, որոց կամի, արթուն
մարդկան աչաց քուն,
Դարձեալ՚ի նոյն և ըզթմբրեալս զարթու-
ցանէ ՚ի քընոյն.
Սովաւ յայնժամ նա տայր հորդան հո-
գւոցն այնմիկ երամին,
Նոքա ճիչ մեծ արձակելով և խուռն ըզ-
հետ գընային,

Զօրօրինակ խումբք սեւագունդ խաւա-
րային չղջիկանց

Ի ճիչ հատեալ ցանդ թրթռուան 'ի խորս
ահեղ անձաւաց,

Երբ յանկարծոյն ոք 'ի նոցունց զերծա-
նիցի 'ի վիմէն,

Ուր ընդ միմեանս կուռեալ նոքա իբրու
հոծեալ գունդ գործեն.

Սովին ճչմամբ և այն հոգիքն համախըռ-
նեալք երթային,

Եւ կարապետ ինքնին Հերմէս էր ընդ ու-
ղին խաւարին.

Անցեալք ընդ վէմս ընդ քաղխոսակ, և ընդ
հոսանան յՈվկիան,

Եւ ընդ ժողովքն Անրջոց և ընդ դրան-
դիս Արեգական,

Հասին եկին 'ի սիզաւէտ մարգագետնոյն
'ի սահման,

Յորում հոգիք, տիպք մեռելոց ունին
անդէն օթեվան.

Անդ ըզհոգին զԱքիլլեսի գտին ըզմեծ
դիւցազին,

ԸզՊատրոկլեայ, զԱնտիղոքեայ զորդւոյն
մեծի Նեստորին.

Ընդ ըզհոգին և զԱյասայ, որ 'ի Հել-
լենս գերակայ

Էր նա մարմնով նոյն և տեսլեամբ, բաց
'ի մեծէն Աքիլլեայ.

Սոքա անդէն 'ի միասին բակ զԱքիլլեաւ
գործէին,
Եւ եկն եհաս անդ և հոգին Ագամեմ-
նեայ ցաւագին.
Եկին անդ խուռն և որք յայնժամ 'ի
հացկերոյթն Եգիսթեան
Ցանկապատ անկեալ ընդ Ատրիդեայ յօրա-
հանէն գրաւեցան։
«Վաշուշտ ընդ քեզ մեք, Ատրիդես, մեծն
Աքիլլէս առ խօսել,
Համարէաք լինել Դիայ ընդ քեզ սիրուն ա-
ռաւել,
Քան զամենայն կարգ դիւցազանց, քերև
բազմաց պետ քաջաց,
Երբ յԵզերոն քաղանադատակ մեք կռուէաք
ընդ Տրովեանց.
Զի՞ է զի քեզ նախ առաջին չար օրահաս
կնքեցաւ,
Այն օրահասն որ անհրաժեշտ է 'ի մար-
դոյն որ ծնաւ.
Բա՜րէ, պարտ էր, յորժամ փառօք իշ-
խան էիր դու յայնժամ,
Անդ յԵզերոն 'ի ճակատուն մահ քեզ առ-
նուլ և վախճան.
Զի ամբողջ հելլէնք գամբան յայնժամ քեզ
կանգնէին 'ի պըսակ,
Զի և որդւոյդ շուք մեծաշուք լինէր յա-
պայս ժամանակ.

Աւա՜ղ բախտին. քեզ օրահասն այն կըն-
քեցաւ ողբալի »։

Ի լուր բանիցն Ագամեմնոն զայս անդրա-
դարձ տայր ձայնի։

«Քեզ, Աքիլլէս, քեզ դիւցանման, ես
զերանին տամ 'ի ձօն,

Որ տարադէմ 'ի յԱրգոսէն տապաստ ան-
կար յԵղիոն.

Անդ շուրջ ըզքեւ 'ի մէդ գային քաջքն
Հելլենաց և Տրովեանց,

Եւ դիտապաստ աստի անտի անկանէին
մահազգեաց,

Դու 'ի փոշւոջ մեծ այրդ անկեալ վայր
դրաւէիր մեծապէս

Լեալ անյարիր և մոռացեալ ըզկառա-
մարտ քո հանդէս.

Իսկ մեք անդուլ զողջոյն ըզտիւ մինչցեռ-
կայիր դիտապաստ,

Մարտ մրղէաք, թէ մըրըրկաւ դուլ չէր
տուեալ Արամազդ.

Ապա 'ի նաւս ածեալ ըզքեզ անդ հան-
գուցաք 'ի մահճին,

Օծմամբ մաքրեալ և զաղջ ջըրով ըզգե-
ղեցիկդ ըզմարմին.

Յոյնք զառնապէս արտասուելով, նաև
ըզվարսըս կտրեն,

Իսկ մայրդ ըզդոյժ լուեալ մահուն, ել
և վազեաց 'ի ծովէն.

Էառ ընդ իւր և զանմահից ըզծովայնոց
բազմերամ,
Եւ 'ի ծովէն բոմբիւն ահեղ արձագան-
գէր անպայման.
Ահ և դողումն առ ըզՀելլէնս դիմեալք
'ի նաւս թափ տային,
Եթէ զնոսա չէր արգելեալ Նեստորիս
ծերունին,
Այն հինաւուրցն այր քաջուշիմ, այր
մշտայաղթն 'ի յատեան,
Որ և ահեալ այն որերոյն ետ քաջ խոր-
հուրդ և յայնժամ.
« Հա՛մ պինդ կացէք, Աքայեցիք. զի մայրն
'ի գոյժ զաւակին
Յայցելութիւն գայ 'ի ծովէն ընդ անմա-
հից երամին »:
Լուան Հելլէնք, և անխուճապք կացին
միացին յականատան.
Բոլորեցան ըզքև, Աքիլլ, դստերք ծե-
րոյն ծովական.
Ողբս առնուին և քեզ 'ի փառս ձորձ զան-
մահից ագուցին,
Մուսայք ինննեակ եղերամարք ձայնիւ
փոփոխ կարգային.
Բամբէ անդէն այր անարտոսր ոչ ոք եկաց
'ի Յունաց.
Այնչափ յայնժամ երգ զղջական Մու-
սայն ողորմ յարդարեաց.

Ջուր եօթն և տասն և ըղձիչէր յայն
դիւահանս գեղեցիկ

Ջերմ արտասուս մեք Թափիչաք անդ և
աստուածք և մարդիկ.

Այն ինչ ծագեաց օր ութ և տասն, և 'ի
խարոյկ ամբարձաք,

Եւ յոյր օդիս և յանդէոց գալարեղջիւրս
յաղեցաք.

Դու այրեցար արկեալ այնպէս զայն աս-
տուածոց պատմուճան,

Եւ օծեցար առատ իւղով, նաև մեղու-
քաղցրութեան.

Աքայեցւոց շատ դիւցազունք հետիք,
հեծեալք, զինարուկաւ

Ընթանային զինու զարդու. շկահիւն շա-
չիւն մեծ հատաւ.

Բոց Հեփեստեան ծախեալ ըզքեզ, մեք
քո զոսկերսդ ըսպիտակ

Վաղ քաջ ընդ այգըն ամփոփեմք 'ի յիւղ
անոյշ, յանապակ.

Ըզգեղեցիկ սափորն ոսկի եդ մեզ քո
մայրն յանդիման,

Դիոնիսեայ էր այն պարգևն, և գործ
հրաշից Հեփեստեան.

Ի յայն սափոր, քաջազն Աքիլլ, քոյին
ոսկերըք հանգուցան.

Ընդ ամփոփեալ կան խառն ոսկերք և
Պատրոկղեայ Մենետեան,

Սակայն ոսկերըքն Անտիղոքեայ կան անդ-
ուրոյն մեկուսի,
Որում յաւէտ դու շուք տայիր յետ որ-
հասին Պատրոկղի.
Բայց և դամբան մեծ հոյակապ մեք քաջքս
Հելլէնք ամբարձաք,
Ուր կարկառեալ 'ի ծովեզեր յՆելլեսպոն-
տոսն ընդարձակ.
Զի 'ի բացուստ կայցէ այնպէս յերևանի
'ի ծովէն
Ծնելոց մարդկան և ապագայց որ ըզհետ
մեր գալոց են։
Իսկ և մրցանըս գեղեցիկս, մայր քո խըն-
դրեալ յաստուածոց,
Եդ յագոնին 'ի յասպարէս մեզ աւագաց
Աքեցւոց.
Շուք ըզթաղման ըզդիւցազանց ես շատ
տեսի գեղեցիկ,
Երբ աբքայից 'ի դխահանս մրցեն հըզօր
պատանիք.
Սակայն ընդ քոյդ ըսքանչացեալ յակ-
ճիւս յայնժամ ես կացի,
Զի վաղըն քո արդոյն Թետիս հանդէս
կարգեաց հրաշալի.
Դու նազելիդ վեհ աստուածոց Թէպէտ
ըզմահ ճաշակեալ,
Սակայն անմահ է առ մարդիկ քո շուք
անուանդ քաջափայլ.

Եղո՜ւկ եմ ես. ինձ որ վայելք ըզկնի մար-
տի վախճանին,
Որում 'ի գարձն Ամպրոպայինն աղէտ
նիւթեաց ահագին.
Զիս Եգիսթէս 'ի սպանդ վարեաց, զիս
և կինն իմ մահաբեր»:
Յայս օրինակ զրուցաց յայնժամ այր ընդ
ընկեր բարբառէր:
Մինչ այս մինչ այն հաս անդանօր մեծ
նուիրակըն Հերմէս,
Ածեալ զհոգիսն ըզհոմանեաց զոր արկ
տապաստ Ոդիսէս:
Այն ինչ ետես մեծն Աքիլլէս, ետես
Ատրիդ և այքայն,
Հիացեալք կացին, յարեան ձեպով և
ընդ առաջ ընթացան.
Անդէն հոգին Ագամեմնոնեայ զԱմփիմե-
դոս ծանեաւ քաջ,
Զի յԻթակէ ինքն յօթեվան հօրըն նորա
հիւր եկաց.
«Զի՞նչ իրք իցեն, Ամփիմեդէ, Ագամեմ-
նոնեայ հարց հոգին,
Զի՞ աստ իջէք դուք համախուռն 'ի յայս
երկիր խաւարին.
Դուք այրընտիրք և համատիք, դուք
քաջորեար քաղաքիդ,
Զի՞ է զի այդ խումբ աւագացդ աստ ձե-
պեցայք խիտ առ խիտ.

Արդեօք ըղձեղ ծովայածեալըս Պօլիդոն
ա՞ռ մատնեաց
Մըրրկաշունչ այսոց հողմոց և կոհակաց
ամեհեաց.
Կամ թէ ըղձեղ՝ի ցամաքի տապա՞ստ ար֊
կին թշնամիք,
Յորժամ զանդեայս դուք վարէիք և կամ
զօդիս գեղեցիկ.
Եթէ ար[illegible] վասն հայրենեաց և կանա֊
նւոյն գո՞ռ մարտի.
Ա՛ղէ պատմեա՛ ինձ հարցողիս, քանզի
հիւր քո ես կացի.
Ո՞չ ինկ յիշես, յորժամ ես ինքն և եղ֊
բայրն իմ՝ի տուն ձեր
Կալաք մեզ վանս, մեծն Ոդիւսեայ ՝ի յԵ֊
ղիոն տալ հրաւէր.
Ողջ ամիս մի քրտնավաստակ մեք ընդ
ծով մեծ յածեցաք,
Եւ զՈդիսևս քաղամարտիկն հազիւ ու֊
րեմն հանդուցաք ":
Արկնեաց հոգւոյն Ամփիմեդեայ. " Լո՛ւր
ինձ, արքայ գերափառ.
Յիշեմ ողջոյն, և դու ողջ լո՛ւր զօրահա֊
սին մեր ըղձառ.
Չէր Ոդիսևս մեծն ՝ի միջի չէր ընդ հա֊
րուստ ժամանակ,
Եւ յայնժամ մեք դասք պատանեացս վեհ
ամուսնոյն տարփացաք.

Սա ըղձալի զայն հարստանիս մեզ 'ի դըժ-
լուխ ոչ հանէր,
Դարձեալ և զայն ոչ զըլանայր, բայց
օրահաս մեզ նիւթէր.
Նենգ մի լարեաց, և ինք նստեալ ժիր
անկանէր մեծ ոստայն,
Ոստայն ընդարձ, և լայնատարր. և զայս
ասէր մեզ յայնժամ.
Ինձ ունկըն դիր, ո՞ պատան[illegible] անշուշտ
օրհասն առ զՈդիս.
Կայթեկ մի առդ զաւք ժուժալից կարդել
մեզ զայս հարսանիս,
Մինչև 'ի յանդ հանից զոստայնս մեր
Լայերտեայ 'ի պատան,
Զի մի իմ Թելքս և իմ աւէշք զուր փառ-
նեսցին յայս ոստայն.
Արկանելի զայն առոյ ծերոյն պատան
Թաղման դիւցազին,
Երբ նա ըղձուն զայն ննջեսցէ, քուն ան-
յարիր զօրհասին.
Զի մի Թերևս ոք տրանեսցի ինձ 'ի յու-
նաց բամբըշաց,
Թէ անպատան Թաղեալ ահա կայ ծերու-
նին բազմագանձ.
Մեք անսացաք. նա առ ոստայնն և ըզ-
ցերեկ անկանէր,
Իսկ գիշերի 'ի լոյս ճրագին դարձեալ
զանկեալն իւր քակէր.

Նա զամն երկիս զայս օրինակ իւր խաղա-
նօք Թանգուղեաց,

Ցանգ յուսացոյց ըղպատանիսս, մինչև
չորրորդ ամն եհաս.

Հողմկեցան աւուրք, ամիսք. ժամանեցին
եղանակք,

Ցեա այնորիկ մեզ մեռան եղև գործոյն նո-
րա կլին աւեղեալ.

Ընդ 'ի ժամն ընկուսնեցաք, մինչ նա քա-
կէր զիւր սասայնն.

Հարկեալ ապա Պենելոպէ հասոյց ընկերոյն
'ի վախճան.

Որք պղտակեաց և չինջ լուաց, և մեզ զոււ-
տայնն ցուցանէր.

Պերճ ձեռագործն իբրև արև, իբրև լու-
սին փայլակէր:

Յայնժամ չարաս ոմն 'ի Քաղաց ուստեք
զՈդիս մեզ էառ,

Այ և եբեր յիւր ապարանն, ուր այր
բնակէր խաղաղարաձ.

Եքն անդանօր և քաջորդին մեծ զիւցա-
զին Ոդիսեայ,

Դուրձ նաւադնաց էր արարեալ նա յա-
ւազուան 'ի Պիւղեայ:

Եկին ապա մինին յատուանն օրհաս մեզ
տալ չարաչար.

Տէրեկորոս եհաս յառաջ, իսկ Ոդիսէս
ըղհեռ զայր. :

Այր խոզարածն էած ըզնա, ձորձն էր զանձամբ գրգըլեալ,
Ցուպ 'ի ձեռին, ինքն էր մուրկի և ծե- րունոյ հանգունակ.
Հանդերձն այնչափ էր բրդդըզեալ, զի և այր ոք ծեր 'ի մեզ
Բամ ոչ կարաց ինչ ճանաչել յորժամ այնպէս զնա ետես.
Այպանեցաւ, հարուածեցաւ Ոդիսն 'ի մէնջ յիւրում տան,
Բայց ժուժկալեաց նա առ վայր մի, և լուռ տարաւ զամենայն.
Այս ազդեալ յԱրամազդայ իւր գոր- ծակից առ զորդին,
Եւ զզէնս յարկին բարձին ողջոյն և յա- ռագաստ փակեցին.
Յայնժամ Ոդիսըն խորագէտ Պենելո- պեայ թելադրեաց
Մրցանս խաղու յաղեղն, յերկաթ, դնել հանդէպ հոմանեաց.
Եւ եղև մեզ այն լայնալիճն և այն մա- նեակք երկաթիք
Մրցանք խաղու մահահրաւէրք, և մեր արեանց ճապաղիք.
Ոչ ոք 'ի մէնջ զօրեաց լարել ըզլայնալիճն հաստաձիգ,
Զի յայն մրցանս մեզ բաւական չեկաց բա- զուկ զօրավիգ.

Իսկ երբ առեալ ըզ լայնալիճն առ Ոդի-
սէս տանէին,
Մեք սրտաբեկեալ և' բան սաստիկ պարսա-
քարեմք տանողին.
Թոյլ ոչ տայաք տանել առ նա, թէպէտ
և շատ ժըրտեցաք,
Բայց Տելեմաք առնուլ տանել անդ
բուռն արար ծառայի:
Առեալ Ոդիս զաղեղն 'ի ձեռս, 'ի նոյն
լարեաց զայն փութով,
Եւ թափ ընդ օղսն անցոյց փըքերն, ինքն
անց եկաց առ սեմով,
Հեղ առ ոտիւք զերեքթևեանսն, ահեղ
աչօք ակնկարկեաց,
Ընդ գլխոյն եմուտ և առաջին զԱնտինոոս
հար խոցեաց.
Ըստ նըմանէն նա շեշտ անդուլ ըզմա-
հահոտն ըզփըքերն
Զըգէր և յայլս, և խիտ առ խիտ մի ըզ-
միով անկանէին:
Նըմա անշուշտ նիզակակից ոմն յաստուա-
ծոց անդ եկաց,
Ջի և համհարզքն իւր մոլեգինք տային
ամբաւ կոտորած.
Վայ ըզձայնիւ սաստիկ գուժեաց 'ի ջախ-
ջախել կառափանց,
Եւ առուանայր խաղայր աշակն յապա-
ժուժից 'ի յարեանց:

Արդ մեք այսպէս, Աղամեմնէ, 'ի մահ
կորուսա մատնեցաք,
Եւ դիակունք մեր դեռ անթաղք յՈդի-
սեւսեայ կան 'ի բակ.
Քանզի և յունկըն սիրելեաց մեր սրա-
հասն ոչ գուժեաց,
Ոչ լուացին 'ի մեր մարմնոց զաղտ, զպա-
պածոյժն ըզվերաց.
Դեռ ոչ ետուն մեզ զխահանս 'ի զըջա-
կան 'ի յերգոց,
Դեռ զհանգստեան դիր ոչ տուաք, շուք
ըզվերջին մեռելոց»:
«Ո՜նեզ երանի տամ, Ոդիսեւս, Աղամեմ-
նոն ետ բարբառ,
Բաղէ, զկնորդ իմաստութեամբ դու ա-
մուսնոյդ տիրացար.
Բաղէ, զկնորդ և կին պարկեշտ Իկարոս-
եանն հրաշացաւ,
Որ միշտ սերտիւ սիրեաց զՈդիւս, որում
նա կոյս հարսնացաւ.
Անջնջելի փառքն յընդհանուրս կացցէ
նորայն բարոյից,
Երգ շնորհաշուք Պենելոպէ առցէ յա-
ւէժ յանմահից,
Ո՛չ որպէսի այն չարարուեստ Տինդա-
րոսեանն այրասպան,
Որ նա կուսան ինձ հարսնացեալ տարա-
բախտիս 'ի չար ժամ.

Երգ չարաշուք կացցէ նորա և ընդհա-
նուրս հնչեսցի,
Որ բիծ այնպէս նաև լուսաց եդ կանա-
նւոյն երամի ”։
Զայս ընդ միմեանս հոգիքն յայնժամ
փոփոխակի զրուցէին
'Ի ստորերկրեայ փակեալք յանձաւս անդ
Դժոխոց 'ի յարկին։

Բայց Ոդիսէս ընդ քաջորդւոյն, ընդ
Փիլիտեայ, ընդ Եւմեայ,
Փոյթ յոստանէն եկին հասին 'ի յագա-
րակ Լայերտեայ.
Ինքնին Լայերտ խնամով մեծաւ էր մըշա-
կեալ զայն կալուած,
Շէն բարեբեր կացոյց ըզնա, զի քիրտն
անչափ անդ Թափեաց.
Անդ բնակութիւն էր ծերունւոյն, հիւղք
և գաւիթք շուրջ կային,
Ուր և ծառայք իւր հողագործք ըզկերա-
կուր առնուին.
Անդ և բազմոցք և ննջարանք են կաքւոր
սպասարկուաց,
Որ ձեռն 'ի գործ 'ի սերտ սրտէ վաստա-
կէին յայն կալուած.
Նաև աւսարդ կին ժիրաժիր 'ի Սիկիլեայ
'ի կղզւոյն
Էր մնացեալ անդ յագարակն, էր հո-
գատար ծերունւոյն։

Ձայն ետ Ոդիս Ցելեմաքեայ, ըզնոյն հովուաց իւր կրկին.
«Ա՛ղէ մըտէք դուք արդ 'ի ներքս 'ի բարեշէն 'ի յարկսն.
Առէք ընտիր խոզ պարարակ, և մեզ զենէք 'ի յընթրիս,
Եւ ես գընամ արդ 'ի փորձել վայր մի ըզհայր ծերունիս.
Արդեօք 'ի յակն իւր զիս արկեալ և ծանիցէ՞ նա անդէն,
Եւ կամ թէ ոչ, իմ ընդ երկար գոլով յերկրէս տարադէմ».
Ասաց Ոդիս, և ծառայիցն առեալ ըզզէնս իւր յանձնեաց,
Նոքա մըտեալք հանդերձեցան և տանէին հօգ ընթրեաց:
Յարեաւ Ոդիս և ուղղեցաւ 'ի մեծ պարտէզ պտղալից,
ԸզԴոլիոս անդ ոչ եգիտ, չեգիտ և զորդս ծառայից.
Նաև յորդւոց ոչ ոք գտաւ, զի 'նդ հօր իւրեանց գընացին,
Թուփըս փըշոտըս ժողովել և ցանգ պատել պարտիզին.
Բայց անդանօր 'ի շէն դրախտին նա ըզհայր իւր գիտ միայն,
Որ ըզտնկովքըն շուրջ բըրէր ձուձ մի արկեալ պատմուճան,

Էր բրդգզեալ և կարկառուն, և՛էր նո-
րա սունապան
Արջառամորթ և կարկառեալ առ 'ի ցրտ-
մանց պահապան.
Եւ ձեռնապան էր ծերունւոյն 'ի դդու-
շութիւն մորենեաց,
Եւ այծենի ունէր գլխարկ, և էր մարմ-
նովն յոյժ ցաւած:
Ըզտեսիլ զայն յանկն իւր արկեալ Ոդիսև-
սեայ դիւցազին,
Տուայտեալ այնպէս 'ի յալևոյթ և մշտա-
կիր 'ի յանձին,
Աղէկիզեալ երթ ընդ բարձու ընդ տան-
ձենեաւ կաց և լայր,
Եւ տարակոյս 'ի կրկնակի նա 'ի խոր-
հուրդս իւր ծըփայր:
Արդեօք խակոյն նա գիրկ ընդ խառն ընդ
հօր իւրում ընկնիցի,
Եւ մերկացի ըղձաւ դարձին իւրոյ յեր-
կիրն հայրենի,
Եթէ արդեօք հարցաքըննին նախ փորձես-
ցէ զամենայն.
Կայր և խորհէր և 'ի վերջինն հաստատե-
ցաւ նա յայնժամ:
Նախ հնարիմաց խնդրեաց բանիւք ըղ-
ծերունին ըղկըծել,
Եւ եղ գընայր նա դէպ ուղիղ առ հայրն
իւր 'ի փորձել.

Մինչդեռ խոնարհ նա անդ գլխով շուրջ
ըղձալինկոծըն բոլորեր,
Մերձ Ոգլուեւս եկաց առ հայրն և ձայն
կարդաց անմեղհեր.
« Բարբէ, քաջ ես, ո՛վ ծերունիդ, դու
ղայդ պարտեզ մըշակել,
Ահա զքրտունսդ ասա խիտ առ խիտ՝ ես
տեսանեմ անարգել:
Չիք սաստանօր տունկ անմըշակ, ոչ
տունկ որթոյ, ո՛չ թըզոյ,
Ոչ ձիթենւոյ և ոչ տանձի, նաև ոչ ափ մի
գետնոյ:
Բայց քեզ ասեմ, մի ցասնուցուս, դու
անմըշակ զքեզ ունիս,
Ցայդ ալևոյթ 'ի խոր հասեալ և արկեալ
ես հընոտիս.
Բայց և անշուշտ յայդ զըրգըլեակ չիք
ինչ քո մեզ յուլութեան,
Այլ քոյին տեառն որ այդգունակ թո-
ղու ըզքեզ անդարման.
Եւ այն զի դու հայեցողացն 'ի դիտակ քո
և հասակ
Չես ոք ծառայ, այլ ճշգրտիւ առն ար-
քայի նըմանակ.
Տիպ բարեկեաց երբեմ զմարդոյ, որ
լուացեալ և առեալ հաց,
Եւ յանկողին գիրգ հանգիցէ ըստ օրինի
ծերունեաց:

Բայց այժմ դու, ո՛վ ծերունիդ, զայն ինձ պատմեա ուղղապէս.

Ո՞յր ուրուք տեառն ես դու ծառայ, և զո՞յր պարտէզ մշակես.

Նաև զայն ինչ ասա ինձ պարզ, թէ Իթակէ է այս վայր,

Զորօրինակ ընդ առաջեաւ ասէր ոք ինձ այր ախմար,

Զի ոչ ասաց ինձ ճշգրտիւ, և ո՛չ եկաց ՚ի լսել,

Զոր միանգամ ես կամէի նըմա յայնժամ հարցանել.

Լուր խնդրէի առնուլ զհիւրոյս, ո՞ւր իցէ նա, չընկալայ,

Ո՞ղջ է արդեօք, եթէ մեռեալ. և դժոխք են տուն նորա:

Սու արդ քեզ զայն ՚ի վեր հանեմ, դու քաջ միտ դիր, ծերունի.

Է՛ր զի երբեմն, ես ՚ի տուն իմ զայր ոք արդոյ հիւր առի.

Չէր իմ տեսեալ հիւր այնպիսի արդոյ սիրուն անձնըման,

Որչափ ինչ հիւրք տարաշխարհիկք յիմ ճջավան օթեցան.

Ասէր զանձն նէն բնակաբնունդ գոլ ծընընդեամբ յԻթակայ,

Եւ դաւանէր զինքըն որդի Արկիսոսեան Լայերտեայ.

Բայց ո՞ն ասա, ընդնա 'ի հիւր երբ դու առեր քում յարկին,
Ասա՛ղ, եղո՜ւկ, հիւր հիքացեալ, (եԹէ դեռ կեայ), զորդեակն իմ.
Եղո՜ւկ եմ ես. յո՞ր խորշ ծովու արդեօք եղև կեր ձկանց,
Կամ յո՞ր ցամաք որս օդայնոց, և դէշ արկաւ գազանաց.
Արդ ոչ մայրիկն իւր որդեսէր ընդնա պատեաց և ելաց,
Եւ ոչ նորա հայր ծերունին. բա՛րէ; ծընողք ցաւազգեաց.
Եւ ո՛չ պարկեշտ Պենելոպէն ելաց 'ի տանն զայր սիրուն,
Ո՛չ 'ի մահճին փակեալ և զաչսն, այնպէս 'ի քուն եդ մահուն:
Լայ նա այժմիկ, իբրու վերջին ընչուք Թաղման չետ նըմա.
Բայց դու ասէ, ո՛վ հիւր բարի, ինձ ճըշգրտիւ զայն ասա.
Ո՞վ իցես դու, և կամ յորո՞ց, ո՞ւր քո ծընողք, ո՞ւր քաղաք,
Եւ որ ընդ քեզ ած աստ առ մեզ, ո՞ւր կայ արդ նաւն այն արագ.
Ո՞ւր են քո քաջ նիզակակիցք, արդեօք դու նա՛ւ յօտարին
Եկուր ընկլարձն, և նաւաստիքն ընդ քեզ հանեալ չուեցին ":

Հնչեաց յայնժամ բան խորագէտն .
« Ասեմ քեզ արդ կարգաւոր .
Քաղաք ծննդեանս է Ալիբաս , ուր և կայ
իմ տուն պայծառ .
Որդի եմ ես Ափիդասայ Պողիպեմեան
արքայի՛ն ,
Եւ ինձ 'ի բնէ Եպերիտոս յորջորջեցին
զանուն իմ .
Ի Սիկանեայ ձգեաց տատուած զիս յայս
կղզի դժկամակ ,
Եւ 'ի բացեայ 'ի քաղաքէն մօտ կայ արդ
նաւս յագարակ .
Քաջ հինգերորդ է այս տարի , զի հիւր
առի զՈդիսեւս ,
Եւ հիքացեալն հրաժեշտ յինէն առ և
գնաց 'ի յերկրէս .
Բայց 'ի չուելն անդ հաւք աջինք բարե-
գուշակք Թռչէին .
Ես խնդութեամբ արձակեցի , էր և նա
ինք խնդագին .
Այլ հանդիպել միմեանց անդրէն մեք
յուսայաք անվեհեր ,
Եւ վանատուր գոլ իրերաց , նաև լինել
օժտաբեր » ։
Լուեաց Ոդիս , և զծերունին ամպ մի ցա-
ւոց խաւարին
Պատեաց ողջոյն , և չէկ ըզհողն էառ ձե-
ռօքն իւր կրկին ,

Ամպովք լցովք զալեկոծեալ ընդդիմութիւն ող-
 ջոյն փոշոտէր ,
Եւ խիտ առ խիտ Թառաչ հառաչ 'ի խոր
 սրտէն արձակէր ։
Անդուստ Ոդիս աղեկիզեալ և ընդ ուղն-
 գունս 'ի ժամուն
Ղունչ մի հրակէզ շնչէր փնչէր , տեսեալ
 ըզհայրն իւր սիրուն .
Դիմեաց Թափով և փարեցաւ և համբու-
 րեաց , եւ բարբառ ,
« Ես աւադիկ ես այն ինքն եմ , զոր արդ-
 խնդրես դու ո՛վ հայր .
Ամք այս քսանք բոլորեցան և արդ դար-
 ձայ 'ի տուն իմ .
Ժուժեա՛ հայր իմ , ժուժեա՛ մի լար . սըր-
 բեա՛ քո զաչս ցօղագին .
Սուղ է ինձ ժամս . լո՛ւր 'ի կարճոյ . ես
 միահ ածի հոմանեաց .
Ըզվրէժն առի ըզշամբշելոցն և զոդե-
 տանիքն ըզչարեաց »։
Զայն հապճեպով տայր ծերունին .
 « Դո՞ւ Ոդիսեան իմ որդեակ ,
Դո՞ւ ես Ոդիսն . արդ տո՛ւր , որդեակ ,
 ինձ աներկբայ նըշանակ »։
Ճեպեաց Ոդիս , հանդոյց ըզհայրն , ա-
 սէր , « Զբազխս նախ զննեա՛ ,
Զոր յիս եհար վարազ ժանեղ անդ 'ի
 լերին Պառնասեայ .

Ես առ 'ի մէնջ առ Աւտողիկ ուղի առ պապն իմ հաւր ,
Առնուլ ընծիրսն զոր ինձ երբեմն աստ խոստացաւ ակնարկն ։
Նաև ըզծառսն առեմ քեզ, հայր, զքո մըշակեալ այս դրախտի ,
Զոր դու երբեմն ինձ շնորհեցեր , զոր ես 'ի քէն խնդրէի .
Մինչ ես մանուկս ընդ քեզ , ով հայր , առ այն ծառովք շրջէաք ,
Եւ դու յայնժամ ողջ յանուանէ ինձ ծանուցեր կարգ 'ի կարգ .
Ծառըս տանձի երեքտասան , և տասըն ծառ խնձորոյ ,
Եւ Թըզենիս Թիւ քառասուն , նա և յիսուն կարգ որթոյ .
Որթք քաղցրաբերք 'ի յայգեկութս ամէն ազգաց խաղողոց ,
Եւ մրգաւէտք և ուռճացեալք յերկնատարափ 'ի ցօղոց ” ։
Լուաւ զնըշանսն Լայերտէս , քաջին ծանեաւ զայն ողջոյն .
Եւ այլ յայլմէ լեալ 'ի յոգւոյն , ծունկքըն լուծան ծերունւոյն .
Բազկատարած փարեալ զորդւոյն , էր խանդակաթ սաստկապէս ,
Մինչ յինքըն առեալ ըզնուաղեալըն յանձանձէր Ոդիսէս .

Իբրև անդրէն արծարծեցաւ, և քաջ
'ի յուշ իւր դառնայր,
Ամբարձ ըղձայն իւր ծերունին, « Բա՛րէ,
դու Զևս, դու ով հայր,
Անշուշտ ապա դու և անմահք կայք 'ի
բարձունս 'ի յերկին,
Եթէ անշուշտ շամբուշ սեղեխքն արդ
մատն եղեն որհասին։
Բայց ես փխթամ եթէ յանկարծ խըռ-
նեալ աստէն Իթակեանց,
Նաև դուժկամս արձակեսցեն անդ 'ի
քաղաքս Կեփաղեանց »։
« Քա՛ջ լեր, ով հայր, և մի հոգար.
պատասխանի ետ Ոդիս.
Բայց դու արդ գնասցուք զարդիւս մեք 'ի
տուն մօտ պարտիզիս.
Տելեմաքոս կայ անդանօր և Փիլիտոս և
Եւմէս,
Ես ըզնոսա անդ յըղեցի ընթրիս մեզ տալ-
փութապէս »։
Ասաց Ոդիս. յարեան գընալ, և մըտա-
նեն 'ի շէն յարկ,
Եւ գըտանեն անդ ըզհովիւսն, էր ընդ-
նոսա Տելեմաք.
Յօշեն ըզմիս, խառնեն գինի. իսկ յայն-
ժամ կինն Սիկիլեան
Ըզ Լայերտէս լուաց և օծ, և արկ չքնաղ
պատմուճան.

Մերձ կայ Նոմա մեծն Աթենաս և ողջ
զանդամս արքային
Եդ քաջառոյգ, հաստահարուստ, և շուք
եհար պատկերին.
Եւ Լայերտէս 'ի բաղանեաց, և հիանայր
Ոդիսէս,
Նման ըղձա տես անմահից. և արձա-
կեաց ձայն այսպէս.
"Բնաւէ ով հայր, անշուշտ ղարդիս
ոմն յաստուածոց յաւերժից
Ի յայդ պատկեր և 'ի հասակ հաստեաց
ըզքեզ շնորհալից"։
Ձայն կրկնեաց հայրն. «Ո՜վ թէ էի,
բնա՜ւէ ո՛վ մեծդ Արամազդ,
Եւ Ապողոն, ո՛վ քաջ արանց, և Աթե-
նաս բազմիմաստ,
Որպէս երբեմն ընդ Ներիկոս ընդմարդա-
շատն ըզքաղաք
Առի իշխանս ես Կեփաղեանց, անդ 'ի
յերկրին 'ի ցամաք.
Այնպիսի ոք և քեզ Ոդիս ես 'ի յաւուրն
երեկեան
Ըզզէն և զարդ արկեալ զուսով քեզ մերձ
կայի 'ի մեր տան,
Նիզակակից և զօրավիգ ըզհոմանիս վա-
նէի,
Բազմաց գոլով կարթակոտոր նահատա-
կեալ 'ի յարկի.

Իսկ դու անդուստ ղիս յանկն արկեալ և
ցնծայիր 'ի յոգին ».

Զայսօրինակ անդ ընդ միմեանս հայր և
որդի զրուցէին ։

Օ ընթրեան յայնժամ վայելչապէս պատ-
րաստելով արքն 'ի տան ,

Այր այր առեալ զիւրըն բազմոց բոլորե-
ցաւ 'ի սեղան .

Այն ինչ ըզձեռն արկանէին և հանդեր-
ձին առնուլ հաց ,

Անդէն 'ի Նոյն և Դոլխոսըն ծերունին
մերձ եկաց .

Նաև որդիքն ընդ հօր իւրեանց խոնջք և
վաստակք միաբան ,

Զօրս և եկեալ կոչեաց 'ի ներքս անդ
մայրն աւսարդ Սիկիլեան .

Սա էր որդւոցըն սընուցիչ և դարմանէր
զծերունին .

Անդէն իբրև տեսին զՈդիս , ծանեան ըզ-
նա զգլխովըն .

Կացին լռիկք և ապշեցան ։ Զայն Ոդի-
սևս եւ հեզիկ ,

« Նստ դու յընթրիս ո՛ ծերունիդ . և մի՛
յապուշ հարկանիք .

Մեք 'ի վաղուց , ընթրիս առնուլ աստ
բազմելով 'ի սեղան ,

Զեզ մնայաք 'ի մեր յարկիս սպասէաք
ձերում գալստեան ».

Օ այս Ոդիսեւս , իսկ Դոլիոս պարզեալ
զբազուկս իւր կրկին ,
Դիմեաց Թափով , եւ ողջունիւ համբոյր
նորա ետ ձեռին .
« Բա՛րեւ , սիրուն , ձայն արձակեաց , ըղ-
սիրելիս քո գլուխր ,
Ցոյս մեր հաստատ . սակայն աստուածք
ածին ըզքեզ անմահներ :
Ո՛ղջ լեր յաւէժ , խնդամ յաւէտ , եւ արդ-
լեցիս երջանիկ .
Բայց եւ զայն ինձ ասա ճշգրիտ , զի գի-
տացից ես քաջիկ .
Ըզգաստարձըն քո Պենելոպէն գիտէ՞ արդեօք
աներկբայ .
Ասա թէ ոչ , բանբեր յղեալ մեք աւետիս
տամք նըմա » .
Պատասխանի ետ Ոդիսեւս . « Պենելոպէն
գիտէ քաջ .
Դու լե՛ր անդորր ո՛ ծերունի . մի՛ ինչ
հոգար , եւ բազմեա՛ց » :
Բազմոց յայնժամ առ Դոլիոս , առին
որդիքն 'ի յարկին ,
Եւ ցնծացին ընդ Ոդիսեւս եւ ըզձեռացն
ունէին .
Առ հօր իւրեանց առին ըզկարգն եւ բազ-
մեցան առընթեր ,
Այր այր յայնժամ ուրախացեալք . եւ 'ի
յընթրիս պարապէր .

Բայց հոմանեաց դայժն օրհասին 'ի քա-
ղաքին հնչեցաւ,
Եւ բօթ հարեալ և խուռնապեալ խռնէր
անդէն խումբ առհաւ.
Սաստիկ շռնդիւն և մեծ դոչիւն էր
տանն հանդէպ Ոդիսէին,
Եւ բառնային ըզդիակունս, ձեռամբ 'ի
հող ծածկէին.
Որք միանգամ բնակաւորութեամբք էին յայ-
լոց քաղաքաց,
Յիւրաքանչիւր տունս յղէին 'ի ձկնորսաց
'ի նաւակս։
Եկին ապա ժողովեցան յոյժ ցաւագինք
'ի յատեան,
Եւ միացին մինչև ողջոյն համագումար
խմբեցան։
Յարեաւ յայնժամ անդ Եւպիթէս, և
խօսեցաւ առաջին.
Էր նա յոգւոյն իւր կարեվէր խոցեալ ընդ
մահ զաւակին.
Անընդհէջելի էր ցաւ սրտին, զի հայր էր նա
Անտինեայ,
Զոր առաջին արկ գիտապատ հաստ
լայնալիճն Ոդիսեայ.
Կայր և խօսէր, միանգամայն և արտա-
սուէր դառնապէս,
” Բո՛ւքէ, զըմբաղ, ո՛վ բարեկամք, մեծ
այդ Ոդիս հարոյց մեզ.

Նա շատ որեար և քաջ որեար նախ ած֊
ընդ իւր նաւադնաց ,
Ըշկուռ մեր նաւս և գունդ սաստիկ նա
'ի կորուստ առ մատնեաց .
Իսկ և զպրդիս արկ դիտապաստ ընկե֊
փաղեանց կորովիս .
Արդ , զի՞ կայք . մինչև դորա է խուճա֊
պեալ 'ի Պիւղիս ,
Եւ կամ յԵղիս վայր դիւցազանց , յորում
Եպեանք կապեն Թագ .
Արդ , ո՞ւմ կայք , ո՞ն կանխեսցուք մեք
'ի վանել զայդ վիրագ ,
Եւ կամ թէ միշտ , արդ վատացեալք ,
կացցուք մնասցուք նշաւակ .
Քանզի յաւակ լիցին այդ իրք մեզ և յա֊
պայս ժամանակ .
Եթէ մահուանց չեմք քինահան մեք մեր
որդւոց և եղբարց ,
Զի՞ ևս է ինձ ընթացքր արևն արդ տեսա֊
նել զիմ կենաց .
Ո՛վ , մահ առեալ և առ մեռեալս կա֊
նուխ իջից ես անշուշտ .
Բայց արդ , քաջք , մինչև դոցա աճա֊
պարեալ 'ի փախուստ » :
Օյս նա ասէր , և [illegible] . ող֊
ջոյն 'ի գունդ շարժեցան ,
Մինչդեռ անդուստ եհաս Մեդոն , հաս
և արգոյն երգահան .

Ի յՈդիսեայ դայլին տանէն սԹափեալք
  յայնժամ 'ի քընոյն .
Եղին կացին , և ափշուԹիւն էառ զա-
  տեան զայն ողջոյն .
Զայն հանճարեղըն արձակեաց Մեդոն
  Քարոզն յատենի ,
« Աղէ դուք , ով ԻԹակացիք , արդ ունկն
  իմոյն դիք ձայնի .
Ո՛չ յակամայս ինչ անմահիցն յանդ. եւ
  նախճիրդ Ոդիսեան .
Զանմահն տեսուած ես , ես ինքնին անդ
  յակն արկի յանդիման .
Նա մերձ եկաց քաջն Ոդիսեայ , ըղտիպ
  բերեալ զՄենտորին .
Է՛ զի անմահն 'ի հանդիպոյ կորով աղ-
  դէր դիւցազին ,
Է՛ զի Թափ տայր նա 'ի յարկին խըռով
  հարեալ հոմանեաց ,
Մինչև անկան անդ խիտ առ խիտ ողջ
  չնչատապառք 'ի կենաց » :
Օ այս խօսեցաւ . առհասարակ 'ի դոյն
  հատան 'ի դալկան ,
Մինչև յարեաւ դիւցազն այն ծեր Ալի-
  Թերսէս Մաստորեան .
Քաջ և ներկուռ սա տեսանող էր ան-
  ցելոց և ապայց ,
Հանճարիմաստն և անդանօր նոցա յայն-
  ժամ ձայն կարդաց .

« Ինձ ունկըն դիք, ինձ ծերունւոյս.
ընակարանութիւնք ի Թաւրեան,
Ձեր յանցանօքդ, ո՛ քարեկամք, մեծ այդ
նախնիքը գործեցան.
Դուք ոչ ատայդ մեր Մեծութեան, ո՛չ և
ծերոյս անսացէք,
Այլ ՚ի լեռնեղ ամենատեսութես լեռնեին զօր-
դիս ձեր թողէք.
Նորա գնացեալք խոտորնակի քարուա-
կանօք լըռէին,
Ընկեանս քաղին առին կերան և զամու-
սինն գձձեին.
Ոչ կարծէին եթէ դարձցի այր բազմամ-
եայն տարաղէմ.
Բայց դուք զարդիս ուշիմ լերուք, և ան-
սացէք զոր ասեմ.
Համդարտ լերուք և գիմագրաւ մի՛ որ
յառաջ խաղացէ,
Գուցէ ըղմահն ըղհրաւիրեալն ընդառա-
ջել իւր գոցէ »:
Օ այս ծերունին. և բազմագոյնք մեծա-
բարբառք հանձք հաւան,
Լըքին զատեանն. սակայն և կէսք կացին
անդէն միաբան:
Բանից ծերոյն ո՛չ անսացին համախու-
հեալք Եալիթին,
Ցարեան գնացին և փութապէս ՚ի զէն ՚ի
զարդ վառէին.

Եկին կայծակունք և կարգեցան զրահա-
վառեալք 'ի պատկան ,
Եւ խմբեցան 'ի յառաջապարէզ անդ քաղա-
քին յանդիման .
Խօսեաց խաժին 'ի զօրավար արձանացաւ
Եւպիթէս ,
Եւ քինահան աքեան որդւոյն կարծէր
լինել փութապէս .
Ո՛վ, հեքացեալքն 'ի տուն իւր դարձ չու-
նէր առնել միւսանգամ,
Ինքն ընդառաջ գընայր խորոյ օրահասին
դառնութեան :
Բայց հնարագիտա, մեծն Աթենաս մեհ
Արքային հարցանէր .
« Ա՛զէ ասա ինձ, Զրուանեանդ, տէր
արքայից և հայր մեր .
Զի՞նչ խորհրդոցդ էջեն գաղտնիք .
մի՞թէ գըժնգակ յուզեսցես.
Եթէ ազգեօք կռուոց կողմանց սէր և համ_
բոյր հաստատեսցես .
« Ա՛ւ ի՞նչ դու զայդ , ձայն արձակեաց
ամպրոպայինն Արամազդ ,
Ա՛ւ ի՞նչ դու արդ հետաքննես յինէն ,
դուստր իմ բազմիմաստ .
Ո՞չ աւադիկ դու խորհեցար ըզդոյն խոր-
հուրդ մեծապէս ,
Զի 'ի դարձին մահ հոմանեաց տացէ ինք-
նին Ոդիսէս .

Ա՛ղէ արա դու ըստ կամի. սակայն ասեմ
քեզ զարժանն.
Ո՞չ Ոդիսեւսդ այդ քաջարանց եկաց դոցա
քինահան,
Արդ նա ինքնին թաղ կապեսցէ, թաղ
հաստատուն 'ի դաշանց,
Իսկ մեք ինքնին ողջմոռուացօնք արդ արտա-
ցուք դառն արեանց.
Մի՛ յիշաչարք լիցին դոքա, 'ի սէր դարձ-
ցին յառաջին,
Եւ միւսանգամ խաղաղութեամբ և մե-
ծութեամբք լիասցին »:
Ասաց Արքայն, և զԱթենաս զարդէն
վառեալն յորդորեաց.
Էջ նա փութով արփայազնաց յՈղիմպո-
սին կատարաց:
Բայց Ոդիսեանք անդ 'ի յարկին խրա-
խուճս առեալ 'ի յընթրեաց,
Դիւցազն յայնժամ մեծն Ոդիսէս բազ-
մականին ձայն կարդաց.
« Օ՛ն արդ ելցէ ոք 'ի դիտել մեզ ըղձա-
լուսա հրոսակին »:
Այն ինչ լուաւ, ձեպեաց արտաքս Դո-
լիոսի քաջորդին.
Կաց առ սեմովքն, և ըղհրոսակն ողջոյն
դիտեալ նա քաջիկ,
Ձայն առ Ոդիս կարդաց անդէն. « Մօտ
կան առ մեզ աւադիկ.

Հա՛պա 'ի զէն առ հասարակ. ա՛րք, ո՛վ
   քաջք, 'ի Ճակատ ":
Լուան, վառէին միանգամայն. և ոչ եկաց
   ոք 'ի զատ.
Զորք համահարզք շուրջ զՈդիսեաւ նաև
   Դոլեայ վեց զաւակք
Զինու զարդու արձանացան իբրև ըզքաջ
   նահատակ.
Կացին համհարզք և Լայերտէս և Դո-
   լիոս ծերունիք.
Զի հարկ ժամուն և զալևորսն խրախու-
   սեալ եդ մարտիկ.
Բացին ըզդրուրս, ելին արտաքս, էր Ո-
   դիսէս նախընթաց,
Նիզակակից կաց առ ընթեր և քաջ մազ-
   դեղն Աթենաս.
ԸզՄենտորին բերէր ըզտիպ քաջ ըզ-
   մարմնոյն և ձայնին,
Ետես դիւցազըն Ոդիսէս և ցնծացաւ 'ի
   յոգին.
Դարձաւ . յորդին ձայն արձակեաց՝,
   " Քեզ աւադիկ, Տելեմաք,
Քեզ ահա մարտ ուր քաջն ընտրի, ուր
   այր ընտրի նըշաւակ.
Մի՛ կացուսցես անփառունակ դու զազն
   ըզմերն հայրենի,
Որ միշտ ոգւով քաջարութեան մեք փայ-
   լեցաք յաշխարհի ":

« Տեսցես դու, հայր, եթէ կամիս, կրկին
նետաց առ Նա Տելեմաք.
Երբեք ըզքո զարմ հայրենին ոչ կարդեցից
ես յաւակ ».
Ասաց այսպէս, և առ խնդին ըզձայնն
ամբարձ Լայերտէս.
« Բարէ, աստուած. զի՜նչ լիցէ օրս, որ
ինձ ծագեաց մեծապէս,
Որ ծերունւոյս երջանկանէր. զի՞արդ
չիցեմ խնդագին,
Ահա որդի, ահա և թոռն վասն արու-
թեան պայքարին »:
Բայց Աթենաս կարդաց յայնժամ առ
Լայերտէս ծերունին.
« Ինձ ո՛ւնկըն դիր, քաջդ Արկիսեան, ո՛վ
դու ընաւից փարելը.
Դու զԱրամազդն և ըզծաւին մեծ զՕ-
լիմպոսդըն կարդա՛,
Եւ փութապէս ըզկուռ զաշտէն նշիւ
գործեալ արձակեա՛ ».
Ասաց, և ոյժ շնչեաց 'ի ծերն, և նա
զՊալլաս աղերսէր,
Եւ ձեռն ընդ ձեռն քաջ նշանաւ ծոծեալ
զաշտէն արձակէր.
Ի յերկաթին կուռ գլխանոց հար զԵւ-
պիթէս և խոցեաց,
Եւ անարգել տէգ անարին ընդ երկաթին
անց թափանց.

Այնպէս տապաստ, շրջափողն հարաւ, և
զէնքն անդէն հնչեցին,
Խուժեն յայնժամ 'ի նահատակս քաջն
Ոդիսէս և որդին.
Հարուան խոցեն սուր սուսերօք և 'ի նի-
զակս երկսայրի.
Եւ ողջ անշուշտ անդ գետնապաստ անկա-
նէին 'ի դաշտի,
Եթէ անդուստ վեհն Աթենաս ձայն ար-
ձակեալ մեծագոչ,
Ողջոյն ըղձգունդ ըղձհրոսակին չառնէր
յայնժամ սանձահարծ.
“Հրաժեշտ, հրաժեշտ, Իթակացիք,
տո՛ւք արդ 'ի դադարն 'ի մարտէ,
Եւ անարիւնք դարձջիք 'ի տուն տեղի
տուեալ 'ի դաշտէ”:
Զայս Աթենաս գոչեաց յայնժամ. նոքա
յահէն Թալացան,
Եւ սարսելոցն առ 'ի ձեռաց զէնքըն սրա-
ցեալ և Թռեան,
Ընդ օդ ողջոյն անկան յերկիր յորժամ
գոչեաց դիցուհին,
Եւ անձնապուրք անդ 'ի քաղաքըն հաս-
կըլեալք փախչէին:
Հետամըտեալ ձեպէր Ոդիս գոչիւն բար-
ձեալ ամէհի,
Եւ Թափ տուեալ սրանայր իբրև բար-
ձրաթըռիչ մեծ արծուի:

Բայց 'ի բարձանց Ամպրոպայինն ահեղ
շանթեալ յանկարծոյն ,
Հրացան կայծակն էարկ հանդէպ Օրխոր-
դին հօրամոյն .
Դարձաւ անդէն սա յՈդիսեւս և ձայն
կարդաց յանդիման .
" Լո՛ւր արդ , ուշիմըդ Ոդիսեւս , լո՛ւր
ինձ , ո՛վ քաջդ Լայերտեան .
Շա՛տ է արդ շատ սանձեա՛ ըզմէդ զամե-
նածախն ըզմարտի ,
Զի մի՛ ընդ քեզ որոտընդոստ մեծն Ա-
րամազդ սրտնեսցի " :
Զայս Աթենաս , լուաւ Ոդիս և ցնծա-
ցաւ և անսաց ,
Եւ ապա ուխտ յաւէժական երկուց կող-
մանց եդ հաստեաց
Խաղաղարարն արամազդեան վէհ հօրա-
մոյն Դիցուհին ,
Ի ձայնն յայնժամ և 'ի մարմին ըզտիպ
բերեալ զՄենտորին :



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

54. Κιρκος, Կիրկոս, ասեն Յոյնք զազգ մի սրաթռիչ բազէի։

55. Նաւահանգիստ է սա Իթակայ կղզւոյն։ Եւ էր 'ի նաւահանգստիս մեհեան նուիրեալ Փորկինոսի որդւոյն Պոսիդոնի. և է սա մի 'ի ծովային դիցն։

56. Աքիլլեւս։ Տե՛ս 'ի վեր 'ի ծան. 6։

57. Ի յարդէն ճանաչել է զհունձս։ Առհասարակ յառակս ընկալեալ եղև տողս Հոմերի առ Յոյնս և առ այլ ազգս. զոր և յիշատակէ գովութեամբ Արիստոտէլ 'ի Հռետորականին իւրում, եթէ «Ի յարդէն պարտ է գուշակել զորայն». որպէս և 'ի ծերութենէ առն՝ զերիտասարդութիւն նորա։

58. Զվաղնջուց անունն վարէ Հոմերոս, որով Հինք կոչէին զգետն Եգիպտացւոց, ոչ Նեղոս անուանելով զնա՝ այլ Եգիպտոս. ըստ որում վկայեն Հնագէտք։

59. Դոդոն, քաղաք յԵպիւռոս. հռչակաւոր 'ի պատճառս կաղնեաց, և 'ի պատճառս մեհենին Արամազդայ։ Եւ

է Դոմդոն՝ յոյժ վաղնջուց պատգամատեղի Հելլենացւոց։

60. Մայիա. ըստ դիցաբանից, դուստր Ատղասայ՝ յորմէ Արամազդ ծնաւ զՀերմէս։

61. Ըստ պատեհի իրացն միշտ 'ի բարոյական անդր նկրտի իմաստութիւն Հոմերոս. և աստանօր դարձեալ ընդդէմ գինեբբուաց և արբեցողաց գեղեցիկ խրատ զգուշութեան կարգէ։

62. Մի էր Եւրիմաքոս յերևելեաց անտի տարփածուացն Պենելոպեայ։

63. Զխորհրդ իրաւասպէս ճշմարտապատմէ Հոմեր յաղագս բազմագիտակ և գծապատեհ հետևանաց երկրորդի անուանութեան կնոջ մարդոյ, զոր և բացատրէ զինի։

64. Սիւրիէ, կղզի. է այն զոր այսօր կոչեն Սիրա։ Այլ Դարձք արևուն, ասելով Հոմեր վասն Սիւրիայի, ոչ զԱրևադարձն իմանայ՝ որպէս մեկնեն՝ այլ զմուտն և զելս արևուն, հայեցեալ 'ի գիրս Որտիւգէ կղզւոյն։

65. Զյանկարծամահ օրհասն համարէին հեթանոսք յաներևոյթ նետիցն Ապողոնի և Արտեմեայ։

66. Կիւքս, կամ Կաւքս. ռամկ. Կիւնիկ։ Եւ է յունականն Κηξ, կամ Κήυξ, առեալ 'ի հայկականէն։ Թռչուն խայտափետուր, և թագ 'ի գլուխ. բնակէ մօտ 'ի ջուրս. գնայ 'ի վերայ ջրոց 'ի լուղ։

67. Դարձուցանէ զբան իւր Տելեմաք առ Եւմէոս։

68 . Մեղմաբար անցանէ զանցիւքն Հեղինեայ, պատուաստելեալ զհիւրընկալութիւնն առ 'ի նմանէ Տեղեմաքայ առաջին մօրն :

69 . Գաստրոկղեան է՝ անուանին, որ մայր եղկայց Փիղոմեղէ :

70 . Իթակոս եւ Ներիտոս, որդիք նախնոյն Պտերելայոսի : Կղզին յԻթակոսէ էառ զանուն . եւ 'ի Ներիտոսէ՝ անուանի լեառն Ներիտոն յԻթակէ :

71 . Զառածն Հոմերեան բաղում ուրեք շքով յառաջ բերէ Արիստոտէլ 'ի Բարոյականին իւրում . 'ի նոյն յարեալ եւ զՑուլեայ զառածսն, եթէ նման զնմանն սիրէ . եւ, Համափէ 'ի համափին զառաջնոյն : Զնոյն եւ Պղատոն :

72 . Փռնգալն՝ Թէպէտ եւ 'ի բնական պատճառաց յառաջ եկեալ, սակայն եւ յամենայն 'ի դարս իբրեւ նշանական ինչ համարեցաւ առ մարդիկ . ուստի եւ առ հասարակ բարեմաղթեն այնմ՝ որ փռնգայ :

73 . Իսկ թէ յինչ պատճառս այնպէս Իրոս կարգային զնա, 'ի յունական բառիցն ցարդ ոչինչ յարմարագոյն գտին քննիչք :

74 . Օփոր և Նս, վասն իւր ասէ Ոդիսսէս, եւ զինքն՝ որ 'ի տանն իւրում կայր՝ ասէ ոչ յամեալ 'ի դարձն :

75 . Արգոս Յասոնեանն է Պելոպոննեսոս յորջորջեալ յանուանէ նախնոյ արքային Յասոսի :

76 . Ոձ զրուցեալս է Հոմերեան՝ առեալ

'ի հնոց անտի վայրագասուն և անտառաբնակ արանց, որք առէին զանձանց՝ 'ի վիմաց ծնեալս, կամ 'ի հաստահարուստ հինօրեայ կաղնեաց: Ըն զայս տող Հոմերի իբրև առակ յեղյեղեալ յառաջ բերեն բազում մատենագիրք, Պղատոն, Պլուտարքոս, Թէոկրիտոս, Կիկերոն, Կղեմէս Աղեքս, և այլք: Եւ ասել կամի Պենելոպէ առ Ոդիս, «Միթէ 'ի վիմաց կամ 'ի ծառոց է ազգն քո, զի չուանեցիս ինչ մի ասել ինձ զայնմանէ»:

77. Եւստաթիոս ասէ, զի կէսք 'ի Տորեցւոց բնակէին յԵւբիա. կէսք 'ի Պեղոպոննիսոս, և կէսք 'ի Կրետէ:

78. Տե՛ս 'ի ծան. 2:

79. Քանզի 'ի ցասման էր մայրենի պապն Ոդիսեայ Աւտոլիկէս 'ի ժամանակին՝ յորում եկն նա յԻթակէ և այն ինչ ծնեալ էր յայնժամ Ոդիսս մանուկն, եդ զանուն Թոռինն ըստ հայցուածոց ընտանեացն Ոդիսսէս. քանզի Ὀδύσσω, 'ի յն, է, Ցասնում, բարկանամ:

80. Բառն Հոմերեան է Ἐπαοιδία. Թովչութիւն, Հմայք: Ոմանք մեկնեն զբառն՝ իբրու Սփոփանք, Քաջալեր, տուեալ 'ի զօրացուցանել զվիրաւորեալն 'ի տանել քաջութեամբ:

81. Պանդարէոս Եփեսացի ըստ դիցաբանից փոխակերպեալ 'ի Թռչուն հանդերձ դստերքն, որ էին Անդոնէ ըստ յն. Սոխակ. և Քէլիդոնիէ:

82. Իփիտոս, որդի արքային Ջեթոսի և

Աէդոնեայ. սպանեալ 'ի մօրէն վրիպակաւ 'ի գիշերի. վասն որոյ և Աէդոնէ որ է Սոխակ, միշտ լայ զորդին իւր Իտիւղ յերգել իւրում:

83. Սարդոնեան ասացեալ ծիծաղն 'ի բազմաց բազմօրինակ մեկնի. բայց է այն ծիծաղ ոչ բնաւորական, այլ բռնադատեալ և ընդ դժկամակս:

84. Երկէան, մականուն Արամազդայ: Հոմ. Ερκίος, Տնական, Առտնին. զի յամենայն տունս և 'ի խորշս տանց պաշտէր դրօշեալն Արամազդայ:

85. Կիւլլէնեան, մականուն Հերմէսի. զի 'ի Կիւլլէն անուն լերան Արկադիոյ բնակասուն ասեն զՀերմէս:



